ժամ եկեալ ոմանք 'ի հաւատացելոցն 'ի գիշերի, և առեալ զմարմին սրբոյն սարգսի, և զչորեքտասանեցունց որանցն, տարան և պահեցին զգուշութ. 'ի պատուական տեղւոջ ընդ մարմնոյ սրբոյն մարտիրոսի որդւոյ սարգսի։ (14)

Կատարեցաւ սրբն սարգիս և որք ընդ նմա՝ 'ի վախճան ամի տռն 362, կմ 'ի սկիզբն 363 ամին. և այն՝ ըստ վկայաբանի շնորհալւոյն՝ յամենայն յունվարի 'ի կատարմանն. ըա. 'Ի նոյն միտս է իմանալ և զասելն միւս վկայաբանի յաղագս սրբոյն սարգսի, թէ հատին զգլուխ երանելի նահատակին քնի, որ օր ին էր մարերի ամսոյ. ըստ որոյ և 'ի հին ճաշոցս ընթեռնումք զօր կատարման նորա 'ի մարերի, կմ 'ի մարգաց. իզ. քանզի յաւուրս շնորհալւոյն՝ հայերէն ամիսն մարերի անկանէր 'ի դեկտեմբեր և 'ի յունվար ամսոն հռովմայեցւոց, որպէս և մարգացն 'ի յունվար և 'ի փետրվար։ Եւ ըստ այսմ 'ի դէպ գայ և դնելն ժամագրոց յունաց զսրբն սարգիս 'ի յունվարի. 2. և հռովմէական վկայագրոց 'ի փետրվարի. 24։ Ը այս ժմ հասարակէ և միջոցն առաջաւորաց՝ յորում կատարեմք զտօն սրբոյն սարգսի. որ է զի 'ի յունվարի, և է զի 'ի փետրվարի հանդիպի։ Յայսմ վայրի՝ ուր զկայ առնուն վկայաբանութիւնք, յաւելուն գրել յայսմաւուրք. 'ի յունվարի. ըա. * Կատարեցաւ սրբն սարգիս
" 'ի մազընդարան 'ի վայելուչ վայրի՝ մօտ 'ի
" [illegible], որ կոչի դաղմթան։ Եւ առեալ
" հա

„ ի հաւատացելոցն զմարմինն սրբոյն Սարգսի,
„ և տարեալ եդին պատուով 'ի քաղաքն
„ Համիան: Իսկ յետոյ եկեալ մեծ վարդա-
„ պետն Մեսրովպ՝ երարձ զմարմինն սրբոյն
„ Սարգսի. և տարաւ 'ի Կարբի. եդ պատ-
„ ուով 'ի յուշի. և արար զտեղին վանք
„ հռչակաւոր, որ է մինչև ցայսօր: Իսկ ա-
„ ռեալ ատամ մի յատամանց սրբոյն Սարգ-
„ սի. և տարեալ 'ի վերայ տուն 'ի դաշտն
„ Գագայ՝ եդ 'ի մէջ փայտատախտակի. և օ-
„ ծեալ զխաչն՝ կանգնեաց 'ի վր՛ գագա-
„ թան բլրին Գագայ. որ կոչի մինչև ցայսօր
„ Գագայ սբ՛ Սարգիս. և առնէ մեծամեծ
„ նշանս և զքանչելիս 'ի գերեալս և 'ի բան-
„ դեալս և 'ի ցաւագնեալս ‖:

Զնոյն յիշատակէ և Վարդան վարդապետ 'ի պատմագրութեն իւրում. ոպ՛ և պանծալի շարականն սրբոյն Սարգսի՝ յօրինեալ 'ի Շնորհալւոյն 'ի յօրինողէ բուն մկայաբանութեն: Որ և յայտնաբանի զօրն սրբոյն Սարգսի նշանաւոր 'ի մէջ նշանագործ մկայից, և երագահաս օգնական ամենն՝ որ կարդան զանուն նր: Իսկ այս ոչ միայն 'ի հայս էր հանդիսացեալ 'ի սկզբանէ հետէ, այլև յա՛մ քրիստոնեայս արևելից. մինչզի և նոքին իսկ անհաւատ պարսիկք կոչէին զնա անյաղթ մկայ պարսից, և կատարիչ ա՛մ խնդրուածոց. ոպ՛ է տեսանել և առ հին մատենագիրս յունաց առ Թէոփիլակտոսի և Եւագրիոսի (15): Համբաւեալ էր անուն սրբոյն Սարգսի անդստին 'ի վաղ ժամանակաց նաև մին-

չև

չև յարևմուտս՝ ՚ի Հռովմ և ՚ի սպանիա և ՚ի գերմանիա. մինչ զի միաբան գրեն հին վկայաբանք նշ՟ ՚ի փետր. 24. Ը Հանրապէս այսպէս. * ՚ի կեսարիա կապադովկացւոց (յիշատակ) սրբոյն սարգսի մարտիրոսին. ո-րոյ են սքանչելի գործք ‖. կմ * որոյ գործք մեծամեծք յիշատակին ‖. կմ թէ * որոյ ոչ միայն նահատակութիւն վն քի եղև սքան-չելի, այլ նաև այլ գործք մծահրաշք պատ-մին ‖: Թող զի վկայագիրն սպանիացւոց ու-նելով զմասն ՚ի նշխարաց սրբոյն սարգսի, այլ չունելով ՚ի ձեռին զստոյգ պատմութի սրբոյն՝ ոչ կարէ յարմարել զվկայաբանութի նորին. ուր շփոթ իմանալով զանուանս մար սարգիս, որ անխտիր նշանակէ մր սարգիս կմ հայր սարգիս, կարծէ զսրբն յետ զինուորութեան միայնացեալ ՚ի վանս կեսարիոյ, և անդ ա-րեամբ նահատակեալ. այլ զայսմանէ քանք լիցին ՚ի կարգի ծանօթութեց։ (16)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) [illegible]ուհարթագին սկիզբն առնեմ կարևոր բանիցս՝ որ զսրբոյն սարգսէ երագահաս վկայէ, ՚ի սքանչելեաց անտի՝ որ եղև (ինձ մեծ յոյժ) յաւուր գրելոյ իմոյ ըզ-վերջին մաքուր օրինակ պանծալի վկայաբանութես: Քան-զի յետ խնդրելոյ հաւատով ՚ի սրբոյն առաջի սբ պատա-րագի զյաջողութն գրութեան յառաջիկայս օր, այն ինչ հոգայի՝ թէ զիարդ ՚ի մուտս վկայաբանութեան եդից լոկ զանուն Հ. և Լ. առանց Յ. ֆ թէ որպէս առանց վկայութէ յունաց՝ մարթացայց համոզել յունաց զյուն-ազգի վկայն ՚ի հայս և ՚ի պարսս հանդիսացեալ, յան-կարծ.

,, Վս որոյ և մեք ըստ նշանակութեան առ 'ի ձենջ առաք-
,, ցելոյ գրոյ. զոր և ծանուցաւ ձեզ երբեմն յաղօթա-
,, կան եղբօրն զրուցատրութէ, առաքեցաք առ եղբայրս
,, գերահռչակ ուխտին ( ցը վանացն սարբեւոց . ուստի
եկեալ ոմն ուխտաւոր պատմեալ էր նմին գէորգեայ՝
թէ կան անդ մատեանք և վկայաբանութիւնք 'ի լեզու-
ասորի . . . ) որ յանուն մաւր պարսաւմոյի առ սահմա-
,, նաւն մելիտինոյ հայոց . ոչ զի յարկեղս մատենից ի-
,, բեանց հետազօտեալ քննեսցեն . և եթէ գտցի նշա-
,, նակեալն , թարգմանեալ տայցեն մեզ զխնդրելին ։
,, Որոցյօժարական սրտիւ զառ 'ի մէնջն ընկալեալ խնդ-
,, րոյ փոյթ , պնդեցին մերոցն զայս ինչ , եթէ վս զի
,, առ մեզ համանուն վկայք՝ չորք են կոչեցեալք սար-
,, գիս . ընկերին բագոսի՝ որ յոռեմակ նահատակեալ .
,, և այլ ոմն որ յամիթ . և միւս ևս 'ի տարսոյ՝ ուր հնոյն
,, է երից մանկանցն . և զօրավարն սարգիս հանդերձ
,, որդւովն 'ի պարս վկայեաց ։ Արդ զորոյ որդեօք 'ի
,, չորեցունց յայտնեաց խնդրեաք ստուգել զպատմութի ։
,, Եւ մեզ թէպէտև այլքն բաց յընկերէն բագոսի ան-
,, ծանօթ էին , սակայն իբրև մարք ինչ տեսանելով եթէ
,, զոր խնդրեմքն , ոչ այլ ոք է 'ի սոցունց , բայց զօրա-
,, վարն անուն , որոյ և որդին . վս որոյ դրեալ առ նս
,, կրկին անգամ՝ զնորայն յանուանէ խնդրեցաք թարգ-
,, մանել զվկայութի ։ Եւ նոցա ընկալեալ զառ 'ի մէնջն
,, ցուցեալ անուն , և թարգմանեալ որքան էր կարո-
,, ղութի՝ ջերմեռանդն սրտիւ 'ի ձեռն ուրումն իմաստ-
,, նոյ 'ի նոցանէ միքայել անուն , աղօտաբար զմեր գի-
,, տողի դպրութի , առաքեցին առ մեզ . որ թէպէտև
,, 'ի յարմարութենէ բանից և 'ի շարակարգ բառից ոչ զու-
,, գիւր ըստ մերումս լեզուի , սակայն զբնութի բա-
,, նին և զկարգ պատմութեան ամբողջ ունէր յինքեան ։
,, Զոր և մեր ընկալեալ , և ըստ չափոյ զօրութե յղկեալ
,, զզուարս բանիցն և զպատմողականն , առաքեցաք ձեզ
,, և հանուրց եկեղեցեաց հայաստանեայց՝ զանձ երկ-
,, նային և հոգևոր , որ ծածկեալ էր յայլալեզու ագա-
,, րակի աղանդ . և այժմ յայտնեցաւ շնորհօքն քո 'ի
,, ձեռն քոյին խնդրոյ՝ պատուական 'ի գլուխս եկե-
,, ղեցւոյ Դէորգէոս ։ Զոր և քո առեալ սերմանեսցես
,, ոչ զբաժնն սերմանող բանին Ճ առ անդիս , որք կար-
,, գան զանուն սն , և կատարեն հանդիսաւոր տօնա-
,, խմբութ զյիշատակ սբյ վկային ։ Որովք աղաւթե-
,, ցեն մերք խնամուն լսողաց 'ի տարբերական կրից
,, Թէ-

իւր առ կիւռ Մանուէլ կայսր յունաց, ևն։

(3) 'Ի գնել այսր տեղի՝ ոչ միայն և ոչ միոյ մեզ այլ աշխատութիւն 'ի վերայ վկայաբանութեանս, բաց 'ի բաղդատելոյ զզանազան օրինակս շնորհալւոյն՝ որ կան 'ի հին ճառընտիրս գրեալս ոչ բազում ամօք յետ փոխման Ներսէս Սբ հայրապետի, այլ և 'ի վախճան քաղուածոյ մեկնութ կաթողիկեայց ընծայելոյ նմին կմ գրիգորի ապիրատի, և ձօրինակելոյ 'ի թուին հայոց. ոխէ. 'ի հռոմկլայ։ Եւ սակայն պէտք եղեն մեզ առ առաւել յարգելոյ զվաստակս Սբ հօրս մերոյ, և ևս քանզի հանգիստացուցանելոյ առ նմ աղինս զստուգութիւն վկայաբանութեանս, ոչ միայն հետազօտել զհետս ուանգից այլոց ևս ազգաց, այլև կըրկին խուզարկել և զայլ մատեանս ազգիս՝ միաբան կմ անմիաբան գտեալս յայսմ մասին որ և է օրինակաւ։ Եւ ահա մինչդեռ 'ի վարանս էաք, թէ ուստի՞ եղեալ իցեն 'ի յայսմաւուրս պարագայք ինչ՝ որք ոչ գտանին առ շնորհալւոյն, գտաք և զաղբիւր նր. որ եղև մեզ հին վկայաբան երկրորդ՝ թէ ոչ զուգահաւասար վկայաբանութեան շնորհալւոյն, բայց և ոչ յետադասելի բազմաք. գուցէ և հնութեամբ հնագոյն. նմանօրինակ գործ թարգմանեալ յասորի լեզուէ (այլ գուշակի յունէն) հարթ շարագրութեամբ 'ի նախնեաց անտի (գուցէ 'ի հօրէն գագկայ առաջնորդէ ատոմայ վանաց, և կմ յայլոց յառաջագունից քան զնա.) այն է գրեալն 'ի վախճան երկաթագիր օրինակի ճառից մանգակունեայն՝ ը թարգմանութիւս ճառից ինչ ոսկեբերանի, և քանի մի վարուց սրբոց ը հին թարգմանութեան. զոր կոչեմք ճառընտիր մ. և է վերնագիր այսր վկայաբանութե այսպիսի. * Վկայա-
,, բանութիւն սրբոյն Սարգսի նահատակին քրի, որ անուանեալ կո-
,, չի Մեծ Սարգիս, որ վկայեաց առաջի իշխանաց և զօրա-
,, վարաց պարսից վկայութիւն յուր քրի ||։ և սկիզբն է այս.
* Ով սարգիս այր լի շնորհօք, և եռայր հոգւովն սրբով ||.

զոր և յառաջ բերաք 'ի կարգի վկայաբանութեան մերոյ. այլ և բազում ինչ յընթացից պատմութեան քաղեցաք, ուր ուրեք միաբանէր ը շնորհալւոյն, և կամ կարևոր գտանիւր 'ի բանալ զիմաստս և 'ի պայծառացուցանել զհանգամանս գործոց՝ համեմատութեամբ երկուց վկայաբանութեանց ը միմեանս. աւելով 'ի յետադայս ծանօթութիւնս և առանձին տեղեկութիւն վս իւրաքանչիւր հատուածոց՝ յորս միաբանին կմ ոչ միաբանին ը միմեանս։

Իսկ առ այժմ ունիմք ասել ընդհանրապէս. երկրորդս այս վկայաբանութիւն (որ և ը այլում անուանութէ ասա-

քին ) Թէև չիցէ անկեալ ՚ի ձեռս Շնորհալւոյն, ոչ լինէր անգիտելի միխայէլի ասորւոյ ը̅ ասորի բնագրին. վ̅ս ը̅ խմուռս առանձնական կարծեաց ( զոր Թողում յետնոց ստուգել կամ ուղղագրել, ) միխայէլեան օրինակն ասորի ոչ այնպէս հեռի գտանէր յայսմ օրինակէ, ( և գուցէ իրօք էր նոյն, ) որչափ այժմու Թարգմանութի ն̅ր որոփխսի և Լցէ՝ յղկեալ և պայծառակերպեալ ն̅մ իրօք ՚ի Շնորհալւոյն՝ հեռի կարծի յայսմանէ: Այսոցի՝ Թարգմանութի ն̅ր որոփխսի և Լցէ, ոչ ը̅ նիւթական անհմտութե հայերէն լեզուին ասեմ, ( զոր ՚ի վայելուչ և յընտիր հայկաբանութի վերածեաց Շնորհալին ), այլև ը̅ կարծեցեալ չափաւոր հմտութեն՝ զոր ունէր ՚ի վ̅ր հնութեանց ազգին հայոց. ը̅ որոյ երևի՝ Թէ ինչ ինչ պարագայս եդեալ իցէ ը̅ իւրաց վերաբերելոց առ հայս. ապա Թէ ոչ՝ ասելի է, Թէ Շնորհալին՝ որ խոստովանի զանձնէ լինել ոչ լոկ հարԹիչ շարագրութե, այլև կարգաւորիչ պատմութե, ոչ է կապեալ ը̅ ասորի վկայաբանութե ևեթ, այլև յազգային աւանդութեց առեալ է իւր իւր: Այլ Թէ զո՞ր իւր և զո՞րքան, չէ մարթ մեզ ասել, ցորչափ չունիմք ՚ի ձեռին զբուն ասորի սկզբնագիր՝ ոչ զայսր և ոչ զայնր վկայաբանութե:

Դարձեալ լինի ինձ գուշակել, Թէ Շնորհալին ընկալեալ էր ուստեք, և գուցէ ՚ի գէորգեայ առաջնորդէն հաղբատու կանխաւ զքաղուած ինչ վկայաբանութե ս̅բյն սարգսի ( հանեալ յօրինակէս հին Թարգմանութե ), և կ̅մ գտեալ էր ուրեք եԹէ գրաւոր և եԹէ անգիր պատմութի ինչ նման սմին, ը̅ զուրկ ՚ի պարագայից ժամանակի, տեղւոյ, և անձանց. և այն է՝ զոր կոչէ Թերակատար պատմութի. վ̅ս յորժամ ՚ի ձեռս եբեր զօրինակն միխայէլեան՝ պարագայիւք յարմարեալ, ուրախ եղև, և ը̅ այնմ գեղեցկայարմար յօրինեաց իւքն զբովանդակն. մինչ զի իրաւամբք կոչէ զնոր օրինակն՝ ճըշմարտագոյն պատմութի և ստուգագոյն վկայաբանութի. զորոյ զյարգն ճանաչէն ն̅մ իմաստուն քննիչք. որ̅պ և առաւել ևս ծանիցի ՚ի կարգի յաջորդ ծանօԹութեց:

(4) Մար սարգիս ( կ̅մ Մայր, և կ̅մ Մառ ) կոչի ս̅բ սարգիս զօրավար յերկոսին իսկ օրինակս վկայաբանութեա. որ և է մին ՚ի գլխաւոր նշանաց՝ Թէ երկաքանչիւրն իսկ յասորի սկզբնագրէ են առեալ: Արդ որ̅պ ՚ի մեզ Տէր ասի եԹէ հոգևոր և եԹէ մարմնաւոր իշխանն, սոյնպէս էր ՚ի սկզբանէ հետէ և կոչումս Մար առ ասորիս. Թէպէտև յայժմուս առաւել ընծայի ՚ի նշ̅է հո-

գևոր

յաւելեալ իցէ և Թ այսմ մասին ՚ի վկայաբանութեան իւրում, ոչ կարէր կալ ՚ի վր մակաբերութեանս՝ տեսանելով, զի և միւս վկայաբանն՝ որ է զուտ սորին, և չունի այլով մասամբ բան ինչ յաւանդից հայոց. յայսմ մասին գլխովին հայկաբանէ, և առաւել քան զշնորհալին ճոխաբանէ: Փափաքելի էր մեզ, զի կամ յօվսէփ սիմէն աստեմոն, և կմ սոկփաննոս եւագրիոս աստեմոն, որք զզանազան վկայաբանութիւս յառաջ բերեն և հետաքըննեն որպիսի և է օրինակաւ. գէթ զմի բան ՚ի մէջ ածուին և զվկայաբանութեանս սրբյն սարգսի՝ յաղագս անուան նոցա ՚ի մեզ փոխանցելոյ. այլ լռութիւն է առ նոսա զիրացս. վայ և մեզ չէ՛ հարկ յառաւել մակաբերութիւնս մտնել:

(9) Վկայաբանն երկրորդ՝ այսպէս հիմն արկանէ գերութեան և ազատութեան որդւոյ սրբյն սարգսի. * Եւ եմուտ
,, շնորհ ՚ի զօրն ած ՚ի վարդապետութիւն սարգսի. և ա-
,, զազակեցին զօրքն ած, և ասեն. հաւատամք յածն
,, սարգսի: Եւ գնաց սարգիս և զօրքն ած յԾն առաձկաց
,, ՚ի պատերազմ հզօր. և էր պատերազմ և մարտ զերիս
,, ամս. և յաղթեաց սարգիս և խորտակեաց զթշնամիսն
,, անօրէնամբն քսի. և յամօթ արար զչարախօսս: Իսկ
,, պաշտօնեայն այ և պատուաւորութ ողորմութեան նր, զոր մա-
,, տուցանէր սարգիս առ Տր ած, խափանեցան յայն ե-
,, րիս ամս պատերազմին: Եւ իբրև խորտակեաց սար-
,, գիս զթշնամիսն, զոմանս սպանին, և զոմանս փախու-
,, ցին, յայնժամ ասէ սարգիս Է զօրս իւր. եկայք մա-
,, տուսցուք պատարագս առ Տր ած՝ որ ետ մեզ յաղ-
,, թութիւ, և փրկեաց զմեզ ՚ի ձեռաց թշնամեաց մերոց
,, խաչիւն իւրով: Եւ էր սարգսի որդի մի սիրելի, որ
,, ոչ էր ընդ նմա ՚ի պատերազմին. և առաքեաց կոչեաց
,, զորդին իւր. զի նովաւ հանդերձ փառաւոր առնիցէ
,, զտօն: Իսկ սատանայ չարահնար գարանակալ եղև նմա
,, ՚ի ճանապարհին. և յարուցեալ ՚ի վր նր աւազակս՝
,, գերեցին զնա: Եւ եհաս ծառայ մի սարգսի, և եբեր
,, բօթ. ասէ ցնա. կալան զորդին քո և տարան զնա.
,, և զամ գանձս մեր գերեցին: Իսկ սբն սարգիս իբրև
,, լուաւ զայս, անկաւ առաջի սրբութեանցն այ. և զձեռս
,, իւր համբարձեալ (յաղօթս) || ևն. Ուր տեսանես միաբանութիւն Է շնորհալւոյն Թ գոյացութեան, այլ ոչ Թ ամ պատասահմանաց. այնպէս իմա և յայլ բանս հնրկօրէն:

Հ. փոքր մի այլազգ հանգամանօք ընթանայ Է մէջ երկուց վկայաբանութեանց՝ յաւելն ապատանօր. * Իսկ սբն
,, մար-

,, յաւիտեանս ամէն: Աղաչեմ զձեզ. որք կատարէք զօր
,, նահատակութեան սրբոյն սարգսի, մեղաց իմոց թողութիւն
,, հայցեցէք 'ի ձեռն երանելոյն. զի գտայց ողորմութիւն
,, բարեխօսութբ սրբոյն սարգսի. և փառաւորեցից զա-
,, մենասրբ զերրորդութիւնն յաւիտեանս յաւիտենից.
,, ամէն ||:

Յայսմ տեղի իմանաս՝ թէ որպէս վկայաբանս այս յտմի ունի զնմանութիւն և զաննմանութիւն միանգամայն ընդ վկայաբանի շնորհալւոյն. մինչ զի ոչ եթէ տկարացուցանէ վկայութիւն միոյն զմիւսն, այլ ևս քան զևս հաստատէ: Եւ երկոցունց միօրինակ հաստատիչ և քարոզիչ է շնորհալից շարական շնորհալւոյն 'ի վր սրբոյն սարգսի: Ուր և կրկին ևս հաստատի գործնական վկայութիւն ազգիս համօրէն 'ի կարգալ զսբն սարգիս յամ նեղութիւնս հոգւոյ և մարմնոյ իբրև երագահաս վկայ նշանագործ: Իսկ թէ և 'ի պարսիկս քարոզեալ էր զօրութիւն սրբոյն սարգսի, քաջ ցուցանէ պատմութիւն անցից խոսրովու պարսից արքայի. ոչ յիշատակեցաւ 'ի կարգի պատմութեան հայոց. այլ մեք գիտուք այժմ 'ի վկայութենէ իրացդ զբուն բանս 'ի պատմագրութենէ անտի յունաց:

(15) Թէոփիլակտոս սիմոկատտա երևելի պատմագիր յեօթներորդ դարու. Գիրք. Ե. Գլ. 1. Երես. 219. գրէ իբրև ժամանակակից վն խոսրովու երկրորդի պարսից արքայի առ մօրիկ կայսերաւ, թէ յորժամ նեղեալ կայր յերեսաց վարհամայ ապստամբին, * միւսանգամ ա-
,, տծն ամենեցուն զմիտս ուղղեաց, և աղաչեաց խնդր-
,, ուածովք զմշտապատիճն (յն. այնդիմօն) 'ի վկայս
,, զսարգիս, զոր սովոր էին պաշտել և ազգք խաշնարա-
,, ծաց (յն. նօմատիքա՝), հասանել 'ի կարիս տառապա-
,, նաց իւրոց. և ուխտեաց նուիրել նմա զնշան տրու-
,, նեան խաչին՝ յոսկւոյ զտոյ, մարգարտայեռ և ակա-
,, նակապ զարդարեալ 'ի պատուական քարանց հնդկաց՝
,, 'ի նշանակ նախընծայ յաղթութեան. զի տագնապ առա-
,, ջեկայ վտանգին հարկեցոյց զնա ջերմ աղօթիւք 'ի պա-
,, ղատանս բերել ||:

Այս 'ի Գլ. 13. Երես. 231. պատմէ, թէ յետ յաղթելոյ ապստամբին՝ նիզակակցութբ յունաց՝ իբրև հաստատեցաւ անդրէն 'ի թգրութեան իւրում, 'ի միտ եառ զօգնականութիւն՝ որ եղև նմա 'ի վերուստ. և յիշեալ զուխտ իւր՝ զոր արար, նուիրեաց սարգսի երևելւոյն 'ի վկայս զխաչն ոսկի ականակապ յօրինուածով, վասն՝ զոր առաջինն խոսրով 'որդի կաւատայ յառնուլն զքաղաքն կո-

,, արամ կատարեցան ։ 'Ի հրաժարիլ մաքսիմիանոսի և
,, դիոկղետիանոսի 'ի կայսերութենէ . . . փոքր մի անդոր-
,, րութիւն լինէր եկեղեցւոյ ։ Իսկ մաքսիմինոս ոմն . . .
,, դատաւոր կարգեցաւ Յին հայոց և կապադովկաց-
,, ւոց ։ Եւ ճանապարհ արարեալ մաքսիմինոսի դատա-
,, ւորի 'ի հայս՝ յանցանելն Է կապադովկիա եկն 'ի կե-
,, սարիա . . . և զդորոթէա կոյսն, և զբարաղամ, և
,, զայլս 'ի սուղ ժամանակի ծախեաց անագորոյն դա-
,, ժանութի դատաւորին . . . . և ածէր օր ըստ օրէ ժողով
,, հաւատացելոց, և բազմանայրեն առ Այ պսակք ար-
,, դարոց ։ Եւ հանդիպէր յայն աւուրս տարեկան տօն
,, պղծոյն դիւոսի ( կամ արամազդայ ) . . . . և 'ի կատա-
,, րել զայն հեթանոսաց, միայնակեաց ոմն սարգիս ա-
,, նուն, 'ի քնական հաւատս կրթեալ յիւրոց ծնողաց,
,, և քնի ևս հաւատարիմ ծառայ արգէն եղեալ, որ յա-
,, ռաջագոյն աշխարհական պաշտօնատարութեամբ ծա-
,, ռայեալ իսկ էր իշխանաց Յի, այլ խիթացեալ 'ի մրրկաց
,, անօրէն Յի, և զմեղկայիւն փառաց հնչմունս արհամար-
,, հելով թողեալ զամ ինչ, և բաշխեալ աղքատաց, մե-
,, նացեալ էր 'ի բացական խուց մի լերին. ուր մերկ
,, զքն մերկ խնդրէր. և տուեալ զանձն պահոց և ա-
,, ղօթից և խարազնազգեցութեան՝ խիստ վերարկուաւ
,, ծածկեալ՝ այսու օրինակաւ դուն գործէր զքն շա-
,, հել ։ Սա ակնարկութեան Այ 'ի քաղաք եկեալ, և յամ-
,, բոխ անօրինացն մտեալ՝ նայէր ընդ ծնոսի հանդեր-
,, ձանս զոհից. և 'ի պահուն՝ յորում պիղծ քուրմն կը-
,, ռոց մոգական բանիւք վն իւրոցն աղերս առնէր,
,, սարգիս 'ի սրտի իւրում սկսաւ աղաչել զամծ՝ զի զբա-
,, քանչելեաց իւրոց ցուցցէ անհաւատից զմեծութի,
,, մինչև ունայնացուցանել զարարուածս քրմին անօրէ-
,, նութե. և եղև այնպէս. զի այնուհետև թշուառա-
,, կան պաշտօնէայն կարաց ոչինչ պիտանի մարթացաւ առ-
,, նել 'ի կարգ անարի. վն զայրացեալ զոհանուէրն՝ ըս-
,, կսաւ պէսպէս մեքենայս ստութե յօդել. որով յայտ
,, առնէր՝ թէ բորբոքեալ է ցասումն դից վն թոյլ-
,, տուութե քրիստոնէից անուանն ։ Յայնժամ 'ի նախանձ
,, հաւատոց վառեալ սարգսի՝ եկաց 'ի մէջ բազմութե,
,, և աղաղակեաց մեծաձայն. զի՞ է քեզ պիղծ զոհագոր-
,, ծիդ զդից քոց զցասումն պատճառել ստութբ, ուր
,, ամն իմ յն քն՝ որ զլեզուս իմաստնոց յաղթող գոր-
,, ծէ. վն փառաց անուան իւրոյ գիտէ 'ի ժամուն կար-
,, կել զբերանս դիւաց . . . . Յայնժամ վայրի յիմարեցաւ

,, զո-

վկայաբանութեան թուէր լինել այլոյ ուրուք սրբ. սարգ-
սի, քան մեզ փոյթ. բայց աստուածային երեւի առել, թէ
նոյն սա է սրբ. սարգիս զօրավար 'ի կեսարիոյ կապա-
դովկացւոց. (տես և քաղէ 'ի պատմութէնս.) այլ հե-
տաւորք առ չունելոյ ստոյգ տեղեկութիւն ընդ՝ զհրա-
ժարեալն 'ի պատուէոյն և զկոչեցեալն մար սարգիս, համ-
մարեցան միայնակեաց լինել. և զչապուհ թագաւոր
պարսից չփոթելով ընդ շապրիկեան թագաւորի, որպէս
և զմարտիրոս որդի սրբյն սարգսի ընդ նմին սրբ. վկայի,
այսպիսի ընդհանուր վկայաբանութիւն յօրինեցին. թող
զփոխագրութիւն նշխարացն, որ կարէր ըստ իրաց ինչ
ստոյգ լինել. բայց մնացեալ է յանստուգութեան:

Դարձեալ ասեմք. ոչ այլ ումեք 'ի դէպ գոյ տասցեալն
միաբան 'ի լատին վկայաբանից, թէ սրբյն սարգսի կան
կմ պատմին ընդ մ սքանչելի գործք, բայց միայն մերումս
սրբյ հռչակելոյ քան զայլ անուանակիցս իւր: Այնպէս
տաւել 'ի նա մարթին հայիլ բանք սրբյն գրիգորի տու-
րոնեցւոյ առ բուլանդեանս, թէ * Նա և սարգիս վը-
,, կային բազմապատիկ նշանս առնէ 'ի ժողովուրդս,
,, բժշկելով զհիւանդս, և փարատելով զցաւս այնոցիկ
,, որք հաւատով կարդան առ նա||: Գրէ և եւ նա ինքն
տուրոնեցին 'ի պատմ. ֆռանկաց. գիրք. Է. գլ. 31. եր.
355. 'ի վեցերորդ դարու, թէ * Եր յայնմ ժամանակի
,, գունդոփալդոս 'ի քաղաքն բուրդեգալայ՝ յոյժ սիրե-
,, ցեալ 'ի բերտրամնոսէ եպսէ. Վ. խնդրելն՝ թէ մի
,, պատճառք կարեն տալ նմա սփոփանս, պատմեաց նմա,
,, թէ թագաւոր ոք 'ի կողմանս արեւելից բարձեալ զսրբյ
,, վկային սարգսի զբոյթն՝ կապեաց յաջոյ բազուկ մարմ-
,, նոյ իւրոյ. և 'ի լինել հարկի վանելոյ զթշնամիս, յայս
,, օգնականութեան վստահացեալ, այն ինչ վերացոյց զբ-
,, բազուկ իւր աջոյ, նոյն ժամայն բազմութիւն թշնա-
,, մեաց՝ որպէս վկային զօրութեամբ նկուն եղեալ՝ 'ի փախուստ
,, աճապարէր: Զայս իբրեւ լուաւ գունդոփալդոս, ըն-
,, կաւ մեծաւ խնամով հետազօտել, թէ մ՞ կայցէ 'ի
,, տեղւոջն յայնմիկ, որոյ արժանացեալ իցէ ստանալ
,, զնշխարս սրբյն սարգսի մարտիրոսի: Յայնմ վայրէ
,, մնացեալ եպսն բերտրամնոս զեւփրոն վաճառա-
,, կանն... սա է ասէ ասորի՝ եւփրոն անուն, որ ըղ-
,, ձուն իւր եկեղեցի շինեալ՝ զսորին սրբյ նշխարս ամ-
,, փոփեաց. և բազում նշանս ետես նորիմբք յօգնակա-
,, կանութեամբ զօրութեան վկային. զի 'ի ժամանակին՝ յո-
,, րում 'ի քաղաքն բուրդեգալայ անկաւ հրդեհ մեծ,

„ տունս այս շրջապատեալ 'ի բոցոյ՝ մնաց անկիզելի ։
„ Զայս իբրև ասաց նա, վաղվաղակի մունմնջուս արագ
„ ընթացիւք գնաց ընդ եպսին բերորապքեռնոյն 'ի տուն
„ ասորւոյն. և պաշտպեալ զմարդն՝ պատուհրեաց ցու-
„ ցանել ինքեան զայն սբ՟ նշխարս ‖ ։ Այպս յերկար
գրէ. թէ առին 'ի նմանէ բռնութ՟ ոսկր մի փոքրիկ, որ
բաժանեցաւ յերիս. և զմի մասն էառ մունմնջուս ։ Արդ՝
Թէպէտև անխտիր մարթի պաշտշանիլ այս պատմութե՟
այսմ և այնմ 'ի սբ՟ց սարգիս անուանելոց, ըստ որում
յաւուրս զատնեկին նշխարք երկոցունց են ; բայց բաց-
արձակ անունս սարգիս՝ առանց անուան բագոսի, և
յիշատակ արևելեան Թագաւորին ( ուր իմանամք ըղ-
խաւարով արքայ պարսից ), տուալ զզօրավարն սարգիս
յայս տանեն ։ Եթէ կամ իցէ ումեք ասել, մասն ինչ
պատմութե՟ առ մին հայի, և մասն ինչ առ միւսն ։
'Ի վախճանի ծանէք, զի բաց 'ի նախագրեալ երկուց մեծ-
անուն սբ՟ց սարգիս անուանելոց՝ յիշատակի յումանց
անորոշ պատմութ՟բ և սարգիս ոմն նահատակեալ յայլ-
ազգեաց 'ի հինգերորդ դարու առ արկադեաւ կամ
որդւով նր՟ Թէոդոսիւ փոքու. զոր մատթէոս ուռհայե-
ցի շփոթէ ը՟ մեծին սարգսի՝ 'ի խօսելն 'ի բերանոյ գագ-
կայ հայոց արքայի առաջի առւկին կայսեր յունաց, գըր-
քելով վս՟ տօնի սբ՟յն սարգսի 'ի կատարման առաջաւո-
րաց պահոց՝ այսպէս. * Բայց 'ի տօնի յաւուրն զըստա-
„ րատեղեան զսբ՟ն սարգիս յիշատակեմք և զճշմարիտ մար-
„ տիրոսն, որ վկայեցաւ որդւոցն հագարու յՅն թագ-
„ րևանդի յորդւոց մահմետի 'ի յաւուրս Թէոդոսի Թա-
„ գաւորի. և ոչ առի սա խշապանն սարգիս ածուրացն
„ այն՝ որ շանն տայր երկիր պագանել. իսկ մեք քրիստո-
„ նեայքս զսբ՟ն սարգիս զճշմարիտ մարտիրոսն յիշատա-
„ կեմք ‖ ։ Ուր կայ յայտնի շփոթութե՟ խառն յաւան-
դից հայոց և յունաց. զի կամ վս՟ յիշելոյ տաճկաց 'ի
վարս մեծին սարգսի՝ կարծեալ է ուռհայեցին, թէ
մահմետականն էին նք՟, ( ուր և յառաջ գոյր ազգ տաճ-
կաց այլազգեաց. ) և կա՟ իմանայ զաւուրս Թէոդոսի
երրորդի՝ որ նստաւ յաւուրս սբ՟յն գերմանոսի յամի
714. յետ ելից մահմետականաց. արդ եթէ բանն է
ղաչմէ վկայէ՝ զոր համարին ոմանք լինել առ արկադեաւ
և ոնորիոսիւ, վրիպակաւ մուծեալ են այն բանք * որդ-
ւոցն հագարու ‖, և ս առաւել * յորդւոց մահմետի ‖.
զի յայն ժամանակս չև էր ելեալ ամիրապետն ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Ատոմեանց՝ առաջնոց, և վերջնոց: (1)

Առաջին Ատոմեանք զօրականք:

Հ. օգոստ. 19: Ղ՛ուռընկ. Ի. ՉԷ: (2)



Ի ԺԱՄԱՆԱԿՍ ՅԱԶկերտի կռապաշտ արքային պարսից (3), մինչդեռ ծաղկէր հաւատ քրիստոնէից ընդ ամենայն երկիր, յարեաւ հալածումն մեծ 'ի վերայ արևելեայց, այլ առաւել ևս 'ի վերայ ազգին Հայոց: Օր 'ի յաճախել հաւատացելոց յերկրին պարսից՝ գործակցութեամբ այլոց քրիստոնէից եղելոց ընդ իշխանութեամբ նոցա, և 'ի պաշտել յայտնի զօրէն հաւատոյ, խորհուրդ 'ի մէջ առեալ մոգպետացն և մոգուցն՝ խորհրդակից ունելով զքահանայապետն զվարդապետն չարեաց, մատեան միաբան առ Թագաւորն, և ասեն. գիտութիւն լիցի տէրութեդ քում, զի դէնիմազդէնք կործանեցաւ, և զիցախառն նախնեաց ձերոց պաշտամունքն բարձան. զի ամենեքեան 'ի քրիստոնէութիւն խոտորեցան. և եթէ ոչ հրով և սրով և փայտիւ հրամայես կորուսանել զանուանեալ քրիստոնեայսն, մանաւանդ որք յերկրէն Հայոց այսր հասեալ են ազատք և ռամիկք հեծեալք, որք առաւել թշնամի են պաշ-

տաւ

տամանն կրակի և մոգութե, ոչ ևս զօրացեալ
եղիցին պաշտամունք ա̃ծոցն :
Յայնժամ Թագաւորն փութանակի հրա-
մայեաց հրովարտակ առնել ը̃ ա̃մ կողմանս
իւրոյ ի̃րութեն, եթէ մի́ ոք իշխեսցէ անուա-
նել զանձն քրիստոնեայ . ապա թէ ոչ՝ սրով
և հրով և փայտիւ́ դատեսցի (4) . իսկ որք
կատարեն ասէ զմեր հրամանս, և մեծարեն
զկրակ և զմոգութի, բարձի և պատուի́ և
մեծի իշխանութե արժանի գտցին : Այնու-
հետև լինէր հալածումն մեծ քրիստոնէից .
զի տանջէին անհնարին տանջանօք, և սպա-
նանէին պէսպէս մահուամբք . այլ քաջքն
պատկերին՝ առ ոչինչ համարելով զտանջանս
և զմահ . և ասէին ը̃դ սրբոյն պօղոսի, եթէ
ոչ մահ և ոչ նեղութիւք ոչ կարեն մեկնել
զմեզ 'ի սիրոյն քի̃ի . զի անցաւոր մահ-
ուամբս և չարչարանօքս զանանց և զան-
ձառ բարիսն ժառանգեսցուք : Իսկ վատա-
սիրտք և ակարք՝ էր որ առ երկիւղի ժամա-
նակեան մահուան, և էր որ 'ի սէր անցաւոր
կենացս թուլացեալ՝ խոնարհէին 'ի կամս
Թագաւորին 'ի կորուստ անձանց :
Եւ քանզի ազատագունդն հայոց՝ որք կային
յարքունի պատերազմունս հրամանաւ յազ-
կերտի ը̃ զօրավարու̃թ երկուց քաջ նախա-
րարաց, Ատոմայ գնունւոյ և Մանաճհրի
ռշտունւոյ, տակաւին համարձակ պաշտէին
զքրիստոնէութի 'ի բանակի, խորհեցաւ Թա-
գաւորն հնարիւք կոչել զնոսա առ ինքն, և
հրապուրել 'ի պաշտօն արեգականն և կրա-

կի .

կի . վասն որոյ արձակեաց առ նոսա զոմն 'ի նախարարաց իւրոց բանիւք խաղաղութեան և սիրոյ՝ գրելով հրովարտակ այսպիսի . Յազկերտէ յիմոց հաւատարէ արքայից արքայէ առ սիրելի ծառայսդ , առ ազատսդ և առ ռամիկ հեծեալդ հայոց Տիդ , որ 'ի մարզիդ էք , ողջոյն հասցէ 'ի մերմէ տրութենէս : Յիշեցաք զվստահս ձեր և զքաջութիւն , որ առ թշնամիս մեր . և կամիմք մեծաւ պատուով և ճոխութբ արձակել զձեզ յՏս ձեր . զի տեսեալ եղբարցն ձերոց՝ առաւել փութասցին 'ի մեր ծառայութի . միայն զի փութով հասանիցէք 'ի դուռն արքունի :

Արդ իբրև լուան ազատագունդն հայոց զհրաման թագաւորին 'ի բանից անտի նամակին և 'ի պատգամաց նախարարին , գիտացին այնուհետև զգաղտնաձիգ նետս չարին , որ հանապազ մարտնչի ընդ ծառայից այ : Բայց ոչինչ ցուցեալ նշան՝ թէ 'ի միտ առին զդաւաճանութի թագաւորին , յարուցեալ միաբան յուղի անկան գնալ ոչ թէ 'ի դուռն արքունի . այլ ծփէին 'ի միտս իւրեանց՝ թէ զի՞նչ արասցեն . և աղօթիւք առ տր կարդային յամ սրտէ :

Իսկ իբրև հասին 'ի կիցս ճանապարհին՝ որ զատանէր յՏն հայոց , 'ի դադարել նոցա անդէն առ վայր մի՝ խորհուրդ իմն 'ի մէջ անկանէր 'ի տուչութէ ածային շնորհաց և 'ի տեսչութէ վերին զօրութեան : Իսկ ժողովեալք տր ատոմ գնունի իւրովք ազատօքն , և տր մանաճիհր ռշտունի իւրովք ազատօք , խորհուրդ

հուրդ կալան առ միմեանս, և սկսան ասել այսպէս. Մեք գիտեմք զպիղծ և զանօրէն Թագաւորն զԹշնամին հաւատոց մերոց, զի ոչ վասն այլ ինչ իրաց կոչէ զմեզ, այլ միայն՝ զի հանցէ զմեզ 'ի սրբ հաւատոյս մերմէ, և դարձուսցէ 'ի մոլորութի. այս են կամք նր, զի հնազանդեցուսցէ զմեզ իւր խաւարային խորհրդոցն, և արասցէ զմեզ խաւար փոխանակ լուսոյ. և զանցաւոր պատուով խոստանալով՝ 'ի յաւիտենական բարութեցն զմեզ մերկացուսցէ, զոր խոստացաւ անսուտն ած իւրոց ծառայից 'ի ձեռն սրբց իւրոց մարգարէից և առաքելոց. որք քաջութբ նահատակեցան 'ի ժամանակս իւրեանց վս անուան նր. և բարի անուն յետի թողին, և զանձս բարութե 'ի յերկինս համբարեցին անձանց, և որոց արժանաւոր գտանին նոցին լուսաւոր պսակացն. արդ թէպէտև մեք անարժան եմք, սակայն 'ի նոյն տր ապաւինելով՝ արժանաւորք գտանիմք. զի միայն զյօժարութի կամացն խնդրէ ած՝ առատաձեռնել յամենեսին զանսպառ զանձս իւրոց պարգևաց :

Այս միաբանեալք ամենեքեան՝ ընտրեցին մեռանել վասն անուան տն մերոյ յսի քսի, քան առ ժամանակ մի վայելել 'ի մեղս. ամին իրք հաստատեցին չերթալ 'ի կոչ արքային, այլ խոյս տալ յետ իւրեանց. և Թէպէտ քաջ գիտէին՝ թէ ոչ զերծանին 'ի ցասմանէ Թագաւորին, այլ ոչինչ զարհուրեցան յառժամանակեայ մահուանէս՝ իւրա.

խուսեալք ձայնիւ սբյ աւետարանին, թէ մի երկնչիք յայնցանէ՝ որ զմարմինն սպանանեն, և զոգին ոչ կարեն սպանանել: Այնուհետև յանձն արարեալ զինքեանս սբյ երրորդութեն՝ դէմ եդեալ գնացին յՏն հայոց:

Նա եղև իբրև եհաս համբաւն ՚ի դուռն Թագաւորին, արձակեաց փութանակի գունդ բազում զինինց, հրամայն տուեալ զամենեսեան սրով սպանանել, թէ ոչ դառնան կատարել զկամս արքային, այս է գնալ ՚ի պարսս, և յանձն առնուլ զօրէնս մոգուն: Իսկ սբց երանելեացն կանխագոյն հասեալ յերկիրն հայոց ՚ի գաւառն անձաւացեաց, զտեղի առին անդ ՚ի վայելուչ վայրի ուրեք լերանց. ուրանօր բնակէր ՚ի քարանձաւի միոջ ոմն ՚ի սբ կրօնաւորաց հրեշտակակրօն միանձնականն վարուք՝ պէսպէս և բազում ճգանց համբերեալ: Առ սա հասեալք ամենեքեան առհասարակ, և ծունր կրկնեալ՝ խնդրեցին զաղօթս սբյն. և օրհնեալք ՚ի նմանէն՝ պատմեցին զանցս աղետիցն, և զնեղութիւն իւրեանց ճանապարհին:

Իսկ սբ այրն այ ազդմամբ ընկալեալ ՚ի հոգւոյն սբյ՝ մարգարէացաւ զերջանիկ կատարումն նց վկայական մահուամբ. և ասէ. Երանելիք էք որք քաջասէրք, զի վաղվաղակի առսանելոց էք՝ առ որ անձկացեալն էք. զի զօգտակարն ձեր հոգացէ տր յն քս: Նա նոցա ընկալեալ կրկին զօրհնութիւն ՚ի նմանէ՝ թջին բանակեցան զայն գիշեր մօտ ՚ի նա-

մե-

մեծաւ ուրախութեամբ որպէս զբանակս հրեշտակաց, սաղմոսելով և օրհնելով զԱծ ։ Այլ ահա 'ի մէջ գիշերին տեսիլ սքանչելի երևէր սբյն ատամայ ․ զի լոյս կամարաձև փայլեալ՝ խորան կազմեցաւ 'ի վերայ բոլոր գնդին ․ և այր մի լուսաւոր զգեստուք և ահաւոր տեսլեամբ բաշխէր պսակս բոլորեալս 'ի կարմիր վարդէ ․ և ասէր ցսբն ատոմ ․ քաջալերեցարուք զինուորք քրի ։ Իսկ նր̄ զարհուրեալ 'ի տեսլենէն, և զարթուցեալ առ ժամայն, բազում աղաչանս և աղօթս մատուցանէր հանդերձ արտասուօք առ բարերարն Աճ՝ այսպէս ասելով ․ Տէ՛ր դու գիտես զսրտից մերոց զխորհուրդս ․ զի վասն անուան քում սբյ եդաք զանձինս մեր 'ի կշիռ, և կամակար մատնեցաք զմեզ 'ի մահ, անարգելով զհրաման անօրէն թագաւորին, որ բանիւք անոտեօք հրապուրէ զմեզ՝ տալ հրաժարել 'ի քոց բարութեց, և վայելել 'ի մառախլապատ և 'ի մոխրապաշտ վայելչութիս մոլորելոցն 'ի Ճշմարտութեդ ։ Արդ ո՞ր բարերար մի՛ 'ի բացէ առնէր 'ի մէնջ զօգնականութեդ քո վերակացուի ․ զի մի՛ ոտն հարցէ թշնամին, թէ յաղթեացէ քոց ծառայից ։ Զի թէպէտև մեք անարժան եմք, այլ դու ո՛ր սովոր ես ցուցանել զողորմութիւս քո 'ի վր̄ մեղաւորաց ․ քանզի ոչ եկիր կոչել զարդարս, այլ զմեղաւորս 'ի մեղաքաւութիւն և 'ի կենդանատուր բղխումն արեանդ քո ։

Այս այսպէս կացեալ նորա յաղօթս մինչև

ցժամ առաւօտին՝ մնայր ծարաւեալ ոգւով ելից տեսլեանն ։ Իսկ ը՟ն այգն յարուցեալք ամենեքեան 'ի պաշտօն առաւօտուն՝ կատարեցին զսովորական աղօթսն. և ապա սկսաւ ս՟ր՟բն Ատոմ պատմել ն՟ց զուրախալից տեսիլ գիշերոյն ։ Իսկ նոցա առ հասարակ լցեալ խնդութ՟բ՝ գոհանային զինէ. և արտասուալից հառաչմամբ ծունր կրկնեալ բարերարին ա՟յ՝ ո՟չ 'ի միոջէ բերանոյ աղաղակէին և ասէին. Տ՟ր մեր և Ա՟ծ յ՟ն ք՟ն, եթէ արժանի համարիս զմեզ մեռանիլ վասն անուանդ քո ս՟ր՟բ՟յ, մեք պատրաստ եմք յա՟մ ժամ ո՟չ զոչխար 'ի սպանումն. զի կատարեսցուք նշանաւ ս՟ր՟բ խաչի քո. և մի պարտեսցուք յանա՟ծ՟իցն՝ 'ի մոխրապաշտ թագաւորէն և 'ի զօրաց նորա. զի ամօթալից կորիցեն ամենայն թշնամիք ճշմարտութե՟ն ։

Իսկ դիւապաշտ և սեւագունդ զօրքն պարսկաց հասեալ լինէին շտապաւ զկնի գնդին Հայոց. և իբրև եկին 'ի գաւառն անձաւացեաց, ը՟ն գուշակելոյ լրտեսացն զգիշերն ա՟մ հետամուտ եղեալ՝ հասանէին մօտ 'ի լեառն, ուր բանակն էր ս՟ր՟բ՟յն Ատոմայ. և կալեալ զոմն 'ի բնակչաց տեղւոյն՝ հարցանէին, թէ ո՞ւր իցեն բանակեալ. և մատնութ՟բ ն՟ր վաղվաղակի ժամանեցին բազում ամբոխիւ 'ի տեղին՝ ուր էին ս՟ր՟բքն ։ Իսկ նախ պատգամաւորս առաքեալ՝ յայտ առնէին զհրաման դառնութե՟ն թագաւորին. կամ գալ 'ի դուռն, և յանձն առնուլ զմոգութի՟ն և դառնալ պատուով, և կամ մահու մեռանիլ

առ-

առհասարակ։ Եւ իբրև գիտացին, թէ առ
ոչինչ գրեն նոքա զայնպիսի հրաման, զորս
տուեալ դիմեցին 'ի լեառն կոյս։

Իսկ քաջ նահատակացն տեսեալ զյարձա-
կումն անօրինացն, ընդ սովորակի իւրեանց ա-
րութէն՝ միմեանց ձայն տուեալ ասէին. ձի՛
կալէք. (յորմէ և յետոյ անուն տեղւոյն
ձիակալի վանք կոչեցաւ). և անդէն հե-
ծեալք յիւրաքանչիւր երիվարս՝ ժողովեցան
'ի բլուր մի. և կարգեցին ռազմ։ Եւ կէս
բանակին ընդ մանաձհրի ուշտունւոյ յառաջ
անցեալ՝ խորհէին 'ի թիկանց պաշարել
զթշնամիս, և կէս այլ ինչ ել ընդ հնարից գտա-
նել։ Իսկ նախախնամութիւնն այ յայց ելեալ
սիրելեացն իւրոց՝ յայտնապէս նշանակէր
նոցա, թէ ժամ է այնուհետև ոչ զքաջութն
մարմնոյ ցուցանել, այլ զհոգւոյ. քանզի
տեսիլ գիշերոյն յայտնապէս երևեցաւ միա-
բանգամ 'ի տեղւոջն ականերև ամենեցուն,
անանց լոյսն, և անթառամ պսակքն։ Որ
տեսեալ երանելեացն՝ նոյն ժամայն 'ի բաց
թողին զերիվարսն, և ընկեցեալ զզէնս
յանձանց՝ ցնծութբ յառաջ մատեան 'ի կա-
տարումն, և կամաւ ետուն զանձինս իւ-
րեանց 'ի մահ վասն անուանն քի։

Եւ նախ սրբն Ատոմ զաքանչելատեսիլ որ-
դեակն իւր վարոս անուն առաջի մատուցա-
նէր, զանգիտեալ 'ի մանկական տիոցն. իսկ
նորա ինքնանուէր յօժարութբ յառաջեալ
քան զամենեսեան՝ բարի խոստովանութբ 'ի
քն կատարէր և պսակէր (5)։ Ապա սրբն Ա-
տոմ

տամ և սրբ ընկերք նր մխաքան մատուցեալ զպատրանոցս 'ի բերան պարսկական սրոյն՝ սաղմոսէին և ասէին . սիրեցաք զքեզ տր, լուիցես ձայնի աղօթից մերոց . ընկալցիս զկամաւոր պատարագս, և խառնեսցես զա-մենեսեան 'ի գունդս սրբց քոց : Եւ այնպէս ամ իսկ գնդին ատոմայ արժանի եղեալ կատարման սրով, բարի խոստովանութբ 'ի քս՝ աւանդեցին զհոգիս իւրեանց 'ի նոյն տեղւոջ . որոց սրբ և վարդագոյն արիւնն զերկիր ոռոգանէր, և հոգիքն նոցա 'ի դաս վերին զօրաց խառնէին :

Յայնմ վայրի և շնորհալից պարսիկ մի յարքունի գնդէն անտի արժանի եղեալ նոյն տեսլեան, զոր երջանիկ վկայքն տեսին 'ի ժամ կատարման, աղաղակ բարձեալ ասէր . և ես քրիստոնեայ եմ իբրև զոսա . և առժամայն կատարի և նա յանօրինաց՝ մկրտեալ 'ի վկայական արիւնն իւր, և կարգեալ 'ի գունդ սրբցն 'ի տեսչութենէն այ : Մի ոմն թշուառացեալ յերանելեացն գնդէ փախտեայ անկանէր 'ի ժամ կտտորածին առ հովի մի . և տուեալ նմա զզգեստս իւր՝ առնոյր զնորին տարազ և զհովուական մախաղն և զցուպն, կերպարանեալ զինքն ձևով հովուին և այրիլ, փոխանակեալ զլուսեղէն պատմուճանն և զմշտնջենաւոր կեանսն ընդ զազրատեսիլ զգեստու և ը աւօրեայ կենացս . ով ոմն՝ որ վտարեցաւ երբեմն 'ի սրբց քառասնիցն դիմելով 'ի բաղանիսն, և զտեղի կոչմանն նր վիճակին ելից բաղանեպանն .

պանն. քանզի թոյլք և երկիմտողք յա̃մ ժամ կորնչին ։ Իսկ հոմերն յօժարութբ̃ և քաջք հաւատով դիմեալ ՚ի տեղի կատարմանն՝ յինքն ընդունէր զմեծի մարտիրոսութեն փոխանակ նր̃, հանդիսակից լինելով և պսակակից ընդ սբ̃ գնդին յերկնաւոր հարսանեաց ։ (6)

Ապա յետ երկուց աւուրց տեսիլ երևեցաւ ՚ի գիշերին սբ̃յ Ճգնաւորին, զի ՚ի մ̃ջ մեկայիցն առ հասարակ լոյս փայլէր հրաշալի և սքանչելի. որ և մեծաւ զարմացմամբ ՚ի վաղիւն փութանակի ազդ առնէր եպիսկոպոսի տեղւոյն. և հրամանաւ նր̃ ժողովեալ քահանայից, աշխատաց, և ժողովրդոց՝ փութով ՚ի տեղի անդր հասանէին ։ Իբր ամփոփեալ զնշխարս սբ̃ցն ՚ի մի կտաւ՝ մատուցին ՚ի տեղի հանգստեան իւրեանց՝ լապտերօք և բուրմամբ խնկոցն և սաղմոսիւք՝ հանդերձ հսկմամբ, տօնախմբելով յայնմհետէ զյիշատակս նց̃ մեծաւ ուրախութբ̃ ՚ի նաւասարդի ամսոյ. Թ ։

Արդ որք յայսմ տեղւոջ հանդիպեալք կատարեցան, են այսոքիկ. գլխաւորն սբ̃ն Ատոմ՝ որդւոյն իւրով Վարոսիւ, յազգէն Գնունեաց. սբ̃ն Վարս յոստանիկ (կամ յոստանի) տանէ. սբ̃ն Ներսեհ յերուանդունի (կմ̃ յարուանդթունի) տանէ. սբ̃ն Վարձաւոր, և այլ ևս բազմութի̃ սբ̃ ընկերացն, որք նահատակեցան ը̃ նոցա, և աւելին ըզպսակս անապականս. որոց անուանքն՝ որ ոչ գրեցան ՚ի գիրս, գրեալ են ՚ի դպրութե̃

կե-

կենացն յաւիտենից ։

Իսկ սբն Մանաճիհր ուշտունի նիզակակից երանելւոյն ատոմայ՝ իւր սբ ընկերօքն յառաջ անցեալ՝ հասեալ էր 'ի սահմանս Տյին իւրոյ, ընդ գաւառին ուշտունեաց . և մնայր տեսանել զկատարած իւրացն, պատրաստելով զանձն և զիւրսն 'ի վկայութիւն վասն անուանն Տն . և ահա հասին 'ի վր անագորոյն զօրքն պարսից . և ընդ օրինակի առաջնոց մի առ մի կոտորեցին . և այնպէս կատարեցան երանելիքն բարի խոստովանութբ 'ի տեղւոջն՝ որ կոչիւր ոչխարաց (կամ ոչխարանց, և կամ ոչխարանից) վանք . ուր և ամփոփեալ նշխարք ոսկերաց նց 'ի հաւատացելոց՝ եղան պատճառ յեկեղեցւոջն որ 'ի վր բլրին, ընդ յայտնութեն եղելոյ 'ի ձեռն ճգնազգեաց միայնակեցին ։ (7)

Որպէս վկայեցին և պսակեցան արի և քաջ նահատակքն ատոմեան սբ զօրավարք զօրօքն հանդերձ յամս յազկերտի պարսից Թագաւորի (յամի Տն 449) . որք արհամարհեցին զկեանս իւրեանց վասն անուան Տն մերոյ յսի քսի . և զամբարտաւան Թագաւորն հանդերձ խորհրդակցաւն իւրով սատանայիւ յամօթ արարին, զօրացեալք յաջոյ հզօրին, և 'ի նմանէ ընկալեալք զբրաբիոնն յաղթութէ ։ Եւ 'ի տապանէ սբցն բազում նշանք եղեն 'ի վր այնոցիկ՝ որք հաւատով դիմէին 'ի բարեխօսութին նոցին ։

Եւ

Եւթներորդ [illegible] [illegible] ։

Խ. Գիրք. 3 ։ Յովհ. Կաթ. Թովմ. Արծր. ։ (8)

Ի ժամանակս իշխանութեան Հագարացւոց 'ի բաղդատ, յամիրապետութեան մաքսամայ Ջափր կմ Ճաֆար կոչեցելոյ՝ առաքեցաւ 'ի նմանէ ոստիկան ոմն 'ի Հայս՝ ընդոծին նորին, բուղայ անուն (որ և բուխայ, կմ բուհայ), յաւուրս կթողիկոսութեան տն Յովհաննու Ովայեցւոյ՝ որ 'ի կոտայից. որ էր ժամանակ անիշխան իշխանութեան. զի թէպէտև կային բազում մեծամեծ իշխանք նախարարազունք Հայոց աշխին, այլ առանց իշխանապետի այր իւրաքանչիւր ինքնագլուխ տիրէր իւրում գաւառի ։ Արդ եկեալ Բուղայի յաշխն Հայոց անհամար զօրօք՝ յաւեր դարձոյց զամ տեղիս, և ոտնակոխ արար զանակիչս հարուածովք և գերութբ զամն Հինգ. զի զամ այր պատերազմող կմ երիտասարդ առոյգ՝ զոր միանգամ գտանէր, ընտրանաւ զգեղեցիկս և զգիտակավայելուչս 'ի նոցանէ պահէր 'ի կապանս առ 'ի դարձուցանել 'ի կրօնս իւր . իսկ զայլսն առհասարակ սրակոտոր կորուսանէր ։ Ոչ բազումն եհան 'ի հաւատոց . այլ զևս բազմագոյնս նահատակեաց . որպէս թէ լինել աշխն Հայոց յայնմ ժամանակի կենդանի վկայարան քաջ նահատակաց ։

Եւ եղև յետ աւերելոյ նր այսպիսի օրինակաւ զաշխն Տարօնոյ և Վասպուրականի՝ դիմեաց

է մեզ զլոյս Ե խաւարի փախստականել, կամ եր-
կնչել յառաժամանակեայ մահուանէս . զի
չե՛ն արժանի չարչարանք ժամիս հանդերձե-
լոց փառացն՝ որ յայտնելոց են 'ի մեզ ։ Ո՛ղ-
բոց զանվեհեր այնինս լուեալ բանաւորին՝
յուզէր 'ի մախանս 'ի վ[եր]այ երանելեացն . և
պարեալ Ե անտրտում զուարթութե երեսաց
նոցա՝ որ Ե օրէ խոշտանկէր զնոս ծանր կապա-
նօք և անսուաղութ[եամ]բ, գելարանօք և հար-
ուածովք . մինչ զի առ հասարակ կեղեքեալ
կեղէին մարմինք նոցա ։ Իսկ ապա անդրէն յա-
ռեալն կոչեալ՝ թախանձէր զնոս բանիւք և
հարցուածովք . զի թերևս զարհուրեալ նոցա
'ի դառն կտտանացն և 'ի տառապանալեաց՝ զի-
ջանիցեն 'ի կամս իւր ։

Իսկ նոցա միմի՛ յամմի քաջապէս համբերեալ՝
առ ոչինչ գրէին զմիշտս, զոր կրէին . և խնդա-
ղամիտ 'ի մահ եւս յօժարէին . վասն զի զօրա-
նայրին միշտ 'ի բղխմանէ անտի ջրոյն կենդա-
նուն՝ որ ելեալն էր 'ի կողիցն ք[րիստոս]ի, և ցօղէր 'ի
վ[եր]այ նոցա հոգևոր վտակօք ։ Ո՛չ և ոչ ամենևին
զոնէ փոքր մի տեղի ետուն բանից բռնաւո-
րին . այլ ծաղր առնէին զխրոխտանաց նորա,
և այպանէին զխոստմունս նորա . մինչև ինքն
իսկ Բուղա գիտաց յանձն իւր, թէ արհա-
մարհ թուի յաչս քաջ արանցն իբրև զմա-
նուկ մի անպիտան, կամ որպէս զծեր զառամե-
ցեալ՝ որ բանդագուշէ բանս սնոտեաց ։ Իսկ
տեսեալ այնուհետև զամենեսեան զնոսա
այնպէս և փայլթս 'ի մեռանել վ[ասն] 'ի ք[րիստոս]ի հաւա-
տոցն, վառեցաւ բորբոքեցաւ յանհնարին

ասրաւ

սրտմտութիւն իբրեւ գազան գայրագին . եւ հրա-
ման ետ հանել զնոսա 'ի բանտէ , եւ սպա-
նանել հրապարակաւ . էր զոր բազմութ̃բ , եւ
էր զոր սակաւ թուով հետ զհետէ 'ի բա-
զում աւուրս . զի թերեւս յետինքն հայելով
յառաջինսն՝ զղջացեալք ուրասցին :

Իսկ նք̃ յուսովն ա̃ծայնով խրախուսեալ՝ ոչ
'ի բարւոյն 'ի չարն , այլ 'ի չարէն 'ի բարին
զղջացեալք լինէին . եւ երթային իբրեւ գա-
ռինս պարարտս 'ի զենումն՝ լինել պատա-
րագ կենդանի ա̃յ՝ ինքնանուէր յօժարութ̃բ
եւ մեծաւ խնդութ̃բ , ասելով առ տ̃ր . վ̃ն քո
մեռանիմք զօրհանապազ , համարեցաք որ-
պէս զոչխար 'ի զենումն : Եւ այնպէս զուար-
ճացեալք փութային ելանել 'ի մարմնոյ եւ
մտանել առ ա̃ծ . եւ այնպիսի հրճուանօք
կայտռելով դիմէին 'ի տեղի սպանմանն , ո̃պ
թէ հանդէս հարսանեաց կայցէ նց̃ առաջի :
Այլ եւ 'ի մերկացուցանել զնս̃ դահճաց՝ նք̃
ա̃նձամբ փութային 'ի բաց ընկենուլ յան-
ձանց զզգեստ ապականացու մարմնոյ , զի
զգեցցին զն̃ր եւ զվարդագոյն կարմրատեսիլ
արիւնն իւրեանց 'ի վ̃ր ս̃բ մարմնոյն՝ իբրեւ
'ի տեղի ծաղկեայ պատմուճանի փեսայացե-
լոց . եւ փոխանակ ոսկեհուռ թագակապ
զարդու պսակացն՝ զերկրպագութի̃ն քն̃ի եւ
զնշան փրկական խաչին 'ի վ̃ր գլխոցն դրոշ-
մէին . եւ փոխանակ մանեկաց զսուրն փայ-
լեալ 'ի պարանոցսն ընդունէին : (9)

Այլ օրինակ գլխատման երանելեացն էր
քստմնելի յոյժ եւ անբերելի տեսողաց . զի

դահիճքն անողորմք, կմ անվարժք 'ի գործ կառափելոյ, ծեծէին սրով զկառափունս և զպարանոցս նոցա՝ իբրև ոք զի հատանիցէ փայտս յանտառի հարեալ կացնաւ այսր անդր. և այնպէս յանխնայ յօշէին զնս անդամ անդամ։ Իսկ մի ոմն յերանելեաց անտի գէորգ անուն թողկացել՝ երիտասարդ ժիր և առոյգ, իբրև մատեաւ առաջի սրոյն, և զուարթագին սպասէր կատարման վն անուանն ին, ետես՝ զի դահիճն հեղգ և անպիտան ծեծէր զպարանոց նր իբրև զանզգայ ինչ քարեղէն կմ փայտեղէն. մինչև և ոչ փոքր մի գիծ կարաց առնել 'ի մարմին նորա խոցուածս սրոյն։ Յայնժամ դարձաւ նահատակն 'ի դահիճն կոյս զարմացմամբ, և խնդրեաց 'ի նմանէ՝ տեսանել, թէ ընդէ՞ր ոչ հատանիցէ սուսերն. և առեալ 'ի ձեռանէ նր ըզսուրն շողացուցեալ՝ հայեցաւ յայսկոյս յայնկոյս, և ասէ. ո՛վ անարի վա՛տ արանց, և զինաւոր անպիտան ին իւրոյ. սուրս է հատու, և գլուխ իմ պատրաստական. զի՞ է՝ զի ոչ կարես հատանել. և թէ ոչ հաւատաս ինձ, ահա փորձիւ՛ տեսցես. և անդէն հարեալ շեշտակի զպարանոց դահճին՝ իսկ և իսկ 'ի բաց ընկէց զգլուխ նորա։ Եւ մի ոք 'ի տկարամտաց գայթակղեսցի ը գործն. զի յայտ իսկ է՝ թէ ո՛չ վարկպարազի 'ի սոյն բերեալ եղև առաքինի նահատակն, այլ զի մի յայսպիսի դանդաղութէ դահճաց լինիցի նահատակակցաց իւրոց քստմնիլ ը չարաչար կառափումն, և թուլանալ 'ի հաստատութէ

մնաց իւրեանց. այլ զի տեսցեն զանպիտանութիւն սպանողաց, և աներկիւղ լինիցին իբրև գինքն 'ի մահուանէ. և արդարև զարմանք կային 'ի տեղւոջն զամ բազմութին. և ըստ գրելոյ թովմայի արծրունւոյ՝ որ զայս պատմէ, գոհացեալ միաբան ետուն փառս այ, որ զօրացոյց զսն, և արար յամօթ զսատանայ հանդերձ գործակցօքն իւրովք (10).

Ապա առեալ զնա այլոց 'ի դահճաց՝ չարաչար տանջանօք սպանին. նոյնպէս և զայլսն արագ արագ գլխատեցին. և նք այնպէս ուրախութբ կատարեցան վասն անուանն քի.

Արդ էին 'ի բազմութե անդ նահատակացն այլ ևս արք եօթն՝ նշանաւորք վայելուչ ձրիւք հոգւոյ և մարմնոյ. յորս գլխաւորն էր երանելին Ատոմ անձևացի 'ի դաւառէն աղբակայ յորոխրանս աւանէ. Սա հանդերձ վեցեքումբք ընկերօքն պահեաց ուրոյն բանաւորն՝ վասն սքանչելի և հրաշատիպ կերպարանաց նց. մն զի զուարթադէմ երեսօք էին և գեղեցկադիտակք, կորովիք և յաջողակք 'ի զէն. նմին իրի և ոչ կամէր խառնել զնս ընդ այլսն՝ որք սրով կատարեցան. այլ հնարէր, զի գէթ զսոսա դարձուսցէ 'ի կամս իւր. խոստանայր առ նոսա սիրով, և ողոքանօք ջանայր ամոքել զմիտս նց. բազումպարգևս բարեաց և գանձս ոսկւոյ և արծաթոյ առաջի արկանէր նց. այլև գիւղս և դերդաստանս իշխանայր տալ նց, և երևելիս և փառաւորս 'ի դրան արքունի առնել.

Իսկ երանելիքն ամենևին բնաւ իսկ չհայեցան

ցան 'ի խոստմունս նորա , և ոչ իւիք առնուն յանձն պատրել 'ի սնոտի մեծութեց Ցիս . Մեզ կեանք քն է ասեն , և մեռանել շահ . գիտեմք՝ զի ունայնութի են կեանք Ցիս , և երազ դիւրամոռաց , կմ իբրև ստուեր երագահոս . այլ յաւիտենականն են և անապառ և անփոփոխելին կեանքն և պարգևքն՝ զոր պատրաստեաց ած սիրելեաց իւրոց , որք կան համբերութբ 'ի հաւատս ճշմարտութե . նոյնպէս և տանջանքն յաւիտենականք և մշտընջենաւորք յանապառ յաւիտեանս անփոփոխելի խոշտանգանօք , որոց օտարացեալ են 'ի սբ կրօնից , և ուրացեալք 'ի օճ է յանբիծ հաւատոյ քրիստոնէութենն ։ Հա՛պա մի՛ բանիւք զմեզ հարցանէր , այլ արա՛ զինչ և կամք են քեզ . զի մեք փութամք տալ զանցաւոր կեանս , և գտանել թեթևագին զանգին ճոխութի անանց կենաց ։

Ապա այնուհետև զքաղցրութին 'ի դառնութի փոխարկէր բռնաւորն , և դառն տանջանարօքն զնոքօք հրամայէր հեղուլ , և արկանել զնոսա 'յամ չարչարանս և 'ի բախմունս կտտանաց . զոր ոչ լեզու բաւական լինի պատմել , և ոչ գրով բովանդակել ։ Իսկ երանելիքն խնդամիտ տանէին զամ տանջանս . զի յոյսն աւետեաց և սէրն քի և ուրախութի վկայութեն թեթևացուցանէր նց զանհնարին ծանրութի բեռանցն ։ Այս ծանուցեալ բռնաւորին զանհրապոյր միտս սբցն՝ հրամայէ զնոսա զփայտէ կախել ։ Եւ մինչդեռ ը կերպարանաց խաչի կախեալ կային , գոհա

նայէին երանելիքն զանպատում պարգևացն քսի, որ արժանի արար զնս խաչակից լինել նմին, և մեռանել վասն անուան նր. և ուժգին պաղատանօք միաբան ձայն բարձեալ ասէին. տր յօգնել մեզ նայեա՛ց, և տր յըն-

կերել մեզ փութա՛:

Սուր և սբն ատոմ զուարթագին բարբառելով առ խաչակից ընկերս իւր՝ քաջալերութե մատուցանէր. մի՛ ասէ զարհուրիք եղբարք յաուժամանակեայ մահուանէս. զի թէպէտև չարչարիմք վասն քսի, հաղորդութե ունիմք ըդ այ կենդանւոյ: Եւ զի ուխտեալ էր սբն ատովմ նուիրել յաւուր տօնի սբյն գէորգեայ (որ 'ի մեհեկի. իզ.) նոխազ մի 'ի կերակուր աղքատաց, այլ 'ի նոյն աւուրս 'ի կապանս և 'ի տանջանս գոլով՝ անձեռնհաս էր կատարել զուխտն, վսյ յայնմ պահու զխորհուրդս իւր փոխանակ աչաց յերկինս համբարձեալ՝ ասէ: Տր քս յոյս իմ, ուխտաւոր գոլով իմ յայսմիկ տօնի տարեկանի՝ մեծինահատակին գէորգեայ նոխազ ընծայել 'ի պատիւ նր և վասն փառաց անուան քո, և արդ այսուհետև զիս քեզ փոխանակ նոխազի մատուցանեմ. ընկա՛լ զողջակիզութե անձին իմոյ, որ ընդունիչդ ես պատարագաց. և խառնեա՛ զիս և որք ընդ իս են՝ 'ի թիւ վկայից քոց սբց, որք սիրեցին զօր երևելոյ գալստեան քո: Եւ այսպէս առ հասարակ բազում երկայնմտութե համբերեալ երանելեացն մեծի պատերազմին, և յաղթեն թմի, աւանդեցին զհոգիս իւրեանց, և ընկալան 'ի

'ի Քսէ զպսակն անեղծութեան : (11)

Արդ յետ կատարման եօթանեցունց քաջ զօրականացս Քսի , և այլոց ևս յառաջընթաց վկայից՝ որք սրով առին զվախճան 'ի դուռն քաղաքի անդ , հրամայեաց ոստիկանն բուղայ քարշել զմարմինս սրբցն առ հասարակ արտաքոյ քաղաքին , և թողուլ 'ի բացի՝ լինել կերակուր շանց և թռչնոց երկնից : Եւ կացին մնացին այնպէս զաւուրս բազումս անթաղ . և ոչինչ ամենևին արատեցան մարմինք սրբցն , և ոչ գոյր ինչ ժահահոտութն 'ի վր նց . ապա գնացեալ գաղտ քրիստոնեայք՝ առին զպատուական մարմինս նց , և թաղեցին պատուով :

Կատարումն սոցա եղև 'ի թուականութեանս հայոց . յբ̃ , այն է յամի տն̃ . 853 . որ էին ե̃ ամաւելի քան զհարիւր և յիսուն այր (12). թող զայնոսիկ՝ որ յայլ գաւառս և 'ի քաղաքս եղեն վկայք յաւուրսն յայնոսիկ : Ապա մեծ հայրապետն յովհաննէս սահմանեաց որ յիշատակի ամ̃ սրբցս այսոցիկ 'ի մեհեկի ամսոյն . իե̃ . որ յայնժամ լինէր . 18 . աւուր Նոյեմբերի . յորում աւուր թերևս լեալ իցէ վախճան սրբյն ատոմայ հանդերձ ընկերօքն . և այնպէս տարևորական պատուով ամ̃ ըն ամէ տօնէին զսոցա կատարումն , և մանաւանդ զեօթանեցունցն ատոմեանց վերջնոց . զորս համարիմք յայժմուս տօնախմբել զոյգ ընդ առաջնոց ատոմեանց յայսմ միջոցի առաջաւորաց , 'ի փառս պսակողին բոլորեցունց ամենափրկչի :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Ի մի վայր բերաք զերկին վկայաբանութիւնս ա-
ռաջին և վերջին ատովմեանց. Նախ՝ որպէս զի քաջ ծա-
նիցի որոշումն ժամանակի և պատմութեան նց. և երկ-
րորդ՝ զի 'ի հին տօնացոյցս յայսմ միջոցի պարզապէս
գրի տօն * Ատոմեանց ||, կամ * սրբոց ատովմանց ||, ա-
ռանց որոշելոյ՝ թէ զորոց իցէ բանն. ուր յետոյն օրի-
նակք որոշել կամելով արդեօք՝ եդեալ են, * ատով-
մանց զօրավարաց ||. Ըստ որում բանք շարականին առա-
ւել առ զօրավարս հային. թէպէտև զօրականաց ևս
անխտիր յարմարին. Թող զի 'ի պատմութեանց բացայայտ
ունիմք, թէ տօն սահմանեցաւ վասն վերջին ատոմեանց.
որպէս ոչ ունիմք այնչափ բացայայտակի վասն առաջնոց.
վասն եթէ զատանէաք զտօն երկուց դասուց յիրերաց,
միումն ոչ մնայր աւուր 'ի տօնացուցի. այլ հարկ էր
անցուցանել զայն 'ի կարգ սրբոց լոկ յիշատակելեաց ըստ
յայսմաւուրաց. և զայս որոշումն չէր մարթ մեզ առ-
նել տիրապէս:

(2) Վկայաբանութիւն ատովմեանց զօրավարաց՝ ըստ Ճա-
ռընտրին, որոյ համառօտութիւն գտանի և 'ի Հ. օգ. 19.
յօրինեալ է յումեմնէ յիմաստուն վկայից Ժմկին առ
ժամանակօք աշակերտաց սրբոց Թարգմանչաց, և խոստա-
ցեալ իբրև Ճառ յաւուր յիշատակի նց, սկսանելով ըստ
օրինակիս ըստ այսմիկ. * Արք եղբարք և հարք, ժողո-
„ վուրդք ածասէրք, որ երկիւղիւն այ ժողովեալ էք
„ 'ի կատարել զյիշատակ սրբոց վկայիցս մեծաւ ցանկու-
„ թեամբ, կամեցայ պատմել ձեզ զքաջութիւն արանցն,
„ և զնահատակութիւն սրբոցն, որք վասն սիրոյն քսի նահա-
„ տակեցան, և մեզ թողին օրինակ. զի լսելով զվարս
„ նոցա՝ առաւել հաստատեսցուք 'ի հաւատս: Արդ
„ շնորհեսցէ մարդասէրն այ պարգևս, բանի իմոյ առո-
„ ղիս, և ձեզ լսողացդ մտադիւրութիւն ունկնդրութեան,
„ քահանայից և ժողովրդոց, ծերոց և տղայոց, երի-
„ տասարդաց և կուսանաց, և այլ չափու հասակի:
„ Արդ մաքրեսջէք զմիտս և զխորհուրդս, զգուշութեամբ
„ լսելով զանձաւոր մարտակցութիւն սրբոց վկայիցն ընդ-
„ դէմ թշնամւոյն. որպէս զի և մեք հետևեսցուք զկնի
„ հետոց նոցա, որք հորդեցին մեզ զճանապարհս պայ-
„ տայն

» տայն 'ի վերինն եՀմ || : Այսպ 'ի վր բերէ զպատ_
մութիւն . * 'Ի ժամանակս յազկերտի ամբարշտի պար_
» սից Թագաւորին ծաղկէր Հաւատ քրիստոնէից Է ամ
» երկիր : Եւ տեսեալ մոգպետացն և մոգուցն || . ևՆ :
Ուստի սկսանի և պատմութի յայսմա" . * Թագաւորն
» պարսից յազկերտ չար խրատու մոգուց յարոյց Հա_
» լածանս 'ի վր քրիստոնէից || . ևՆ . և աՀա գրեալքն
մեր են բանք Ճառընտրին՝ Համեմատեալք Է Հ . իբ_
րև Է այլ ձեռագիր օրինակի :

(3) Որք տեսեր 'ի վեր անդր , ոչ Ճ . և ոչ Հ . բացա_
տրեն , Թէ որ յազկերտ իցէ . վա և մեք ոչ որոշեցաք ,
զի արդեօք առաջին յազկերտ որդի շապհոյ առ Ճմկօք
սոյն սոՀակայ պարթևի , եթէ երկրորդն որդի վռա_
մայ յաւուրս սըց վարդանանց : Դիւրդոր խելաթեցի զա_
ռաջինն Թերևս իմացաւ յասելն 'ի գանձն տառմեանց .
* 'ի կոչն երթային՝ շապհոյ յազկերտին՝ չար բռնաւո_
րին || : Բայց Հաստատագոյն ասելի է , որք եգաւ և 'ի
պատմութե Հայոց , թէ պարտ է գնել յազկերտ վռա_
մեան , որ է բուն Հալածիչն . զի ամ Հանգամանք վկայա_
բանութեա յայտ առնեն զպարագայս Ճմկի վարդա_
նանց և ղևոնդեանց : Եւ մի՛ ոք ասիցէ , Թէ զի՞արդ
ապա չյիշէն զատամեանս եղիշէ և փարպեցի պատմիչք
Ճմկին . Նախ՝ զի Թէ յառաջին ևս գիցես , նոյնպէս ձեռ_
նարկի , Թէ զի՞արդ չյիշէ զսոսա խորենացին , որք և
ոչ այլ ոք 'ի պատմագրաց , բաց 'ի Ճառընտրաց և 'ի
յայսմաւուրաց : Երկրորդ՝ յայտ է 'ի պատմութեց սըց
վարդանանց , զի յազկերտ բազմամեայ Ճմկօք փորձեաց
զնախարարս և զզօրս Հայոց՝ տանելով 'ի պատերազմ ,
և մերթ Է մերթ փոփոխելով զգունդս եկեղեց . իսկ
Թէ զի՞նչ գործեցաւ յայնչափ Ճմկս , ոչինչ գրեն եղիշէ
և փարպեցին , այլ անցանեն 'ի պատմութիւն վարդա_
նանց : Երրորդ՝ գրեալքն 'ի սըյն եղիշէէ և յայլոց
պատմագրաց Հայլին առ Համ Ճառկան Հալածանս , որք Հա_
սին 'ի վր եկեղեցւոյ Հայաստանեայց . իսկ վկայաբա_
նութիւն տառմամբ է առանձին պատմութի միոյ գաւա_
ռի . Թ ոգում և այլ անբաւ յիշատակարանք գրեալ
կայլին յիւրաքանչիւր նախարարութիւն՝ Թ վկայելոյ խո_
րենացւոյն .

(4) Փայտիմ , զոր յերկուս տեղիս նշանակէ Ճ . ոչ մի_
այն զզրածեծն լինել ուսնիմք իմանալ , այլև զելանելն
'ի կախաղան , և 'ի խաչ , որք և զպնդելն 'ի կոՃեղս , և
զայլ տանջանս Հնարեալս 'ի բռնաւորաց , մանաւանդ

'ի պարսից :

(5) 'Ի Ճ. յիշի որդին աստղմայ առանց անուան, զոր Հ. վարոս կոչէ, յայտ է թէ առեալ յայլմէ օրինակէ. զի ոչ իշխեմք ասել, թէ շփոթեալ իցէ ԺԷ անուանց վարսայ, և վարձաւորի, որք էին յընկերաց անտի ա- ստղմայ :

(6) Եթէ կամիցիմք միաբանել զբանս Ճ. ԺԷ Հ. հարկ է ասել, թէ 'ի միում կմ՞ յերկոսին իսկ կայցէ սխալա- գրութիւն գրչի. որպէս թէ կամ Ճ. փոխանակ գրելոյ հովիւ՝ եդեալ իցէ պարսիկ, և կամ Հ. փոխանակ գրելոյ պարսիկ՝ եդեալ իցէ հովիւ, 'ի խօսելն զայնմա- նէ՝ որ փոխանակ փախուցելոյն եմուտ 'ի թիւ նահա- տակաց. մեք քանզի չկարացաք միաբանել, զերկոցունց ևս բանս ուրոյն ուրոյն պահեցաք. և այնպէս լինին երկու անձինք վկայեալք պսակի մարտիրոսութեան՝ փո- խանակ միոյն զրկելոյ :

(7) Զկայանութիւն եղեալ առ Ճգնաւորն՝ զոր Ճ. յե- շեաց 'ի կատարման սրբոյն աստղմայ, Հ. յիշատակէ ըզ- կնի կատարման սրբոյն մանաճհրի. և այն՝ որպէս թէ այլ ոք միայնակեաց իցէ սա. վսյ և մեք անորոշ եղե- րեք եդաք: Այնպէս և զամփոփումն նշխարաց երկոցունց գնդից սրբոցն 'ի մի վերածէ Հ. ոպ թէ ամենեքին յոչ- խարանից վանս իցեն. մեք ըստ Ճ. ուրոյն ուրոյն պատ- մեցաք. այլ իցէ՞ թէ ունէաք տեղեկութիւն գոնէ աւան- դութեան և 'ի բնակչաց տեղւոյն, թէ ուր առին այժմ լինել նշխարք սրբոցս :

(8) Զերկրորդ աստղմեանց զվկայաբանութիւն քաղեցաք 'ի յոհաննէ կաթուղիկոսէ և 'ի թովմայէ արծրուն- ւոյ, յորոց առեալ են և բանք. Հ. 'ի մարտի. Յ. ուր խառնիխուռն կուտակին պատմութիւնք այնց ժա- մանակաց՝ ԺԷ անուամբ վկայաբանութեան սրբատայ պայա- րապետի, որ յետ քանի մի ամաց վախճանեցաւ 'ի բաղ- դատ խոստովանողական անուամբ. ոպ և սանփաննոս կոնն՝ որ յիշի անդանօր, 'ի բաղդատ նահատակեցաւ 'ի թուին հայոց. ՅԺ. իսկ աստղմ և այլք ԺԷ նմա՝ 'ի գունին քաղաքի՝ 'ի թուականութեան մերում յԹ. և սոն ոչ նահատակեցաւ լինել 'ի մեհեկի. ԻԸ. որ Թ յայսմա- ւուրաց է մարտի. Յ. բայց 'ի ժամանակին յայնոսիկ՝ մեհեկի. ԻԸ, պատահաներ 18. աւուր նոյեմբերի :

(9) 'Ի խօսելն յովհ. կթղկսի զբազմութիւն նահատա- կելոցն՝ թէպէտև յայտ առնէ, թէ սրով կատարեցան. բայց յօրինակի մերում ընթեռնումք ևս * հրոյ ճարակ ասու||.

տալ||. և զի Թովմա արծրունին սոսկապէս սրով նահատակեալ աւանդէ, վ՛ն չունիմք հաստատել զհուրն:

(10) Զայս գործ գէորգեայ նահատակի ( զոր մեք արգարացուցաք ) մարթ է գտանել ՚ի կարգ՝ դժուարաթարգմանելի անցից անցելոց Է օրս, զորոց ասէ օգոստինոս, թէ արարին ինչ ինչ առաւել զարմանալի՝ քան հաւանելի: Եւ գուցէ յայն սակս զանց արարէ յիշել զայն յովհ. կաթ. միայն թէ գրէ զայս ինչ, յորում գուցէ Է քողով զնոյն կամի ակնարկել: * Իսկ ժողովք
,, քրիստոնէից ( ասէ ) Թէպէտև վշտանային սակս սաս-
,, տիկ սրոյ կոտորման սրբ͞ցն, սակայն գովեսա մեծ կա-
,, տարէր նշ͞ք ք͞ս ՚ի ձեռն վկայիցն ||:

(11) Թովմ. արծր. ոչ գրէ ՚ի մասնաւորի զկատարմանէ ատովմայ և ընկերաց նորա ՚ի խաչի. վ՛ն կարծէ ընթերցողն՝ թէ ոք եւս սրով կատարեցան. բայց քանզի որոշակի գրէ յովհ. կաթ, վ՛ն ՚ի նոյն միտս պարտ է վերածել և զբանս Թովմայի: Միայն թէ չէ ինչ Է գէմ ասել, թէ՝ և զմեռելոցն ՚ի խաչի զգլուխս հատեալ իցեն, և գուցէ յայս հայի բանն յովհ. կաթ. ( զոր եդաք ՚ի նախընթաց ծան՟. ) վ՛ն զի յետ աւանդման հոգւոյ ատովմանց ՚ի խաչի՝ գրէ զայն բան. * Իսկ
,, ժողովք քրիստոնէից թէպէտ և վշտանային սակս
սաստիկ սրոյ կոտորման սրբ͞ցն || եւն:

(12) Յովհ. կաթ. ոչ յիշէ զանուն ուրուք ՚ի սրբ͞ցս բաց յատովմայ. այլ ասէ վ՛ն վկայից ժամանակին սահասարակ. * որոց և անուանքն գրեալ քեն ՚ի դպրութ͞ն կենաց ||: Իսկ Թովմա արծրունի զանուանս յիշէ յանուանէ՝ յասելն, * Սոցա անուանք ճանաչին. ատոմ
,, անձևացի, և մլեահ վարժնունի, և գէորգ բողկա-
,, ցի, և վասակ. և այլ բազումք. որոց անուանք գրեա-
,, են յերկինս ||: Ուր չէ մարթ որոշել, թէ այս երեքին անուանք՝ որք յիշին զկնի սրբյն ատովմայ, յեօթանեցունց անտի յատովմեանց իցեն, եթէ ՚ի թուոյ բազմութեան վկայիցն սրով կատարելոց. վ՛ն և մեք չկարացաք որոշակի անցուցանել ՚ի կարգ վկայաբանութեան:

Վ Կ Ա

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Սուքիասեանց ։ (1)

Հ. օգոստ. 27 ։ Տօն է սեպտ. 19. և հոկտ. 26 ։
Ճառընտ. Բ. ՉԼԷ. և Ա. ԾԿԲ ։ Յայսմ. հատ. ։ (2)



Սոքա էին արք փառաւորք և երևելիք, Թագաւորազունք և գլխաւորք 'ի պալատական և 'ի զինուորական կարգէ 'ի դուռն արքային Ալանաց, ազգականք սաթինկայ դստեր Թագաւորին Ալանաց, որ հարսնացաւ Արտաշեսի Հայոց արքայի որդւոյ սանատրկոյ. և ընդ նմա եկեալք յաշխարհէն Ալանաց 'ի Հայս՝ մեծարեալ էին անդ 'ի Թագաւորէն և 'ի Թագուհւոյն ։

Այս եղև 'ի խնամոցն Այ, զի սբ. սուկեանք՝ որք աշակերտեալ էին Թադէոսի առաքելոյ, և միաբանեցեալ նստէին յաշխարհին Հայոց 'ի մի 'ի լերանցն ծաղկէոյ 'ի ծմակ լերին, եկին 'ի դուռն արքունի, և խօսեցան զբանն կենաց ընդ Թագաւորին և ընդ Թագուհւոյն ։ Նաև արքայ Արտաշէս՝ որ զբաղեալն էր 'ի հոգս պատերազմաց, անփոյթ արար զնոքօք. և յայլ ժամանակ պարապոյ եթող լսել զբանս նոցա. որով և զրկեցաւ 'ի լուսոյ կենարար վարդապետութե ։ Այլ ոչ ընդունայն ինչ եղև վաս-

վտատակ սրբոյն . զի արքն այն պատուհասողք՝ ազգականք սաթինկան եկեալքն յայլմանց՝ յօժարութեամբ լուծան զքարոզութի աւետարանին , և հաւատացին 'ի քս : Այլ այնպէս աշակերտեալ սրբոց ոսկեանց՝ գնացին զհետ նոյ յստանձնութի լերանց . և ճշմարտագոյնս տեղեկացեալ 'ի նոցանէ ճանապարհին կենաց , և լուսաւորեալ՝ մկրտեցան 'ի նոցանէ 'ի Ջրաբուղխ և 'ի ծաղկաւէտ տեղիս՝ յակունս եփրատ գետոյ :

Գլխաւորն 'ի սոցա միջի՝ որ նախ կոչիւր բահադրաս կամ բարաքաղա , 'ի մկրտութեն անուանեցաւ Սուքիաս ( որ յունարէն ասի Իսիւքիոս , և Թարգմանի հանդարտեալ կամ լռեալ ) , ոչ թէ խաղաղական կեանս ստացեալ ( ասեն վկայաբանք ) : Նոյնպէս և այլ ընկերք նր անուանեցան ղուկիանոս , պողոքտէս , կոդրատոս , խոխոքտիքիոս ( կամ անտիոք , և ուքիրոն ) , մէմաս , փոկաս , սերգիոս , դոմետիոս , ադրանիոս , կամ անդրիանոս , զոսիմէոս , քիկտոր ; Թաղկեաս կամ Թաղդէսս , յորդանէս , անաստասթրէոս ; Թէոդիտոս կամ Թէոդոտիոս , յակոբ , և Թէոդասիոս : Ընդ ամ՝ ոգիք ութուտասան կամ ինննետասան : (3)

Այս յորժամ մկրտեցին մէն մի 'ի նոցանէ , առժամայն զքս տեսանէին զէմ յանդիման երևեալ 'ի քլրին , որ կայր հանդէպ աղբերականն՝ որ կազմեցաւ նոցա աւազան : Ա որոյ և որք յառաջին մկրտեցան , խնդալից սրտիւ յորդոր տային և փութացուցանէին

զըն

զընկերսն՝ տալով նոցա աւետիս , և ասելով . ահա տեսանեմք զՔս՝ Տր առնուլ յանձինս մեր զկնիք նորա մկրտութբ սբ աւազանին : Այլ այնուհետև կրօնաւորեալք առ ատս հոգևոր վարդապետաց իւրեանց սբց ոսկեանց՝ զտոհմային զՔսյ վասն անպատում պարգևաց , որ շնորհեցաւ նոցա : Իսկ ՚ի տեղին՝ ուր Քս երևեցաւ նոցա , խաչ կանգնեցին . և անուանեցին աւետեաց խաչ՝ վասն աւետիս տալոյն միմեանց յաղագս զՔս տեսանելոյն :

Յետ այսորիկ յերթևեկս առնել ոսկեանց և սուքիասանց միանգամայն ՚ի դուռն արքունի՝ քարոզել զՔն , յայտնի եղև դարձն սուքիասանց ՚ի Քն . վնյ թագուհւոյն ընդ ակամբ հայեր ՚ի նս , քանզի երկնչէր յարքայէ և յարքայորդւոցն՝ թէ գուցէ և զինքն համարեսցին համամիտ լինել ազգականաց իւրոց . իսկ զվրդպս նոցա զոսկեանս չեթող այնուհետև երևիլ յարքունիս : Զայս իմացեալ սուքիասանց , միանգամայն տեսանելով զերես ազգականին իւրեանց սաթինկան ոչ լինել Տր իւրեանց որպէս յերէկն և յեռանդն , սկսան և ինքեանք խորշիլ ՚ի նըմանէ և ՚ի դղրանէն . և ս առաւել կասկածել զի մի ՚ի վտանգս ինչ փորձութց անկցին ոչ միայն ինքեանք , այլև վրդպք իւրեանց , համակամ միմեանց լինելով ՚ի բաց անջատեցան ՚ի թագուհւոյն , և զհետ գնացեալ վրդպաց իւրեանց՝ բնակեցան Տր ոսկեանս ՚ի լերին անդ կրօնաւորութբ . և ջերմ հաւատով

տօն պաշտէին զքն :

Ն.Յլ որդիք Թագուհւոյն մանկագոյնք և աղայամիտք վրոյն և վնոյն՝ տեսեալ Թէ ազգականք մօրն իւրեանց ոչ ևս երևին 'ի դրրան, իբրև իմացան զպատճառս իրացն 'ի Թագուհւոյն, գրգռեցին զարտաւազդ զերէց եղբայր իւրեանց՝ որ էր երիտասարդ մալեզին բարուք. և տեղեկացեալ վն բանհադրայ սուքիասն կոչեցելոյ և ընկերաց նը, եԹէ ուր իցեն, առին զօրականս արքունի ը իւրեանս, և դիմեցին 'ի բնակութին նց. և իբրև գտին զնոսա, սկսան նախ ողոքանօք աղաչել, զի դարձցին յարքունիս : Իսկ յոչ առնուլ նոցա յանձն՝ կոչեցին սատանձինն ըզվճպս նց զոսկեանս, և ստիպէին զնս յորդորել և խրատել զաշակերտսն՝ դառնալ առ Թագուհին : Իսկ նոքա ասեն. Մնքեանք ընտրեսցեն զօգուտն իւրեանց : Ընդ որ բարկացեալ արքայորդւոցն՝ եսուն խողխողել զոսկեանս. այլ սուքիասեանց չիշխեցին ինչ առնել՝ ակնածելով 'ի մօրէն իւրեանց վն ազգականութեն. վնյ խնայեցին 'ի նս, և Թողեալ գնացին :

Յակ երանելի աշակերտքն իբրև իմացան զկոտորած սը վճպաց իւրեանց, սուգ մեծ առին, և առեալ Թաղեցին զմարմինս նոցա պատուով. և այնուհետև գիտացեալ՝ Թէ չիք նց հանգիստ յերեսաց Թագուհւոյն և որդւոց նը, խոպառ օտարացան 'ի նոցանէ. և միակամ հաւանութը զօղեալ Թաքուցեալ բնակեցան 'ի լերինս անդ՝ մօտ 'ի մենարանս

տա

ոսկեանց՝ նոցին վարուքն. և որ ջ զօր յաւելուին 'ի կարգն և 'ի կրօնս հրեշտակականս, որպէս և ուսան 'ի սրբ վկայից իւրեանց: Այս յայս ձգնութիւն հասին արքն փառաւորք և փափկասունք, մինչև խոտաբուտ ձարակ ծաղկաւէտ լերինն իբրև աւելորդ փափկութիւն մարմնոյ թուէր նոցա:

Ամին իրի յետ ոչ բազում ժամանակաց ասէ երանելին Սուքիաս ցընկերս իւր. Եկա՛յք յայլ ուրեք և անապատական տեղիս խնդրեսցուք մեզ բնակութիւն. զի այս խոտս պարարտ է, և պարարէ զմարմինս մեր, և առնէ ըզմարդ իբրև զձիս և զջորիս՝ յորս ոչ գոյ իմաստութիւն. և զի լաւ ևս է մեզ փոխիլ 'ի տեղւոջէ աստի, զի մի՛ եկեսցէ 'ի դրանէ թագուհւոյն՝ նեղեսցեն զմեզ դառնալ յարքունիս յառաջին պատիւն Ալանաց, և 'ի սնոտի հոգս կենցաղոյս: Այս յարուցեալ միաբանն գնացին 'ի լեառն Ջրաբաշխ՝ որ 'ի Բագրևանդ գաւառի յանդիման Բագուանն գեղջն՝ ընդդէմ Նպատ լերինն. և բնակեցան 'ի լերինն անդ, որ և յետոյ յանուն գլխաւորի սրբոցն նց Սուքիասայ՝ ասի Սուկաւ կմ Սուկաւէտ կոչեցաւ. և անդ հանդարտեցին զամս բազումս՝ խոտաձարակ լինելով իբրև զոչխարս վայրի. մինչև՝ փտեցան և թափեցան ձորձք նոցա, և մորթ նոցին եղև իբրև զմամուռս քարի 'ի խստութէ օդոյն. և 'ի ցօղոյ երկնից բուսաւ մազ յանձինս նց 'ի վր մերկ մարմնոց. և խառն Է հերս գլխոյ և մօրուաց ծածկեաց զամ մարմինս նց. մինչև երևիլ նոցա իբրև

զքօշս

զքօշս փայլենիս. և 'ի պատահմանէ անտի՝ որմն աւել, քօշք անուանեցան: Այլ այնուհետև մնացին անվնաս 'ի հիւանդութէ և յայլ պատահարաց 'ի լերինն Սուկաւ ( որ ռամկօրէն Քօսս տաղ կոչի ) ամս խդ, խոտաբուտ կենօք, պահպանեալք 'ի տեսչութենէ այ, քաղաքավարեալք 'ի մարմնի որպ զանմարմինս, և մշտամռունչ աղօթից և հոգևոր ձգանց պարապեալք. (4)

Այլ եղև 'ի մեռանել արտաշեսի Հայոց արքայի, յորում ժամանակի մեռաւ և տրտաշէս արքայ պարսից, յորժամ թագաւորեաց 'ի Հայս արտաւազդ, և 'ի պարսս պերոզ, վերջացաւ խաղաղութի ծին Հայոց. քանզի արտաւազդ այր անպիտան զերկեամ մի թագաւորեալ՝ վեր 'ի վայր արար զկարգ ուղղութեան և զբարեշինութիւն հօր իւրոյ. իսկ տիրան եղբայր նր յաջորդեալ 'ի թագաւորութե՝ թէպէտև էր այր զգօն, այլ կեայր անհոգաբար՝ զհետ լեալ որսոց և զբօսանաց. որոյ վն և պերոզ արքայ պարսից այր սէգ և հզօր՝ խորհէր եղանել 'ի վր Հայոց ծին, և արկանել ը ուրուք իւրով: Այլ զի 'ի նոյն աւուրս կայսրն հոռոմայ անաստասիոս պխոս յղեաց թագ արքայական և ծիրանիս առ տիրան արքայ Հայոց՝ վն հաստատարիմ գոլոյ նր 'ի բարեկամութե հոռոմայեցւոց, և տալոյ հարկս, ը այս դժուարեալ պերոզի՝ կամէր կորուսանել զերկիրն Հայոց. սակայն անցեալ աւերեաց զերկիրն, և վրէժ առից ը անփութութե հայրենեացն: Այնուհետև

զօրս

զօրս գումարեալ անթաւութբ՝ փութայր հա-
սանել 'ի սահմանս հայոց, և խոպանացու-
ցանել և յանպիտանութիւն դարձուցանել
զհայաստան աշխ՟. և կայր 'ի տագնապի և 'ի
տարակուսանս երկիրն հայոց :

Օ այս ամ՟ յոյզս խռովութեց իմացեալ երա-
նելեացն սուքիասանց՝ կային և մօտադիր լե-
նեռին իրացն, եթէ զիարդ վրէժ խնդրեցէ
թագաւորն պարսից յաշխ՟էն հայոց. և տեսեալ
օր ը՟ս օրէ զյաճախումն նեղութեց և տառա-
պանաց երկրին՝ կարեկից լինէին իբրև 'ի վ՟ր
բնիկ աշխ՟ի իւրեանց : Ապա ասէ երանելին կող-
բատոս.ցն՟ սուքիաս և ցայլ ընկերս իւր.
եկայք աղօթեսցուք, զի արասցէ ա՟ծ խա-
ղաղութի աշխ՟իս այսմիկ. որովհետև զայսչափ
ժամանակս բնակեցաք մեք յերկիրս յայս :
Եւ կացեալ միաբան յաղօթս՝ ասէին. ողոր-
մեա ա՟ծ ը՟ս մեծի ողորմութե՟ քում 'ի վ՟րայ
աշխ՟իս հայոց. զի թէպէտև է անօրէնութիւն
'ի նմ՟, այլ դու տ՟ր և արարիչ ամ՟ արարածոց,
ամենեցուն օգնականութի և ողորմութիւն
'ի քէն է, դարձո զսրտմտութե՟ն սուր 'ի սոցա-
նէ մարդասէր և անոխակալ. և քեզ փառք
յա՟մի : Եւ լուաւ տ՟ր աղօթից նց՟, և դար-
ձոյց զարքայն պարսից անդրէն յերկիր իւր.
քանզի եհաս առ նա պատգամ սպառնա-
լեաց 'ի կայսերէ անտի հռովմայեցւոց՝ յոր
ապաւինեալ էր արքայն հայոց. վ՟նյ և ոչ իշ-
խեաց թագաւորն պարսից զդէմ ունել հայ-
ոց և հռովմայեցւոց միանգամայն. և այն-
պէս եղև խաղաղութի աշխ՟ին. ընդ որ ուրախ

Օ եղեն

նշխն սրբոյն՝ որ 'ի լերինն անդ. և զոհանա-
լով փառաւոր անուանին զա̄ծ։
Այլ եղև երբեմն խորհուրդ 'ի մէջ սրբոցն՝ ի-
ջանել 'ի լեռնէ անտի, և քարոզել մերձա-
ւոր բնակչաց Ծ̄ին զլոյս ա̄ծգիտութեն, քան-
դելով նախ զբագինսն՝ որ 'ի բագուա՛ն մօտ
'ի լեառն բնակութեն իւրեանց (5)։ Ապա սր̄ն
սուքիաս՝ որ երիցագոյնն էր 'ի նոս և ծերա-
գոյն, ասէ. խնդրեսցուք 'ի ա̄յնէ, զի եկեա-
ցէ այլ մշակ զօրաւոր քան զմեզ, և նա կոր-
ծանեսցէ զմեհեանս կռոց, և դարձուսցէ
զԾ̄ս զայս ողջոյն 'ի մոլորութէ 'ի ճշմարտու-
թի։ Այլ զի ամենեցուն խորհուրդ և բան
յառաջ գայր 'ի փափաքանաց վ̄ն վկայելոյ
ճշմարտութեն, ելից ա̄ծ զբարի տենչ սրտից
նոցա։ Քանզի տեսիլ երևեցաւ 'ի գիշերի՝
միում 'ի սր̄ց անտի, որ կոչէր պողոքտէս, և
յարուցեալ պատմեաց ընկերացն. տեսա-
նէի ասէ յայսմ գիշերի, զի առիւծ մի ելա-
նէր 'ի դրանէն մերմէ յարքունեացն ալա-
նաց, և գայր հասանէր մինչև առ մեզ. և
բազում մարտիւք մարտնչէր ը̄ մեզ։
Իբրև լուան զայս երանելիքն, ծունր եդեալ
կալին յաղօթս՝ ասելով. Տ̄ր ա̄ծ, որ գիտես
զմեզ, մի զարհուրեցուսցէ զմեզ չար գազանն՝
որ յարձակեալ գայ 'ի վ̄ր ծառայից քոց. Տ̄ր
մի թողուր զմեզ յօգնականութէ քումմէ և
'ի յուսոյդ, որ կարողդ ես յամի, և մի տար
զփրկութիւն քո շանց։ Ո՞վ որ ամենագէտդ
ես; և ճանաչես զխորհս սրտից մարդկան.
Տ̄ր դու գիտես, զի քեզ տուեալ զանձինս

մեր 'ի ծառայութիւն, զի արժանաւորս լիցուք
անսուտ խոստմանց քոց՝ որ յաւիտենից։

Այլ ահա ոչ յետ բազմաց ևս աւուրց 'ի գը-
լուխ ելանէր տեսիլն. Քանզի յորժամ մեռաւ
Թագաւորն ալանաց շապուհ անուն, որ ծա-
նօթն էր սրբոյն սուքիասայ և ընկերաց նորա,
յաջորդեաց 'ի Թագաւորութիւն ալանաց գե-
գինանոս կամ դատիանոս անուն. որոյ հա-
մար արարեալ զօրավարաց և զօրաց իւրոց
առ 'ի գտնել 'ի նոսա կարգ նոր, տեղեկացաւ
յիւրոցն վն՟ երանելեացն, Թէ գլխաւորք ո-
մանք յարքունի գնդէն արք քաջք և անուա-
նիք մեկնեալ են բազում ամօք յառաջ ընդ
սաԹինկան դշխոյի յշն՟ հայոց. և անդ մե-
ծաւ տառապանօք և նեղուԹբ՟ բնակին 'ի
ջրաբաշխ լերին յաղագս քնի՝ որ յոյժ իւր-
եանց կոչի, ոչ հաւանեալք պաշտել զա՟ծս
Թ՟գրաց ալանաց կամ հայոց։ Այլ զայս պատ-
մեցին արքայի ոմանք յալանաց, որք երԹ-
եեկս ունէին յշն՟ հայոց. և յետ մահուանն
սաԹինկան բարեկամացեալ էին ը՟ որդիսն նր՟,
և հարցափորձիւ տեղեկացեալ էին յաղագս
սրբոց արանցն՝ որ 'ի լերինն. և մանաւանդ ոմն
'ի նախարարաց սկուհեր կամ ոկոհեր անուն,
որ քաջ գիտակ էր իրացն։

Յայնժամ ընտրեաց Թագաւորն 'ի զօրաց
իւրոց զարս կորովիս սպառազէնս, և առա-
քեաց 'ի հայս հանդերձ լրտեսօքն, և զօրա-
վարաւ՝ որում անուն էր բաւլահա կամ բառ-
լախայէլ, տուեալ և գիր յանուանէ՝ խնդ-
րել զեկեալսն անդր 'ի դրանէն ալանաց. և

եԹէ

Եթէ գտանիցէք աստ, բազում պարգևօք հաւանեցուցէք գալ այսր. ապա եթէ ոչ հաւանին գալ, 'ի սուր սուսերի մաշեսջիք առ հասարակ։ Իսկ եկեալ արանցն յերկիրն հայոց (6), և առաջնորդութեամբ տեղեկագունից ոմանց հասեալ 'ի լեառն Ջրաբաշխ, որ և Սուկաւէտ, ուր բնակութիւն սրբոցն էր, տեսին 'ի հեռաստանէ զերանելիսն, և զարմացան. զի որպէս զոչխարս՝ խոտով կերակրէին, և անձինք նոցա իբրև քօշս գիսաւորս երևէին, կամ որպէս քարինս՝ յորոց վերայ բուսեալ իցէ մամուռ։

Ապա յառաջ մատուցեալ՝ խօսել սկսաւ զօրավարն հիացմամբ, և ասէ. զի՞նչ էք դուք, և զի՞նչ գործ է ձեր. զի պատկերք ձեր իբրև զմարդոյ են, և խոտաճարակ տեսանեմ զձեզ իբրև զոչխարս։ Պատասխանի ետ սրբն Սուքիաս, և ասէ. բնութեամբ մարդիկ եմք. և ազգաւ յալանաց յարքունի դրանէ. և փախուցեալք յամպարշտութենէ և յանօրէնութենէ մեկուսացաք 'ի լերինս. և 'ի վերին զօրութենէ զօրացեալ կամք այսպէս՝ յաղագս յուսոյն յաւիտենից, զոր խոստացաւ Տէրն մեր և Աստուածն։ Իսկ Բառլահա ասէ. տեղիքս ծմակայինս են, և ձիւն բազում 'ի լերինս. զի՞արդ կարէք աստ բնակել այսպիսի կենօք։ Առ այս ասէ սրբն. լուր ինձ որդեակ, և ասեմ քեզ. որ հաւատայ յԱստուած յարարիչն երկնի և երկրի, ամենայն իրք ըստ կամաց նորա փոփոխին՝ որպէս և կամի՝ առ ծառայս իւր և փառաւորիչս անուանն իւրոյ. և պրդ մեք գտաք զա

զորմութիւն յա՛յ, և սիրեցաք զնա յամ սրտէ
մերմէ, և յոյս մեր 'ի տր ած է :

Ասէ Բաղաւհա. յորմէ՞ տոհմէ ես, և զի՞նչ
անուն է քո : Այն ասէ. յերկրորդական գա-
հէն Թագակից էի արքայի. և անուն իմ ի՛ն
առաջնումն բարաքադրայ (7). բայց յորժամ
եկի ես 'ի գիտութիւն այ, Սուքիաս անուա-
նեցայ. յայ խաղաղական կեանս ստացայ :
Ասէ զօրավարն. պատերազմող այր երևիս :
Նա երանելին ասէ. նիզակակից իսկ էի շապ-
հոյ արքայիդ ալանաց : Յայնժամ ասէ զօ-
րավարն. և արդ ո՛չէ հաւանեսցես ինձ, և եկ
դարձի՛ր յառաջին պատիւն, և նստցիս յերկ-
րորդական գահին. և փառօք և հանգստ-
եամբ անցուսցես զաւուրս ծերութեդ : Իսկ ե-
րանելին ասէ. մշակ եմ տն իմոյ, և ժամա-
նակ է վարձս առնլոյ. և զի՞արդ 'ի յետին
ժամուս ունայնամտեալ յետս դարձայց 'ի նմա-
նէ : Ասէ զօրավարն, յայտ իսկ է տր քո, ո-
րում ծառայես. ո՛չ ապաքէն զխաչեալն
ասես տր քո : Այն ասէ. այո՛ յայտ է տրն
իմ (8) : Զօրավարն ասէ. զազատութիւն
թողեր, և 'ի մշակութիւն անկար : Ասէ ե-
րանելին. եթէ գիտէիր զտէրն իմ, և դու 'ի
մշակութիւս յայս անկանէիր. զի առնուիր
զանապական կեանսն : Իսկ Բաղաւհայ քա-
մահեալ զբանս ոճին՝ բազում սպառնալեօք
սաստէր 'ի վր նր :

Յայնժամ իբրև գիտաց երանելին Սուքիաս
զմիտս բռնաւորին, ժողովեաց զեղբարսն,
և ասէ. եկա՛յք եղբա՛րք իմ, զի ժամանակ
եհաս

եհաս կատարման և վարձս առնլոյ ։ Այլ նոյն խնդութիւն լցեալ՝ ուրախ լինէին մեծապէս, և փառաւոր առնէին զԱծ ։ Այլ տեսեալ զօրավարին զնոսա ժողովեալ 'ի մի վայր՝ ընդդէմ ողոքանօք պարգևս խոստանայր տալ նոցա, եթէ հաւանեալք ասէ դարձջիք յԱծ ձեր, և կացջիք 'ի կրօնս հայրենի, և յառաջին բարձս ։ Պատասխանի ետուն միաբան սրբքն, և ասեն ․ պարգևատուն մեր Աստուած է, որ տայ ըզպարգևս անմահութեան ․ որ և ազատեաց ըզմեզ 'ի սատանայէ և 'ի գործոց նորա ․ պարգևք քո ընդ քեզ լիցին 'ի կորուստ, զոր խոստանաս տալ մեզ 'ի թագաւորէն ․ զի արքանեակք չարին էք դու և թագաւորն քո ․ մեք պարգևացն նոյ ակնունիմք, որ յոյսն է մեր ։ Ասէ բռնաւորն ․ ո՞ւր է պարգևատուն ձեր ։ Ասեն երանելիքն ․ պարգևատուն մեր Աստուած է ամ յամի, այն՝ որ արար զերկինս և զերկիր և զամ որ 'ի նոսա արարածք իցեն ․ նա է Տէր մեր և թագաւոր, որ ունի իշխանութիւն կենաց և մահու ամ կենդանեաց ․ յորմէ երկինք դողան, և երկիր սարսէ 'ի բանէ նորա ․ որ հրամանաւ տայ ծովու, և ցամաքեցուցանէ զնա ․ սաստէ գետոց, և անդրէն դառնան ․ և ոչ ևս յաւելուցուն 'ի ծածկել զերկիր ։ Նոյն ինքն սաստեսցէ և 'ի քեզ և 'ի խորհրդակիցսն քո սատանայ ․ և մի եղիցին կամք քո 'ի վր ծառայիցս նոյ ։

Զայս իբրև լուաւ բռնաւորն, զայրանայր 'ի վր նց, և կոչէր զատաւորսն իւր ․ այլ թոյլ տուեալ նց առ վայր մի՝ զմտաւ ածէր

Է իւրման , եթէ որով և որպիսի մահուամբ
կորուսցէ զնա ։ Նաև երանելւոյն իբրև գիտա-
ցին , եթէ մերձ է ժամ կատարման իւրեանց,
եդեալ ծունր կային յաղօթս , և ասէին այս-
պէս . Տէր Աստուած արարիչ երկնի և երկրի , որ ա-
րարեր զամենայն արարածս յոչնչէ . դու ես Աստուած
Ճշմարիտ՝ Հայր Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի , որ եկն
և մարմնացաւ , և փրկեաց զտիեզերս՝ ի ձեռն
խաչի իւրոյ և թաղմանն և յարութեան . և
Հոգիդ սուրբ՝ որ լնու զամենայն արարածս ։ Դու
յիշատակեալ մի ըստ միոջէ զերախտիսն Աստուծոյ
առ ազգս մարդկան ստեղծագործութեամբ և
վերստին արարչութեամբ փրկագործութեան ապա
սաեն . Դու արդ Տէր բարերար Հայեաց՝ ի
ծառայքս քո , որք սիրեցաք զքեզ յամենայն զօ-
րութենէ , և հաւատացաք անսուտ խոստմանց
քոց՝ զոր խոստացար սիրելեաց քոց ։ Տուր
զօրութիւն յուսացելոցս՝ ի քեզ , և զօրացո զմեզ
՝ի պատերազմիս՝ որ վասն անուանդ քո սրբոյ յա-
րուցեալ է ՝ի վերայ մեր . և սատանայ հան-
դերձ բանակաւորաւս յամօթ լիցի . և անուն
քո փառաւորեսցի ՝ի ծառայքս քո ։ Աստուած գը-
թութեան և Տէր ողորմութեան՝ Հայեաց ՝ի յուսա-
ցեալքս և յապաւինեալքս ՝ի քեզ . և մի քա-
կեսցէ թշնամին զբանականն հօտս քո՝ ի գաւ-
թէ քումմէ . ցածո Տէր զմրրկեալ ալիս՝ որ
յարուցեալ է ՝ի վերայ մեր . զի ժամանեսցուք
՝ի նաւահանգիստն խաղաղութեան . տուր զօ-
րութիւն ծառայից քոց յուսացելոց, զի յաղթեսցուք յաղթող զօրութեամբ քով . և մի լիցուք արժանիք
զտանջանն զայն՝ որ ՝ի վերայ աւագոյն՝ զոր կործա-
նե-

նեղչին հողմք և անձրևք փորձութեանց . այլ
հաստատուն պահեա զմեզ ՚ի վէմ վիմին հաս-
տատնոյ քի̅ տ̅ր յուսոյդ մերոյ : Հայեաց տ̅ր
բարերարութե̅բ քո ՚ի յուսացեալ ծառայս
քո , և տուր զնշան յաղթութեան քո ապաւինե-
լոցս ՚ի քեզ . զի զատեալ և պարզեալ լիցուք
՚ի պատերազմի թշնամւոյն՝ որ նեղէ զմեզ .
Մի՛ խառնեսցէ ՚ի մեզ որոմն զազանութեան թա-
նիւք խռովք պատրողին , և ապականեսցէ
զցորեանն՝ զոր յա̅ծային շտեմարանս ժողո-
վելոց ես . և մի՛ բուսցի յայգիս մեր՝ որ յա-
նուն քո՝ զաղձն փշաստակաց , և ապականես-
ցէ զողկոյզն օրհնութե̅՝ զոր լնուս ՚ի հնձանսն
յաւիտենականն : Մի՛ տար ՚ի սասանութիւն
զոտս մեր , այլ ամրացո՛ աջովդ քո . և աներ-
կիւղ պահեա՛ յերևելի և յաներևոյթ թշ-
նամեաց . և տուր փառս անուան քում տ̅ր :
Եւ տուեալ զամէնն՝ զօրացեալք լինէին
՚ի վերին օգնականութենէն , և ՚ի տեսչութենէն՝
զոր ընկալան երանելիքն անպատում խնդու-
թե̅բ յոգիս իւրեանց : Եւ անդրէն յաղօթս
դառնային գոհութե̅՝ ասելով . Խոստովանիմք
զքեզ տ̅ր , որ զարձակեցեր զմեզ յանա̅ծութէ
յա̅ծգիտութի̅ . զի խաւարեալ էաք , և լու-
սաւորեցեր զմեզ լուսով գիտութեան քո . և
զկապեալսս արձակեցեր ՚ի կապանաց բանսար-
կուին . և զի էաք ՚ի խաւարի և ՚ի ստու-
ւերս մահու , նշանեցաւ առ մեզ լոյս երե-
սաց քոց , և լուսաւոր արար զմեզ՝ առաջ-
նորդելով գնալ ՚ի Ճանապարհս իրաւանց և
արդարութե̅ քո տ̅ր :

Եւ արդ լո՛ւր տէ՛ր և նայեա՛ց յաղօթս ծառայ-
ից քոց, և մի՛ տար տեղի սատանայի. այլ
զօրացո՛ զմեզ զօրութբ սբ հոգւոյդ, որ ա-
ռաջնորդեսցէ մեզ 'ի տեղիս յայս և 'ի ժամս.
զի կատարեսցուք զընթացս մեր արդարութբ
շնորհօք և մարդասիրութբ տն մերոյ. զի
փառաւորեսցի անուն քո սբ, տր ած մեր:
Լուր տր աղօթից մերոց, որպէս լուար ա-
ղօթիցն հեղիասու, որ եղև 'ի լերինն փա-
խուցեալ 'ի յեզաբելայ. նոյնպէս և մեք եմք
փախուցեալք յամպարիշտ թագաւորացն,
և զերծեալք 'ի ցանկութենէ չխս 'ի լեառնս
յայս, անդադար օրհնութեամբք զքեզ միայն
փառաւորել 'ի վն անպատում շնորհաց քոց,
զոր ծանուցեր մեզ տր: Լուր տր աղօթից
ծառայից քոց յուսացելոց, որպէս լուար աղօ-
թիցն դանիելի և շուշանայ, փրկելով 'ի
գբոյ առիւծուցն զդանիէլ, և զշուշան 'ի
դատաւոր ծերոցն. և չարամահ սատակեցեր
զ'ի վն յարուցեալսն. և այժմ փրկեա՛ և զօ-
րացո՛ զմեզ 'ի սէր տծութեան քո՝ յաղթել թշ-
նամւոյն. որ տէրդ ես և ած:

Լուր տր աղօթից մերոց, որպէս լուար եսայ-
եայ և եզեկիայ, որք յուսացան 'ի քեզ, և
արտասուօք խնդրեցին զօգնութի առ թշնա-
միսն. որ կործանեցեր զթշնամիսն հպարտա-
ցեալս և 'ի վն յարուցեալս. և այժմ զօրա-
ցո՛ զմեզ յաղթել թշնամւոյն. և պարսպեա՛
աջովդ քո. զի մի՛ ոք վարատեսցի 'ի մէնջ,
և զրկեսցի 'ի խոստացեալ բարեացդ քոց
տր ած մեր: Լուր տր աղօթից մերոց, որպէս
լուար

լուար աղօթից երից մանկանցն ՚ի հնոցին․ որ զթագաւորին արհամարհեցին զբանն, և զքո բանդ պահեցին․ և օրհնէին զքեզ Տէր Աստուած հարցն մերոց․ լո՛ւր Տէր և մեզ յուսացելոցս ՚ի զօրութիւն քո, և ապրեցո՛ ՚ի փորձութենէս՝ որ վառեալս է զմեօք․ զի արժանաւորք լիցուք փառաւորել զամենասուրբ զերրորդութիւնդ այժմ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

Իսկ բռնաւորն զարմանայր ընդ երանելեացն աղօթս․ և ձանձրացեալ ընդ անդադարելի օրհնութիւնս նոցա՝ սաստէր լռել այնուհետև ։ Այլ նոքա աղաչելով ասեն․ անսա՛ մեզ, զի կացցուք յաղօթս երրորդ անգամ առ Տէր Աստուած մեր․ և ապա կատարեսցես զկամս քո ։ Եւ սկսան անդրէն միաբան ասել երանելիքն․ Դո՛ւ եմք Տէր, և ՚ի քեզ եմք յուսացեալ․ և առաջի քո անկանիմք․ տո՛ւր մեզ Տէր կատարել զխնդրուածս մեր նեղութեան ըստ կամաց քոց․ և արժանաւորեա՛ զմեզ մեռանել վասն անուանդ քում սրբոյ, և առնուլ վարձս ընդ այնոսիկ՝ որք հաճոյ եղեն քեզ․ և փառաւորեսցուք անուն քո Տէր ՚ի նոսա․ և եղեն վկայք Աստուածութեան քո կամաւոր մահուամբն իւրեանց․ և թագաւորեալք և պսակեալք ՚ի քո փառսդ՝ վայելեսցեն յանսպառ և յանանց կենսդ․ զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, զոր պատրաստեցեր սիրելեաց քոց ։ Փութամք Տէր ելանել ՚ի մարմնոյս, և խառնիլ ՚ի դասս վկայից քոց (սրբոց նահատակաց), որք զմեզ լուսաւորեցին լուսով

աստուածու-

ածուենդ քո. և առաջնորդեցին մեզ 'ի վե-
րինդ եդեմ, ուր ժողովեսցես զմմ զմէսն և
զսիրելիսն քո. զի քո է փառաւորութիւն, և
քեզ մատուցանեմք գոհութիւն զփառս այժմ
և յանզրաւ յաւիտեանսն:
Իսկ յարուցեալ յաղօթիցն՝ եկին յանդիման
եղեն բռնաւորին, և ասեն. արդ կատարեա՛
զհրամանս Թագաւորին քո, և զխորհրդակ-
ցին ձերոյ սատանայի. զի մեք կազմ և պատ-
րաստ եմք մեռանել քաջութեամբ վասն անուան
տն մերոյ յսի քսի: Իսկ բռնաւորն կարի
յոյժ զարմացեալ և զայրագնեալ ի համար-
ձակութիւն երանելեացն՝ հրաման ետ զօրացն
կապել զնս, և տանջել բռովք. յետ այնո-
րիկ ետ միոյ միոյ 'ի նոցանէ չորս ցից հար-
կանել, և պրկել զնս. և հրամայեաց լապ-
տերս և ջահս բերել, և մատուցանել 'ի ներ-
քուստ 'ի մարմինս սրբոցն. ասէ. կիզմամբ հր-
րոյ այրեցից, և կատարեցից զհրամանս Թա-
գաւորին, եթէ ոչ կամեսջիք գալ ընդ իս,
և պատիւս ընդունել 'ի Թագաւորէն: Այր-
ծէր բաղլահա այսուճիկ զարհուրեցուցանել
զերանելիսն. այլ առաւել ես տեսանէր հա-
մարձակեալս զնս 'ի տանջանսն. զի նք ա-
մենեքին առ ոչինչ համարեցան զայրեցուածս
մարմնոցն, և զկսկիծ ոսկերաց իւրեանց.
այլ ուրախութեամբ օրհնէին զած, և սաղ-
մոսէին ասելով. Ած յօգնել մեզ նայեա՛ց,
և տէր յընկերել մեզ փութա՛. և՝ տր 'ի
նեղութեան յիշեցաք զքեզ. քո առատ ողոր-
մութիւնդ մխիթարեսցէ զմեզ: Զայս ասէր
երա-

երանելին Սուքիաս . և նմին ձայնակից վե-
նէրին եղբարքն . և արխաբար ը̄ռւնէին ըզ-
տանջանսն ։ Պարծեալ զայրանայր բանա-
ւորն ը̄ փառաւորանութի ա̄յ , և ը̄ սքանչելի
համբերութի քաջ նահատակացն . զի ըչէինչ
համարէին զտանջանսն ։ Հրամայեաց ապա
դայլ 'ի բերան նց հարկանել , զի մի կարա-
ցեն աղօթել , և կմ օրհնել զա̄ծ ։

Իսկ սո̄ն կողբատոս անփոյթ արարեալ զայն-
ու՜իկ՝ առաջնորդէր ամենեցուն յաղօթս ( ըստ-
չափ և կարող լինէր բարբառել ) , սկիզբն
առնելով սաղմոսիս . Որպէս փափաքէ եղջե-
րու յաղբերս ջուրց , այնպէս փափաքեն ան-
ձինք մեր առ քեզ ա̄ր ա̄ծ մեր ։ Նաև բանա-
ւորն . զինչ են եղջերուքն՝ որ փափաքեն
յաղբիւրս . որոց նման փափաքեն անձինք
ձեր ։

Այլ սո̄ն կողբատոս ասէ . որպէս նոքա հա-
լածեալք յորսորդաց՝ տապանման , և փութան
զովացուցանել զինքեանս ջրով . նոյնպէս և
մեք եմք փափագողք ջրոյն կենդանութեան
խաղացելոյն 'ի կեանան յաւիտենից , ազա-
բեալք յորոգայթից սատանայի . վ̄ն զի ծա-
րաւեալ եմք հանապազ ա̄յ մերոյ հզօրի և
կենդանւոյ . և ձեպիմք ելանել 'ի մարմնոյս ,
և հասանել առ բաղձալին մեր ք̄ն , առ որ
անձկացեալն եմք ։ (9)

Յայնժամ հրամայեաց բառնալ հա լուծանել
զն̄ս 'ի չարաչար և 'ի դառն տանջանաց՝ խան-
ձողեալ մարմնով . և ասէ . փութով տաց ձեզ
հասանել փափաքանաց ձերոց՝ սրախողխող

կո-

կորուսանելով զամենեսեան զձեզ 'ի կենաց
այտի , որում ոչ էք արժանի ։

Այլ իբրև գիտացին ս̃ր̃քն , եթէ եհաս ժամ կատարման իւրեանց , անդրէն ուրախութ̃բ մեծաւ ծունր եդեալ կային յաղօթս միաբան , և ասէին . Տ̃ր ա̃ծ զօրութ̃եց , որ արժանաւորս արարեր զմեզ կատարել զընթացս մեր անարատութ̃բ 'ի փառս ամենաս̃բ երրորդութ̃եդ . լուր տէր աղօթից մերոց , և զօրացո զմեզ զօրութ̃բ ս̃բ հոգւոյդ 'ի ժամ կատարմանս . և աներկիւղ պահեա զմեզ 'ի պատրանաց բանսարկուին և յաղթէ բանաւորիս . և շնորհեա ամենեցուն ճշմարիտ խոստովանութ̃բ վկայել , և ամենեցուն պսակս ընդունել և վայելել յանպատում 'ի կեանսդ ։ Լուր տ̃ր աղօթից մերոց , և գթա յերկիրս հայոց Տ̃ր . զի դարձցին յերկրպագութիւն և 'ի փառաբանութ̃ի ամենաս̃բ երրորդութ̃ե . զի քո են արարածք . և քեզ վայելէ երկրպագութ̃ի և փառք յա̃մ արարածոց տ̃ր ա̃ծ մեր ։ Լուր տ̃ր աղօթից ծառայիցս քոց 'ի քեզ յուսացելոցս . զի ուր հեղցի արիւն վկայիցս , եղիցի հող երկրին 'ի բժշկութիւն ա̃մ ցաւագնելոց . և զի բղխեսցէ երկիրս աղբիւր առ 'ի բժշկութ̃ի ա̃մ ցաւոց . զի եթէ եկեսցէ ոք յանուն մեր բարեխօսութ̃ե հանդերձ հաւատով , կ̃մ ցաւած , կամ տագնապեալ 'ի սարսռոյ , կ̃մ այսահարեալ յայսոց պղծոց , կ̃մ վշտագնեալ 'ի բազում ցաւոց , և աղաչեսցեն զքեզ տէր ա̃ծ 'ի տեղւոջ զենմանն մերոյ , դու լուիցես և ողորմեսցիս նո-

ցա ,

ցա, և փրկեսցես յամենայն նեղութենէ, և բժշկեսցես յամենայն վտանգից հոգւոյ և մարմնոյ. զի դու կարող ես յամենայնի. և քեզ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Յայնժամ ձայն եղև յերկնից առ նոսա, և ասէ. զոր ինչ միանգամ խնդրեցէք, տացի ձեզ. և եղիցի տեղի վկայութեան ձերոյ աղբիւր ջրոյ բժշկութեան, և հող երկրիդ ՚ի փարատումն բազում ցաւոց՝ իբրև զ երեք հարիւր վաթսուն և հինգ աւուրց ժամանակաց, որով վարի ամս. և դուք եկայք ՚ի պատրաստեալ ձեզ օթևանս, և ընկալջիք ՚ի բազում աշխատութեանցդ հանգիստ, և ուրախութի և պսակ փառաց՝ զոր կազմեցիք ձեզ բազում ձգնութբ, յանվախճան յաւիտեանս:

Նա զայս լուեալ սրբոցն, և զօրացեալ ՚ի վերին շնորհացն՝ կնքեցին զանձինս նշանաւ սբ խաչին, և դիմեցին յօժարութբ ՚ի մահ առ դահճին բռնաւորին՝ իբրև զոչխարս ՚ի զենումն. որոց սուր ՚ի վր եդեալ անօրինաց՝ կոտորեցին, իբրև գայլք զգառինս պատառելով. և նոքա ողջունեալք ՚ի հրեշտակաց՝ աւանդեցին զոգիս իւրեանց՝ բարի խոստովանութբ ՚ի հայր և յորդի և ՚ի սբ հոգին, որ օր եօթնևտասն էր նաւասարդի ամսոյ, յամի Տն իբր 130, կամ 140, յետ կալոյ իւրեանց ՚ի սուկաւէտ լերինն ամս քառասուն և չորս անտանելի ձգնութբ, կերակրեալք ոչ հացիւ, այլ զօրութբ և շնորհօք Տն՝ խոտաբուտ կենօք: Նա այսպէս վկայեալ քաջ նահատակացն՝ առին զպսակն յաղթութեան ՚ի

քսէ՝

քան՝ անձինք վեշտասան կամ եօթնևտասան ։
Նաև զօրավարն ալանաց յետ սպանանելոյ
զոմանն՝ հրամանաւ եւ զօրաց իւրոց վասն մարմ-
նոց նոցա , և բարձեալ ընկեցին 'ի վիհս վիհս՝
կարկառ քարանց 'ի վերայ կուտեալ . և ինքն 'ի
փախըստ՝ անդր չու արար , և գնաց յերկիր իւր . և
պատմեաց Թագաւորին զամենայն ։

Բայց երկուք ոմանք 'ի խմբէ անտի սրբոց
սուքիասեանց , ( որոց անուանք երևին լինել
յակոբ և Թէոդոսիոս , ) որք կրտսերա-
գոյնքն էին 'ի նոսա և տկարագոյնք , ոչ բերե-
լով զահ սրոյն խողխողմանն՝ 'ի վերջին պա-
հու անդ կատարմանն փախուցեալք ծած-
կեցան 'ի խորշս լերինն . և յետ աւուրց ինչ
դարձեալ անդրէն սրտացաւութեամբ 'ի տեղին՝
գէթ ամփոփել զնշխարս սրբոց հարց և ըն-
կերաց իւրեանց , գտանէին և ոչ զոք . բայց
զտեղի կատարմանն գտեալ 'ի նշանաց ա-
րեան վկայից՝ ծածկեցին հողով զնուիրա-
կան մարմինս նոցա , և արձան քարի նշան կանգ-
նեցին 'ի վերայ իւրաքանչիւր տեղեացն ։

Իսկ ինքեանք այնուհետև ոչ իշխեցեալ
մնալ 'ի տեղւոջն՝ իջին յարևմուտս կոյս 'ի
հարաւոյ կողմանէ առ ստորոտով լերինն .
և գտեալ տեղի բարեխառն մօտ 'ի դաշտա-
բերանն , յորում բղխէին աղբիւրք ոչ սա-
կաւք հանդէպ հարաւոյ , անդ դադարեալ
նստան՝ հայելով 'ի տեղւոյն բարետեսութիւն .
աստ և արգելանոցս իւրեանց արարին գետ-
նափոր դարիւք , և բնակեցան բազում ա-
պաշտամանօք և կատարեալ ճգնութեամբ մինչև

յոր

քական աթոռոյն 'ի կոստանդինուպօլիս . և
կամ գուցէ իցէ մերն անտոն ընկերն կրօնա-
դեայ՝՝ 'ի հրամանէ մեր լուսաւորչին առաջին
գրիչ վարուց սոցա , առեալ 'ի գրաւոր և
յանգիր աւանդութեանց ։ Եւ կարի քաջ հա-
ւաստի երևի , թէ նախկին պատմօղ և յայտ-
արար վարուց և վկայաբանութեան սոցա՝ եղեն
երկոքին այն ընկերք նորա , որք մնացին 'ի նա-
ցանէ . և անշուշտ աւանդեցին զայն ոմանց
'ի հաւատացելոց կամ յաշակերտելոց , եթէ
գրով և եթէ բանիւ . յորոց էառ և անտոնն
այն անապատաւոր հռովմայեցի , և կամ հա-
ռոմ , որ թարգմանի հռովմայեցի ։

Այլ 'ի տեղի վկայութեան սոցա սուքիասանց՝ ըստ
խնդրելոյ նոցա 'ի տեառնէ՝ բղխեաց սքանչելի
աղբիւր բժշկութեան 'ի փարատումն ամենայն ցաւոց .
յոր 'ի ժամանակս քրիստոնէութեան դիմէին
բազմութիւնք ախտաժետաց իբրև յաւազանն
պրոբատիկէ կամ 'ի սելովամ . և գտանէին
հաւատով զառողջութիւն ։ Եւ որպէս որ 'ի
պրոբատիկէն անկեալ դնէին , ակն ունէին
ըստ ժամանակին ջրոյն յուզման , նոյնպէս
և 'ի սքանչելի աղբիւր անդ երևէր առա-
տութիւն և նուազութիւն ըստ ժամանակին . զի
ամի ամի յաւուր տօնի սոցին առատանայր ,
կամ իբր նոր բղխէր վերստին . և այնմ սպա-
ռէին նեղեալքն 'ի պէսպէս ախտից , մանա-
ւանդ բորոտք և պիսակոտք . և ընդունէին
զբժշկութիւն ըստ հաւատոց իւրեանց՝ զօրաւոր բա-
րեխօսութեամբ սոցա սուքիասանց , 'ի փառս սքան-
չելարար փրկչին . որ սքանչելին է 'ի սուրբս իւր ։

նութեան նահատակութե սուքիասանց լինի յամի տն իբր · 130 · կամ 140 · 'ի հասակի վաթսուն և եօթանասուն, և առ սասանելն՝ ութսուն ամաց · զի թէ 'ի գալ իւրեանց 'ի հայս Է թագուհւոյն՝ կամ յաւուրս Նր̄ յամի տն իբր 90, և որ զկնի, էին 'ի տիս պատանեկութե և երիտասարդութե, և յետ կատարման ոսկեանց յամի տն իբր 107 · կացին 'ի սուկաւէտ լերին ամս խգ̄. հասակ երիցագունիցն նոցա 'ի նահատակելն ոչ անցանէ անդր քան զեօթանասուն և քան զութսուն :

Ցայսոսիկ հայեցեալ՝ նահատակութի սրբց հաւանականաբար եգաւ 'ի պատմութե հայոց շուրջ զամաւ տն · 130 · այն է նախընթաց ամ տիրանայ արքայի : Մարթ է դնել, և գուցէ հաւանականագոյնս՝ նաև յաւուրս տիրանայ, յամի տն իբր 140 · յորում ժամանակի նստաւ կայսր անտոնինոս պիոս · ( թէպէտ և ամք կայսերաց փոքր մի յեղեղուածութի տանին ը այլ և այլ ժամանակագրաց · ) զի վկայաբանութիս քաջ 'ի դէպ գայ ժամանակի խաղաղութեց և պատերազմաց գրգռելոց ընդդէմ տիրան հայոց արքայ, և Է պերոզ արքայ պարսից · և յարմար են'ս ասանի այն, զի յանկարծ դադարեալ ազմուկ մարտի՝ օգնականութբ աղօթից սրբց սուքիասանց՝ ը գրելոյ ծաւընարաց · մն զի այդպիսի դադարումն պատերազմի Յին հայոց յիշի և առ արտաքին մատենագիրս · ոչ թէ արտաքին պատճառ դադարման լեալ իցէ անտոնինոս կայսր հռովմայեցւոց՝ առաքելով թղթառնալիս առ արքայն պարսից · ոչ գրէ յուլիոս կապիտոլինոս 'ի վարս անտոնինոսի պիոսի : Չիշխեմք հաստատել, բայց կարեմք կասկածել, թէ մի արդեօք և անուն՝ անտոն անապատաւոր հռովմայեցի, որ ասի առաջին գրիչ վկայաբանութես, չփոթեալ իցէ Է անուան անտոն ինքնակալի հռովմայեցւոց՝ պիոս անուն, որ թարգմանի բարեպաշտ · յորոյ աւուրս վկայեցին սուքիասանք :

Դարձեալ 'ի ծաւընա · Բ · 'ի վարս ոսկեանց, յետ պատմելոյ զմահ երկուց միայնակեցաց մնացելոց յընկերաց անտի սուքիասանց՝ ասի մն անդւոյ դերեզմանի նոցա · * Բայց յետ փոքր ինչ ժամանակի և 'ի տեղին շինեալ
„ աւան 'ի թագաւորէն վաղարշայ, անդ զորդի իւր
„ բնակեցուցանէր սակս տեղոյն բարեխաւսութե, վա-
„ ղարշակերտ յանուն իւր կոչեցեալ ||: Արդ եթէ վաղարշ հայրն խոսրովու յետոյ քան զմահ երկուց ծգնաւորաց շինեաց զվաղարշակերտ, ուր նոյն ծգնաւորք

նուն գլխաւորի նց սուքիաս՝ կոչեցաւ սուկաւ||: Եւ
յոմՀ. կԹ. ասէ. * և լեառնն այս յայնմհետէ յանուն
,, սուքիանոսի գլխաւորի նցին սուկաւ անուանի||:
Յաւելու Հ. * 'ի գաւառն վաղարշակերտու՝ 'ի լերինն,
,, որ այժմ կոչի քօսա տաղ||. գուցէ արդեօք՝ յանուանէ
սուքիասանց քօշ կոչեցելոյ, կամի ասել. քանզի վասն
այսպիսի մականուանութ նցս գրէ և յոմՀ. կաԹ. * և
,, ըստ մերկութ անձանց նց 'ի ցօղոյ երկնից գէսս որ_
,, ձակեալ մարմնոցն. և 'ի պատահմանէ անտի քօշք
,, անուանեցան||: Արդ պահեալ զյարգ բանից խորա_
քանչելոր մատենագրացս՝ ասելի է, Թէ որչափ և յեղյե_
ղեցեալս զայսոսիկ այլև այլ ձայնս՝ ունին ինչ միաբանութ
ընդ միմեանս. զի քօշ կմ քօսա անխտիր մարԹի լինել
յեռագարձուԹբ ծագեալ յանուանէս սուքիաս, կամ
սուք, և յաւէտ 'ի յաւանականէս իսկզբնոյ կմ հիւսիւքսս.
և դարձեալ քօսա տաղն՝ որ է նոյն ը սուկաւ լերին,
հարէ նշանակել զանբոյս կմ զխարճաբոյս լեառն. որով
և նոյնանալ ը նշանակուԹն սուկաւ, կմ սկքքուս. զի
է լեառն մերկ 'ի ծառոց, և իբր անդալար և դոս:
(5) Յայսմ տեղւոջ՝ ուր բանն է զխորհրդոյ երանե_
լեացս, պակասաւոր գտանին քանի մի տողք կմ հատ_
ուած ինչ յօրինակս ճառընտրաց մերոց. 'ի միումն ա_
ւելի, և 'ի միւսումն նուազ ԹերուԹբ. վսյ եԹէ լրա_
գոյն օրինակ ոք գտանիցէ, գուցէ առաւել ինչ որոշա_
գոյն իմասցի:

Իսկ յաղագս բագնին՝ որ յիշի աստանօր, ունիմք ասել՝
Թէ այն է, առ որով Թաղեցաւ յետոյ մաժան քրմա_
պետ 'ը պատմութ խորենացւոյն. նմին իրի և եղբայր
նր տիգրան վերջին՝ արքայ հայոց՝ նորոգեաց և մեծա_
ցոյց զբագինն. և արար շուրջ զնովաւ հիւրանոցս. և
եղև այն մի 'ի մեծամեծ մեհենաց՝ որ 'ի հայս. այլ Թէ
անուանս բագուհան կմ բագնեաց աւան, որ և գիւղաւան,
'ի տիգրանայ եդաւ, եԹէ կայր և յառաջ սուքիա_
անց, խնդրելի է. միայն զայս յայտ առնէ մեկնաբա_
նուԹս՝ Թէ կայր անդ բագինն և յառաջ քան զաւուրս
տիգրանայ:

(6) Բարւոք գրէ 'ի ԾԶ. Բ. * և եկեալ զօրացն յերկիրն
հայոց||. զի ինքնին տայ իմանալ զզօրս ալանաց ը զօ_
րավարին իւրեանց բառլահայ: Ուր 'ի ԾԶ. Ե. եդեալ
է տխալական մեկնուԹի. * և եկեալ զօրացն պարսից
,, յերկիրն հայոց||. և այս վրիպակ հաստատեալ է
յայն շփոԹուԹ, որով շապուհ արքայ ալանաց խառնի

" խաղօք. և իւրքն գաւառայր խաղաղութբ յՏն իւր, թե-
" րելով ՚ի նշխարացն և ՚ի հողոյ երկրին. և ոչ ոք գի-
" տաց զնա: Եւ շինեաց վկայարան, և եդ անդ զբե-
" րեալ զնշխարս երանելեացն. յորում բազում բժըշ-
" կութիւք լինէին, և ուրախ լինէր ՚ի նմ: Եւ զայս
" առնէր, եթէ ՚ի յետին ժամանակին ՚ի զօրանալ գնդին
" հայոց յայտնեսցին նշխարք սբ վկայիցն. և կատարի
" մինչև ցայսօր յիշատակ վկայութե նց՝ փառաւորելով
" զհայր և զորդի և զՍբ հոգին այժմ և յաւիտեանս
յաւիտենից:

" Եւ անտուն անապատական ՚ի հանդիսի ցանկացայ վկայ-
" ութե և վարուց երանելեացս, դիւրաւ լինել յորոյ
" ձեռն մեծի Թագաւորին կոստանդիանոսի յայտնե-
" ցան. և զիս արժանիս արար տծ գիտել և գրել (կմ
" զատանել) ՚ի մատենի զվկայութե և զվարս նց, և որ-
" պէս ծածկեալ կան սբ վկայքն մինչև ՚ի ժամանակն՝
" յորում տծ յայտնեսցէ: Եւ որ ոք յիշեսցէ զանուն
" վկայիցն, և կատարեսցէ զյիշատակ երանելեացս,
" զոր ինչ և խնդրեսցէ ՚ի նոցանէ՝ եղիցի ՚ի վերնա-
" ստեղծին քնէ Այ բարեխօսութբ նց, և շնորհօք ողոր-
" մութբ սբ երրորդութե. որում պատիւ. զօրութիւն,
" և փառք յաւիտեանս. ամէն||:

Ուր տեսանես և ոչ մի յարմարութի բանից ը իւրքեան, այլ չփոթութիւն է գործոց սբ լուսաւորչին՝ որ կանգ-նեաց վկայարան ՚ի վր սբց սուքիասանց, և կարգեաց զտօն նց. իսկ համեմատեցէք կմ համառօտ խաղաս անտե-ղեակք են իրացս, և ոչ ունին զտօն սբցս կատարելոց ՚ի հայս. վմյ վայրապար գրի և սեսիլն կոստանդիանո-սի, և վայրապար ընծայի նոյն անտուն գրչի համայեց-ւոց կմ հռոմի, որ ասի գրեալ վարուց սբցս. մեզ բաւ է սոյդ պատմութի վկայաբանութե նց. և չէ արժան զհետ լինել աւելորդ և սնոտի բանից:

ՎԿԱ.

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Ոսկեանց : (1)

Յ. Մեսրոպ. 19. և օգոստ. 27 : Ճառընտ. Բն. երես. ՃԽԸ : և ՃԼԷ. 'ի Վարս սրբոց : (2)

ԱՅՍ ԵՐԱՆԵԼԻՔՍ էին անձինք ազնուականք և արքունի պաշտօնեայք 'ի կայսերական պալատան, ազգաւ հռոմք կամ հռոմք այսինքն հռովմայեցիք, առաքեալք յինքնակալէն հռովմայ 'ի հայս առ սանատրուկ արքայ, ոգիք հինգ (3). որոց գլխաւորն անուն էր խառուսի կամ քրիուսի, որ թարգմանի հայերէն ոսկի. յորմէ և ոսկեանք առձայնին : Նա և եղև 'ի հասանել նոցա 'ի սահմանս երկրին հայոց 'ի տեղի մի լեռնային և դաշտային, 'ի ճանապարհի հանդիպեցաւ նոցա սբ առաքեալն Թադէոս, որ մին էր յեօթանասնից, և շրջէր քարոզում 'ի հայս :

Որ տեսեալ զարանցն այնոցիկ 'ի նմանս կերպարանս և անձինս, հարցին ցնա, և ասեն. ո՞ ես դու, ուստի՞ գաս, կամ յո՞ երթաս : Նա և առաքեալն ասէ. ես ծառայ եմ Այ բարձրելոյ, և աւետարանիչ որդւոյ նորին յսի քսի, որ վն զմեզ կեցուցանելոյ եղև

որ-

որդի մարդոյ ։ Իսկ սկսեալ 'ի բանից աստոր՝ քարոզեաց նմա յերկար վս մարդեղութե բանին այ. և սքանչացան արքն ընդ սքանչելի վարդապետութի նր, և քաղցր թուեցաւ 'ի քիմս հոգւոյ նոցա հոգեբուղխ քարոզութի առաքելոյն առաւել քան զմեղու խորիսխ ։ Իսկ մինչ նա խօսէր նմա զբանսն կենաց, ահա ջոկ մի եղանց երագընթաց վազիւք անցանէր ընդ մերձակայ լեառն ։ Յայնժամ ասեն դեսպանքն ցԹադէոս. եթէ ծառայ ես այ բարձրելոյ, և կամիս՝ զի հաւատասցուք ասացելոցդ 'ի քէն, ասա՛ զի դադարեալ կացցեն եղջերուքն այն. զի կալցուք զմի 'ի նոցանէ, և կերիցուք աստ 'ի գիշերիս. զի հեռի եմք 'ի շինութէ յանմարդաբնակ վայրիս ։ Յայնժամ ձայնեաց Թադէոս եղանցն յանուն յի՝ գալ առ ինքն. և նոքա ըստ բանաւոր անսասցեալ հրամանին՝ եկին կացին առաջի նր. և նա հրաման ետ արանցն ունել զմի յանասնոցն և զենուլ, խորովել և ուտել ։

Այլ ընդ զի առաւել ևս հրաշագործեսցէ, և դիւրագոյնս ձգեսցէ զնա յաստուածճանաչողութի բանից խուռոց, պատուիրեաց նմա պահել զոսկերսն ուլոյն, զի մի՛ կորիցէ ։ Իսկ նքա արարին ըստ հրամանի նր. զի խորովեալ կերան զեղջերուն յայնմ գիշերի. և զոսկերսն զամենայն եդին 'ի մի տեղի. բայց մի ոմն 'ի զինուորացն ոսկր մի գաղտ պահեաց առ ինքն, տեսանել՝ թէ զի՞նչ ունի առնել Թադէոս ։ Իսկ 'ի վաղիւն անդր ետ բերել առա-

քեալն

քեալն զամ ոսկերոն առաջի իւր . և ձգեաց
զմարմին 'ի վր ոսկերացն : Եւ կացեալ յա
ղօթս՝ կարդաց զանուն յսի քսի . և առժա
մայն մերձեցան ոսկերքն առ միմեանս . և
կենդանացաւ անդրէն անասունն այն . և
սկսաւ գնալ զառ 'ի վեր լերինն բանիւ ա
ռաքելոյն . այլ յընթացս անդ թուէր կա
ղալ եղն , և ոչ կարէր վազել համարձակ :
Եւ ասէ սրբն թադէոս ցարսն . տեսէք , թէ
ոսկր պահեցիք , կմ 'ի զնտ ձգեցէք յոսկե
րաց եղինն :

Յայնժամ յարուցեալ զօրականն՝ որ զոսկրն
զայն պահեաց , ասաց յայտնապէս զկիրա
մնաց իւրոց , թէ վս այն պահեցի զայդ , զի
փորձեցի բանն քո՝ սուտն և իրաւն : Եւ արդ
այսուհետև հաւատամք յանձն քո , զոր դու
քարոզես . փասն զի արդար ես , և բանք քո
ճշմարիտ են . և ոչ ոք կարէ զայդպիսի նշ
շանս առնել , եթէ չունիցի իշխանութի 'ի վե
րուստ : Եւ ապա ամենեքեան անկան յոտս
առաքելոյն , և հաւատացին 'ի քս աձ , և ա
շակերտեցան բանից սրբյն թադէի . և նա
մկրտեալ զնոսա՝ արար քրիստոնեայս . և
զգլխաւորն զերանելին Ոսկի ձեռնադրեաց
քահանայ :

Եւ թողեալ նց այնուհետև զբանս դես
պանութե՝ յանձն առին զհետ երթալ առա
քելոյն խոնարհութե ճանապարհաւ . փասն
որոյ գնացեալ 'ի շէնս ուրեք , և վաճառեալ
զգէնս և զերիվարս իւրեանց՝ ետուն աղքա
տաց . և այլ ոչ դարձան 'ի տունս իւրեանց ,
և

և ոչ առ այն՝ որ առաքեալն էր զնոսա․ այլ չորեքին Ե առաքելոյն․ և որ ԵԾ օրէ հաստատեցին ՚ի հաւատս քնի, և ՚ի գիտութիւն Ածպաշտութե։

Իսկ զկնի կատարման Սբ. առաքելոյն Թադէոսի՝ որ նահատակեցաւ ՚ի սանատրկոյ, գնացեալ բնակեցան ոսկեանքն առանձնակի․ քանզի շինեալ իւրաքանչիւր խրճիթս՝ կրօնաւորեցան ՚ի լերինս ուրեք ծմակայինս յակունս եփրատայ ՚ի խառնուրդս ձորոց, որք միանան ընդ լեառն ծաղկէոյ, ՚ի գաւառն՝ որ կոչեցաւ ծաղկոտն մօ գոլոյ լերանց և դաշտաց ծաղկաւէտ և զուարճալի վայելչութե զարդարեալ (4)։ Այս տուեալ զանձինս բազմապատիկ ճգանց և մշտամռունչ աղօթից՝ փայլեցին հրեշտակական վարուք, զտեալ և փորձեալ իբրև ոսկի ընտիր՝ մաքրութբ Ածային հրոյն, և եղեալ տաճար սրբութե հոգւոյն այ։

Արդ յետ կալոյ յառանձնութե անդ ոքանց չելի քաղաքավարութբ զամս իբր քառասուն և երեք, Ածային իմն ազդմամբ իջին ՚ի լեռնէ անտի, և գնացեալ յարքունի դուռն հայոց՝ մատեան առ արքայ արտաշէս որդի սանատրկոյ, և առ թագուհին սաթինիկ, և քարոզեցին նմա զբանն կենաց, ծանուցանելով նոցա մօ քնի Ածութն, և ցուցանելով զկրօնս տկարութն։ Իբրև լուաւ թագաւորն, թէպէտև ոչ անտեղի համարեցաւ զբանս նց, այլ անփոյթ արար․ լուեալ է իմ առէ յաղագս այդորիկ և յայլոց բազմաց․

մաց․ բայց յայժմուս անպարապ գտանիմ
՚ի պատերազմաց, և ոչ կարեմ լսել ձեզ։
Ապա հրաւիրեալ զնոսա գալ և խօսել զնո-
ցին իւրեանց յայլում ժամու՝ ինքն պատրաստե-
ցաւ և խաղաց պատերազմաւ յարևելս։
Իսկ արքն սբք զնոյն բանս յետ նր խօսէին
ընդ մեծի թագուհւոյն՝ մերձ լինելով և ա-
ւագ որդւոյն․ որ այն ինքն է արտաւազդ (5)։
Եւ ՚ի խօսել նց ստէպ՝ լուեալ զայս և մեր-
ձաւորաց թագուհւոյն, որ զկնի նր եկեալ
էին յալանաց, զորոց ա՛ծ իսկ իմաստնացոյց
զմիտս նց ընդունել զբանս կենաց, հաւա-
նեցան և հաւատացին բոլորով սրտիւ ՚ի քս։
Եւ իբրև ետես սբն ոսկի զկատարեալ հա-
ւատս նց, ՚ի մէջ գիշերին յարուցեալ տա-
րաւ զնս ընդ իւր․ և մկրտեաց զամենեսին
զնս իբրև արս ութսուն կմ ինն և տասն՝
՚ի յակունս եփրատայ, և արժանացոյց ըն-
դունելուն սբ հոգւոյն․ և ՚ի նշանակ նորո-
գութե կենաց քնական լուսաւորութե; և գրե-
լոյ անուանց նց ՚ի դպրութե կենաց՝ փոխեաց
զանուանս նց․ որոց առաջինն կոչեցաւ սու-
քիաս․ յորմէ և ընկերքն նր սուքիասանք ան-
ուանեցան։

Եւ եղև ՚ի միւսանգամ գալ սբց ոսկեանց
յարքունիս վս քարոզութե հանդերձ աշա-
կերտելովք, իմացեալ որդւոցն սաթինկան
զդարձ ազգականաց իւրեանց, և խանդա-
ցեալ ընդ իւրսն, մեծաւ թշնամանօք հալածե-
ցին զսբ ոսկեանս ՚ի դրանէն․ և նք խնդու-
թե գնացեալ նստան յիւրաքանչիւր մենա-

րա-

րանի ։ Օ այն տեսեալ սուքիասանց՝ խոյս ետուն և ինքեանք յարքունեաց ․ և հետա-զօտեալ զհետս սոցին՝ գնացին և գտին զնո ՚ի ճգնարանս նց ․ և ջերմագոյն հաւատով կացեալ ՚ի լուր ածային բանից նոցին՝ օր-ըստօրէ առաւել հաստատէին ՚ի հաւատսն ։

Եւ իբրև խնդրեցան նքա ՚ի դրան թագուհ-ւոյն և ոչ գտան, տեղեկութի առեալ՝ ե-թէ զկնի ոսկեանց գնացին, գրգռեցան ընդ-դէմ նոցա մանկագոյն որդիք թագուհւոյն փոքոյն և վրդոյն ( կմ վրոյն ) ․ և առեալ ընդ իւրեանս զերիցագոյն եղբայր իւրեանց զար-տաւազդ՝ դիմեցին հանդերձ թիկնապահօք ՚ի ճգնարան սոցին ․ և գտեալ զերանելին սուքիաս և զընկերս նր, աղաչէին թախան-ձելով, որպս զի ՚ի բաց դարձցին յերկրպա-գութենէն քի, և կալցին զառաջին պատիւ իւրեանց ՚ի դրան ։ Իսկ նքա ոչ հաւանեցան, և ոչ յանձն առին դառնալ ՚ի լուսոյ ՚ի խա-ւար հեթանոսական մոլորութե ։

Եւ տեսեալ արքայորդւոց զանյողդողդ հա-ւատս նց և զհաստատութիւն ; առաքեալ կո-չեցին զեպս նց զօք ոսկեանս յիւրաքան-չիւր մենարանէ ․ և հարկեցուցանէին զնո ողոքանօք և սպառնալեօք՝ խօսել ը նորա-հաւատ արանցն, զի դարձցին անդրէն յա-ռաջին պաշտամանն և ՚ի գործ իւրեանց ։ Իսկ սոցին ոչինչ ակնածեալ ՚ի սաստից նց՝ առաւել ևս հաստատէին զաշակերտեալսն ՚ի հաւատս ․ և ապա ասեն ․ թող ինքեանք ընտրեսցեն զօգուտ իւրեանց ։ Եւ զայս ա-

սա

տացեալ՝ դարձան յետս՝ գնալ 'ի խորշիթս իւրեանց :

Ընդ որ դառնացեալ արտաւազդայ և եղբարց նր՝ յանհնարս մտանէին, թէ զի՞նչ արասցեն . քանզի իմացան յայտնապէս զանդամանդեայ միտս սոցն, և զանհրապուրելի խորհուրդս երկոցունց կողմանց՝ ոսկեանց և սուքիասանց : Եւ զի չիշխէին առնել ինչ սուքիասայ և ընկերաց նր՝ կասկած ունելով 'ի մօրէն իւրեանց, և խնայելով իսկ 'ի նոսա իբրև յազգականս, զնմ զցասումն թափեցին 'ի վր ոսկեանց, հրաման տուեալ արքունեկաց իւրեանց՝ յարձակիլ 'ի վր նց, և առ եւտեղ խողխողել զնս իբր մոլորեցուցիչս ազգականաց իւրեանց : Եւ ահա այն ինչ գնայր սբն ոսկի հանդերձ ընկերօքն, և չև էր հասեալ 'ի դուռն սենեկին, անդէն 'ի վր հասեալ դահճաց՝ կոտորեցին զնս մօտ 'ի խորշիթս իւրեանց, սուսերաւ բարձեալ զգլուխս նց յամի տն իբր 107 : (6)

Բայց յետ մեկնելոյ արքայորդւոց՝ եկեալ սուքիասանց՝ կոծ մեծ առին 'ի վր սբցն անկելոց, որք և յառաջագոյն հոգային յոյժ՝ զի մի՛ 'ի պատճառս իւրեանց վտանգ հասանիցէ վկպացն . և արտասուօք և սաղմոսիւք ամփոփեցին զպատուական նշխարս նց . և ինքեանք առ ժամանակ մի կրօնաւորեալք 'ի բնակութիս նց՝ ապա անցին 'ի լեառն Ջրաբաշխ, որ և սուկաւէտ . ուր և յետ ժամանակաց նահատակեցան և ինքեանք . որք է տեսանել յառանձին վկայաբանութե նց :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Յամ հին օրինակս տօնացուցից ընթեռնումք * Ոսկեանց ||· կամ * սբ̃ց ոսկեանց ||։ միայն 'ի քանի մի յետին օրինակս եդեալ կայ * սբ̃ց ոսկեանց քահանայից ||· զոր և տեսանեմք 'ի կիր արկեալ յամանց 'ի մաղթանս աւուր տօնի սբ̃ցս։ Եւ սակայն յայտ է 'ի վկայաբանութենէս, թէ սբ̃ն Թադէոս զոսկի միայն արար քահանայ· իսկ ընկերք նր̃ էին լոկ կրօնաւորք, և ոչ քահանայք· վ̃յ գործեալ գրի 'ի պատմութե̃ սուքիասանց վ̃ն ոսկեանց, թէ * մի ոմն 'ի սբ̃ցն՝ որ զքահանայականն ստացեալ էր զշնորհս ||, մկրտեաց զսուքիասանս, այն է սբ̃ն ոսկի քահանայ։ Վ̃յ և կցուրդն պատարագի 'ի տօնի ոսկեանց, * քահանայք քո զգեցցին զարդարութի̃ ||, են, ոչ յայտ առնէ թէ ոսկեանք առհասարակ քահանայք էին, այլ թէ գլխաւորն նոցա էր քահանայ· ապա թէ ոչ՝ յայլ ընթերցուածս և 'ի պաշտամունս աւուրն չէք այլ յիշատակ քահանայից։

(2) Կրկին հին օրինակք են վկայաբանութե̃ սբ̃ց ոսկեանց· առաջինն այն՝ որ բովանդակի 'ի վարս սուքիասանց իբրև յանանէ համմայեցւոյ աւանդեալ, և ըստ այսմ համառօտեալ 'ի Ճառընտիրս և 'ի յայսմաւուրս 'ի միասին պատմին վարք երկոցունց դասուց սբ̃ցս, ըստ Հ. յօգոստ. 27. և թէպէտ ուրոյն ևս յիշին ոսկեանք 'ի Հ. սեպտ. 19. այլ ընթերցուածք առաքելն 'ի նոյն տեղի· օգոստ. 27։ Իսկ երկրորդն է այն, որ ասի աւանդեալ 'ի տախանոսէ ա̃ Ճառընտ. Բ. ուր ուրոյն ևս գրին վարք ոսկեանց, թէպէտև հանդերձ պատմութե̃ սուքիասանց, զի մին զմիւսոյն է կախեալ· որ է ասել՝ թէ երկոքեան առաջին գնին 'ի նմին Ճառընտրի վկայաբանութիւնք երկաքանչիւր խմբից միանգամայն՝ յայլ և այլ հեղինակաց առեալ զանազան ոճով, այլ նովին իմաստիւք· որ է առաւել հաստատութե̃ ստուգութե̃· վ̃յ և թէ յառաջինկայ պատմութե̃ ոսկեանց տեսցես զպարագայս ինչ մանունս փոքր մի տարբեր 'ի գրելոյն 'ի վարս սուքիասանց, մի ինչ զարմասցիս· զի նոյն բան յումեմնէ այսպէս բացատրի, և յայլմէ այնպէս։ Այլ արժան է յառաջ բերել աստ զյառաջաբան երկրորդ վկայաբանութեան, որ 'ի Ճառընտ. Բ. երես. Չխը. օրինակ զայս· * Վկայութի̃ սբ̃յ Ոսկեայ, և ընկերաց նորին։ Գրեալ միւս



ևս

» Եւ այլ պատմագիր 'ի կողմանս յունաց․ այր մի ըն-
» թերցասէր տատիանոս անուն՝ որ լեալ է յաւուրս
» վաղանդիանոսի կայսեր, բաղում ինչ պատմեաց նո
» մեզ 'ի յունական մատենից․ որոյ գրեանն անթիւ չա-
» տաքանուք զրուցաց և այժմ 'ի միջի մերում գտանի․
» զոր իմ իսկ բաղում անգամ ընթերցեալ՝ գտի 'ի ճառս
» նր̅, եթէ առք ոմանք՝ որք յաշակերտաց լեալ են մե-
» ծին թադէոսի առաքելոյ, որոց գլխաւորի անուն
» էր քրիւսի՝ ( որ թարգմանի ոսկի․ ) այր յազգէ գոթկ
» ( ի կողէգոս, որ է հոռոմ ) ||․ ԵՆ ։

Արդ այս վկայագիր՝ որ զտատիանոս յիշէ այսպէս, կամ է ոմն 'ի նախնի վիպասանից մերոց ( դու իմա ըզ-խորենացին, կամ զհամանման զոք յաշակերտաց սր̅ց թարգմանչաց ), և կմ̅ անտոնն այն հռովմայեցի գրէչ նախընթաց վարուց սուքիասանց․ ( զի զկնի սուքիա-սանց գրեալ կայ 'ի նախասացեալ ճառընտրի այս պատ-մութիւն ոսկեանց ) ։ Ո՛րպ և իցէ՝ է բարեացապարտ յոյժ․ զի քաջեաց զայս վկայաբանութիւն և 'ի գրոց տատիանո-սի, որք յայժմուս ոչ առ հռովմայեցիս, ոչ առ հոռոմս կամ առ յոյնս, և ոչ առ հայս երևին 'ի միջի․ բաց 'ի վիճաբանութեանց նր̅ Է̅դէմ հեթանոսաց ։ Սա՛ էր աշա-կերտ սր̅յն յուստինոսի վկայի և փիլիսոփայի, ճոխա-բան հռետոր և փիլիսոփոս․ որ եցոյց բաղում նախան-ձայուզութե̅ վս̅ քրիստոնէութե̅․ այլ յետոյ անկաւ յա-ղանդս․ և եղև գլուխ խոտրակենաց կմ̅ էնկրատեանց ։

(3) Թիւ անձանց սր̅ց ոսկեանց չէք 'ի Ճ̅․ այլ պարզա-պէս ասի * առք ոմանք ||․ այլ յայլ վկայաբանութե̅ց ա-սեալ գտնի 'ի Հ̅․ * և էին ոգիք Է̅ ||․ Ը̅ որոյ եղաք և մեք ։ Եւ Ը̅ այսմ յետոյ խնդրել, թէ ո՛րդեօք բաց 'ի հնգից գեսպանացս կային և այլ զօրականք ուղեկիցք նց՝ հաւատացեալք Է̅ հաւատալն նց, և նահատակեալք Է̅ նո ճգնութե̅ և արեամբ, եթէ արդեօք նոյն գես-պանքն կոչին միանգամայն և զօրականք 'ի կարգի վկայա-բանութեան ։

(4) 'Ի ճգնարանն սր̅ց ոսկեանց հայքն և այս բանք գը-րեալք 'ի գիրս բուզանդայ․ Դ̅ 15․ * Եւ սր̅ն դինդ․․․
» առեալ վիճակ բնակութե̅ ունէր զանապատն, ուստի
» բղխեալ հոսեն ակունք եփրատ գետոյն, անդէն բնա-
» կեալ Է̅ ծագս ( կմ̅ Է̅ ծակս ) վիմացն․ ուր յառաջ-
» նոյ կայանքն էին մեծին գրիգորի առաջնոյ․ արում
» անեղեացն ոսկիք կոչէին․ 'ի նոյն ծագս էր բնակեալ
» մեծն անապատաւորաց դինդ ||։

(5) Զանուն Արտաւազդայ յաւելլուք մի բացատրութիւն՝ 'ի պատմութե սուքիասանց և ոսկեանց, զի այն էր երէցագոյն որդի ալքայլին Արտաշէսի ծնեալ 'ի Սաթինկայ. Իսկ այլքն՝ որք յիշին զկնի՝ միոյ և միւսոյ (Ը Ծ. կամ միոյ, Ը Հ.) մանկագոյնք էին 'ի ժամանակին. և գուցէ արքայազաւակն եղև մի 'ի նոցանէ. զի Խորենացին երևի յիշել զմին, այլ ոչ զմիւսն՝ 'ի թուելն զորդիս Արտաշիսի յանուանէ, զի Արտաւազդ, Վրոյր, Տիրան, Մաժան, Զարեհ, հանգերձ այլովք, յորոց միջինն եղև Տիգրան։ Իսկ թէ յաւուրս կատարման ոսկեանց՝ բաց յԱրտաւազդայ այլ եղբարք նր մանկահասակք էին, յայտ է 'ի կարգէ ժամանակին. զի ոսկեանք յաւուրց անտի անտաարկոյ հօրն Արտաշէսի էին չափահաս անձինք եկեալք դեսպանութե 'ի Հռովմայ, և Արտաշէս՝ որ էր յայնժամ մանուկ նորածին, յետոյ ուրեմն 'ի չափ հասեալ թագաւորեաց, և ապա եառ զՍաթինիկ 'ի կնութի։ Իսկ եթէ զկնի բազում ամաց գալստեան Սաթինկան և սուքիասանց յալանաց՝ լեալ էր նահատակութի ոսկեանց, 'ի չափահաս լինել առեմ ամ արքայորդւոց, ոչ միայն 'ի կարի խոր ծերութե հասանէին ոսկեանք, այլև չբաւէր այնմ միջոցի՝ ժամանակն խղ ամաց, որ յիշի 'ի յօմհ. կաթ. 'ի կատարմանէ անտի Թադէոսի առաքելոյն ցկատարումն ոսկեանց ։

(6) Ըստ առաւագագոյն զննութե մեկայաբանութեց և պատմութե հայոց՝ ժամանակ կատարման սբյց ոսկեանց երևի լինել յամի տն իբր 107. կամ 110։ Փոքր մի յառաջ ցուցանէ հաշիւն յօմհ. կաթուղիկոսի, որ խղ ամս դնէ 'ի վախճանէ սբյն Թադէի ցվախճան ոսկեանց. զի թէ սբն Թադէոս նահատակեցաւ առ Սանատրկով յամի տն իբր 50, ապա զկնի խղ ամաց՝ նահատակութի ոսկեանց լինի 'ի վախճանի առաջին դարուն քի. բայց մեզ հարկ թուէր քանի մի ամօք յետոյ դնել 'ի սկիզբն երկրորդ դարուն, զի մարթասցի չափահաս լինել գոնէ Արտաւազդ երէց որդի Արտաշէսի որդւոյ Սանատրկոյ։ Թող զի կասկածելի, թէ յօմհ. կաթ. չփոթութե իմն զայն խղ ամս՝ որք Ը մեկայաբանից անցին 'ի կատարմանէ ոսկեանց ցկատարումն սուքիասանց, փոխադրեալ է 'ի միջոցն՝ որ 'ի կատարմանէ սբյն Թադէի ցկատարումն ոսկեանց. Պատճառ չփոթութեն այն է, զոր փոքր 'ի շատէ քննեցաք 'ի վարս սուքիասանց. ծան. (2)։

ՎԱՐՔ

# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Սահակայ պարթևի՝ հայոց հայրապետի ։

Հ․ սեպտ․ 9․ և ս․ սեպտ․ 17 ։ Ճառընտ․ Բ․ նոյեմ․ և Բ․ չոփ ։ Խորէն․ Գ․ 49 = 68 ։ Կորիւն ։ Փարպեցի ։ Յովհ ։ կաթ ։ Շնորհալի․ և այլք ։ (1)

ԵՐԿՐՈՐԴ ԼՈՒՍԱՒՈ-րիչ համօրէն հայաստանեայց յետ առաջնոյն, լուսազարդ և գեղեցիկ շառաւիղ սրբոյն գրիգորի՝ երիցս երանելին հայրն մեր սահակ՝ էր որդի մեծին ներսիսի որդւոյ աթանագինեայ՝ որդւոյ յուսկանն՝ որդւոյ վրթանիսի՝ որդւոյ լուսաւորչին․ այն է չորրորդ ՚ի սրբոյն գրիգորէ, միայնակ մարգարիտ մնացեալ ՚ի սերնդոց անտի նորա, և միակ լուսափայլ աստղն երևեալ յազգի անդ իւրում․ որ և եղև վերջին հայրապետ ՚ի զարմէ պարթևազեան սրբոյն գրիգորի․ նմին իսկ մականուանեալ կոչի սահակ կամ իսահակ պարթև․ որպէս և մեծ սահակ անուանի՝ ըստ մեծութեան յարգի արդեանց իւրոց․ և առաջին սահակ ՚ի մէջ համանուն կաթողիկոսաց ազգիս ։

Սրբ երանելիս այս՝ այր ըստ սրտին այ, անդրանիկն ՚ի տղայ տիոց որք մնացեալ ՚ի մօրէ՝ ո-

րում անուն էր Սանդուխտ 'ի տանէ Մամիկո-նէից, նմա յանարատ վարս սրբութե և յու-սումն ածային գիտութե առ ոտս երջանիկ հօր իւրոյ մեծին Ներսէսի պարթևի. և ըստ աճել հասակին աճեաց և յառաջինութե և 'ի զգօնութե. և քաջավարժ գտաւ յոմն դըպ-րութիս յունաց և ասորւոց և պարսից. թող զներհուն հմտութի 'ի բնիկ բարբառ հայ-կազեան առանց գրոյ. զի ոչ գոյր հայերէնա-գիր դպրութի մինչև ցաւուրս նր, վասն վա-րելոյն օտար գրով. այլ առաւել քան զառա-ւել խելամուտ էր երանելին յընթերցմունս սբ գրոց հին և նոր կտակարանաց, և ամենայն ընկղմեալ 'ի հոգևոր վճպութի, առանձնա-ւոր և աղօթասէր յոյժ, քաղցր և հեզահամ-բոյր բարուք, և լի հոգւովն այ:

Այս 'ի նստիլ հօր իւրոյ յաթոռ հայրապե-տութե, միաբանեալ ոգւով համակամութե ընդ ընտրելոյն յայ երանելւոյն մաշտոցի, ջն սրբյն մեսրոպայ, որ էր դպիր և նօտար սրբյն ներսէսի, ևս քան զևս յառաջադէմ լինէր նովաւ հանդերձ 'ի զարգացումն գո-վելի գիտութեց իմաստասիրութե, և ած-ային տիրապէս իմաստութե:

Այս իբրև եհաս յարբունս հասակի, ստի-պեալ 'ի բազմաց՝ յանձն էառ մտանել 'ի կարգ-ձի, զի մի՛ շիջցի տունն լուսաւորչին. զի ինքն միայն էր մնացեալ 'ի զարմէ սրբյն գրիգորի. թող զի փափաքէր ազգն ողջոյն, զի պահեսցի միշտ ժառանգ աթոռոյն 'ի տանէ նախնի հայրապետին իւրեանց առաքելաշնորհ սբ լու-

լուսաւորչին ։ Սրոյ մն եւ երանելին սահակ խնդրէր յԱ̃յ ստէպ յաղօթս իւր՝ տալ նմա զաւակ արու ։ Եւ եղեւ իբրեւ ծնաւ նմա դուստր մի անուշ անուն, որ եւ սահականոյշ, եւ եկաց ամուսին նր̃ 'ի ծննդոց, սկսաւ տխ-րիլ երանելին, եւ խորհուրդք անհնարինք նեղէին զնա ․ եւ անդադար զմտաւ ածելով զելս իրացն՝ աղաչէր զբարձրեալն շնորհել ինքեան արու որդի՝ ոպ̃ նախնեացն իւրոց ։ Եւ մինչդեռ յայսմ խորհրդի էր, եւ սպասէր այցելութե̃ն տ̃ն, 'ի հասանել մեծի հինգ շաբաթուն՝ 'ի հսկման աւագ ուրբաթուն, հաղորդեցաւ 'ի ժամ երեկոյին պաշտաման՝ ս̃բյ եւ մեղաքաւիչ խորհրդոյ կենարարին 'ի ս̃բ կաթողիկէին յեկեղեցւոջ վաղարշապատ քաղաքի (այն է էջմիածին), 'ի սպասաւորել անդ ս̃բյ պատարագին ․ զի յայնժամ սարկաւագ իսկ էր ․ եւ ոչինչ այլ ճաշակեաց, բայց հաց եւ աղ եւ ջուր, պահելով զաւանդեալն կանոն 'ի նիկիական ժողովոյն ։

Եւ յորժամ կատարեցաւ պաշտօն երեկոյին, տակաւին լոյս ճրագացն եւ կանթեղաց անշէջ պահեցաւ ․ զի զկնի սակաւուց սկիզբն արասցեն եւ գիշերային պաշտաման ․ այլ զի փոքր մի հանգիստ տացեն պաշտօնեայք՝ մինչեւ 'ի գալ բազմութե̃ ժողովրդոցն, ընթերցօղն կամաւ յերկարէր զկարդացմունսն ։ Եւ ահա յայնմ վայրի՝ մինչդեռ նստէր երանելին սահակ մօտ 'ի ս̃բ սեղանն, անկաւ զնովաւ թմրութի̃ ․ եւ ետես տեսիլ հրաշալի, յորում գուշակէր նմա տէր զհանդերձեալն ։

եալսն ։ Այլ 'ի վերանալ տեսլեանն՝ այն ինչ զարմացեալ կայր ս՟ն, և խռովեալ էր յանձն իւր՝ թէ զի՛նչ իցէ տեսիլս այս, յանկարծակի երևեցաւ նմա հրեշտակ ա՟յ իջեալ յերկնից 'ի կերպարանս լուսաւոր առն, զի սլացեալ հասանէր մօտ առ նա. և էր տեսութիւն սաստկութեան լուսոյ նորա այնչափ պայծառ, մինչև մթայլեցուցեալ ծածկէր զարեգականն զլոյս ։ Այլ նո՟ր առաւել ևս հիացմամբ ափշեալ 'ի փայլակնացայտ երևմանէ զուարթնոյն՝ անկաւ վաղվաղակի դողալով 'ի վ՟ր երեսաց իւրոց ։

Իսկ հրեշտակն ա՟ծ բուռն հարեալ կանգնեաց զնա, և հաստատեալ կացոյց զնա 'ի վ՟ր ոտից իւրոց, և ասէ. քաջալերեա՛ց զօրացի՛ր, և մի՛ երկնչիր. այլ հաստատեա՛ զսիրտ քո յանուն հզօրին, որ արար զամենայն. և եցոյց քեզ զմեծ խորհուրդ յառաջատես աստուածութեան իւրոյ ։ Այլ իբրև ուշաբերեալ զօրացաւ 'ի բանէ անտի նո՟ր, ասէ ցնա հրեշտակն. վ՟ն էր ես տրտում, և կի՛ր ընդդէ՛ր ընդ-բազմունք նանրուէ պղտորեն զխորհուրդս քո, անգիտական մտածութեամբ տխրելով վ՟ն չլինելոյ քեզ արու որդի. և այն զի քաջածանօթ էիր կամաց հզօրին, որ ամենագէտ իմաստութեամբ իւրով բաշխէ ամենեցուն զիւրաքանչիւր օգուտ, և ոչ զլանայ ումեք ըզպարգևս իւր, և ոչ արգելու յումեքէ զարժանն ։ Այլ արդ գթալով 'ի քեզ բարձրեալն վ՟ն սիրելոյ զքեզ՝ կամեցաւ հեռացուցանել 'ի քէն զայդպիսի ընդունայն մտածութի. և մի-

մխիթարեաց զքեզ տեսլեամբդ այդուիկ, որ ցուցաւ քեզ յայտնութիւն մեծ՝ յայտարար ոչ միայն առաջիկայ իրաց, այլեւ որ ինչ առ յառաջ լինելոց է մինչ 'ի վախճան ծփ. քանզի նա ինքն տր է, որ ծանոյց քեզ՝ եւ քեւ մեզ հաւատացելոց 'ի բան նր՝ զայս ամ, որպէս եւ երբեմն ճշմարիտ ասաց նախնոյն քո սբյն գրիգորի ։

Նա արդ լո՛ւր եւ պատմեցից քեզ զմեկնութիւն տեսլեանն, որպէս ինձ հրամայեցաւ. եւ դու անձկնդիր եղեալ բազում զգուշութբ՝ գրեա՛ 'ի տախտակս սրտի քո անմոռաց. զոր եւ գրով թողցես հաւատացելոց ժղվրդոց անսխալ մինչ 'ի վախճան ծփս ։ Նա պատմեաց նմա հրեշտակն տն զամ զմեկնութիւն իրացն. յորում ծանոյց նմա եւ զդադարումն քահանայապետութե յարժանաւոր ցեղէ սբյն գրիգորի, եւ զփոփոխումն թգւորութե 'ի տանէ արշակունեաց, եւ զայլ եւս անցս ծփն հայոց յաւուրս հալածանաց եւ նեղութեց. որպէս գրեալ կայ յառաջնումն ճառ. տեսլեանն սբյն սահակայ. եւ ապա ասէ ցնա. եւ դու կնքեա՛ զտեսիլդ՝ որ ցուցաւ քեզ յայտնութե 'ի բարձանց. քզի ոչ վրիպեսցի այստի բանն, մինչեւ կատարեսցի ամ ։ Նա ապա տուեալ նմա ողջոյն խաղաղութե՝ եղեւ 'ի նմանէ աներեւոյթ ։

Յայնժամ զարթուցեալ սահակայ որպէս 'ի քնոյ 'ի տեսլենէ անտի, զոր ետես յայտնապէս իբրեւ 'ի յարթնութե, եւ 'ի զարմացման մեծի եղեալ՝ փառաւորեաց զԱծ, որ արժանի արար զնա այսպիսի ահաւոր տեսլեան ։

Նոյն այնուհետև 'ի բաց թօթափեալ յանձնէ զա͞մ հոգ. կենցաղոյս՝ յանձն առար 'ի խորնամս բարձրելոյն, որ ինչ լինելոց էր անձին իւրում և Ա͞ծ ին և համօրէն տիեզերաց: Նոյն յայնմ հետէ առաւել ևս տուեալ զանձն 'ի հանապազորդ աղօթս և յընթերցանութիւն ա͞ծային պատգամաց՝ խոկայր յօրէնս տ͞ն 'ի տուէ և 'ի գիշերի. և ա͞ծահաճոյ վարուք բուրէր զանուշահոտութիւն ք͞սի, և օրինակ բարեաց լինէր ամենեցուն, փոյթեռանդն գտեալ յա͞ծպաշտութե͞ն, և ծաղկեալ 'ի. գործս բարեպաշտութե͞ն:

Նոյն ապա մեկուսացեալ յամուսնոյն հաւանութե͞բ նր͞ա՝ եմուտ 'ի կարգ. քահանայութե͞ն. և որ քան զօր առաւելեալ 'ի ճգունս՝ կեայր յԱ͞ծ իբրև յանապատի. զի ոչ միայն նմանող եղև ա͞մ առաքինութեց հարց իւրոց, այլև առաւելեալ գտաւ աղօթից մասամբ. որում նախանձաւոր լեալ և բազումք յերկիւղածաց՝ աշակերտեցան նմա, և զնոյն օրինակ ճգնութե͞ն յանձինս բերէին. քանզի ստացաւ աշակերտս վաթսուն՝ ը͞ս նմանութե͞ն անապատաւոր հարց և երևելի կրօնաստանաց, արք կրօնաւորք, խարազնազգեստք, երկաթապատք, բոկագնացք, մեռեալք Ա͞ծ, և որ ինչ յԱ͞ծ. որք յար ընդ նմա շրջէին. որովք կանխեալ 'ի մշտամռունչ աղօթս և 'ի մշտնջենաւոր պաշտամունս՝ կատարէր զկանոնն միակեցական, որպէս զայնս՝ որ յանապատանէին. և անպակաս հոգայր զպէտս եկեղեցւոյն և զկարևոր խնամս Ա͞ծ ին՝ որպէս զայնս որ

յԱ͞ծս

յԾիս էին ։ Սա և յետ մեռանելոյ ամուսնոյ իւրոյ՝ եւս զդուստր իւր զսահականոյշ՚ի համազասպ մամիկոնեան՝ երևելի՚ի կարգս նախարարաց հայոց, և անուանի՚ի բարեպաշտութեն. յորմէ ծնան գ̄ վարդան, և համայեակ, և համազասպեան, առաքինի հաւաառաքինի թոռունք՝ որք սքանչելիք. և այնպէս՚ի նմա մնացին հետք լուսաւորչեան զարմի՚ի մայրական կարգի ևեթ ։

Յայսմ ժամանակի վախճանեալ էր սբ̄ն ներսէս հայրապետ՝ հայրն երանելւոյն սահակայ՝ դեղեալ՚ի զեղծ արքայէն պապայ. և էր ազ̄ն հայոց յերեսաց ցասմանն տն̄՚ի մեծի աղեկծութեն հոգւոյ և մարմնոյ. որում ոչինչ կարացին օգնել թագաւորք ժամանակին վարազդատ, և զկնի արշակ և վաղարշակ. ոչ̄ և ոչ կաթուղիկոսունքն շահակ և զաւէն և ասպուրակէս, որք սակաւ ամօք կեցին ։

Սոյն եղև իբրև նստաւ խոսրով երկրորդ՝ արքայ հայոց, միաբանեաց զնախարարսն, և արար խաղաղութի ը̄ արկադեայ կայսեր յունաց՝ որդւոյ մեծին թէոդոսի. և ապա յերրորդ ամի անդ իւրում, ՚ի յամի տն̄ 388. յորում մեռաւ կթղկսն ասպուրակէս, հաւանութե̄ ամենեցուն եւս ձեռնադրել զնա ինքն զերանելին սահակ պարթև ՚ի հայրապետութի հայոց, ՚ի հասակի իբր յիսուն կմ̄ վաթսուն ամաց ։ Սրով և իբր յեղակարծ փոփոխութե̄ հանգիստ և անդորրութի մեծ էառ ազ̄ն հայոց. և սկսաւ փայլել բարեկարգութե̄.

թէ · Քզի սբ հայրապետն սահակ իսկ և իսկ ձեռն 'ի գործ արար նորոգել զամ կարգս և զկրօնս ազին հայոց, խրատելով զամենեսեան, և ուսուցանելով ամենեցուն զճանապարհս փրկութե, լեալ ինքնին անձամբ կանոն ուղղութե ամ ժողովրդեան, և սքանչելի հայելի առաքինութե, հանդերձ նախասացեալ սրբակրօն աշակերտօք իւրովք:

Այլ էր յայնժամ հայրապետանոցն հայոց իբրև խորանն մովսէսի, յոր դիմէին մեծամեծք և փոքունք առնուլ պատգամ 'ի բերանոյ սբ հայրապետին իբրև 'ի բերանոյ այ · և նովին ուղղեալ լինէին ամ գնացք նց · և ինքն իսկ թագաւորն խոսրով մեծապէս հրպատակութի ցուցանէր և ակն ածէր 'ի մեծէն սահակայ հանդերձ աւագանւոյն:

Բայց ոմանք 'ի տիրանենգ նախարարաց ոխս ունելով ընդ թագաւորին իւրեանց՝ բանսարկու եղեն առ շապուհ արքայ պարսից երկայնակեացն կոչեցեալ, և գրգռեցին զնա ընդդէմ խոսրովու, պատճառելով զմիաբանիլ նորա ընդ կայսեր յունաց, և զկարգելն նորա զսահակ յաթոռ կաթողիկոսութեան հայոց առանց հաւանութե կամաց նորին շապհոյ: Այլ 'ի կոչել շապհոյ զխոսրով 'ի դուռն, և յընդդէմ դառնալ նր, առաքեաց շապուհ զգահակից զորդի իւր զարտաշիր զօրու ծանու 'ի հայս՝ ընդ սադրելոյ նոցին իսկ չարախոհ նախարարաց · և այնպէս անաշխատ ըմբռնեալ արտաշրի զխոսրով՝ տարաւ կապանօք 'ի պարս, եդեալ թագաւոր փոխանակ

նակ նորա 'ի Հայս զեղբայր նորին զվռամշա-
պուհ . վերադարձոյց եւ զնախարարս յիւրաքանչ-
չիւր պատուոյ, յոր կարգեալ էր զնա խոսրո-
վու . նոյն եւ զսահակ 'ի պատուոյ կաթողիկո-
սութե : Այլ երբեւ մեռաւ 'ի նոյն աւուրս
շապուհ, եւ թագաւորեաց նա ինքն արտաշիր 'ի
մէջ պարսից, թողացոյց անդրէն սահակայ
վարել զպաշտօն իւր . քանզի եւ 'ի մէջ եհաս
բարեխաւսութե նր՝ թէ զիարդ 'ի խաղաղութե
պահէ զՅնն ընդ արքունի հրամանաւ :
'Ի սմին ժամանակի մեռանէր սպարապետն
Հայոց սահակ ասպետ . եւ ոմն սահակ միջ-
նորդեաց առ վռամշապուհ արքայ Հայոց, զի
զփոխանակ նորա կարգեսցի սպարապետ փե-
սայն իւր Համազասպ Մամիկոնեան՝ որ թա-
խանձելոյ դստերն իւրոյ . եւ վռամշապուհ
հաճեցաւ ընդ այն, այլ ակնածեալ յարտաշրէ,
ետ գիր ոմն սահակայ երթալ անձամբ 'ի
պարս, եւ խնդրել զհաստատութի արտաշրի
մեծ նոցին իւրոց . նոյն եւ այլ խնդիրս ինչ առա-
ջի առնել նմա մեծ Յոին Հայոց :
Հասեալ ոմն 'ի պարս՝ մեծարեցաւ յոյժ
յարքայից արքայէ . զի առաջի անհաւատից
արդոյ եւ պատուականն ցուցանէր զնա զծա-
ռայս իւր . մանաւանդ զի գիտաց արտաշիր,
թէ սահակ է 'ի պահլաւունի ազգէ անտի
պարթեւաց 'ի ցեղէ մեծին գրիգորի . զորոյ
զհայրն զանակ եւ զամն ազգատոհմն նր երախ-
տաւոր ինքեանց համարէին սասանեանք, եւ
պատճառ կանգնելոյ թագաւորութե իւրեանց՝
վս սպանանելոյն զխոսրով զարքայն Հայոց
զԴե

զդիմակացն Սասանեանն Արտաշրի. վրայ եւ լրով կատարեալ զամենայն խնդիր սրբոյն՝ դարձոյց անդրէն պատուով 'ի Հայս, գրեալ պինի առ Վռամշապուհ, յորում յիշէր զկարծեցեալ երախտիս նախնեացն Սահակայ առ Պարսս, որպ եւ զմեծ երախտիս նախնոյ նր Գրիգորի առ Հայս՝ բժշկելով զՏրդատ արքայ:

Յետ այսորիկ 'ի մեռանիլ Արտաշրի, եւ 'ի թագաւորել Վռամ Կրմանայ 'ի վր Պարսից, նա եւս սէր եւ խաղաղութի ունէր ը Հայս. որով եւ յանդորրու վայելէր ամն Հայոց. եւ սբ Հայրապետն Սահակ անխափան վարէր ըզգործ հովուութե իւրոյ ամ արթնութբ եւ խնամով ըստ իւրումն հոգեւորն փութոյ յօգուտ քսականն հօտին. Արար եւ շինութիս եւ նորոգութիս եկեղեցեաց եւ վանորէից՝ ձեռնտուութբ բարեպաշտ արքային Վռամշապհոյ. զի ոչ սակաւ տեղիք աւերեալ եւ ապականեալ էին յերեսաց արշաւանացն Պարսից յաւուրս Շապհոյ: Ընդ որս իբրեւ նորոգեաց եւ զվկայարանս սրբց Հռիփսիմեանց, տեսեալ թէ ոչ երեւի տեղի նշխարաց նոցա, դիմեաց աղօթիւք առ ած. եւ տր յայտնեաց նմա: Այլ տեսեալ Հայրապետին զտապանս սրբուհւոյն Հռիփսիմեայ կնքեալ մատանեաւ սրբոյն Գրիգորի՝ յաւել 'ի վր եւ զիւր կնիք. եւ զետեղեաց անդրէն 'ի տեղւոջն ուրոյն նշանաւ:

Յայնու ժամանակաւ եկն առ երանելին Սահակ՝ մտերիմ սիրելին իւր եւ հոգեւոր հարազատն Մաշտոց, այն է սբն Մեսրոպ. որ

յետ

յետ փոխման մեծին Ներսեսի կացեալ էր առ ժամանակ մի 'ի գործ ատենադպրութեան 'ի դրան արքունի . և ապա միակեցական վարս ընտրեալ՝ ձգնէր խստամբերութեամբ . արդ բազում պատուասիրութեամբ ընդունելութեան գտեալ 'ի սրբոյ կաթողիկոսէն՝ Հրամանաւ նորա սկսաւ քարոզել ամենեցուն ապաշխարութեան փրկութեան , փայլեալ սքանչելեօք : Այլ որչափ և աշխատ լինէր երանելին մեսրոպ 'ի քարոզութեան բանին , տեսանէր՝ զի սակաւ օգուտ լինէր ազգին վասն չունելոյ զաստուածաշունչ գիրս 'ի Հայ բարբառ . քանզի առ 'ի չգոյէ և Հայերէն նշանագրաց՝ ասորի և յոյն գրով շատանայր ուխտ եկեղեցւոյ . և պաշտամունք եկեղեցւոյ և կարդացմունք գրոց ասորի ուսմամբ վարէին յեկեղեցիս և 'ի վանորայս . զոր ոչն իմանային ժողովուրդք . վասն այնմ անմխիթար մնային 'ի Հոգևոր վճպուէ , եթէ ոչ մեկնէր ոք նոցա զասացեալսն : Սմին իրի ստէպ հոգայր երանելին մաշտոց հնարս գտանել Հայերէն դպրութեան , և ծաղկեցուցանել 'ի Հայս զաստուածային գիտութիւն Հայրենի բարբառով :

Իսկ իբրև յայտնեաց զայսպիսի խորհուրդ իւր առաջի սրբոյ Հայրապետին սահակայ , եգիտ զնա առաւել ևս փափաքող այնմ , և խրատտու և յուսադիր : Ապա միաբանեալ 'ի մի խորհուրդ՝ բազում ջանիւք փոյթ փորձէին իրացն . և իբրև ոչ յաջողեցաւ առժամն՝ որոց զխորհուրդ փափաքէինն , յաղօթս եղեն ապաստան՝ իւրաքանչիւր առանձինն ձգնե-

ձգնելով առաւել քան զառաւել խոստամ-
բեր փառօք, և խնդրելով յինէ կատարել
զխնդիր նց 'ի բարին :

Այլ յետ սակաւուց տեղեկութիւն առեալ 'ի վաճառականաց արքայէ՝ թէ գտանիցի ոմն ասորի եկեալ 'ի կողմանս միջագետաց ունի առ իւր նշանագիրս ինչ յունական ձևով յօրինեալ իբրև 'ի պէտս հայերէն դպրութե, առաքեցին արքունի հրամանաւ զայր ոմն հաւատարիմ՝ տանել զօրինակ գտանիցելեան նշանագրաց : Այլ իբրև տեսին զայնս, համարեցին՝ թէ բաւական իցեն նոքին առ հայերէն վերծանութի, ժողովեցին մանկունս ուշիմս հրամանաւ թագաւորին, զի՝ մարզեսցին յուսումն և 'ի կիրառութիւն նոցին՝ վերակացութբ երանելւոյն մեսրոպայ :

Այլ յետ երկամեայ աշխատութե՝ տեսեալ, թէ չէ՛ մարթ նոքօք անվթար յօդել զհնչմունս հայկազեան լեզուի, և համարձակիլ 'ի յօրինուածս և 'ի թարգմանութիւնս գրոց, տառապէին և հոգային յոյժ երանելիքն : Ապա անձամբ երթեալ մեսրոպայ քանի մի աշակերտօք 'ի միջագետս, և առ արս իմաստունս խորհուրդ հարցեալ վն նոցին իրաց, իբրև անյոյս եղև 'ի մարդկային հնարից, յԱծ ապաւինեալ գլխովին՝ ընկալաւ 'ի նմանէ տեսլեամբ զկատարեալ նշանագիրս բաւականս վն ձայնից և բազմահնչիւն լեզուիս հայոց. և իսկ և իսկ առ խնդութե սրտին բուռն եհար 'ի թարգմանութի սբ գրոց 'ի յոյն բարբառոյ, սկիզբն արարեալ յառա-
կացն

կացն ստորամանի 'ի ոլորտս մանկանց դպրո-տան . և առեալ զնոյն՝ դարձ առնէր և եկն 'ի Հայս :

Զոր տեսեալ մեծին Սահակայ՝ լցաւ ան-պատմելի ուրախութը, և ծանեաւ՝ եթէ ա-րար Տէր այցելութի Հօտի իւրում . առաւ այ-նուհետեւ հաւանութը արքային եւս բանալ դպրոցս 'ի զանազան տեղիս, ժողովել ըն-տրանօք մանկունս մտավարժս, զի փութով ուսցին զՀայերէն դպրութի, և լցցի Հայաս-տան նորին գիտութը :

Յայնժամ ժողովեալ ոմանց յեպիսկոպոսաց Յոյն և 'ի վերայ Հանդերձ Մեսրոպաւ՝ եկին առ երանելի Հայրապետն Սահակ՝ յառաջիկայ-ութե արքային Վռամշապհոյ և աւագա-նւոյն, խորհուրդ 'ի մէջ առնուլ վն անյա-պաղ թարգմանութե բոլորանդակ սբ գրոց, որ միանգամ ընդունելին է առ ամ եկեղե-ցիս . և միաբան աղաչելով զսրբն՝ Հանդերձ Թէ Յերասն ասէին . Դիտեմք զշնորհս իմաս-տից պարգեւեալ Հօրդ Հաստատակաց առ 'ի Հօրէն լուսոյ . զի ոչ ոք է յաւուր յայսմիկ իբ-րև զքեզդ հմուտ ամ Հոգևոր ուսմանց, և կատարեալ 'ի գիտութիս ազգաց բազմաց . այլ և տուեալ քեզ զօրութի ճարտարութե 'ի վե-րին օգնականութենէն . վսյ և քեզ միայն ար-ժանէ զանձնդ յաշխատութի Հոգևոր, և թարգմանել զամ աստուածաշունչ կտակս 'ի Հայ բար-բառս, գործակցութը երանելւոյս Մաշտոցի՝ զոր զարթոյց ամենայնին շնորհ յայսպիսի փա-փաքելի խնդիրս : Զի որով ոք նախահաւան

քո

քո՝ կենդանի նահատակին քսի գրիգորիոս պահեալ անճառս աջով հզօրին 'ի մահաբեր տանջանս՝ պարգևեցաւ ազգիս հայոց 'ի լուսաւորութի ածգիտութե, պահեալ շնորհեցաւ և քեզ նորին շառաւիղի վիճակ ժառանգութե այսպիսի պայծառ պաշտամանս, սկիզբն առնել գործոյ մշակութես այսմիկ, և լինել նմանօղ սբ նախնոյն քում՝ ծագելով զլոյս ածային գիտութե ը համօրէն ազս հայոց. որ նմանեալ ճշգրտապէս օրինակեցեր 'ի քեզ զվարս երանելոյ հօր քո ներսեսի, և նախահօրն քո գրիգորի:

Իսկ սբ հայրապետն սահակ իբրև լուաւ զայս ամ 'ի թագաւորէն և յամ ուխտէ քահանայից, փառաւոր արար զփրկիչն ամենեցուն զտր յս քս զաղբիւրն ամ շնորհաց և իմաստութե. և 'ի նա եդեալ զամ յոյս իւր, և ոչ յանձին ինչ գիտութի, զուարթամիտ սրտիւ և կամաւոր յօժարութբ հաւանեցաւ ը առաջարկութի ժողովելոցն, յայտ արարեալ՝ թէ և իւր կամք սրտի և փափաք 'ի նոյն բերի, և ոչ խնայէ յանձին աշխատութի վն այնպիսի մեծի և կարևոր օգտի հոգւոց: Նա վստահացեալ յածային օգնականութի և 'ի ձեռնտուութի շնորհաց սբ հոգւոյն, որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս և յաւետարանս, անվեհեր ձեռն 'ի գործ առնէր՝ թարգմանել զկտակարանս ամ զհինն և զնորն, աջակցութբ մեծին մեսրոպայ, և գործակցութբ գլխաւոր աշակերտաց իւրոց՝ մանաւանդ եզնկայ կողբացւոյ,

 նախ

Նախ յաստուծոյն, և ապա 'ի յունականէն անվրէպ և անսայթաք տեսութ՟բ՝ ըն՟ ընտիր օրինակի թարգմանութ՟ն եօթանասնից ։

Այլ 'ի ժամանակի անդ թարգմանութ՟ն ա՟ծաշունչ գրոց՝ բազում և այլ հոգեպատում մատեանք ս՟րց հարց և վարդապետաց եկեղեցւոյ 'ի լոյս ընծայեցան հայերէն բարբառով և գրով 'ի ձեռն ս՟րյն սահակայ և գործակցաց ն՟ր. և լցաւ երկիրս մ՟ր հայոց գիտութ՟բ ա՟ն 'ի հոգևոր վտակաց ն՟ց հայրապետին սահակայ պարթևի իբրև զջուրս բազումս, որ ծածկեն զծովս ։ Թող և զայլ բազմաւոր գիտութեանց գիրս, և զազգի ազգի մատեանս. որովք ծաղկեցաւ հայաստան աշխ՟ ըն՟ առաջնորդութ՟բ մեծին սահակայ, և նորուն համանվաստակ ամոլակցի մեծին մեսրոպայ. զորոյ և զվարս ուրոյն տեսցես ։

Եւ եղև 'ի վախճանել բարեպաշտ արքային հայոց վռամշապհոյ՝ աղաչեցին նախարարք հայոց զն՟ր հայրապետն սահակ երթալ անձամբ 'ի դուռն արքային պարսից յազկերտի որդւոյ շապհոյ, և հաւանեցուցանել զնա, զի արձակեսցէ զկապեալն խոսրով՝ գալ և միւսանգամ թագաւորել 'ի հայս ։ Եւ ս՟րյն զիջեալ յաղաչանս նոց՟ վ՟ օգտի իւրումն հօտի՝ գնաց 'ի պարսս. և իւրով իմաստութ՟բ հաւանեցոյց զարքայն 'ի խնդիրն իւր, և այլ ևս հայցուածս առաջի արկեալ՝ ընկալաւ զա՟մն ։

Այլ յետ սակաւուց՝ իբրև մեռաւ խոսրով արքայ, թագաւորեցոյց յազկերտ 'ի վ՟ր հայ-

նէր՝ զվարդանն , զՀմայեակ և զՀամազասպ-
եանն ։ Այլ ոչ եղիս զարմանաւոր ընդու-
նելուն 'ի կողմանեան յայնմանիկ . զի բնակիչք
տեղւոյն՝ որ անդ , թէպէտև հայք էին , այլ
համարէին զանձինս լինել ընդ առաջնորդու-
թեամբ արքեպսին կեսարիոյ . և յոյն վերակա-
ցուք տեղւոյն ոչ թողացուցին մեծին սահա-
կայ և մեսրոպայ մուծանել յայնմանիկ կող-
մանս զհայերէն դպրութիւն ։
Յանձնառեալ արձակեաց մեծին սահակ զերանե-
լին մեսրոպ հանդերձ վարդանաւ և քանի
մի աշակերտօք 'ի թագաւորական քաղաքն
'ի կոստանդնուպօլիս , գրեալ թուղթ առ
կայսրն թէոդոս փոքր և առ ատտիկոս պատ-
րիարգ , զի հրաման տացեն վերակացուաց
ծխին չլինել խափան ուսմանն հովուութեան 'ի
սեպհական վիճակի անդ իւրում , որք և յա-
ռաջագոյն հայերէն ուսմանն ։ Այլ նոքա հա-
սանեալ ընդ այն՝ կատարեցին զամենայն խնդիրս
մեծին հայրապետին . և յաւելին ևս պատուով
սիրել զառաքեալսն 'ի նմանէ . զի զվարդան
կացոյց կայսրն ստրատելատ , այն է զօրա-
վար . և զինքն մեսրոպ՝ ատտիկոս պատ-
րիարգն տրար եկղեսիաստիկոս , որ էր ա-
նունն եկեղեցական պատուոյ առ յոյնս՝ ըն-
ծայեալ երևելի վարդապետաց ծաղկելոց
բանիւ և գրով ։ Ապա առեալ մեսրոպայ և
վարդանայ զթուղթ 'ի կայսերէ և 'ի պատ-
րիարգէ՝ եկին առ հայրապետն սահակ .
գրեալ էր կայսրն և հրովարտակ առ անա-
տոլիոս զօրավար՝ ընուլ զամենայն խնդիր կաթու-

զեկոսին հայոց, և միանգամայն շինել ըզ-
քաղաքն կարնոյ՝ որ կոչեցաւ Թէոդոսուպօ-
լիս. այն է էրզրում։

Սկնի սակաւուց իբրև հաճեցաւ վռամ
հաշտութիւն առնել ը՟ հայս, կոչեցին անդ-
րէն նախարարք հայոց զս՟բն սահակ. և նր՟
առեալ ը՟ իւր զվարդան սպարապետ՝ եկն
'ի վաղարշապատ. ուր միաբան հաւանութ՟բ
խորհուրդ արարեալ՝ առաքեցին առ վռամ
զվարդան ընդ սմբատայ ասպետի՝ խնդրել
զխաղաղութիւն. և վռամ թագաւորեցոյց 'ի
վ՟ր հայոց զորդի վռամշապհոյ զարտաշէս,
անուն կոչեալ նմա արտաշիր. և յանձն ա-
րար բոլորովին 'ի ձեռս նր՟ զՏ՟ն հայոց, ոչ
ևս դնելով պարսիկ զոք վերակացու. և
այսպէս վերստին խաղաղացաւ երկիրն. և
ծաղկեցաւ բարեկարգութ՟բ ը՟ն հանապազօ-
րեայ ջանից ս՟բյ հայրապետին սահակայ։
Սր և առաւել ևս յայնմ միջոցի փոյթ կա-
լաւ խորհրդակցութ՟բ համափատակ գոր-
ծակցին իւրոյ երանելւոյն մեսրոպայ զար-
դարել զեկեղեցական կարգաւորութիւնս ազ-
գիս մերոյ. և միանգամայն առաքեաց զա-
շակերտս իւր յայլևայլ գլխաւոր քաղաքս
յունաց և ասորւոց, զի որչափ ինչ օգտակար
մատեանս գտանիցեն, անյապաղ թարգմա-
նեսցեն 'ի մեր բարբառ. ո՟չ և ինքն ան-
խոնջ 'ի նոյն դեգերէր զամ՟ ժամանակս իւր.
Այսար ս՟բն սահակ և ժողով եպ՟աց 'ի վա-
ղարշապատ, և կարգեաց կանոնս պէսպէս
լի իմաստութ՟բ. և այնպէս զամ՟ հնարս հնա-
րէր

քէր արթուն հսկողութբ և հոգողութբ՝ բարեկարգ և բարեզարդ յօրինել զեկեղեցիս Հայաստանեայց ։

Իսկ Թագաւորն Արտաշիր՝ որ էր պատանի հասակաւ, եղև խենէշ վարուք, և որքան զօր յաւելու յանառակ գնացս ՚ի կործանումն ազգին. և ոչինչ օգտեցաւ ՚ի բազմապատիկ խրատուց սրբոյ Հայրապետին ։ Իսկ զի բազումք ՚ի նախարարաց Հայոց ատէին սպասէին բաժանելոյ գլխովին զմիապետ իշխանութի յՅէ իւրեանց, և տիրել ըստ հաճոյս իւրաքանչիւր իւրում գաւառի, յայնժամ ապա պատճառելով զանկարգութի Թագաւորին իւրեանց՝ խորհեցան խորհուրդ չար, մատնել զնա ՚ի ձեռս արքային պարսից ։ Վասն որոյ եկեալ առ մեծն Սահակ՝ սկսան ստիպել զնա, զի միաբանեսցի երթալ ընդ իւրեանս ՚ի Պարսս, և ամբաստան լինել զԱրտաշրէ ։

Իսկ Տր Հայրապետն իբրև գիտաց զխորհուրդս նց, որ հայէր ՚ի կորուստ ազգին և Յին, տրտմեցաւ յոյժ. և աղաչեաց զնոսա համբերել առ ժամանակ մի, և խնդրել աղօթիւք ՚ի տնէ, զի ցուցցէ նց ելս հնարից ։ Իսկ տեսեալ՝ թէ պնդեալ կան նախարարք ՚ի միտս իւրեանց, հարաւ յարտասուս, և ոչ ևս կարաց տալ պատասխանի բանից նց. այլ արձակեալ զնս յիւրմէ՝ արգել զանձն յառանձին սենեկի, և անմխիթար լայր ոչ սակաւ աւուրս զմօտալուտ կորուստ աշխարհին, քանզի տեսանէր հոգւով, թէ ոչ միայն

քան մարմնոյ վնաս մեծ ունի հասանել բա-
վանդակ ազգին, այլև ՚ի հոգւոյ:

Նա եղև յորժամ միաբանեալ ժողովեցան առ նա նախարարք, և ՚ի նոյն խորհուրդ իւրեանց ըմբռնայլին ձգել զնա, սկսաւ երանելին վերստին արտասուաթոր պաղատանօք յորդորել լինել նոցա յետս կալ ՚ի խորհրդոյ անտի, և զուն գործել՝ եթէ հնար է, ՚ի ձեռն կայսեր վճարել զդատ թագաւորին իւրեանց, և ոչ ՚ի ձեռն անհաւատ պարսից: Նաև զի ունէր նա զկայսրին՝ որք հանդերձեալ էին հասանել ՚ի վերայ նր վս այնր գործոյ. յուշ առնէր նր, թէ զամէն խորհրդով ընդունայն առնէք զխոստովանս սրբոյ լուսաւորչին և զորդւոց և զթոռանց նր, որք լուսաւորեցուցին զազգն հայոց ամենապայծառ և ամ կարգօք լաւութե:

Նա իբրև անսաստ զատան բանից երանելւոյն, յայնժամ առէ ցնա պարգևաբար. քա՛ւ լիցի ինձ միաբանել յայդ խորհուրդ ձեր, զոր գիտեմ լինել մասնաւոր ձեռնարկու հաւատոյ ՚ի ձեռս անհաւատից. զիա՞րդ հնար իցէ ինձ զիմ հօտ զմկրտեալ ոչխարն մատնել ՚ի ձեռս գայլոց, և նախատելիս զնել զքրիստոնէականն անուանն. զի թէպէտև մեղաւոր եմ, այլ զինչ հօտին քոյ յանձին ունի ծննդեանն սբ աւազանին: Նոյն եթէ էր առնել առ բժիշկ առաջի զինուորաց անդամ եկեղեցւոյ, փութայի և ոչ յապաղէի. այլ յամենախոհարարից առնէն հեթանոսաց մատնել զիմ հրեշտակակցեալ ըն հօտւոյ

զնա կաթողիկոս փոխանակ սահակայ, եթէ տացէ վկայութի չար զարտաշրէ առաջի արքային պարսից։ Եւ այնպէս գնացեալ հանգերձ նովաւ առ վռամ՝ չարախօս եղեն ըղթագաւորէն իւրեանց յաւելուածովք այլ ևս վնասուց, զոր ոչ կարէին ցուցանել. նոյնպէս և զառնէն այ զսբյն սահակայ սնուտի բանիւք պէսպէս ամբաստանութիւս յօդէին ապաշնորհք։

Յայնժամ հրաման ետ վռամ, զի կոչեսցին 'ի դուռն արտաշիր և սահակ։ Եւ իբրև հասին անդր, արտաշիր անբասիր արար զանձն առաջի վռամայ՝ ասելով. չիք իմ գործեալ ինչ ըղէմ տրուէ ձերոյ, և ոչ 'ի վնաս ձին. այլ տիրատեաց նախարարքս պատճառս իմն հնարեն ըղէմ թագաւորի իւրեանց ըս առաջին սովորութէ. զի 'ի բնէ սովոր են թշնամանել զտեարս իւրեանց։ Եհարց վռամ և զսահակ, թէ դու զի՞ ասես մր արտաշրի։ Այլ նա չէառ յանձն տալ վկայութի ինչ չար կամ բարի. զիս ինչ մր այդպիսի խնդրոց մի հարցանէք ասէ. զի ես զարտաշրի զայնպիսի ինչ փաթթարութի ոչ գիտեմ, որով արժանի լիցի դատիլ 'ի ձէնջ։ Իսկ սուրէն հազարապետն պարսից 'ի պարթևական ցեղէ՝ յորդորեալ 'ի թագաւորէ և յայլոց՝ բազմօք հնարէր հաւանեցուցանել զսահակ իբր սիրով ազգակցութէ, զի յանձն առցէ միաբան ընդ նախարարս չարախօսել զարտաշրէ, խոստանալով նմա բազում շքեղութի 'ի կացմանէ արքայի. ապա թէ ոչ՝ ասէ, 'ի բաց

զրկես

զրկիս եւ դու յիշխանութենէ քումմէ ։ Բայց սոքին ոչ իմիք ունէին մատոյց բանից նորա. զիա՞րդ հնար է ինձ ասել վ̃ս սիրոյ փառաց եւ իշխանութեան չարախօս լինել զայլմէ. եւ այն զի յանցանք նր̃ թէպէտեւ ըստ մեր մաքուր կրօնից ստգտանելի, այլ առ ձեզ չունի տեղի ամբաստանութեան ։

Յետ ա̃մի՝ քանզի կամէր վռամ բառնալ զտ̃րութիւն հայոց, իբրեւ ետես՝ զի եւ նախարարք յօժար են բառնալ զթագաւորութիւն իւրեանց, ընկէց զարտաշիր յիշխանութենէ, եւ վարեաց յաքսորս ՚ի խուժաստան, կարգել փոխանակ նր̃ ՚ի վերակացութիւն հայոց Ցին պարսիկ զոմն մարզպան՝ վեհ միհր շապուհ անուն ։ Սոյնպէս եւ զտ̃րն սահակ եդ յարգելանս, փոխանակ զի ոչ միաբանեցաւ ՚ի կամս նախարարաց. եւ կացուցեալ ՚ի տեղի նորա զսուրմակ երէց՝ արձակեաց հանդերձ նախարարօք եւ մարզպանաւ յերկիրն հայոց. եւ յայնմհետէ բարձաւ թագաւորութիւն հայոց ՚ի տանէ արշակունեաց եւ անկան հայք ընդ լծով անհաւատից ։

Եւ եղեւ յետ սակաւուց մերժել նախարարաց եւ զսուրմակ՝ խնդրեցին յարքունուստ այլ կաթուղիկոս. եւ վռամ ետ նց̃ զբրքիշոյ անուն ասորի. որոյ եկեալ զաւառակցօք իւրովք խառնակեցին արամբք եւ տանտիկնօք, սկսաւ զհետ լինել զօշաքաղութեան (որ եւ սիմոնականութիւն) ։ Յորմէ տաղտկացեալ նախարարաց՝ խորհեցան զայլ ոք դնել ՚ի տեղի նր̃. այլ բազումք եւս ՚ի բարեպաշտից [illegible]

խրա-

խրատու սրբյն մեսրոպայ և այլոց սրբ քահա-
նայից և եպսաց խնդրէին զսբն սահակ ըզ-
հայրապետ հալիւն դարձուցանել անդրէն
յաթոռն ։ Նա ՚ի գնալ պատգամաւորաց
յերկոցունց կողմանց ՚ի դուռն պարսից ,
կամեցեալ վռամայ զամենեցուն հաճել ըզ-
միտս՝ հրամանս ետ , զի զաթոռ եպսական
իշխանութե ունիցի շմուէլ ամն ասորի , որ
վատթար ևս էր քան զբրքիշոյ ․ և սահակ
նստեալ ՚ի վիճակի իւրում՝ ունիցի իշխա-
նութի վիճակելոյ , և ձեռնադրելոյ զորս մի-
անգամ թոյլ տացէ շմուէլ ։ Այլ յորժամ
արձակեաց վռամ զսահակ , տայ ցնա սուա-
ջի ատենին ․ երդմնեցուցանեմ զքեզ ՚ի քոյ-
լն հաւատ , զի միամիտ կացցես ՚ի ծառայ-
ութե մերում , և մի ինչ խորհեսցիս իրս ինչ
ապստամբութե՝ յարելով ՚ի յոյնս վն մոլար
հաւատակցութեդ ։ Իսկ սբ այրն այ յանդի-
ման կացեալ արքայի համեստ հայեցիւք և
անվեհեր հոգւով՝ սկսաւ ամոքանիւք յայտ-
նի ցուցանել զհաւատարմութի և զերախտիս
ազին հայոց առ պարսիկս , և զնց երդմնա-
զանցութիս և զխաբէաւոր գործս ընդդէմ
հայոց ։ Նաև յաւել կշտամբել ճարտար բա-
նիւք զհայհոյանս թագաւորին , որով մոլար
հաւատակցութի ասաց զմիաբանութի քրիս-
տոնէից ․ և միանգամայն ունայնացուցանել
զմոլար կրօնս դենից անմծից՝ բռ տանելոյ
հեթանոսական լաւելեացն ․ և կնքեաց ըզ-
բանս իւր հրաշալի տնօրէնութեբ սբ հաւա-
տոյս մերոյ ․ մինչև յակձիռս կալ ապշութե

ա

ամենեցուն՝ որք կային յառաջնոյ անդ. և ոչ ումեք իշխել լինէր ասել ը̃դդէմ, անձնամատնեալ 'ի պատահմանէն երևոյց ծերունազարդ. և նմանագունեաց քահանայապետին.

Իսկ թագաւորին գլխովին աքանչացեալ ընդ ճշմարտալի առաքինախօսութե̃ն սրբոյն այնպիսի համարձակութե̃ն, հրամանս տայր մեծարել ընդ նա բազում պարգևօք։ Այլ երանելին չկամեցաւ ընդունել ինչ. այլ միայն աղաչեաց զթագաւորն մի՛ իւրք իւրք օգտակարութեց Տ̃ն հայոց, առ 'ի մեծալոյս նախարարաց յիւրեանց պատուն, և չկրելոյ ինչ այլայլութիւն կարգաց Տ̃ն 'ի ձեռն պարսիկ մարզպանի։ Իսկ թագաւորն կատարեալ զա̃մ խնդիր նր̃՝ արձակեաց զնա պատուով մեծաւ 'ի հայս։

Իսկ եղև 'ի գալ սրբոյն յԾ իւր՝ անպատմելի խնդութե̃ն ընծայեցաւ ա̃մ բարեսիրաց. զի թէպէտ ոչ ևս տեսանէին զնա յառաջին կարգի իշխանութե̃ և պատուոյ, այլ անպակաս վայելէին 'ի հոգևորին վիճակէ նորա, որ բղխէր աղբիւրաբար, և զովացուցանէր զտխրաս ամենեցուն բանիւ և գործովք առաջին սովորութե̃ն. քանզի չմուել անուամբ և եթէ էր կաթողիկոս. այլ զա̃մ հոգ եկեղեցեաց յանձին ունէր սր̃ հայրապետն սահակ 'ի ծերութե̃ անդ իւրում։

Ընդ այն ժամանակս՝ մեռաւ ամաւ յառաջ քան զդարձ սրբոյն սահակայ, այն է յամի տն 431. գումարեցաւ սր̃ ժողովն եփեսոսի ը̃դդէմ նեստորի չարին. և զի 'ի նոյն աւուրս

'ի

'ի կողմանս յունաց Ձ̃ին կային տակաւին ո-
մանք 'ի Թարգմանչաց մերոց՝ աշակերտունք
Սահակայ և Մեսրոպայ, առեալ Ն̃ց զպատ-
մութի̃ւն և զվճիռ ժողովոյն՝ համդերձ ընտիր
օրինակաւ Ս̃ծաշունչ գրոց 'ի յոյն բարբառ
և այլ ևս մատենիւք, և հասեալ 'ի հայս՝
գտին զսու̃րբ Սահակ, զի այն ինչ եկեալ 'ի
պարսից՝ ժողովել էր գումարեալ յաշտիշատ
քաղաք վ̃ս բարեկարգութե̃ հօտին։ Այլ իբ-
րև մատուցին առաջի հարց զգրեանսն՝ զոր
բերին 'ի յունաց՝ համդերձ թղթովք երևե-
լի եպ̃սաց ոմանց, յայնժամ և Ն̃ք միաբան
ընկալան զսահմանս ս̃րբ ժողովոյն, և զա-
տապարտեցին զնեստոր և զհամախոհս Ն̃ր։
Այլ ապա միաբանգամ ձեռնարկեալ երանե-
լոյն Սահակայ 'ի թարգմանութի̃՝ նորոգ-
յօրինեաց զհ̃ին կ̃տ անվթար օրինակի եօթա-
նասնից՝ բերելոյ 'ի Թագաւորեալ քաղա-
քէն։ Այլ ոչ այնու շատացեալ՝ խորհրդակ-
ցութե̃բ գործակցին իւրոյ ս̃րբյն Մեսրոպայ
առաքեաց զոմանս յաշակերտաց իւրոց յա-
ղեքսանդրիա և յաթէնս. ո̃պ զի յա̃մ ուս-
մունս քաջ վարժեալ՝ լցցեն զթերին թարգ-
մանութե̃ ս̃բ գրոց և այլոց ևս մատենից
հարց ս̃րց։

'Ի նոյն աւուրս բերին 'ի հայս ոմանք յա-
ղանդաւորաց համախոհից նեստորի զգիրս
Թէոդորոսի մոպսուեստացւոյ վ̃ր̃դպին նես-
տորի, և զգիրս դիոդորի տարսոնացւոյ վար-
դապետին Թէոդորոսի, սերմանել հնա-
րիւք 'ի հայս զվ̃ր̃դապ̃ութե̃ նեստորականաց.

ո̃պ

ռնղ սերմանեցին ՚ի կողմանս ասորեստանի , և հետևողք նց կոչեցան նաստուրիք ։ Սոյն սրբն սահակ և սրբն մեսրոպ կանխագոյն տեղեկութի առեալ յայլոց եպսաց մն չարարուեստ հնարից աղանդաւորացն այնոցիկ՝ քացէ ՚ի բաց հերքեցին զմոլորութիս նոցա . քանզի ժողով արարեալ և քննեալ զմշպութիւն նախատեցեալ թէոդորի և դիոդորի՝ նզովիւք դատապարտեցին հանգոյն նեստորի . և զամ սերմանացանս ժանտութե հալածական արարին յաշխէն հայոց ։ Եւ զայս ամ գրեալ ծանուցին սրբյն պրոկղի՝ որ այն ինչ էր նստեալ յաթոռ պատրիարգութե կոստանդնուպօլսոյ . և նա ևս գովէր հաստատեաց զնախանձ բարեպաշտութե հայոց , գրելով և իւր գիր դաւանութե համաձայն նոցին խոստովանութե ։ Եւ այսպիսի զգուշաւոր արթնութի սրբյն սահակայ և որոց ընդ նմա՝ ահարկու եղոյց զեկեղեցի հայոց ըդէմ ամ աղանդաւորաց ժամանակին , և գովելի յաչս ամ եկեղեցեաց . որ և առաւել հանդիսացաւ յետ ժամանակաց , յորժամ և ընդհանուր ժողովն հինգերորդ՝ զէն յաղթողակ էառ ՚ի ձեռս ըդէմ հերետիկոսաց զզօրաւոր վկայութի ուղղադաւաննամակին հայոց առ պրոկղ ։

Ընդ այսպիսի և այլ ևս արդիւնաշատ գործովք առաքինացեալ մեծին սահակայ զամ աւուրս իւր՝ եղև սիւն հաստատութե հայաստանեայց եկեղեցւոյ , և ջահ եօթնալոյս պայծառացուցիչ տանս արամայ . և այն՝ հա-

լա

լածանօք համդերձ, որ է սեպհական կնիք ընտրութեան ընտրելոց ոք հայրապետաց և քաջ հովուաց յամ՛ի դարս ։

Եւ եղև իբրև մեռաւ Շմուէլ աթոռի՝ սուտանուն կթղկս, ժողովեալ նախարարաց առաջին սահակ՝ խնդրեին ի նմանէ ներել նոցա զչարիսն, զոր անցուցին ընդ նա. և աղաչեին յանձն առնուլ անդրէն զպատիւն առաջին՝ վարելոյ զտիրապէս իշխանութիւն աթոռոյ կթղկութեն. և խոստանային տալ ազգաւթուանց նր զայն իշխանութի ։ Իսկ օգանչելի այրն այն բազում խոնարհութբ ցուցեալ նց զանյիշաչար միտս իւր՝ ասէ. ես ոչ ուսայ յերկնաւոր վրդպէն իմմէ ի քնէ բարկանալ ումեք, այլ՝ օրհնել զհալածիչս, և բարի առնել ատելեաց. ոչ և ինքն իսկ վն խաչահանուաց աղաչէր զհայր չհամարել նց ըզմեղսն. այլ քահանայանալ ի վերայ տիրանենգ ժողովրդոց ոչ կարեմ ։ Դուք ձեզէն գիտէք, թէ զի՛արդ կործանեցիք զթագաւորութի ձեր, և առ ոտն հարիք զուխտ քահանայութեն. և ի՞նչ արդեօք հնարիք զիս մխիթարել այժմ, որ առաջի աչաց տեսանեմ զյետին վիշտս վտանգի հօտիս հայոց յերեսաց չարեաց ձերոց ։ Եւ արդ թո՛յլ տուք անցուցանել զմնացուած աւուրց իմոց աղեօք ծերութեես յողբս առանձնուէ ի վր համաշխարհական կործանման երկրիս հայոց. զորոյ զաղէտս կանխաւ եցոյց ինձ տր յառաջ քան զձեռնադրիլն իմ յեպսութի ։ Եւ ապա պատմեաց նց կարգաւ զտեսիլն՝ զոր ետես յա-

յաւուրս սարկաւագութե իւրոյ , յայտ արարեալ՝ թէ զիա՛րդ ընդ բարձման թագաւորութե արշակունեաց՝ դադարեաց և քահանայապետութիւն 'ի տանէ լուսաւորչին , որ 'ի նոյն զարմէ պարթևազանց :

Եւ նց լռեալ զայն ժմ միջամիջէ՝ ողբս առեալ լայէին անմխիթար 'ի վր անձանց և 'ի վր որդւոց իւրեանց , յիշելով և զանսուտ բան փրկչին՝ թէ հա՛րկ է գալ գայթակղութե , բայց վա՛յ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռն գայցէ : Եւ անկեալ առ ոտս սրբոյն բզմ զղջմամբ՝ աղաչէին զնա աղօթս առնել վր նց առ ած , զի հաշտ ակամբ հայեսցի 'ի վր ազգին . զոր և անդադար առնէր երանելին : Յայնժամ ընկալեալ զօրհնութի 'ի սրբոյն՝ գնացին 'ի տեղիս իւրաքանչիւր թախծեալ անձամբք . և այնուհետև ոչ կամեցան և ոչ իշխեցին դնել զոք այլ կաթողիկոս , ցորչափ կենդանի էր սրբն սահակ . որ թէպէտև տր արտաքին հանդիսի նուաստութբ կեայր , այլ ամի՛ ընդր զամ պէտս եկեղեցւոյն , և հայրագութ սիրով անպակաս ձեղոյր զհոգևորական խնամս իւր 'ի վր ամենեցուն :

Եւ յամին՝ յորում մեռաւ վռամ արքայ պարսից , և թագաւորեաց յազկերտ երկրորդ՝ դառն հալածիչ քրիստոնէից , 'ի վրդովմութեն հայոց՝ առանձնացաւ սրբն սահակ 'ի խարին ծերութե 'ի գիւղն կոչեցեալ բլուր կմ գիւղ բլրոցաց 'ի բագրևանդ գաւառի . ուր և հասեալ երանելւոյն 'ի կէտ կոչմանն յառաջին ամի անդ յազկերտի , ըի աւուրբք և

որ

արդեամբք՝ խոր և հասունացեալ բազմաւոք ցորեան ամփոփեցաւ 'ի շտեմարանս երկնից արքայութե՛, փոխեալ առ անձկալին իւր Ք(րիստո)ս՝ յամի փրկչին . 440 . 'ի վերջին աւուր ամսեանն. նաւասարդի, որ և իններորդ օր սեպտեմբերի, յորում աւուր ծնեալ իսկ էր . այն՝ որ մահկանացու ծնեալ՝ անմահ զիւրն եթող յիշատակ՝ յետ կալոյ յաթոռ հայրապետութե՛ հանդերձ հալածանօքն՝ ընդ ա̃մ ամն . ծա̃ . և եղեն ա̃մ ամք կենաց նր̃ աւելի քան զհարիւր . ըս̃ ոմանց՝ իբր հարիւր և քսան :

Իսկ զպատուական մարմին ս̃ր̃յն բարձեալ սարկաւագապետին նր̃՝ որում անուն էր Երեմիա, և այլոց աշակերտաց՝ որք յայնժամ գտան առ նմա, հանդերձ ուխտիւ եկեղեցւոյ և բազմութ̃բ ժողովրդեան տարան և թաղեցին պատուով 'ի կալուած սեպհական ժառանգութե̃ նորին յաշտիշատ տարօնոյ . այլ զա̃մ ծախս հանդիսի յուղարկաւորութե̃ արար բարեպաշտ տիկինն մամիկոնեանց դստրիկ, որ և դստրիկ կոչեցեալ, կին մեծին վարդանայ սպարապետի թոռինն ս̃ր̃յն սահակայ : Նա 'ի տեղւոջն՝ ուր թաղեցին զմարմին ս̃ր̃յն, կանգնեցին եկեղեցի մեծապայծառ՝ զարդարեալ մեծագին սպասուք . շինեցին և առընթեր վանս կրօնաւորաց . և տօն սահմանեալ ամըստամէ կատարէին անդստին . և որք հաւատով գային 'ի յիշատակ ս̃ր̃յն, գտանէին առողջութի̃ յիւրաքանչիւր ցաւոց իւրեանց :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Որ ինչ կարեւոր բանք իցեն 'ի քննութիւն եւ 'ի հաստատութիւն վարուց սրբոյն սահակայ, առաջիկայք ընթերցողս 'ի պատմութիւն հայոց, եւ յայլսիւր անդր նորին 'ի գիրս խորենացւոյն, կորեանն, փարպեցւոյն. եւ որոց շինի. միայն սատանօր յաւելցուք զքանի մի հետաքննին դիտելիս եւ զվկայութիւնս։

Ցանկ խորենացւոյն. Գ. 49. զսրբոյն սահակայ (յաղքան վկայութիւնն) թէ * ստացաւ աշակերտս ,, վաթսուն ըստ նմանութեան մայրաքաղաքացն սպուդէից||, ամէն այսպէս, եւ ոմն այնպէս կարող է իմանալ եւ մեկնել. այլ ըստ իմում տեսութեան սպուդէն է առաքանութիւն յունական ձայնիւս ըսպուտի՝ (որ է ըստ լատ. ըստուդիոսուս.) զի է փոյթ. յորմէ ըսպուտէօս (ըստ լատ. ըստուտիօզուս) նշանակէ փոյթեռանդն, ժրաջան, իբրեւ կոչումն սեպհական կրօնաւոր եւ առաքինի ճգնաւորաց հանդոյն հարց սկիտացւոց. վասն եւ մայրաքաղաքն կամ զերեւելի քաղաքաց զվանս 'ի մէջ բերէ աստ, կամ զհոյակապ վանորայս՝ որ մայրավանք եւս կոչէին։ Եւ կարի քաջ հաւանական էր յաւուրս Թարգմանչաց մերոց 'ի կոստանդինուպօլիս վանիցն ակումիտաց, զի անքուն կոչեցելոց, որ եւ անհանգստից վանք. նոյնն կոչէր միանգամայն եւ վանք սպուդէից կամ սպուդիտգաց. ուստի եւ լին անձինք երեւելիք. թող զի ոճ 'ի գիրս եւագրի կրօնաւորութեան կոչի նաեւ ըսքուտի, նոյնպէս եւ 'ի վարս հիլարիոնի կոչի 'ի հերոնիմոսէ սպուտիումն։ Հ. ոչ հայեցեալ 'ի յեռանդաջան պատմութիւն խորենացւոյն՝ յաւուրս կաթուղիկոսութեան սրբոյն սահակայ պատմէ ստանալ նմա զվաթսուն աշակերտս խստակրօնս. իսկ Ծ. շփոթութեամբ անուան՝ սրբոյն մեսրոպայ ընծայէ զնոյն։

Միաբան ցուցանեն պատմութիւնք խոր. կոր. փարպ. եւ, թէ սուրբն սահակ յերկար կենօք ապրեցաւ. այլ որոշակի չյիշեն զթիւ ամացն. միայն թովմա արծրունի բացայայտ գրէ. * Կեցեալ սուրբն սահակ ամս ՃԺ.
,, փոխի յՏէր 'ի կարգս հրեշտակաց. եւ տարեալ հան-
,, գուցանեն զնշխարս սրբոյն յաշտիշատ տարօնոյ 'ի տե-
,, ղոջ վկայարանի սրբոյն յովհաննու մկրտչին եւ աթանա-

„ գինի վկային ||։ Այս չէ մեզ դժուարահաւատալի, յետ գիտելոյ թէ նստաւ ՚ի կաթուղիկոսութեան ամս ծա. և ՚ի նստելն ոչ էր արգեօք պակաս քան զվաթսնամեայ, հայելով ՚ի հանգամանս պատմութեանց. մինչ ոչ պակաս քան զհարիւրեմեան երևի վախճանեալ. բայց ձե ա-ռել չտան մեզ թոյլ ժամագիրք. ըստ որոց թուականք ժողովոյն Նիկիոյ և Եփեսոսի՝ հանդերձ ամօք կայսե-րաց ժամանակին ճշդեալք՝ անփոփոխելիք են ։

Կարևոր է լսել զբանս կորեանն ձեռասուն աշակերտի սրբոյն Սահակայ. թէ որպիսի հանգամանօք նկարագրէ զփոխումն և զթաղումն սրբոյն. (զոր մեք ըստ ոճոյ խորե-նացւոյն համառօտեցաք). * Ելեալ այնուհետև (ասէ)
„ դէպ լինէր նմին ճշմարտութ̄ երանելւոյն Սահակայ,
„ լցեալ աւուրբք, երկայն ժամանակօք, և վայելչա-
„ ցեալ ծերութեր պարզոյն բարութբ̄ք, յառաջնումն ամի
„ յազկերտի որդւոյ վռամայ թագաւորի կացելոյ ՚ի
„ պարսից Տէրն, ՚ի բագրևանդ գաւառի ՚ի գիւղ բլրո-
„ ցաց, ՚ի կատարել ամսեանն նաւասարդի, ած̄ և զօր
„ ծննդեան երանելւոյն յիշէին, յերկրորդ ժամու ա-
„ ւուրն, ՚ի պաշտաման առաւօտու խաղոյն, հանդերձ
„ մեծահանճոյ աղօթիւք՝ ծերութեանն ՚ի քս̄ աւանդեալ.
„ հայեցեալ ՚ի մարգարէին՝ որ ասէր, ՚ի ձեռս քո
„ յանձն առնեմ զհոգի իմ. և առաքելոյն երանելւոյ
„ որ ասէր, Տէր յս̄ ընկալ զհոգի իմ. ըստ նմին օրինակի
„ և նա պատրաստեալ զանձն և զմնացեալս ամենապահ
„ չնորհացն տր̄ ։ Զոր և առեալ վարդապետի ամ̄ հան-
„ դերձեալովք՝ ձեռնասուն մեծամեծ պաշտօնէիցն իւ-
„ րոց. որոյ գլխաւորին Երեմիա անուն ճանաչէր՝ այր
„ նք և բարեպաշտօն, հանդերձ մեծամեծ իշխանակք-
„ նաւ միով՝ որ անուանեալ կոչէր Գուտար, որ էր կին
„ վարդանայ՝ զոր ՚ի վերնոյն յիշեցաք, և բարձեալ ամ-
„ բոխին սր̄ց ժողովոց, բարձեալ զսր̄ն սաղմոսիւք և
„ օրհնութբ̄ և հոգևոր բարբառով, յետ սակաւ ինչ
„ աւուրց՝ Է. օրէ և Է. գիշեր ՚ի տարօն համաւցանե-
„ ին մինչ ՚ի բուն խակ գիւղն յաշտիշատ. և անդ ՚ի մար-
„ տիրոսականն խորանին յարկեղ սր̄ցն հանդերձ ամ̄ ա-
„ նուշահոտ խնկօք եդեալ, և կնքել ք̄աւնկան կնքովն.
„ և զօրինաւոր յիշատակն ՚ի մի կատարեալ, այնու-
„ հետև իւրաքանչիւրն գաւառայինն. որոց և նոյնպէս
„ ամի ամի գումարելովք՝ ՚ի նոյն ամսեանն՝ զնորին յիշա-
„ տակն տօնախմբեն ||։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Պիոնի քահանայի, և որոց ընդ նմա վկայեցին զմիւռնիոյ ։ (1)

Հ. մարտ. 23 ։ Յ. մարտ. 11 ։ Լ. փետր. 1 ։ Ճառընտ. Ա. ՇԼԷ. և Պ. ամսոց ։ Բոլլանդ. յունհ. հատ. Բ. փետր. 1. եր. 37 = 46 ։ Հռուինարդ. 116 ։ Եւսեբ. պատմ. եկեղ. Դ. 14. հան. 15 ։ Մետափր. և այլք ։ (2)

ԱՌԱՔԵԼԱՆՄԱՆ ԱՅՐ և առաքինի վկայն քնի պիոնիոս, որ և պիոն քահանայ, էր մի ՚ի գլխաւոր երիցանց եկեղեցւոյն զմիւռնացւոց (այժմ իզմիրու, որ ՚ի յոնիա փոքուն ասիոյ), յերրորդ դարու, ըն հողուով և զօրաւոր բանիւ վ̃դպութե. որով դարձոյց զբազումս ՚ի հրէից և ՚ի հեթանոսաց ՚ի ճանապարհն ճշմարտութե. և եղև ամ̃ հաւատացելոց՝ որ ՚ի զմիւռնիա, հաստատութի ՚ի կրօնս բարեպաշտութեան, և առաջնորդ ՚ի վարս բարիս օրինակաւ իւրով, և առաւել քաջալերէր ՚ի համբերութի հալածանաց, որ յարեաւ ընդդէմ քրիստոնէից յաւուրս դեկոսի կայսեր ։

Նա եղև զի աւուրբք միով յառաջ ք̃ զտօն յիշատակի սրբոյն պօղիկարպոսի զմիւռնոյ հայ-

րապետին (3), մինչդեռ 'ի պահս էր երանե-լի Երեցն պիոնի՝ հանդերձ նոքօք որ ընդ նմա էին 'ի տան, ծր եկն կին մի խոստովանող սա-բինա անուն (4), և այր ոմն քնտաւէր ասկղե-պիադէս կոչեցեալ, յայտնեցաւ պիոնի 'ի տեսլեան, եթէ պարտ է ձեզ ըմբռնիլ յան-հաւատից 'ի վաղիւն անդր յաւուր կատարման պօղիկարպոսի, որ կոչիւր օր մեծի շաբա-թուն: Յայնժամ յարուցեալ պիոնի՝ պատ-մեաց զտեսիլն սաբինայ և ասկղեպիադեայ, և առեալ անուրս երկաթիս էարկ 'ի պարա-նոց իւր և նց. զի մի 'ի տանել զնս դահճացն արձակ՝ կարծիցէ ոք, եթէ իբրև զայլս եր-թան ճաշակել 'ի պիղծ զոհից, այլ զի տես-ցեն ամենեքեան՝ եթէ սահմանեալ են խա-կոյն 'ի բանտ տանել զնս վս անուանն քսի. վս զի զբազումս 'ի տկարամտաց որսացեալ էին անօրէնք յաւուրսն յայնոսիկ 'ի հաղբա չարին. և էր ուրախութի մեծ անհաւատից, և սուգ անհնարին 'ի վր հաւատացելոց: Եւ այնպէս կային միայնին պիոնեանք 'ի տան՝ յաղօթս ապաւինեալ զգիշերն ողջոյն մինչև ցլուսանալ առաւօտուն, և ոչինչ ճաշակեալ 'ի շաբաթուն՝ յորում հաղորդեցան նք. խոր-հրդոյն, բայց միայն հաց և ջուր: Եւ ահա եկն եհաս 'ի վր նց պողեմոն մեհենապետ հանդերձ պաշտօնէիւք, որք կարգեալ էին խնդրել և ձգել զքրիստոնեայս, զի զոհես-ցեն և կերիցեն 'ի պիղծ կերակրոցն: Եւ ա-սէ ցնս մեհենապետն. Գմ իրօք գիտէք ըզ-հրամանն կայսերականին, որպէս հրամայէ ձեզ

զո-

զոհել ա͞ծոցն ։

Պիոնի եւս այլոյն քահանայ , և ասէ · մեք գի-տեմք զպատուիրանսն ա͞յ , յորս հրամայէ մեզ նմա միայնոյ երկրպագանել ։ Իսկ պողեմոն ասէ · եկայք 'ի հրապարակ , և անդ հաւա-նեսջիք ստուգութ͞ե բանիցս , և հաւանեալ հնազանդեսջիք ։ Իսկ սաբինա և ասկղեպիա-դէս ասեն · մեք ա͞յ կենդանւոյ հնազանդիմք · և առեալ տանէր զն͞ս ոչ բռնութ͞բ · ը͞ն նո-րին կալան և զլեմնոս երէց , և զկին ոմն կա-րինացի մակեդոնիա անուն ։

Իսկ մինչդեռ գնային երանելիքն , տեսեալ զն͞ս ամբոխին՝ զի շղթայս ունէին , խուռն ընթանային զհետ ն͞ց իբրեւ 'ի հանդէս ինչ չքնաղ տեսարանի · և իբրեւ եկին 'ի հրապա-րակ թատրոնին 'ի յարկ սրահին արեւելից դրանն , լցաւ ա͞մ ատեանն և դատիկոնք յար-կացն հեթանոսօք և եբրայեցւովք , կա-նամբք և մանկտւովք · քանզի պարապ էին և հրէայք ամենեքեան վ͞ն աւուր շաբաթուն , (որ ը͞ս ոմանց ասի լինել մեծ շաբաթն զատ-կի) · Արդ յորժամ կացուցին զկապեալսն 'ի մէջ , խօսել սկսաւ պողեմոն · բարւոք է ով պիոնի հաւանել ձեզ և զոհել , որպէս բա-զումք հաւանեցան · զի մի՛ չարաչար տանջի-ցիք , այլ ապրեսջիք ը͞ս օրինակի ն͞ց ։

Յայնժամ՝ պիոնի ձգեալ զձեռն յամբոխն լուրջ երեսօք՝ պխնի առնէր վայելուչ աստ-նախօսութ͞բ այսպէս · Արք՝ որ 'ի գեղեցկու-թ͞ե և 'ի զուարճութ͞ե զմիւռնիայ յօրանայք , և 'ի քերթուածս մեղեդեաց քաղաքակցիդ ձե-

րոյ հոմերոսի՝ ոչ ասի՝ պանծանայք, և որք միանգամ՚ ի հրէից էք ձեզ եղեն այժմ, ամենեքեան դիք սակաւ բանիցս՝ զոր խօսելոցս եմ։ Ո՛ հանդիր լսեմ, եթէ խնդամտիք, յորժամ ՚ի մերոցս զոք ՚ի ձեզ ձգէք, և անդէն ստահար լինիք ՚ի վերայ ուրացողացն՝ ծաղր առնելով զկործանումն նոցա, և խաղ համարիք զվրէպ նոցա զոր կամաւ զոհեցին։ Պարտ էր ձեզ ոչ հեշտանացիք անսալ վարպետին ձերոյ հոմերոսի, որ խրատն տայ, եթէ չէ բարւոք խնդալ է մահ ուրուք, և ՚ի վերայ մեռելոյ ոտն հարկանել (5). և ձեզ ոչ հրէայք՝ լսել մովսէսի, որ հրամայէ, եթէ տեսցես զգրաստ թշնամւոյ քո անկեալ զբեռամբ, ոչ զանց արասցես, այլ յարուցանելով յարուսցես զնա. նոյնպէս և սողոմոնի՝ որ ասէ. եթէ անկցի թշնամին քո, մի խնդար. և ՚ի գայթակղիլ նորա մի բարձրանար։ Այլ և ես խնդրեմ վարդապետին հաւանեալ՝ մեռանել ընտրեմ մանաւանդ՝ քան անցանել զբանիւք նորա. և ջանամ չփոխել զոր ուսայն նախ, և ապա ուսուցի։ Այլ արդ զո՞վ ծաղր առնել յօժարեն հրեայք ՚ի պատճառս յանցաւորութեան, ժամանակ առեալ համարձակութեան յաւուրս տառապանաց քրիստոնէից. զի թէև թշնամիք նոցա եմք՝ ոչ ասենն, այլ մարդիկ եմք. և կամ զի՞նչ չէասեալք ՚ի մէնջ՝ զբամբասեն զմեզ. զո՞վ ոք զրկեցաք, զո՞վ ոք ապականեաք, զո՞վ ոք կռապաշտել ուսուցաք. Այլ թէ իշխեսցեն արդեօք հաւատարել զյանցանս ոմանց ոմանց ՚ի մերայոց՝ որք վասն երկիւղի մարդկան

վեր-

վրիպեցան 'ի հաւատոյ, և չարիս իւրեանց ծանրագոյնս յոյժ յոյժ. զի այնչափ առաւել է նոցայն, որչափ կամաւորն մեղք քան զակամայն ։ Ո՞վ ոք արդեօք ստիպեաց զՀրէայս նուիրել զանձինս բէլփեգովրայ, և զոհել դիւաց զուստերս և զդստերս իւրեանց, և յայլ ևս ազգի ազգի չարիս մտաբերել, մինչ ի խստապարանոց գտեալ և անսաստ յանձակոյս կողմն անդր. այլ ընթերցցի՛ն զելսն և զգիրս դատաւորացն և զԹագաւորացն, և զայլն ամ՝ որովք յանդիմանին վ՜ս կամակար ապիրատութեանն, զոր գործեցին ։

Այլ թէ և զոմանս 'ի մէնջ ինքնակամ խոտորեալս տեսանելով՝ վասն նոցա զամենեսեան ստգտանեք, համարեցարո՞ւք զմօտակայ իրաց կալոյ նման լինել. ո՞ր չեղջ 'ի կալն մեծ իցէ. յարդի՞ն, եթէ ցորենոյն. ապաքէն յորժամ մշակն հեծանոցաւն սրբէ զշեղջն, յարդն վ՜ն զի թեթև է՝ դիւրաւ 'ի հողմոյլին օդոյն այսր անդր տարուբերի, իսկ ցորեանն անդէն մնայ ։ Տեսէ՛ք և զուռկանս՝ որ 'ի ծով արկանեն. մինթէ զամ զոր ժողովեն, պիտանի՞ է. նոյնպէս և յորդիս մարդկան ընտրութիւն լինիցի ։ Արդ ո՞րպէս կամ է ձեզ համարել զչարչարիլն մեր. իբրև զարդարո՞ս, եթէ իբրև զանիրաւս ։ Եթէ իբրև զանիրաւս, զի՞արդ ոչ դուք որ առաւել անիրաւ գտայք, 'ի նոյն իսկ 'ի գործոցդ յանդիմանեալք՝ զնոյն չարչարիք. ապա եթէ իբրև զարդարս, զի՞նչ յոյս ունիցիք դուք՝ յորժամ արդարքն այսպէս չարչարիցին. զի թէ

արդարոյն հաղիւ կեայ, ամպարիշտն և մեղաւորն ո՞ւր գտանիցի. քանզի դատաստան այ կայ 'ի վերայ ծի, և կայ մնայ մարդկան կրել զփոխարէն չարեացն իւրեանց. յանտիս կմ յաստիս հրով և ջրով և այլ արկածիւք: Եւ զայս հաստատեն մեզ և արդիւնք իրաց՝ որք երևին 'ի վր երկրի: Նամ իսկ երթեալ, և շուրջ եկեալ Ը ամ հրէաստան, տեսի 'ի սահմանս նր զնշանակս բարկութեն այ, որ եղև 'ի նմ վն մեղացն. երկիր 'ի հրոյ աճիւնացեալ՝ անբաւ յամ պտղոց, և բնութի ջրոյ տկարացեալ առ ոչ ևս կարելոյ կենդանի ինչ սնուցանել: Եւ զի՞ ասեմ վն հեռաւոր վայրացն այնոցիկ. դուք իսկ պատմէք վն հրոյն, որ ցոլանայ 'ի յետնէ՝ որ 'ի սիկիլիա, և յայլ կղզիս. և եթէ այն ևս հեռի է 'ի ձէնջ, հայեցարո՛ւք 'ի տեղիս ջերմկաց ջուրց՝ որ յերկրէ պղպջակէ. և իմացարո՛ւք, եթէ ուստի լուցանի և կմ ուստի ջեռնու, եթէ ոչ էր 'ի ներքոյ զօրութի հրոյ՝ հաւասար երկրայինս բոցոյ: Պատմին և հրայրեացք և ջրհեղեղք ծի. ո՞չ այն՝ զոր դուք առ դևկալիոնաւն ասէք, և մեք առ Նոյիւ. զի 'ի ձեռն մասնաւոր նշանացս զհասարակացն ծանիցուք աղէտս յաւուրն ահեղի:

Մեք վկայեմք ձեզ վն հանդերձեալ դատաստանացն, որ լինելոցն է յայ հրով 'ի ձեռն բանին իւրոյ. և վն այնորիկ զոճսն՝ որ 'ի ձէնջ ասին, ո՛չ պաշտեմք, և պատկերին ոսկւոյ կըկիր ո՛չ պագանեմք. զի մի՛ շարժեսցուք ըդէմ. մեր զհաստատութեն աստուածութէ ճշմարտին այ:

Յայս

Զայսպիսի ունկն դնէին նմա պողեմոն մե-հենապետոն և գործակիցք նր̃ և ա̃մ ամբոխն անշշուկ լռութ̃. այլ իբրև լուան զվերջին ապացուցած ս̃քյն, ոչ ևս թոյլ ետուն նմ̃ խօ-սել. զի մի առաւել ծանուցեսցի հեթանո-սութիւն, և բարձրասցի կողմն ճշմարտուէ ։ Ապա բերեալ զպիոն և զորս ը̃ նմա 'ի յար-կաց անտի 'ի մէջ անդր թէատրոնին, և շուրջ պատեալ զնոքօք ոմանց 'ի գլխաւորացն հեթանոսաց հանդերձ պողեմոնիւ, աղա-չէին և ասէին. հաւանեաց մեզ պիոնիէ, և ապրեցո զանձն քո, զի սիրեմք զքեզ. և զայս խորատ տամք քեզ, զի կեցցես. քանզի և բազում իրօք արժանի ես կեալ՝ բարի բա-րոյից քոց աղագաւ և հեզութեէդ և իմաս-տութեէդ. մինչ ո՞չ բարւոք են կեանքս այս և լոյս. ընդէ՞ր զրկես զքեզ 'ի կենաց աստի և 'ի տեսոյ քաղցր արեւուն ։ Բազում և այլ ինչ ասէին բանս թախանձանաց ։

Իսկ պիոն ասէ. և ես ասեմ, թէ բարւոք են կեանք, այլ այն՝ որում մեք ցանկամք. բարի և լոյս, այլ զոր տենչամքն տեսանել. բարւոք են և այս ա̃մ երևելիքս. և մեք ո՛չ եթէ մահու ցանկացեալ եմք և փախչիմք յարարածոցս ա̃յ, այլ վ̃ն առաւելութե ևս մեծամեծացն արհամարհեմք զայս. և զձեզ իսկ գովեմք 'ի պատուական սիրելութ̃ զմեզ վասն վայելից կենաց, այլ կասկածեմք 'ի դաւա-ճանութենէդ, որ առիթ կորստեան է, և 'ի յաւիտենից կենաց զրկէ զմեզ. զի և ո՛չ այն-չափ վ̃նաւ յայտնի թշնամութի՝ որչ̃ գաղտ-նի

Յայնմ վայրի աղեքսանդրոս ոմն այր գուե-
հիկ և ժամատաբարոյ՝ լրբութեամբ յառաջ մա-
տուցեալ ասէ. լուր մեզ ով պիոնիէ: Ասէ
սրբն. քեզ պարտ է յինէն լսել. քանզի զոր
դու գիտես, ես քաջ գիտեմ. այլ զոր եսն
գիտեմ, դու բնաւին անգիտանաս: Իսկ ա-
ղեքսանդրոսի ծաղր արարեալ զանուրն՝ որ
՚ի պարանոցին պիոնի, ասէ. այդ զի՞նչ է:
Պիոնն ասէ. այդ է նշանակ, զի գիտասջիք՝
եթէ ոչ ՚ի հարցփորձ անգամ մտանել ար-
ժան համարիմք, այլ դատել մեզէն՝ պատ-
րաստ եմք ՚ի բանտ երթալ, և ոչ ՚ի բախ-
տանոցն ձեր ՚ի տեղի պաշտամանց զոհիցդ.
և զի ՚ի տեսանել զանուրս ՚ի վերայ մեր ոչ բռ-
նաբար յափշտակեալ տանիջիք զմեզ, այլ
թողջիք ազատաքայլ բերել ՚ի հանդէս վկա-
յութեան. և դարձեալ այս հնարք գեղե-
ցիկ են չմտանել երբէք ընդ սեամս մեհենից
ձերոց. քանզի կարծեմ թէ կապանօքս հան-
դերձ ոչ մուծանէք զմեզ առաջի կռոցդ:
Իսկ իբրև այսպէս պատասխանեցաւ այրն, դար-
ձեալ որ շուրջն կային՝ ողոքանօք աղաչէին
զպիոն, զի հաւանեսցի զոհել: Իսկ ՚ի մեր-
ժել նորա զնոսա՝ ասէ մեհենապետն պողեմոն.
եթէ ոչ կամիս զոհել, գոնեա ՚ի բախտա-
նոցն եկ: Ասէ պիոն. այլ չէ օգուտ կռոցն
քոց, թէև անդր եկեսցուք: Պողեմոն ա-
սէ. հաւանեցո մեզ զբանդ զայդ, և կամ դու
մեզ հաւանեաց: Իսկ սրբն ասէ. իցէ՞ թէ կա-
րէի հաւանեցուցանել զձեզ քրիստոնեայս

լի-

Նոյն յորժամ արգելան 'ի բանտի սուրբ վկայքն, բազումք 'ի հաւատացելոց հաճեցելով զբան-տապանաւ՝ գային առ նոսա և բերէին զպէտս նոցա : Նաև երանելին պիոն ոչ հրամայէր առ-նուլ ինչ · քանզի ասէր · եթէ արտաքոյն՝ յորժամ շատ ինչ պիտոյ էր, չեղաք ումեք ծանր, և այժմ զիա՞րդ առնուցումք՝ յորժամ սակաւ ինչ պէտք են : Ընդ որ դժուարեալ բանտապահացն՝ ոչ ևս կամեցան գութ ինչ ցուցանել նոցա, այլ արկին զնոսա 'ի ներքսագոյն բանտ, զի մի՛ գտցեն յումեքէ զողորմութիւն : Նոյն նոցա փառաւորեալ զԱստուած՝ ուրախութեամբ դա-դարեցին 'ի խորագոյն արգելանս, շատ հա-մարել և զսովորական ոգեպահն՝ զոր տայ-ին նոցա · մինչև զզջանալ բանտապետին, և կամիլ փոխել զնոսա 'ի տանէն : Այլ նոքա չա-ռին յանձն · փա՛ռք ասեն Աստուծոյ · լաւ ևս է մեզ աստէն դադարել · և եղև այն նոցա բարի · քանզի հեշտեաւ էր նոցա յառանձնութեան անդ-ընթեռնուլ և յաղօթս կալ 'ի տուէ և 'ի գիշերի :

Բայց գային ստէպ բազումք 'ի հեթանո-սաց որք բարեկամք, և ջանային հաւանե-ցուցանել զնոսա · և լուեալ զպատասխանիս պիոնի երիցուն՝ զարմանային : Մտանէին և ուրացողք ոչ սակաւք, որք յակամայս է-ին բռնադատեալ յանօրէն օրէնս · և սուգ առեալ լային 'ի վերայ անձանց և ընկերաց · մանաւանդ որք յառաջին աւուր երկիւղածք և 'ի բարի վարս վկայեալք էին · մինչև լալ պիոնի, և ասել · Նորօրինակ տանջանօք

տան-

տանջիմ, յոչ յոչ կոտորիմ, տեսեալ զմար-
դարիտս եկեղեցւոյ ՚ի խողից կոխան եղեալ.
զաստեղս երկնից ՚ի տանոյ վիշապին յերկիր
քարշեալ. զորթն զոր տնկեաց աջն այ ՚ի
կնջէ անտի ապականեալ. այժմ և զայն
կթեն անցաւորք ճանապարհի ։ Որդեակք
իմ, զորս դարձեալ վերստին երկնեմ, մին-
չև նկարեսցի քս ՚ի ձեզ. փափուկք իմ գնա-
ցին զճանապարհս խիստս. լցեալ քն ՚ի սե-
ղանոյ տն սովամահ կորնչին. ոչ սով հացի,
և ոչ ծարաւ ջրոյ, այլ սով լսելոյ զբանն
տն. այժմ համանն ՚ի խնջոյս է, և եսթեր
և ամ քաղաքն խռովի. լսեմ թէ իւրաքան-
չիւր ոք և զմերձաւոր իւր մատնէ. զի լցի
ասացեալն, մատնեսցէ եղբայր զեղբայր ՚ի
մահ. արդեօք խնդրեաց զմեզ սատանայ
խարբալել իբրև զցորեան. և հրեղէն հե-
ծանոցն ՚ի ձեռս բանին է որքել զկալն. և
կարծեմ թէ անհամեցաւ աղն, և կոխի ՚ի
մարդկանէ ։ Բայց մի ոք կարծեսցէ որդ-
եակք իմ, եթէ տկարացաւ տրն. այլ մեք ։
Մ՞իթէ ձեռն իմ առէ ո՞չ կարէ փրկել. և
կմ ծանրացաւ ունկն իմ, զի մի լուիցէ. այլ
մեղքն ձեր որոշեն ՚ի մէջ ձեր և այ ։ Բա-
զում և այլ բանիւք խրատէր և յապաշխա-
րութե յորդորէր զամենեսեան. և զգուշացու-
ցանէր զհաւատացեալս զգոյշ լինել ոչ մի-
այն ՚ի սուտ կրօնից հեթանոսաց, այլև ՚ի
հրէից դաւաճանողաց ։

Յետ այսորիկ իմացեալ պետնի, եթէ գա-
լոց են միւսանգամ հանել զնա ՚ի բանտէ

հան-

համդերձ ընկերօքն, և սովորել 'ի զոհել, փութայաւ արձակեաց զորս եկեալ էին 'ի տես նր, և քաջալերէր առանձինն զընկերս իւր՝ ոչինչ երկնչել յանօրինաց ։ Այլ ահա հասին 'ի վր նց մեհենապետն Պողեմոն, և զօրագլուխն այրուձիոյ Թէոփիլոս՝ դահճօքն համդերձ և բազում ամբոխիւ, և ասեն ։ Ահա գլխաւորն ձեր Եւկտեմոն զոհեաց ։ արդ երէք եկայք 'ի մեհեանն, և հաւանեցարուք և դուք 'ի զոհել ։ և կամ դատեցարուք անողորմ առաջի իշխանաց, յորոց մի է այժմ և Եւկտեմոնն այն ։ Ասէ ցնս Պիոն ։ որք 'ի բանտ արկան հրամանաւ բդեշխին, պարտ է նց մնալ անդ, մինչև նա հանել կամեսցի կամ 'ի բանտէ, և կմ 'ի կենաց մարմնոյ ։ դուք զի՞ զձեզ 'ի նր գործ արկանէք ։

Այս նց յամօթ եղեալ՝ չոքան առ ժամն ։ և դարձեալ եկին՝ ունելով ը̄ իւրեանս զնուիրակապետն բդեշխին, առ 'ի տանել զնոսա բռնութբ 'ի մեհեանն ։ և ասեն ցնս նենգաւ ։ բդեշխին յղեաց պատուիրակս, զի յեփեսոս երթիցէք ։ Պիոն ասէ ։ եկեսցէ առաքեալն, և առցէ զմեզ ։ Իսկ զօրագլուխն ասէ ։ այլ նուիրակապետս՝ որ աստ, պատուական ազգն է ։ Զայս ասացեալ բռունս եհար զպարանոցն սրբյն, և պնդեաց այնչափ՝ մինչև փոքր մի ևս և հեղձուցանել զնա ։ և ետ ցդահիճսն ։ Նոյնպէս կալաւ և զընկերս նր որ 'ի բանտին ։ և ասաց բերել զամենեսին ը̄ իւր 'ի մեհեանն ։

Իսկ

Իսկ երանելիքն իբրև ելին 'ի հրապարակն, մեծապարգևս աղաղակէին՝ եթէ քրիստոնեայ եմք. և չկամեցեալ երթալ 'ի մեհեանն՝ 'ի քարշ անկանէին. իսկ դահիճքն բռնանային բառնալ զնոսա և տանել. այլ առաւել ևս 'ի վ(ե)ր պրկանի աշխատ լինէին. քանզի մեց դահիճք ոչ կարելով տանել զնոսա ուղղորդ մտ 'ի քարշ անկանելոյն՝ մերկացեալ ունէին զխլիխպայր. և նա ծեծէր աքացի զկողս նց. և նորա գերլուլին զոտս նց: Մածին այնուհետև զսէսն վերամբարձ, և եդին առաջի բագնին 'ի գետնի. ուր տակաւին կայր 'ի մէջ իշխանաց եւկտեմնն (և պլոկոպոս), որ այն ինչ զոհեալ էր կուոց. և բռնի ստիպէին և զպիղծեանս զոհել. և ոչ կարէին առնել տալ զոր կամէին: Յայնժամ ասեն ցնա իշխանքն. ընդէ՞ր ոչ զոհէք. և նք ասեն. մո.զի քրիստոնեայք եմք:

Մաէ լեպիդոս գլխաւոր իշխանն ցպիոն երէց. զո՞ր դու պաշտես. պիոն ասէ. զայն՝ որ արար զերկինս և զերկիր և զամ ինչ: Լեպիդոս ասէ. զխաչեա՞լն ասես. ասէ պիոն. զոր առաքեաց հայր 'ի փրկութի աշխի. զնոյն և ընկերք նր. միաձայն դաւանէին: Իսկ լեպիդոսի ծաղր արարեալ զնոքօք՝ անէծ և անպատմելս ասաց երանելեացն: Յայնժամ մր քահանայն պիոն մեծաձայն աղաղակեաց 'ի մէջ ատենին. յամ պաշտութէ պատկառեցէք, զարդարութե պատուեցէք. օրինաց ձերոց զհետ երթայք՝ զոր ընկալայք 'ի թագաւորաց. զի՞ զմեզ խոշտանգէք իբրև զանս.

զանհաւանս, ուր դուք անսասան էք նոցին հրամանաց. տանջել հրամայեցայք, և ոչ բռնադատել. զի՞ զմեզ բռնի ձգէք ՛ի պաշտել զսնոտիս։

Լակ մի ոմն ՛ի Ճարտարացն՝ որոյ անուն մեծ էր ՛ի Ճարտարախօսութեան, և ՛ի վեր էր պատուով քան զբազումս, Ռուփինոս անուն նր̄, ասէ. լուեալ պլի՛նիէ, և մի՛ սնապարծ մտօք յանդգնիր։ Նա պատասխանի հզօր նահատակն, և ասէ ցնա. մինչէ զայդ այդպէ՞ս ուսոյց քեզ դպրագիտութիւն քո. ա՞յդ են գիրք քո, ա՞յդ են պատմութիւնք քո. ո՞չ ապաքէն և սոկրատէս յաթենացւոց չարչարեցաւ վ̄ս մերժելոյ զսնոտիս. ո՞չ նոյնպէս հանդիսացան ՛ի ձերում միջի և արիստիդէս արդարն կոչեցեալ, և անաքսարքոս աբդերացի. և որ այլ ևս համգոյն նոցին յիմաստասիրութեան և յարդարութեան և ՛ի ժուժկալութեան կրթեալք. գուցէ այդ ձերդ իմաստունք սնապարծ մտօք վարեցան. և որ յայժմուս անիմաստք և տգէտք՝ հեղգասիրտք և թուլամորթք՝ մնացիք համարին։

Նու իբրև կարկեցաւ այրն Ճարտարաբան, այլ ոմն ՛ի Ճոխաց և ՛ի գլխաւորաց ասէ. մի՛ աղաղակեր պլի՛նիէ, և մի՛ բանիւք կարծեր յաղթահարել։ Նա պատասխանի երանելին. և դու մի՛ ՛ի գործս անարժանս զմեզ բռնադատեր. այլ արա՛ ը̄ մեզ՝ զոր կամիս. հո՛ւր վառեա, և մեք մեզէն մտանեմք։

Յայնմ վայրի տերտիոս (կի̄ տերենտիոս) ոմն յամբոխէ անտի աղաղակեաց, և ասէ.

դիտէք՝ զի այրդ այդ է, որ զայլս ևս յորդո-
րեաց, զի մի՛ զոհեսցեն. ապա թէ ոչ՝ նոքա
դիւրաւ անսային մեզ: Օ այս լուեալ բազ-
մութեն՝ լրբութեն բերեալ դնէին պսակս ՚ի
գլուխս նց, զի յանձն առցեն պատուասի-
րել զդիս: Իսկ նոքա բուռն հարեալ ՚ի բաց
ընկենուին, և աղաղակէին, քրիստոնեայ
եմք: Այլ երբև չկարէին ինչ առնել նոցա՝ ա-
ռաքեցին զնն դարձեալ ՚ի բանտն. և ՚ի ճա-
նապարհի ամբոխն հեթանոսաց խաղ առ-
նէր զնոսա և հարկանէր. և այնպէս ածան
՚ի բանտն. և մտեալ ՚ի ներքս՝ փառաւոր
առնէին զած, զի հաստատուն մնացին յա-
նուն տն, և ոչ յաղթեաց նց թշնամին:
Այլ յետ բազում աւուրց անցանելոյ դէպ
եղև ըստ սովորութեն՝ որ աւուրց յաւուրս, գալ
բդեշխին ասիացւոց յեփեսոսէ ՚ի զմիւռ-
նիա. որում անուն էր կոնտիղիանոս ան-
թիհիւպատոս. և տեղեկացեալ անցիցն ան-
ցելոց՝ կոչեաց զպիոն առաջի իւր տեսանել
զվերջին դատ նորա. եհարց զնա, և ասէ.
զի՞նչ կոչիս: Նա ասէ. պիոնիոս: Այլ ասէ
ցնա. զոհեա՞ս: Պիոնս ասէ. ո՛չ: Ասէ իշխանն.
զո՞ր աղանդ ունիս, և զի՞նչ գործ է քո: Պա-
տասխանի ետ սբն. զուղղամիտ վարդապե-
տութիւն ունիմ զկաթողիկէ եկեղեցւոյ. և
կաթողիկէ եկեղեցւոյ երէց եմ: Իշխանն
ասէ. դու ես վարդապետ նց: Սբն ասէ.
այո՛, ուսուցանեմ զոր ուսայ ՚ի ճշմարիտ
վարդապետէն իմմէ ՚ի քսէ: Ասէ իշխանն.
յիմարութեն ուրեմն վարդապետ էիր: Պա-

լեալ, այլ 'ի կենդանի ձեռն տայ իմմէ երկն-
չիմ: Նա ետ ցնա. փութա՞ս 'ի մահ. պիոնի եւ.
այո՛ տամ իրօք, փութամ յայն մահ՝ որ է ինձ
կեանք: Նզգեաշխին ասէ. ոչ մեծ ինչ իրս
առնես փութալովդ 'ի մահ. քանզի և որք
յանձն առնուն զրկել ը պաղանամարտիկս՝
վա՞ս գոյզն լուսաւորյնց արհամարհեն զմահ, և
կռուին ը պատերազմաւ. և դու ես իբրև զմի 'ի
նոցանէ. արդ մեն զի փութաս 'ի մահ, կեն-
դանութիւն ատրեցիր: Ո այս ասացեալ հրա-
մայեաց զրկել զդատաւորիք մահու 'ի վերայ
պիոնի. և դպիրն գրեաց զվճիռն հռովմայե-
րէն՝ ընթերցաւ 'ի լուր ամենեցուն ըստ ձայնոյ
հռովմայեցւոց այսպէս. Ո պիոնիոս՝ վա՞ զի
քրիստոնեայ ասաց զինքենէ լինել, հաճոյ
եղև հրամայել կենդանւոյն այրել: (6)
Յայնժամ վաղվաղակի եւ յառաջարեղն ե-
րանելին պիոն մեծաւ յօժարութբ և լի հա-
ւատովք. և հասեալ 'ի տեղին՝ ինքնին մեր-
կացաւ զհանդերձս իւր. և հայեցեալ ընդ-
ոծ և ը պարկեշտ մարմին իւր՝ լցաւ ուրա-
խութբ, գիտելով՝ եթէ կայ մնայ նմա ըզ-
գենուլ զհանդերձն անապականութե: Եւ
դարձեալ հայեցաւ յերկինս, և գոհացաւ
զայ՝ որ այնպէս անարատ պահեաց զնա. և
ապա պարզեաց զինքն 'ի վ͞ր փայտին, և ետ
զինքն բևեռել դահճին. քանզի սովորութի
էր 'ի փայտ հեղուսել՝ զորս կամէին այրել:
Իսկ իբրև բևեռեցաւ, բազմութին աղաղա-
կէր և ասէր. ապաշաւեա՛ պիոնիէ, և առ-
ցեն 'ի քէն բևեռսդ: Իսկ սա՛ն ասէ զու՞ար-

Թուլթիւ. ամենևին չզգացի՝ եթէ ընաւ ի-ցեն յիս բևեռք։

Այլ կանգնեցին այնուհետև զերանելին, և բերեալ կուտեցին փայտս շուրջանակի, և լուցին։ Այլ իբրև բորբոքեցաւ բոցն, պիոն եխից զաչսն. և բազմութեան թուէր՝ եթէ եհան զհոգին։ Իսկ նա 'ի ծածուկ յաղօթս կայր. և յորժամ եկն 'ի կատարած աղօթիցն, եբաց զաչսն զուարթալից երեսօք 'ի մէջ վառեցելոյ հրոյն. և լսելի բարբառով ասաց զամէնն. և առ նմին յանձն արարեալ զանձն 'ի ձեռս տն՝ ասէ. տր յս ընկալ զոգի իմ։ Այլ զոյգ ը բանիցն իբրև յանոյշ խորրոտ կաց լիութէ մեղմով զգայութեալ՝ այնպէս արձակեաց զոգին. և կատարեցաւ անյաղթելի վկայութիւ, արժանացեալ լուսեղէն պսակին յերկնաւոր հանդիսադրէն. որոյ և պսակն յաղթութե յայտնի եղև ամենեցուն 'ի ձեռն սքանչելեացն. քանզի յետ շիջանելոյ հրոյն տեսին զտեսիլ նր տմ եկեալ քն 'ի տեղի անդր՝ վարդափայլ կարմրացեալ իբրև զքաջ նահատակի, որ ելանէ զուարթածաղիկ դիմօք 'ի մրցարանէ, և լոյս սքանչելի երևէր ծագեալ յերեսաց նր. ոմն գրեն ականատես անձինքն յեկեղեցւոյն զմիուռնայւոց՝ որք աւանդեցին զայս վկայաբանութի, եթէ * մեք՝ որ առաջինկայ էաք, այնպիսի „զնա տեսաք‖։ Յորմէ և եղև քրիստոնէից առաւել հաստատիլ 'ի հաւատս, և անհաւատից մեծաւ երկիւղիւ գնալ 'ի վայրեն։

Գործեցաւ այս 'ի հիւպատոսութե քայիոսու՝

սի՝ (7) յերրեքշաբաթի աւուր (զոր այլք ընդ թեռնուն՝ յաւուր շաբաթու) ՚ի տասներորդ ժամու, որ օր մետասան էր (ըստ այլ օրինակի՝ երկոտասան) մարտի ամսոյ, յամի տն իբր 250։ Ըստ նմին օրինակի կատարեցան և այլ ընկերք նմին, զորոց զանուանս ՚ի վեր անդր յիշեցաք. և այլք ևս՝ (ըստ ոմանց հինգ, կմ վեց) որոց անուանք գրեալ են ՚ի դպրութեան կենաց։ (8)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Ընթուն պիոնի քահանայի (որ յոմանց վրիպակաւ գրի պիմոն,) ՚ի սովորական օրինակս տօնացուցից ձեռ" և տպ" երկիցս եդեալ տեսանի. նախ՝ ասա ՚ի միջոցս առաջաւորաց ԶԷ մարկոսի արեթուսայ եպսի ԼՆ. և երկրորդ, զկնի երկրորդ կիրակէի վերափոխման։ Այսմ պէսպէս պատճառք մարթին լինել. առաջինն այն է. զի շփոթութի է ՚ի զանազան օրինակս նաև ԶԷ այլ անուանց տօնելոց ԶԷ պիոնի յերկուս տեղիս ևս. զի ոչ նոյնչափ և ոչ նոյնանուն սրբք երկրորդին. զի մեծաւ մասամբ հնագոյն օրինակք դնեն ասա զերիս միայն. զպիոն, զմարկոս, և զկիւրեղ սարկաւագ. իսկ ՚ի յետին օրինակս առ հասարակ կցեալ են և աբդաւ, որմզդան, սային, և բենիամին։ Իսկ յետ վերափոխման, ուր հասարակօրէն դնին երեք անուանք՝ * պիոնի քահանային, և սանեփաննոսի ուլնեցւոյն, և աբդլմսեհի վկային ||, յօրինակս ինչ չիք անուն պիոնի, և յօրինակս ինչ պակասի անուանն միոյ կմ միւսոյ ՚ի հետևորդ սրբց. վսյ դիւրին է յայսպիսի շփոթութենէս լինել և կրկնութեան պիոնի յերկուս տեղիս։ Երկրորդն է այն, զի աբդաւն՝ որ է ուղիղ ընթերցուած անուանն ասորանոյ ԶԷ պիոնի, յոչ սակաւ օրինակս գրի աբդլմսեհ. որ կրկնեալ կայ իբրև ՚ի բուն տեղւոջ նաև ԶԷ սանեփաննոսի ուլնեցւոյ. յորմէ երևի՝ թէ ՚ի կամելն ոմանց բառնալ ասոսի զվրիպակ անուանդ աբդլմսեհ, և


դնել

գնել յերկրորդ անուամբ, փոխադրեալ են կրկնութք և զանուն պիոնի: Բայց եղեալ՝ թէ խորհրդով իցէ կրկնութիւն, ունիմք տալ այլ պատճառ կրկնին. զի կամ գիտէր ինչ նշխարաց լեալ իցէ նորին անդ (զորմէ չէք ինչ յիշատակ), և կամ կայցէ այլ ոք համանուն՝ մեզ անգիտելի. զոր և այլք յիշատակեն, թէպէտև տարակուսանօք:

Քանզի 'ի Հերոնիմեան անուանեալ վկայագրութե համմայեցւոց այսպէս գրի աստանօր 'Ի ԺԷՓՐ. 1. * 'Ի կա-
,, ղանդս փետրվարի, 'ի զմիւռնիա քաղաքի յիշատակ
,, պօղիկարպոսի եպս, պիոնի, գիոնեսիոսի, և այ-
,, լոց վեցից. գարձեալ պիոնի, և այլոց հնգից ||: Ուր բոլլանդեանք ոչինչ իշխեն որոշել. այլ միայն զպէսպիսութիւն այլոց վկայագրաց իւրեանց յաւել առնեն ասելով. յէրէ". 40. * Բազում վկայագիրք (լատինաց-
,, ւոց) 'ի վեր անդր յիշատակեն՝ պիոնի փառաւոր
,, վկայի ընկերս համարին թուով հնգետասան: Այլ
,, ոչ սակաւք, և այն գրեթէ յանուն ուսուարդայ մա-
,, կագրեալք՝ երկոտասան ևեթ հաշուէեն: Հին վկա-
,, ագիրն հռովմայ (հերոնիմեանն)... զերկոսին յան-
,, ուանէ յիշէ, զգիոնեսիոս ը այլ վեց անձինս, և ըզ-
,, միւս պիոն ընդ հինգ ընկերս. ոչ թէ ոչ ամենեքին
,, 'ի միասին, այլ 'ի զանազան աւուրս կմ 'ի տեղիս,
,, և ցուցէ նաև այլևայլ օրինակաւ մարտիրոսութե
,, կատարեալ իցեն: Ոչ այլուրեք լինի յիշատակութի
,, այսր երկրորդ պիոնիոսի կմ պիոնի, և կմ պենի ||:
Ուր յայտ է թէ այս բանք ոչինչ օգտեն մեզ 'ի հաստատել զպիոն երկրորդ, այլ առաւել զմի միայնն լինել ցուցանեն. որպս և վկայաբանութիւն է միոյ ևեթ պիոնի: Այլ թէ որպէս հանդիպեալ իցէ կրկնութե անուան պիոնի 'ի հերոնիմեան օրինակի՝ համաձայն կարծեցեալ կրկնութե նոյն անուան 'ի մերում տօնացուցի, թէպէտև գիպուած ոք համարեսցի պատահական, այլ ինձ երևի այլ պատճառ քաջայայտ. իբր զի որպս ունիս տեսանել 'ի յաջորդ ծանօթութե, 'ի համաձայն բանից եւսեբի կեսարացւոյ 'ի վաղուց հետէ շփոթութիւն էր առ վկայաբանս՝ թէ արդեօք պիոն քահանայ 'ի ժամանակս պօղիկարպոսի իցէ. եթէ միով դարու զկնի. և զի հերոնիմոս 'ի քրոնիկոնն եւսեբի եդ յիւրմէ զպիոն ը պօղիկարպոսի, և վկայաբանութիւն պիոնի յայտ առնէ զնա բազմօք յետոյ լինել քն զպօղիկարպոս, 'ի հերոնիմեան վկայաբանութե ըս կր-
կին



# ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

Սրբոյն Մարկոսի խոստովանող եպիսկոպոսին Արեթուսայ. և նահատակութիւն սրբոյն Կիւրղի սարկաւագին. և որոց ընդ նոսա: (1)

Հ. Մարտ. 23: Յ. Մարտ. 30: (Լատ. Մարտ. 29:) Ձայնաքնն. Ա. ուղղ: Բռնաւորութեանն (Հեթանոսին. և քաջերոր) . Ի 29. Մարտի. Հայ. Զ. Եր. 774 = 778: Կիր. Տծաք. Ճաշու. Զ. որ և ա ընդդէմ յաւուրխանոսի: Թուղթոբերթ. պարմ. Եհեղ. Զ. 6 և 7. Սաղմ. Ծ. 10: Թեւերխանեա, և այլք:



# ՄԵԾՆ Ի ԽՈՍՏՈՎԱ-

նողս քնի, և բազմաչարչար նահատակն Մարկոս՝ էր եպիսկոս արեթուսայ քաղաքի ՚ի կողմանս երկրին ասորւոց՝ յաւուրս մեծին կոստանդիանոսի կայսեր, նախանձախնդիր քրիստոնէական հաւատոյ, և յանդիմանող մոլորութեան կռապաշտից. որ և զօրաւոր բանիւք յաղթահարեալ զպաշտօնեայս ամպարշտութեան ՚ի սահմանս վիճակին իւրոյ՝ զբազումս ՚ի հեթանոսաց էած ՚ի սէր հաւատոյ, և զհաւատացեալս անարատ պահեաց յամ խաբէութեանց դիւց սնոտեաց: Աւերեաց և զմեծանկարոյց և զհռչակաւոր տաճար կռոց՝ որ կայր յարեթուսայ քաղաքի, և զամ բագինս կործանեաց.

Յերկարեաց երանելւոյն մարկոս յեպսութե իւրում նաև յաւուրս կայսերութեն որդւոցն կոստանդիանոսի ։ յորում ժամանակի յուլիանոս՝ որ էր յազգականուէ ինքնակալաց, խնդրեցաւ ՚ի խնդրակաց՝ որք կամէին կորուսանել զամ զարմ նր ։ և զի յուլիանոս ապաւինեալ էր յերկիրն աստուց առ քահանայս և եպսուն՝ պահել զնա ՚ի վտանգէն, ոչ գիտելով նր զհանդերձեալ ուրացութի և զչարութի նր՝ առին և պահեցին զնա ը սր սեղանով իբրև պաշտօնեայ եկեղեցւոյ ։ մի էր ՚ի սոցանէ և մարկոս եպս ։ և սակայն ումեղև յանդէտս ազատարար, ՚ի նմանէ կրեաց յետոյ զհալածանս և զչարչարանս ՚ի ծերութե իւրում ։ (3)

Վանզի յորժամ եհաս յուլիանոսի թագաւորել, ապստամբեալ նր ՚ի սբ ուխտէ քրիստոնէութե՝ ուրացաւ զփրկիչ իւր, և եղև չարագև արքանեակ չարին ։ և սկսաւ մաքառիլ ընդդէմ քրիստոնէութե, մանաւանդ թէ ընդդէմ քի որդ դերաքն, այն իսկ է նեռն ։ և զամ ձիգն և զփոյթ իւր դարձոյց յանօրէն կռապաշտութի և ՚ի հեթանոսական պղծութի ։ Յայնժամ համարձակուի առեալ հեթանոսաց՝ որք զօղեալ և ամօթապարտեալ կային, յայտնեցին զպատրուճակեալ չարութի իւրեանց ։ և յայտնապէս հեղին յամ տեղիս ՚ի վր հօտին քի զմթերեալ թոյնս դառնութե ։

Շինէին անգրէն աներկիւղ բագինս և տաճարս կռոցն ՚ի հրամանէ ուրացողին յուլիա-

նոսի, և կանգնէին անդրիս և պատկերս դիւաց՝ անուանեալ ղծոցն. և շաղախէին միւսանգամ զերկիր արեամբ զոհիցն, և պղծէին զօդս ձենձերօք և ճարպով ողջակիզայ ձօնելոյ ՚ի ձեռն դիւանուէր քրմաց։ Այլ զորս միանգամ գտանէին հաւատացեալս ՚ի տէր մեր յս քս, անարգէին և թշնամանէին; կռփահարէին և խոշտանգէին. և ըղբաղումս ևս չարաչար տանջանօք սպանանէին. և էր այնուհետև խուճապ տագնապի և նեղութն անհնարին ՚ի վր դասուցն հաւատացելոց։

Այլ զի համբաւ երանելւոյն Մարկոսի Արեթուսացւոց եպսի հասեալ էր ՚ի լսելիս անօրէն թագաւորին, մանաւանդ զի յուշ արարին նմա մատնիչք բազումք ՚ի հեթանոսաց զմծ գործս Մարկոսի՝ որ առ Կոստանդիանոսիւ, հրաման ետ և զնա ունել ընդ այլ կալանաւորս իբրև զմի ՚ի նշանաւոր թշնամեաց դիցն. և տանջել զնա մահուչափ տանջանօք, զի կամ ինքնին շինեսցէ զմեծ մեհեանն Արեթուսայ՝ զոր կործանեաց, և կամ տացէ զգինն նորա։

Բայց երանելւոյն իմացեալ զխորհուրդ չարութն անօրինաց, լաւ համարեցաւ ըստ աւետարանական հրամանին խոյս տալ առ ժամանակ մի յերեսաց նց. վնյ փութացեալ անկայանապատ տեղիս։ Այլ իբրև լուաւ, եթէ անհաւատքն զայլս ոմանս կալան փոխանակ նր, և մատնեցին ՚ի ձեռս դատաւորաց, յարուցեալ փութայէս ինքնակամութեն ելե-

տանն, և ասէ . եթէ զիս խնդրէք, թոյլ տուք այլոց երթալ յազատութիւն ։ Իսկ նք̃ իբրև տեսին զերանելին եպ̃սն, զարմացան ը̃ անակնկալ եկն նր̃ . և փոխանակ մեղմանալոյ՝ առաւել 'ի մոլեգնութիւն դարձան . զի ոչ կարծէին, եթէ անձամբ համարձակեսցի նա գալ երևիլ նոցա . մինչ զայրագնեալք 'ի վ̃ր նր̃ իբրև կատաղի շունս և իբր արիւնարբու գազանս, կրճտէին զատամունս՝ ծարաւեալք արեան նր̃ . և զգալուստ նր̃ արհամարհութիւն վարկուցեալ անձանց՝ գրոհ ետուն միաբան 'ի վ̃ր եպ̃սին մեծամեծք և փոքունք, ազնուականք և գռեհիկք . կըռփէին հարկանէին, յայսկոյս յայնկոյս ձգձգէին . և ապա կապեալ չուանն զոտիցն՝ գետնաքարշ ածէին ընդ պողոտայս, ոչ 'ի պատուական ալիսն խնայելով, և ոչ 'ի պատկառելի առաքինութիւն ակնածելով ։

Յետ այսորիկ ածեալ զնա 'ի հրապարակ՝ մերկացուցին, և սկսան նորանոր տանջանօք չարչարել զերանելին, վիրաւորելով և խոցոտելով զն̃մ մարմինն թշնամանօք ։ Խողովեցին և զմանկունս 'ի դպրոցաց, և հրամանն ետուն նոցա երկաթի գրչաւ ծակոտել զգագաթն սբ̃յն . և ն̃մ առեալ եդին զնա 'ի տապատ մի, և կախեալ 'ի բարձանց՝ կապելով զականջացն բարակ չուանօք, որք կըռրատէին զունկն նր̃, ձօձէին իբրև յօրօրոցի, այսր անդր խաղացուցեալ . և մերթ ը̃ մերթ դադար տուեալ՝ շուրջ պատէին զնովաւ, խաղային գրչօք և խոցոտէին չարաչար . մին-

չև վիրալից և կիսամեռ արարեալ՝ թողին զնա. և գնացին . և այնպէս արկաւ 'ի բանտ . ուր նա ուրախութեամբ գոհանայր զԱստուծոյ :

Յետ այսորիկ յաւուր միում կիւրակէի հանին զնա և զայլ ևս երանելի կապեալս վասն անուանն քրիստոսի, և երկաթի բևեռօք հեղուսին զոմանս 'ի վերայ խաչաձև կամ ձողանիշ փայտից, և զայլսն հանին 'ի կախաղան, ի-որս և զսրբ. եպսն Մարկոս, եդեալ 'ի մէջ զամբիւղաց կամ ցանցից հիւսելոց խոշոր և լայն աստարիզօք . և էին մարմինք վկայիցն օծեալ մեղու և իւղով : Եւ եդև 'ի տօթաժամու 'ի սաստկանալ տապոյ արեգակնակէզ միջօրէին, մինչդեռ կախեալ էին նահատակքն քրիստոսի 'ի բարձրաւանդակի, յայնժամ ժողովեցան 'ի վերայ մարմնոց սրբոցն ամենայն չիթօղ պիծակք և մեղուք, գոռեխք և շանաճանճք . և կեղեքեցին և քանցեցին զանդամս նոցա . զի մինչև յոսկերս հասուցանէին զխայթուածս և զվէրս ցաւոց, և մորմոքեցուցանէին զնոսա . մինչև յողորմ գալ և քարասիրտ անձանց 'ի գութս եղելոց :

Իսկ երանելի հայրապետն Մարկոս զուարթութեամբ կայր և յայն տանջանս, և քաջալերէր զնահատակակիցսն . և յոչինչ համարեալ զչարչարանս ամենայն՝ ողբալի զչարչարօղսն ցուցանէր, ասելով առ նոսա . աւադիկ ես բարձրացեալ կամ, և զձեզ տեսանեմ 'ի վերայ երկրի իբրև վայրանկեալս . որով և զվիճակ երկրաքանչիւր կողմանն 'ի միտ առնում, թէ ո՛ր բարձրութիւն ինձ պատահեալ կայ յերկինս,

և

և որ կործանումն ՚ի խորս վն ձեր համանդերձ
բռնաւոր առաջնորդաւ ձերով ։
Նա սկսաւ սրբն եպսն աղօթել ձայնակցութբ երջանիկ վկայակցաց իւրոց, և ասել այսպէս. տէր այ. յս քս արարիչ ամ արարածոց, և պարգևիչ սրբոց քոց վկայից, որք վն անուանդ քո մեռին և ահաւորի եւսուն զանձինս իւրեանց ՚ի մահ զանազան և դառն տանջանաց, և կատարեցին զընթացս իւրեանց համբերութբ, և արժանի եղեն ժառանգորդ լինել երկնային պսակացն. դու նոյն ինքն տէր մեր և փրկիչ յս քս արժանի արա և զմեզ նոցին բարեխօսութբ հաղորդս լինել անմահական բաժակին, և նոցին համբերութեն և ժառանգութեն երկնային ուրախութեցդ. և ընդ նոսին փառաւորել զհայր և զորդի և զսբ հոգին յաւիտեանս. ամէն ։
Նաև դատաւորն իբրև գիտաց զանփոփոխելի միտս սրբոցն, ետ իջուցանել զնս ՚ի կախաղանէն, և հրամայեաց բերել առ ինքն զեպիսկոպոսն, և տանջել զնա մահակօք՝ պահանջելով ՚ի նմէ զսակ ոսկւոյ և արծաթոյ, զի շինեսցեն զբագինս և զմեհեանս կռոց զաւերեալսն ՚ի նմէ ։ Նա պատասխանի հայրապետն, և ասէ. փոխանակ ոսկւոյ և արծաթոյ զանձն իմ ետու ՚ի ձեռս ձեր. զի այլ ոչինչ ունիմ, և ոչինչ պարտիմ հատուցանել ։ Բարկացաւ դատաւորն, և ասէ. ոչ դու էիր, որ առ կոստանդիանոսիւ կործանէիր զարձանս ածոցն, և քակէիր և այրէիր զբագինս նց, և եկեղեցիս և մատրանոցս

շինէիր. և արդ յուրասատ կաս և խաղ առ-
նես, և չհատուցանես զպարտսն Այ հրամա-
նի քաջի արանց յուլիանոսի : Ասէ երանե-
լին. վն աւերելոյ զբագինսն և խորտակե-
լոյ զպատկերս անուանեալ ածոցն՝ խոստո-
վան լինիմ, թէ արարի, և ոչ ուրանամ. զի
ածասէր ինքնակալին հրամանաւ ոչ միայն
ես գործէի զայն գործ, այլև յոլովք զնոյն
առնէին. և որ իշխանութի ունէր՝ ոչ ցաս-
եաւ, այլ առաւել հաճեցաւ՝ զի բարձցին սը-
նոտիք յերկրէ. և ոչ ածքն ձեր կարացին
հատուցանել չար փոխանակ չարի իւրեանց.
և արդ ը ձեր անմտութիդ յոյժ զարմացեալ
եմ, որք կռոց վրէժխնդիր ամբարձայք. զի
ածք որ զերկինս և զերկիր ոչ արարին, կո-
րիցեն 'ի ներքոյ երկնից :

Բռնաւորն ասէ. եթէ ոչ անկեալ երկիր
պագանիցէք մեծի ածյն հերակլեայ և զո-
հիցէք, ո՛րպ ինքնակալն և ամենեքեան որ 'ի
նմ կամս են, և 'ի խորհրդական ողջակէ-
զացն ոչ ճաշակիցէք, յես չարաչար և 'ի
դառն տանջանս մատնեցից զձեզ: Սբն ա-
սէ. ո՛րպ առնէր հրաման, և ո՛րպ կամիս, տան-
ջեա՛ զիս. և վաղվաղակի առաքեա՛ զիս առ-
այն՝ որում ցանկացեալն եմ. և թերևս
վարձս առցես վն իմ 'ի ածնէ, և եկեսցես 'ի
խաւարէ մոլորութե քո 'ի լոյս ճշմարտութե.
ապա թէ ոչ՝ գիտեա՛, զի ո՛չ եմ լսելոց
քեզ :

Յայնժամ տեսեալ դատաւորին՝ թէ արհա-
մարհեալ է առաջի նր մահն, ոչ կամեցաւ

տան

տանջանս մահու տալ նմա, այլ հրամայեաց տանել զնա և զընկերս նր̃, և դնել 'ի ներքնում բանտին, և պնդել զոտս նց̃ 'ի կոճեղս. և խնուլ զլուսանցոյց բանտին` զի զլոյս մի տեսցեն, և փակել զդուրս զգուշութ̃բ։ Ապա յետ բազում աւուրց անսուաղ մնալոյ նց̃ 'ի բանտին` հրամայեաց հանել զնոսա, և բերել զառաջեաւ. և դարձեալ հարցփորձ առնէր, եթէ հաւանի՞ն զոհել։ Ապա իբրև ոչ առին յանձն, հրաման ետ ծածկաւոր առնել զընկերս երանելոյ եպ̃սին 'ի խորս ջուրցն. և այնպէս վկայեցին նոքա 'ի քս̃, որ օր քսան էր յունվարի ամսոյ։

Իսկ զծերունի եպ̃սն առաքեաց կապանօք առ յուլիանոս, որ էր յայնժամ յարևելս 'ի մօտակայ գաւառսն (Թերևս յանտիոք ասորւոց)։ Ապա նա դարձեալ հարցեալ զնա, և ը̃ բազում չարչարանօք արկեալ` զարմանայր ը̃ համբերութ̃ի սբ̃յն, և ը̃ մեծ յոյս քրիստոնէից։ Յետ այնորիկ իբրև ետես զանպարտելի միտս սբ̃յ վկային, կամէր կարճել զնա 'ի կենաց. այլ զի մի տացի նմա պատիւ մարտիրոսութ̃ե, արտաքսահման արար զնա պատճառանօք 'ի հեռաւոր կղզիս արևմտական ծովուն. զի անդ ասէ յանձանօթս մեռցի. և զի մի ոք տեսեալ զհամբերութ̃ի նր̃` նախանձաւոր լիցի գործոց նր̃. դարձեալ ասէ` զի մի գուցէ գալիլեացիքն առցեն 'ի պատիւ զնշխարս ոսկերաց նր̃։ Ապա այնպէս յետ աւուրց կատարեցաւ բարի խոստովանութ̃ե երանելի եպ̃սն 'ի քս̃։

Ըստ այսմ օրինակի կատարեցան 'ի նոյն աւուրս և այլ բազմութիք քրիստոնէից պէսպէս տանջանօք և աքսորանօք. այլ երևելի գըտաւ 'ի նոյն պանծալի վկայն քրի որ սարկաւագն կիւրեղ. վասն և յանուանէ տօնախմբ-բի. զորմէ առաջի կայ մեզ ասել:

Սա էր 'ի հեղիուպօլիս քաղաքէն՝ որ յերկրին փիւնիկեցւոց մօտ 'ի սահմանս լիբանանու, փայլեալ բարեկրօն վարուք առաքինութե յաւուրց անտի մեծին կոստանդիանոսի. և ամենայնիւ նախանձու վառեալ ըստ օրինակի մարկոսի եպսին՝ բազում տաճարս կռոց եր քանդեալ, և զբագինս խորտակեալ: Զայն յուշ առնէին ամենամարտին յուլիանոսի անօրէն հելլենացիքն, և բորբոքէին իբրև զհրատ բոցոյ 'ի վերայ սարկաւագին. վասն որոյ և նա հրամայեաց ունել զկիւրեղ, և մատնել 'ի ձեռս քրմաց. զի որպէս և կամին՝ վրէժս առցեն 'ի նմանէ: Իսկ նոքա ըմբռնեալ զերանելին՝ սկսան ազգի ազգի խոշտանգանօք լլկել զնա. յիշեցուցանէին զոր ինչ գործեաց նա ընդ նոսա և ընդ պաշտամունս նոցա յաւուրս համարձակութե քրիստոնէից. և սաստէին զնա ուրանալ զքս և զոհել, ոչ զի մարթասցի ազատանալ. զի այսպէս հրաման էր ասեն ինքնակալին մեր յուլիանոսի. Պատասխանի ետ որ սարկաւագն կիւրեղ արութբ քաջութե, և ասէ. մեք ոչ ամենայն հելլենացիք, զարարածականացս և զամենայն թագաւորի զհրամանս ոչ կատարեմք; մանաւանդ զուրացողի. որ զճշմարիտն ած թողեալ

վճար՝ զտարերս իմ խոստովանի, և 'ի նոյն մոլորութե̃ հնարի և զայլս խարդաւանել . այլ զանմահ թագաւորին փութամք պահել զհրամանս և զպատուիրանս . որ ասէ, թէ՝ որ ուրանայցէ զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի հօր իմոյ՝ որ յերկինս է : Ասեն ցնա անօրէնքն . և արդ ոչ կամիս առնել զկամս արքային մերոյ : Ասէ նա . ոչ : Ասեն ցնա քուրմքն . գիտեա՛, զի վ̃ս յամառութեդ քո զանոնագոյն տանջանս պատրաստեմք քեզ, ո̃պ և որոց յամառեալ են իբրև զքեզ : Սիւրեղ ասէ . թէպէտև 'ի տանջանաց ձերոց մեռանիմք զառժամանակեայ մահս, այլ անստուերին հասանեմք լուսոյ, և յաւիտենականն և անվախճան կենացն լինիմք ժառանգորդք, զոր խոստացաւ ա̃ծ սիրելեաց իւրոց :

Զայս լուեալ անօրէն քրմացն և հեթանոսացն՝ լի եղեն սրտմտութ̃, և արկին զնա 'ի հասարակաց բանտն . մինչև խորհեսցին թէ զի՞նչ արասցեն ը̃ նա : Յետ սակաւ աւուրց ածին անօրէնքն զառաջեաւ զերանելին . և կրկին հարցափորձեալ՝ իբրև գտին զնա հաստատուն 'ի քս̃, ասեն ցնա . բազում հեզուե̃ և մարդասիրութ̃ թագաւորին մերոյ՝ որ առ քեզ եղեն, ոչ ածին զքեզ յուղղութ̃, և ոչ դարձար 'ի նանիր խորհրդոց քոց . արդ այսուհետև յանձնեսցուք 'ի վ̃ր քո նեղութ̃, և մատնեսցուք 'ի չարաչար տանջանս . այդ և պարծանիր ես : Իսկ ս̃ն արհամարհեալ զա̃մ սպառնալիս նց̃, և ասէ . զբերալ

է ՚ի Տր աւետարանի, թէ մի՛ երկնչիք յայնցանէ՝ որ սպանանեն զմարմին, և զոգին ոչ կարեն սպանանել. այլ երկերո՛ւք յայնմանէ՝ որ զոգի և զմարմին կորուսանէ ՚ի գեհենի: Արդ մերձ է փրկութի մեր. և ո՛չ եմք հնազանդելոց ձեռոց խաւարասէր կրօնիցդ, որ տայ մատնիլ ՚ի հուրն անշէջ, և կերակուր լինել անքուն որդանցն. այլ պարտ և արժան է մեզ չարչարիլ վն նր, որ վն մեր համբերեաց մահուչափ չարչարանաց և մահու խաչի. զի և փառաց նորա հաղորդս լիցուք:

Յայնժամ ասեն անօրէնքն ցմիմեանս. արդ զի՞ ես կամք մնամք նորահնար տանջանօք կորուսանել զդա, զի ծծամարտ է և քակէչ անմահից ոծոյն. և տակաւին աներկիւղ բարբառի: Ապա հաճոյ թուեցաւ պատառել զորովայն սբյն, և լափել զարիւն նր, և զլեարդն արտաքս հանել, և ամենեցուն հաղորդել ՚ի լերդէ նորուն՝ ՚ի ցոյց յետին ցասման խուրեանց:

Եւ իբրև զայս արարին անագորոյն մտօք գազանութբ, առժամայն յայտնի եղեն աքանչելիք ՚ի տնէ ահագին պատուհասիւք. զի որք միանգամ զայսօրինակ անօրինեցան ՚ի տր վկայն, նոցին ատամունք ՚ի տեղւոջ անդ թափեցան ՚ի բերանոց խուրեանց, և լեզուք նց նեխեցան, և բիբք աչաց նց խաւարեցան. և որք տեսինն, վկայեցին՝ թէ մեծ է զօրութի օրինաց քրիստոնէից: Նակ արի նա հաստատակն երանելին կիւրղոս իբրև յոգիս աղ

պատ

պատուական եղև , զօրացեալ սբ աղաղակեաց 'ի ձայն բարձր ըստ նմանութե նախասարկաւա՛գին . Տէր յիս ընկալ զոգի իմ . և այնպէս կատարեցաւ 'ի քս փառաւոր վկայութբ :

Համագիսակից մրցմանաց երկոցունց սոցա նա՛խագրելոց համարին 'ի վկայաբանից և այլ անանուն վկայք ժամանակին 'ի կողմանս ա՛տրուց . ուր և 'ի քաղաքին ասկաղոնացւոց և գազացւոց , և 'ի քաղաքս քաղաքս պաղես՛տինացւոց . յորս բնակեալ էին բազումք 'ի քրիստոնէից ածասիրաց , բարեպաշտ քահա՛նայք և Ծականք , անապատական միայնա՛կեացք , և կանայք կուսակրօնք . քանզի կա՛լեալ ոչ սակաւս 'ի նոցանէ հրամանաւ յու՛լիանոսի՝ ազգի ազգի կտտանօք և դառն չարչարանօք նեղէին զերանելիսն , և տան՛ջէին քքովք և քերանօք . հերձուին զորո՛վայնս մաքուրս , և գարի արկանէին իբրև 'ի մսուրս . և զկինձս և զխոզս արձակէին 'ի վյր նոցա մարմնոցն կերակրել նոքօք : Ա՛ող զոր 'ի սեբաստուպօլիս արարին , ընդ 'ի սամա՛րիա , և 'ի կեսարիա պաղեստինու , և 'ի կողմանս գալիլեացւոց . ուր և հրամայեաց անօրէն Թագաւորն բառնալ զգերեզմանս սբյն յովհաննու մկրտչի , և զմնացորդս նշխարաց նրա արտաքս հանել , և այրել հրով , և զփո՛շին ցնդել յօդս : Այն՝ որք ասեն , թէ չէր անդ մարմին սբյն . այլ կամեցեալ պիղծն յուլիանոս կատարել զկամս իւր՝ եւ հանել զայլ ոսկերս հաւատացելոց , որք մերձ կային սբյ տապանին . զորս խառնեալ ընդ ոսկերս

շանց՝

շանց՝ այրեցին, և հողմով հոսեցին ։

Ի նոյն աւուրս նահատակեաց Յուլիանոս յԱնտիոք Ասորւոց և զմեծ վկայն Արտեմիս ։ Որպէս տեսցես ՚ի վկայաբանութեան նորա, և ՚ի վարս սրբոց քահանայիցն Եւգինէոսի և Մակարիոսի ։ Եւ հրով այրել և զԵմիլիանոս զքաջ զօրականն ։

Իսկ մի ոմն երիտասարդ ՚ի դասէ զօրականաց Թագաւորին քրիստոնեայ հաւատով Թէոդորոս անուն, իբրև ետես զայնչափ չարիս ուրացողին՝ զոր առնէր յամ տեղիս՝ Է որ անցանէր, վառեցաւ հոգւով ։ և յաւուր միում եկեալ երթայր Է մէջ հրապարակին, և առեր ՚ի ձայն բարձր բարբառոյ զերգս սաղմոսաց բացադրութեամբ յամօթ հեթանոսաց՝ կցորդելով զալէլուիա այսպէս ։ Յամօթ լիցին՝ որ պաշտեն զկուռս հեթանոսաց, ալէլուիա ։ դարձցին յետս և ամաչեսցեն, որք ած անուանեն զնա, ալէլուիա ։ Ածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն ՚ի ներքոյ երկնից, ալէլուիա ։ Նման նոցա եղիցին ամ յուսացեալքն ՚ի նոսա, ալէլուիա ։ Այս կալեալ զնա կռապաշտից ՚ի հրամանէ յուլիանոսի՝ կախեցին և հարին յանխնայ զԹիկունս նորա արջառաջլօք ։ և զկողս նորա քերեցին երկաթի եղնգամբք ։ և զօրն ողջոյն այնպէս Թողին զնա ՚ի կախաղանի ։ Իսկ իբրև երեկոյ եղև, իջուցին և կապեցին շղթայիւք և արկին ՚ի բանտ ։ և իբրև առաւօտ եղև, տեսին զնա՝ զի սաղմոսէր ուրախութեամբ՝ ողջացեալ յամ վիրաց ։ և

եր

երթեալ պատմեցին Թագաւորին : Յայն-
ժամ ասէ ամպարիշտն յուլիանոս . զարմա-
նալի է համբերութիւն քրիստոնէից , զի մե-
ծաւ ուրախութեամբ և յօժարութեամբ ընդունին
զչարչարանս , և պարծին 'ի տանջանս . և
մարտիրոս անուանեալ փառաւորիլ կամին .
այլ ոչ տաց նոցա զայն փառս : Ապա հրամայ-
եաց , և արձակեցին զնոսա վկայն 'ի կապա-
նաց և 'ի բանտէ , և հանեալ 'ի զինուորու-
թենէ՝ տարագիր արարին . որ և զխոստովա-
նողական անուն ժառանգեալ՝ մնային կենդա-
նի առն քաղուն , բնակելով յանապատս
ճգնութեամբ մեծաւ : Հարցանէին ամենեքեան
զկենդանի նահատակսն , և ասէին , եթէ 'ի
ժամու չարչարելոյն զքեզ զգայի՞ր զցաւս
սաստիկ տանջանացն . և նա ասէր . 'ի սկզ-
բան հարուածոցն 'ի ժամու մտանելոյն 'ի
հանդէսն՝ փոքր ինչ զգայի . իսկ յետ այնո-
րիկ զարմանայր անձն իմ , և իբրև 'ի քուն
թմբրեալ կայի . քանզի և Տէր ինքնին փա-
րատէր զցաւս անձին իմոյ , և լնոյր զսիրտ
իմ ուրախութեամբ :

Այլ ինքն անօրէնն յուլիանոս յետ ամենայն չա-
րեաց իւրոց և՛ս մեծամեծս սպառնացեալ
քրիստոնէից՝ խաղաց գնաց 'ի վերայ պարսից .
և 'ի պարտութենէ մատնեալ՝ հարաւ յանե-
րեւոյթ զօրութենէ , և սատակեցաւ 'ի փառս սա-
տանայի , և այնպիսի չարն չարաւ բարձաւ 'ի
միջոյ . և 'ի Թագաւորել փոխանակ նորա յո-
վիանոսի քրիստոնէայ ինքնակալի՝ խաղա-
ղութիւն եղև ամենայն եկեղեցեաց քրիստոնէից .
և

շանց՝ այրեցին, և հողմով. հոսեցին ։
՚Ի նոյն աւուրս նահատակեցաւ յուլիանոս յանտիոք ասորւոց և զմեծ վկայն արանեմիս. ամ̄ տեսցես ՚ի վկայաբանութեան նր̄, և ՚ի փառս աջոյ քահանայիցն եւգինէոսի և մակարիասի. եւ հրով այրել և զերմիգիանոս զքաջ զօրականն ։

Իսկ մի ումն երիտասարդ ՚ի դասէ զօրականաց թագաւորին քրիստոնեայ հաւատով թէոդոտոս անուն, իբրև ետես զայնչափ չարիս ուրացողին՝ զոր առնէր յա̄մ տեղիս՝ ի̄ որ անցանէր, փութացաւ հոգւով. և յաւուր միում ելեալ երթայր ի̄ մէջ հրապարակին; և ասէր ՚ի ձայն բարձր բարբառոյ զերգս սաղմոսաց բացադրութե̄ յամօթ հեթանոսաց՝ կցորդելով զալէլուէն այսպէս. Յամօթ լիցին՝ որ պաշտեն զկուռս հեթանոսաց, ալէլուիա. դարձցին յետս և ամաչեսցեն, որք ամ̄ անօրէնեն զնա, ալէլուիա. ամ̄ք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն ՚ի ներքոյ երկնից, ալէլուիա. նման նոցա եղիցին ամ̄ յուսացեալքն ՚ի նոսա, ալէլուիա ։ Այս կալեալ զնա կռապաշտից ՚ի հրամանէ յուլիանոսի՝ կախեցին և հարին յանխնայ զթիկունս նր̄ արջառաջիլօք. և զկողս նորա քերեցին երկաթի եղնգամբք. և զօրն ողջոյն այնպէս թողին զնա ՚ի կախաղանի ։ Եւ իբրև երեկոյ եղև, իջուցին և կապեցին շղթայիւք և արկին ՚ի բանտ. և իբրև առաւօտ եղև, տեսին զնա՝ զի սաղմոսէր ուրախութե̄՝ ողջացեալ յամ̄ վիրաց. և

եր

երթեալ պատմեցին Թագաւորին ։ Զհայն-ժամանակ անմիաբարիշան յուղիմանս . զարմանալի է համբերութիւն քրիստոնէից, զի մեծաւ ուրախութեամբ և յօժարութեամբ ընդունէին զչարչարանս, և պարծէին 'ի տանջանս . և մարտիրոս անուանք փառաւորիլ կամէին . այլ ոչ տաց նմա զայն փառս ։ Ապա հրամայեաց, և արձակեցին զնոսա վկայն 'ի կապանաց և 'ի բանտէ, և հանեալ 'ի զինուորութենէ՝ տարագիր արարին . որ և զխոստովանողական անուն ժառանգեալ՝ մնաց կենդանի ամս բազումս, բնակեալ յանապատ ճգնութեամբ մեծաւ ։ Դարձանէին ամենեքեան զկենդանի նահատակն, և ասէին, եթէ 'ի ժամու չարչարելոյն զքեզ զգայի՞ր զցաւս սաստիկ տանջանացն . և նա ասէր . 'ի սկզբան հարուածոցն 'ի ժամու մտանելոյն 'ի հանդէսն՝ փոքր ինչ զգայի . իսկ յետ այնորիկ զարմանայր անձն իմ, և իբրև 'ի քուն թմբրեալ կայի . քանզի և այր ինքնին փարատէր զցաւս անձին իմոյ, և ընդ այր զօրէր իմ ուրախութեամբ ։

Այլ ինքն անօրէնն յուլիանոս յետ ամ չարեաց իւրոց և՛ս մեծամեծս սպառնացեալ քրիստոնէից՝ խաղաց գնաց 'ի վր պարսից . և 'ի պատերազմին մատանել՝ հարաւ յաներևոյթ զօրութենէ, և սատակեցաւ 'ի փառս սրբ տանայն, և այնպէս չարն չարաչար բարձաւ 'ի միջոյ . և 'ի թագաւորութեանն փոխանակ նորա յովիանոսի քրիստոնեայ ինքնակալի՝ խաղաղութիւն եղև ամ եկեղեցեաց քրիստոնէից .

և

և որք 'ի կապանս էին, արձակեցան · և աքսորեալքն յետս դարձան, և փառաւոր առնէին զա̃ծ :

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Ճ'առընտիրն ունի 'ի խորագրի այսպէս · * Վկայաբանութիւն սր̃յն մարկոսի արեթուսայ եպ̃սի, և կիւրղի սարկաւագի, և որք ը̃ նո̃ վկայեցին ճգնազգեաց վկայքն քնի || · կարի 'ի դէպ · զի թէպէտև յանուանէ զմի և զերկուս տօնեմք, այլ ը̃ նոսին է իմանալ և զա̃մ վկայս ժամանակին՝ որոց անուանք գրեալ են 'ի դպրութ կենաց : Զնոյն յայտ առնէ և բասիլեան յայսմաւ · Յն : Միայն Հ · թէպէտև 'ի վերնագրի դնէ լոկ, * վկայութի սր̃յն մարկոսի եպ̃սին ||, այլ պատմէ 'ի կարգի և զնահատակութի կիւրղի սարկաւագի, և զայլոց անուանուն վկայից՝ հանդերձ հանդիսիւ խոստովանողաց, իբրև քաղուած ճառընտրաց : Յար և նման գտանեմք առ ցա և զբանս թէոդորետոսի · զի և նա 'ի նոյն աղբերաց է հանեալ · ըստ իմիք նման եղանեն և համառօտ բանք սոզոմենոսի : Այլ աղբերակն սոցա ա̃մի ճանաչի գրիգոր ա̃ծաբանն, որ ճառօրէն պատմէ զայս ա̃մ 'ի յանդիմանական բանն ընդդէմ յուլիանոսի · արժան է լսել զբուն գրուն նորին · Էջէ·· 87 · Բոփ· Փոփ· Յն· Լա·

* Ո՞ է (ասէ) որ անգիտանայ զաղմուկն հեղինակօլսեց„ ւոց · ո՞ զգաղացւոց զյանդգնութի · որք զարմանալեք և պատուհականք առաջի նր̃ ցուցան (ը̃ յուլիա„ նոսի ուրացողին) վ̃ 'ի բարիոք կարծիս լինելոյ յա„ ղագս մեծվայելչութե նր̃ · ո՞ զարեթուսացւոց զմո„ լեգնութի · որք յառաջն աննշանք ոմանք էին, և յայնմ „ ժամանակէ հետէ նշանաւորք եղեն · զի հռչակելիս „ առնէ ո՛չ աջողակի գործ միայն, այլև չարութին յաղ„ թօղ չարայն պարծանաց : Վ̃ զի ասեա, ո̃ղ ասի, զի „ պա՛րտ է զմին 'ի բազմաց ասել՝ որ և անա̃ծից գլխո„ վին քստմնելի, զկուսանս անարատս և գերծիկս՝ զոչ„ երևեալս երբէք և յաչս արանց, 'ի մէջ ածեալ, և „ մերկեալ 'ի հանդերձից, զի նախ ոեասութ ծանակեսցին, յետ այնորիկ դիշատէին և յօշոտէին · ո՛վ ո՞րպէս

„ հան.

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբոյն Աբդայի կմ Աբդեայ եպիսկոպոսի (1), և Որմզդանայ, և Սայինի, և Բենիամենի սարկաւագի, և որոց ընդ նմ վկայեցն պարսից: (2)

Ճ. ապր. 14. Յ. մարտ. 31: Լ. մարտ. 31: Ճառընտր. Ի. նշէ: Բոլլանդեանք. հատ. Գ. մարտի. 31. երես. 905. և հատ. Գ. մայիսի. 16. երես. 574: Թէոդորետ. պատմ. Ե. 39: Ասեմանն. ԼԱ:

## ԱԲԴԱՅ ԿԱՄ ԱԲԴԱԻ

(որ և աւտա, կամ օտա) անուն՝ զանազան եպիսկոպոսունք յիշատակին յարևելեան մատենագրութիւնս. յորոց երկոքին նահատակեալք՝ ՚ի պարսից յայլևայլ ժամս՝ գտանին ՚ի վկայաբանութիւնս, այլ և ՚ի յայսմաւուրս մեր. մին է այն՝ որ դնի ՚ի կարգս սրբոց յիշատակելեաց ընդ աբդիշու եպսի ՚ի մայիսի. 16. իսկ միւսն է՝ որ առնախմբի ընդ բենիամենի սարկաւագի. զորմէ է ճառս առաջիկայ:

Արդ երանելիս այս աբդայ էր եպս մեծանուն ՚ի կողմանս պարսից, ընդ ոմանց արքեպիսկոպոս շօշայ, և ընդ այլոց եպս խուժաստանի, զարդարեալ առաքինութը, և հոգւ

քաջ եւ արիութիւն, առ կայսերութեամբ Թէոդոսի փոքու կայսեր Հռոմոց : Նա եւ եղեւ զի շարժեաց սատանայ պատերազմ 'ի վ̃ր եկեղեցւոյն մ̃յ 'ի ձեռն հրապաշտ արքային պարսից յազկերտի առաջնոյ որդւոյ շապհոյ երկայնակեցի. զի սա ըստ օրինակի հօր իւրոյ սկսաւ նեղել զհաւատացեալս՝ որ կային յերկրին պարսից, եւ ազգի ազգի հնարիւք հաներ զոմանս 'ի հաւատոց, եւ բազմացուցաներ զմոգութիւն եւ զկրակապաշտութիւն :

Այն իբրեւ ետես երանելին աբդայ եպս, շարժեցաւ ն̃ծային նախանձու, եւ հրձիգ արար գործակցութ̃բ ոմսեայ երիցու զպիռիանն՝ որ էր 'ի միջակի իւրում, այն է տուն կրակի կամ տաճար հրոյ՝ ատրուշան կոչեցեալ. յորում անշէջ բորբոքէին զօրհանապազ զհուր պաշտօնեայք կրակին, երկիրպագանելով նմին եւ պաշտելով որպ̃ զա̃ծ ը̃ այլ տարերս եւ ընդ լուսաւորս երկնից : (3) Այդ եղեւ մոգուց եւ մոգպետաց. եւ նոքա պատմեցին արքային, խնդրելով զվրէժ պաշտաման իւրեանց : Կոչեաց թագաւորն զե̃պ եպսն առաջի իւր. եւ նախ մեղադիր եղենէ վ̃ր գործոյն. եւ ապա հրամայեաց միւսանգամ շինել զատրուշանն. ապա թէ ոչ՝ ոչ զերծցիս սուէ 'ի ձեռաց իմոց :

Նա եւ ս̃բ եպ̃կսն հակառակաբանէր առաջի արքային, եւ ասէր. անհնար է ինձ դառնալ վերստին շինել զաւերեալն 'ի մէնջ զնոսա տեղի մոլորապաշտից, մանաւանդ թէ անածից, որք զարարածս պաշտեն փոխանակ ա-

րարչ

բարձէին օրհնելոյ 'ի բարձունս : Ընդ որ յանհընարինս ցասուցեալ արքայ՝ եւ անդէն առաջի իւր սպանանել զսբ եպսն . եւ եւս քան զեւս բորբոքեալ զհրդեհ դառնութեն՝ հրամայեաց հրձիգ առնել եւ աւերել զամ եկեղեցիս քրիստոնէից որ 'ի պարսս . եւ ընդ-բարեպաշտութե դաւանօղսն ըմբռնել, եւ ազգի ազգի տանջանօք կորուսանել, թէ չառնուն յանձն զօրէնս մոգութե :

Եւ իբրեւ առին զայս հրաման անողորմ ազգն պարսից, սկսան ձեռն արկանել 'ի քրիստոնեայս 'ի մեծամեծս եւ 'ի փոքունս, եւ ստիպել 'ի դենս իւրեանց անօրէնս . եւ տեսեալ՝ թէ չառնուն նոքա յանձն, զոմանց զձեռս եւ զոտս հատանէին, կամ զձեռս եւ զթիկունս մորթեզերծ առնէին . զոմանց զունչս եւ զականջս ծայրատէին . զայլոց զեր-կոսին զաչս խաւարեցուցանէին . եւ զայլս 'ի վկայիցն սբց 'ի գլխոյն մինչեւ 'ի մօրուսն եւս եւ մինչեւ 'ի լանջս մորթէին . զկխոց մարմինս սայրասուր եղեգամբք ձեղքեալ քանցէին . եւ զբազումս կապեալ ոտիւք եւ ձեռօք՝ ճարպով օծանէին, եւ ընկենուին 'ի խորափիտս գբոց . եւ անդ արկանէին մկունս եւ աքիսս, եւ զգուշանային խորուէ գբին, զի մի կարասցեն կայտառքն փախչել . եւ այնպէս 'ի քաղցոյն զկծեալքն կրծէին զմարմինս սբցն, եւ մինչեւ յոսկերսն հասուցանէին :

Արդ այսու ամբ ոչ կարացին երկեցուցանել զերանելի վկայսն քի . մանաւանդ թէ

զայլս ևս բազումս 'ի նոյն հանդէս նահատակութեան ձգեցին. զի որ միանգամ անուանեալն զհամբերութիւն և զյուսապատար զըճարթութիւն օծեալ յայնկոյս խոստամբերութե տանջանաց, ինքնայօրդոր յօժարութբ և փափաքմամբ մեծաւ ընթանային 'ի մահ վասն անուանն քո: Արդ 'ի թուոյ սոցա երջանիկ վկայից և խոստովանողաց ժամանակին, որոց անուանք գրեալ կան 'ի վերին դպրութեան, երեցունց միայն երևելի արանց անուանք գտանին 'ի գիրս պատմութեանց. զորս և յանուանէ տօնեմք Է սբյն Աբդայի. արդ ժամ է ասել զնոցանէ առանձինն:

Որ յայնժամուն յաւագ իշխանացն պարսից՝ մեծատուն յոյժ և քրիստոնեայ հաւատով. անուն նր պարսկերէն Հիւրմիզդ. որ 'ի մեզ Որմզդան կոչի, և յայլոց որմիզդես կամ որմիզդաս: Լուեալ արքայի զնմանէ թէ քրիստոնեայ է, ետ կոչել զնա զառաջեաւ, և պատուիրէր նմա 'ի բաց կալ 'ի Քսէ ուրացութբ, և մի ևս անուանել զանձն քրիստոնեայ: Նա ասէ որմիզդան ցյազկերտաձլ արքայ եթէ որք 'ի քո ծառայիցդ ուրացի զքեզ՝ որ մահկանացուդ ես, և հեռանել 'ի քումմէ ծառայութենէ ապստամբութբ՝ առ այլազգի թագաւոր երթայցէ, ոչ ապաքէն մեծաց տանջանաց և մահու արժանի դատեալ լինի. և որչափ ևս առաւել մեծամեծ պատուհասից չիցէ արժանի, մինչև անշէջ հրոյն մատնելոյ, որ զԱծն երկնի և երկրի ուրանայցէ զանմահ Թագաւոր[illegible]

ակ

փառանական ․ Թող զի որ դիւրաւ զմինն ա-
մենեցուն արհամարհէ, այնպիսին դիւրա-
գոյն ևս զերկրաւոր Թագաւոր անարգէ 'ի
սրտէ ․ զի որ անհաւատարիմ է 'ի մեծն,
զիա՞րդ հաւատարիմ գտանիցի 'ի փոքուն ։ (դ)
Զայս իբրև լուաւ Թագաւորն, յամօթ ե-
ղև ․ և նոյնժամայն ընկէց զայնպիսի այր
երևելի 'ի պատուոյ իշխանութեն, և տարա-
մերժեաց 'ի տանէ և 'ի ստացուածոց իւրոց ․
և մերկացուցեալ զնա 'ի պատմուճանաց՝
հրաման ետ անարգանօք, զի արածեսցէ
զուղտերամակն՝ ածեալ զմիջով ցնցոտի ինչ
'ի մերկուց ։ Այլ յետ աւուրց բազմաց ետես
զնա Թագաւորն 'ի բարձր վայրէ, զի դե-
գերէր ողորմկենօք 'ի դաշտի՝ մերկ և աշ-
խատեալ զկնի ուղտուցն 'ի տապ արևու ․
տառապեալ նման շալիկ մի կտաւի, և ասէ ․
յիշեա՛ զքո զառաջին ազնուականութեն զմե-
ծութիւն և զփափկութիւն և զքաղցր կեանքն ․
'ի բաց թող զորդի հիւսան, ուրացիր զքրիս-
տոնէութիւն, և հաւատա՛ պաշտամանց մերոց ։
Իսկ երանելւոյն լուեալ զմահաշունչ հրա-
պոյրս և զհայհոյանս Թագաւորին, անդէն
և անդ առեալ զշապիկն՝ պատառեաց 'ի
բազում ծուէնս, և անարգեաց զպաշտօն
Թագաւորին ․ և ասէ ․ եթէ սոյնիմբ համա-
րիս յետս դարձուցանել զիս Թագաւորն 'ի
կրօնիցս բարեպաշտութեն, պարգև նր նմա՛
լիցի հանդերձ [illegible] իւրով ։ Յայն-
ժամ ցասուցեալ արքայի՝ հրամայեաց կո-
րուսանել զնա [illegible] ․ և անդէն 'ի

տեղւոյն կատարեցաւ երանելին որով. այլք ասեն, տարագիր արար զնա յօտարութի. և անդ կատարեցաւ :

Միւս այլ ոմն էր ՚ի մեծատուն իշխանացն պարսից քրիստոնեայ, որ ունէր ծառայս հազար. և անուն նր Մայլին, կմ ըստ այլոց՝ սուլին : Սա ևս բազում անգամ բազում հնարիւք փորձեաց արքայ ՚ի մոգութի դարձուցանել : Եւ յորժամ ոչ կարաց ածել ՚ի հաւանութի, զատոյց զնա ՚ի հազար ծառայիցն. և զմին ՚ի նոցանէ՝ որ քան զամենեսեան անարգ էր, աղտեղի և գարշ դիմօք, մեծացոյց և իշխանացոյց. և ետ նմա զտրն իւր զայլին ՚ի ծառայ, և զտիկինն սայլինայ ՚ի կնութի նմա. և հրամայեաց՝ զի ծառայեսցէ նոցա տմ հպատակութբ : Որ և յօժարակամ կատարէր երանելին տմ սիրով առ սէրն քի. և զայն տմ նեղութիւս արհամարհանաց՝ որ եկին ՚ի վր նր, հանգիստ իւր համարէր. և այնպէս ոչ ինչ ՚ի բաց եկաց ՚ի յուսոյն քի. մինչև կատարեցաւ բարի խոստովանութբ ՚ի քս :

Այլ և ոմն ՚ի սարկաւագաց եկեղեցւոյ Բենիամին անուն, քարոզ բանին ճշմարտութե զօրաւոր հոգւով. և զի զբազումս դարձուցանէր ՚ի մոգութէ յածպաշտութի, կալան զնա կրակապաշտք, և գան հարեալ սաստիկ՝ արկին ՚ի բանտ. ուր մնաց զամս երկուս : Յետ այսորիկ դէպ եղև գալ դեսպանաց ոմանց ՚ի թագաւորէն յունաց ՚ի թէոդոսէ ՚ի պարսս վս խաղաղութե. որոց տե-

ղե-

զեկացեալ վն Բենիամենի սարկաւագին , եթէ վասն քնի արգելեալ կայ 'ի բանտի , խնդրեցին 'ի յազկերտէ արքայէ հանել զնա 'ի բանտէ : Իսկ թագաւորն ասէ ցնս . Թո՛ղ վստահացուսցէ զմեզ ձեռնադրով իւրով և վկայութք ձերով , զի 'ի մոգացս պարսից զոք մի դարձուսցէ 'ի հաւատոն իւր , և մի ուսուսցէ զոք յերկրիս յայսմիկ վրդպութե իւրով . և ապա վն խնդրոյ ձերոյ ազատեսցի զնա 'ի կապանացն : Իսկ դեսպանքն անգէտ խորհրդով յուսացուցին զարքայ հաւանեցուցանել զԲենիամին գնալ ըստ հրամանաց արքունի :

Իսկ երանելւոյն լուեալ զայն՝ ոչ իւիք առ յանձն՝ առնել զհրամանս արքային . անհընար է ինձ ասէ արգելուլ զշնորհսն այ իմոյ 'ի մարդկանէ . զի ոչ կարեմ չհաղորդել այլոց զլոյսն՝ զոր ընկալայ . այլ որչափ կարօղ իցեմ, լուսաւորեմ զխաւարեալսն . զի մի՛ պատիժս կրեսցիմ ըստ թաքուցանողին զտաղանդ առն իւրոյ : Այլ յայսր ամի վն թագաւորն զիջեալ յաղերսանս և 'ի կամս դեսպանացն Թէոդոսի , և հաւատացեալ բանից նոցա՝ թէ Բենիամին անսայ բանից իւրոց , ազատեաց զնա 'ի բանտէ : Իսկ նա ելեալ և շրջեալ 'ի քարոզութն բանին , ոչ դադարէր յուսուցանելոյ և 'ի մկրտելոյ զկրակերն պաշտօնեայսն և զմոգսն . և ցորչափ 'ի պարս էին դեսպանք յունաց , լռութն էր զգործոց Բենիամենի . այլ յետ դարձի նց 'ի [illegible] ամբաստանեցին յազկերտի , թէ

Բե-

և յոգւոց ապաստան երևէր, թողացուցին նմա առ վայր մի. զի թերևս զգաստասցի։ Իսկ նա ամբարձեալ զձեռս իւր յերկինս ը արևելս՝ սկսաւ աղօթել, և ասել այսպէս. Հա՛յր Տն մերոյ յսի քսի, Տրդ և արարիչ ամ արարածոց, որ առաքեցեր զմիածին որդին քո զճառագայթ և զնկարագիր էութե քո, որ կրէ զամ բանիւ զօրութե իւրոյ, որ եկն և էջ յարգանդ կուսին կամաւ քո; և մարմին զգեցաւ ճշմարտապէս և առանց կարծեաց. որ 'ի յերկրի երևեցաւ և ընդ մարդկան շրջեցաւ. և ճանապարհորդեաց ը ամ մարմնական կիրս կենցաղոյս, և խաչի և մահու համբերեաց. թաղեցաւ, և յարեաւ յաւուր երրորդի. և համբարձաւ առ քեզ հա՛յր յերկինս՝ ուր էրդ յառաջ. և զմեզ զհոգին զէակիցն և զմշտնջենաւորակիցն առաքեաց յմ. որով ծանոյց զածութի քո։ Աղաչեմ զքեզ Տր իմ և Ած, տո՛ւր ինձ զպսակն՝ զոր խնդրեցի. զի դու ինքնին գիտես, զի ես ինձէն խնդրեցի փափաքմամբ մեռանել վս անուանդ քում սրբոյ, և կենդանի լինել 'ի քեզ. զի ամ մնոք և ոգւովք և կենօք սիրեցի զքեզ. զի տեսից ընդ քեզ, և ուրախ եղէց և հանգեայց. և այլ մի ևս կացից յմի և տեսից զչարչարանս ժողովրդեանն, և զաւեր եկեղեցեաց քոց, ընդկործանումն սեղանոյն, և զնեղութի սրբ ուխտին. զվհատումն հաւատացելոցն, զզանգիտանս դարձելոցն 'ի ճշմարտութենէ. այլ յոր կոչեցայն՝ 'ի սմին հաստատուն կացից,

և

և յոր հրաւիրեցայն՝ զնոյն և կատարեցից արդեամբք. և եղէց օրինակ ա̃մ ժողովրդեան քում՝ որ յարևելս. և տաց զարիւն իմ առաջի ն̃ր, և առից ը̄ նոսա զկեանս իմ յերկրին կենդանեաց. ուր ո՛չ հոգք են և ո՛չ ծուխք, ո՛չ տրտմութի և ո՛չ յոյզք խորհրդոց. ո՛չ սպառնալիք և ո՛չ ահք թագաւորաց. ո՛չ որ սասանէ և երկեցուցանէ, և ո՛չ որ տագնապէ և զարհուրեցուցանէ: Լուծութի ոտից քո զօրացի Ճանապարհդ կենաց. վաստակք անդամոցս քո հանգիցեն օծեա՛լդ. վիշտք սրտիս քո մոռասցին բաժա՛կ փրկութե մերոյ. վտակք արտասուաց աչացս՝ որով պաղատիմս առ քեզ, քո արդեւցեն՝ մխիթարութի ցնծութե մերոյ:

Իսկ իբրև տաց զայս, և կամէր այլ ևս յերկարել զընդ ա̃ծ խօսս խանդաղատանաց, վաղվաղակի ել հրաման յարքայէ ներել նմա, եթէ երկիր պագանիցէ արեգական և կրակի. ապա թէ ոչ՝ մի՛ թողացուցանել նմա զտանջանս, այլ ևևս չարչարել զնա ընդերկար նովին անբերելի կրիւք մինչև 'ի մահ: Մ̃ն որոյ հարցանէին, թէ յանձն առնուցու զոհել: Ն.ԱԼ սբ̃ն ո̃յ բացէ 'ի բաց մերժեաց զառաջարկութի ն̃ր, և յայտ արար՝ թէ առ ոչինչ համարել են յաչս իւր ա̃մ տանջանք. և ա̃մ հեծութիք ն̃ր յայն բերին, թէ երբ ելանիցէ 'ի մարմնոյ, և մտանիցէ առ տ̃ր ա̃ծ իւր:

Յայնժամ ը̄ հրամանին արքունի ցցեցին անօրէնքն գաւազան երկայն ընդ նիստ նորա

երկ

դեմ Խուրեանց . բայց ոչ անխորհրդաբար կործանեցին . այլ զի հարկն պահանջէր , զի մի տարածեսցի մոգութիւն 'ի Հայս . սոյնպէս խնամ կալաւ արդեօք արդա 'ի վիճակի խուռում յԾին պարսից . իսկ օրինակն պօղոսի յաթէնս չունի աստ բնաւին հանգիտութիւն . որպէս յայտ է որոց միտ դնեն : Զայս յայն սակս յիշեցի , զի իմասցիս՝ թէ այսու օրինակաւ համբաւեցաւ 'ի յոյնս և գործ վարդանանց և զևոնդեանց ընդդէմ կրակապաշտ պարսից . վասն և յոյնք ընդ ականջս հայեցան , և ոչ օգնեցին . այլ Ած օգնեաց նոցա :

(3) Պիւղինն կամ պեղին , զոր միանգամ և երկիցս 'ի կէր առնուն աստանօր Ծ . և Հ . է յունական ձայնս բիւբլոն 'ի կէր արկեալ և 'ի թէոդորետոսէ . և ստուգաբանի կրակարան կամ հրանոց . զի բիւ է հուր կամ կրակ : Եւ այս է նշանակ , թէ 'ի յունական գրոց թարգմանեալ է ճառս , ուստի առնու և թէոդորետոս : Դարձեալ՝ որպէս գրի 'ի Ծ . * և զամս երեսուն զմրրիկ հա-
,, լածանացն 'ի քրիստոնէից ոչ վերացոյց ||. նոյնպէս և թէոդորետոս ասէ . * այս մրրիկ հալածանաց եկաց մնաց
,, և յետ անցանելոյ երեսուն ամաց || . զոր պարտ է իմանալ ընդհատութբ յաւուրց յազկերտի առաջնոյ մինչև ցյետին աւուրս յազկերտի երկրորդի , առ որով նահատակեցան վարդանանք և ղևոնդեանք : Այլ զառաջնոյն յազկերտի զհալածանս դադարեցուցին սբն մարութա և սբն սահակ պարթև . զոր ասորի պատմիչք կոչեն առաջնորդ հայոց՝ համաձայն բաբէ . մինչ զի մարթ է իմանալ և զզօրավար . գուցէ իմանան զսահակ ոմն ապետ կամ զայլ ոք յաւագաց յաւուրս մեծին սահակայ : Տեսցեն որոց կամք իցեն , և զոր ինչ խօսին բոլլանդեանք 'ի Ձ հատ . Մարտի . Երես . 907 . պէսպէս չափելով զժամանակ այսոց հալածանաց ըստ ցուցանելոյ այլևայլ մատենագրաց . այլ մեզ չէ հարկ աշխատ լինել 'ի սոսին , զի 'ի պատմութեց հայոց յայտնի են գործք այնր դարու , և ժամանակք նոցին ոչ անյայտ :

(4) Զոր ասացն երանելին որմզդան առաջի յազկերտի , զնոյն ճոխագոյնս գրէ թէոդորետոս 'ի բերանոյ բենիամենի սարկաւագին՝ այսպէս . * Եհարց ցթագա-
,, ւորն , թէ որում պատուհասի արժանի համարիս
,, զայն , որոյ թողեալ զթագաւորութն քո՝ ը այլում մտցէ
,, ծառայէ : Եւ յաւել արքայն՝ թէ մահու և յետին տան-
,, ջանաց արժանի է այն , 'ի վր եած այրն ամենիմաստ .
,, և արդ որում պատժոյ չիցէ արժանի , որ զարարիչն
,, իւր



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոց Ղեւոնդեանց քահանայից.

Հ. յուլիս . 31 : Ըստ Լուսնի . Է . և Ը : Փոխադրե-ցի : Ի Ճառընտրոյ . և այլ ճառընտրագրոց հայոց: (1)

ՂԵՒՈՆԴԵԱՆՔ ՍՐԲ քահանայք՝ յամ̃ ՚նք աստիճա-նաց կարգի և երիցուն, է որ կաթողիկոս, է որ եպիսկոպոս, են որ երիցունք, և են որ սարկաւագունք, անուն ընկալան ՚ի պանծալի պատերազմէն Հոգևոր զօրավարութեն և նահատակութեն իւրեանց. այն է երիցս երանելին Ղեւոնդ երէց՝ մին յերի-ցագոյն և ՚ի գլխաւոր աշակերտաց սրբոց Թարգմանչաց մերոց սահակայ և մեսրովպայ: Զի թէպէտև աւագագոյն էր ըս̃ կարգի ՚ի ղեւոնդեանս ս̃ն յովսէփ կաթողիկոս ամ̃ Հայոց՝ աշակերտակից նորին ղեւոնդեայ, և յետ նր̃ ս̃ն սահակ եպս̃ ռշտունեաց՝ այլ երևելի ՚ի մէջ Հայոց և պարսից, բայց ա-նուն ՚նք քահանայիցն ղեւոնդի եւս քան զնս Հռչակեցաւ բազմապատիկ արդեամբք ՚ի մէջ Հայոց և յունաց և պարսից, առաւելա-պէս ՚ի Հանդիսի անդ նահատակութեն ս̃ց վարդանանց և ղեւոնդեանց. զի էր այր լի

հոգւով սբվ, առատ և լուսաւոր վարդա-
պետութբ· որով զնախարարս և զքահանայս
ազգին վառէր և սպառազինէր՝ քաջութբ մար-
տնչիլ ը թշնամիս հաւատոյ, և աներկիւղ
դնել զանձինս 'ի մահ 'ի վճր եկեղեցւոյ և
'ի սէր քի· վսյ և պարսիկք՝ ամ անցից ազգին
հայոց պատճառ դնէին զերանելին ղևոնդ,
և զնմ ցասումն իւրեանց հնարէին 'ի վերայ
նորա թափել:

Այլ որ սքանչելին է, զի բազում ամօք յա-
ռաջ քան զկատարումն սրբցն՝ յաւուրս խա-
ղաղութե հայաստան ազի, յորժամ կային 'ի
միասին մեծ վարդապետն սբն մեսրոպ, և
աշակերտք նորա կորիւն և արձան, տեսին
զղևոնդ երէց մտեալ 'ի քուն, և ճառագայ-
թեալ շուրջ զնովաւ լոյս սաստիկ· որք և
անդէն և անդ ծանեան երանելի արքն սբ
հոգւով՝ թէ հանդերձեալ է երանելին
ղևոնդ կատարիլ նահատակութբ· և թէպէտ
և ոչ հանէին նմա 'ի վեր զայն տեսիլ սքան-
չելի, այլ 'ի ստէպ շշնջելն պատմեալ հռչա-
կեցաւ 'ի մէջ ազգին բան երևմանս այսորիկ·
որ և յելից իրացն ճշմարտեն ցուցաւ վայ-
ելչապէս· որով և եղև սբն ղևոնդ պար-
ծանք ընկերաց իւրոց դասուց քահանայու-
թե, զոր օրինակ սբն վարդան քաջ նահա-
տակաց նիզակակցաց իւրոց· քանզի նք եր-
կոքին եղեն արդարև հրեշտակք պահա-
պանք ազգին հայոց ըդէմ բանակաց չարին:

Արդ յորժամ եղև մեծ պատերազմն հայոց,
յորում կատարեցան սբ վարդանանք, յամի
ան·

Տն. 451. առաջնիկայ էին 'ի բանակի անդ և բազմութիւք քահանայից և պաշտօնէից եկեղեցւոյ ը̄ սրբոյն յովսեփայ կաթուղիկոսի և ը̄ սահակայ ռշտունեաց եպսի. որոց հրամանաւ երանելի երէցն ղևոնդ եբաց զբերան իւր հոգիաշունչ, և մ̄ծաբուղխ վարդապետութ̄բ իւրով խօսեցաւ բանս յորդորականս առ քաջ զօրականս, և զուարթացոյց զսիրտս ամենից առ հասարակ 'ի հանդէս նահատակութե̄ :

Այլ եղև յետ վճարելոյ գործոյ պատերազմին՝ գնացեալ անկան քահանայք հանդերձ կաթուղիկոսաւ 'ի բերդ մի ամուր. զոր եկն պաշարեաց մուշկան նիւսալաւուրտ սպարապետն պարսից. և 'ի ձեռն հնարից խաբէութե̄ ուրացելոյն վասակայ սուտ երդմամբ իջուցեալ զամրականսն՝ կոտորեաց 'ի նոցանէ արս երկերիւր և երեքտասան. և 'ի բռնաքել քահանայից 'ի դուռն արքային՝ հրամայեաց սպարապետն արձակել զնոսա 'ի տեղի իւրեանց. այլ զյովսէփ և զղևոնդ ետ պահել 'ի բերդն աւէն ընդ ձեռամբ պարսից, մինչև յատեան ելցէն թագաւորին յազկերտի երկրորդի որդւոյ վռամայ : Յետ այսորիկ չարարուեստեան յազկերտ ՟Բ խորհրդոյ խորամանկ հազարապետին իւրոյ միհրներսէհի առաքեաց նենգութ̄բ պատգամ խաղաղութե̄ 'ի հայս, և հրամայեաց՝ զի եկեսցեն 'ի դուռն արքունի մեծամեծք ազգին հայոց 'ի կարգէ քահանայից և աւագ նախարարաց՝ հանդերձ վասակաւ, որպ̄ թէ ստուգութ̄բ դատել զպատ-

Ճաշս խառնմունք ծխին, և հաստատել զհաշտութիւն :

Յայնժամ ատրորմիզդ Մարզպան պարսիկ տեղեկացեալ մի քահանայից՝ թէ ո՞ ոք 'ի նոցանէ առաւել դիմամարտ գտաւ պարսից և ձեռնտու վարդանանց, եւ բերել առ ինքն ընտրանաւ զսրբն յովսէփ և զղևոնդ երէց. Ը որս և զոմանս յաշակերտացն նց՝ յորս երևելք էին խորէն երէց, և աբրահամ երէց. ուր և զարշէն երէց բագրևանդայ, և զքաջաջ սարկաւագ ռշտունեաց, որք գտան Ը նն 'ի բերդըն անին. նոյնպէս և յայլ բերդից եւ ածել զսահակ եպս ռշտունեաց, և զմեծ երէցն արծրունեաց մուշէ անուն յաղբակոյ. և զերկուս ականաւոր քահանայս յարարատեան Ցէ 'ի գեղջէ արածոյ զսամուէլ և զաբրահամ: Արդ 'ի վ̃ր հասեալ ատրորմիզդ՝ թէ որքա եղեն առաւել թշնամիք պարսկական դենին՝ աւերելով զկրակատունս, և հալածելով զմոգս, եւ զամենեսին կապել 'ի շղթայս, և վարել 'ի պարս Ը կարաւանին:

Յելանել սոցա 'ի ճանապարհ՝ հանդիպեցաւ և ուրացեալն վասակ, որ գայր 'ի սիւնեաց Ցէն՝ երթալ շքով 'ի պարս. զոր տեսեալ 'ի բացուստ սրբյն յովսէփայ՝ ասէ ցղևոնդ երէց. գիտեմ զի ուրացողն առ մեզ ուղղեալ գայ յողջոյն անամօթ լրբութբ. արդ զմտած դու, թէ զի՞նչ պատասխանի մեզ ասել յողջունել նր զմեզ. և որպէս ասեսդ՝ այնպէս ուրասցուք: Առ որ ասէ սրբն ղևոնդ. զվարդապետութի փրկչին մի խնդրեր ուսանել 'ի մարդոյ.

գոյ . յոր քաղաք կամ գեօղ մտանիցէք անդ , ողջոյն ասացէք . և ուր գտցի որդի ողջունի, հանգիցէ ողջոյնն ձեր 'ի վր նր . ապա թէ ոչ իցէ արժանի , առ ձեզ դարձցի ողջոյնն : Նա յայն բան եհաս ուրացողն , և կեղծաւորութբ իջեալ յերկնաւորէն՝ ողջունեաց զածն . և նորա սիրով ընկալեալ զողջոյն նր՝ ոչինչ քնաւ կարծեցուցեալ թշնամութի ը նմա . իսկ սքն ղեւոնդ՝ որ միշտ էր զուարթերես և անտրտում դիմօք , սկսաւ երկարս խօսել ը վասակայ ախորժական բանիւ և լրջմտութբ . և նր լուեալ զքաղցրաբանութին և զշնորհալի ասացուածս երանելւոյն , եդ 'ի միտ՝ թէ սոքա չեն ինչ գիտակ իմոցս չարուեց . վյ և ուրախութբ ուղեկից լինէր ճանապարհի նց : Ապա հրաւիրեալ զնս յաւուր յայնմիկ ը իւր ճաշել յօթեւանին , յառաջեաց ինքն փոքր մի քան զնոսա :

Յայնժամ ձայնեաց սքն ղեւոնդ զխնի նորա պատուական անուամբ , սիւնեաց տր , սիւնեաց տր . և նր խոնարհեալ հայեցեալ յետս՝ ետ պատասխանի , տեառնք զի՞նչ ասէք : Նա սքն իբրև յանդէտս ասէ . զոմ ինչ մեր ասացեալ ը քեզ , զպիտոյն և զառաւել օգտակարն մոռացաք հարցանել՝ թէ ո՞ւր երթաս . իբրև լուաւ զայն նենգաւորն վասակ , 'ի միտ էառ՝ եթէ գիտակ են սքն չարուե նր ոմն , այլ խաղ առնեն զնովաւ . վյ և զայրագին ետ պտխնի . առ արքայ երթամ դատանել 'ի նմանէ ըստ արժանի մեծ վաստակոցս զհատուցումն մեծ :

կան հաւատոյ՝ յորոյ վ՟ն եղեն զանձինս ե-
րանելի զօրքն հայոց նահատակեալքն 'ի պա-
տերազմի . և վ՟ն նորին աղէ ձգնիմք և մեք .
զի մեք իսկ էաք քաջալերիչք ն՟ց , և արդարև
ճշմարիտ վարդապետք նոցին ։

Նաև իբրև տեսան ընկերք սո՟յն ղևոնդեայ զա-
մել և հաստատել զբանս ն՟ր , ցասուցեալ
միհրներսեհի՝ եհարց ցն՟ս . տուք մեզ աղէ
գիտել, թէ՝ և ձեր ամենեցուն նոյն բա՟նք
են , զոր մահապարտդ այդ իշխեաց աներ-
կիւղ համարձակութ՟ե յանդգնել և խօսել ա-
ռաջի մեր ։ Պատասխանի տուեն սո՟յն յովսէփ և
սր՟բն սահակ . զ՟մ բանդ՝ զոր ըստ արժանի
իւրոյ սրբութ՟ե խօսեցաւ ընդ ձեզ տ՟րդ ղևոնդ .
քաջալերեալ օգնականութ՟ն ա՟յ , անդստին
'ի սկզբանէ համապայ խորհեալ և խօսեալ
է մեր ամենեցուն . և զոր մեքս կամէաք ա-
սել , նա ինքն ընդ իւր ած՟աշնորհ գիտութ՟են
գեղեցկապէս յօրինեալ կարգեաց առաջի
ձեր . վ՟յ և 'ի դոյն կամս ամենեքեան կա-
մակիցք եմք , և խնդրեմք՝ զի արժանի լի-
ցուք վճարիլ 'ի դմին ։ Նոյն և այլ ընկերք
ն՟ց միաբան ասէին ։

Ընդ այս դառնացեալ իշխանին՝ հրամայեաց
դահճացն հարկանել զբերանս ամենեցուն
շղթայիւք . մինչև հօսել յորդ արեան ընդ բե-
րանս և ընդ ռնգունս ն՟ց . և ապա ետ դնել
զն՟ս 'ի բանտ մահապարտաց ։ Իսկ երանե-
լիքն ըստ օրինակի սր՟բ առաքելոցն գնացին
խնդութ՟ե յերեսաց ատենին, զի արժանի եղեն
վ՟ն անուանն ք՟ի անարգանաց և դանից և

պատասխանատուութե։ Այնպէս և զնա-
խարարս Հայոց՝ որք եկին 'ի պարսս, արգել
'ի նոյն բանտ։ Ընդ եղաւ և ուրացեալն
վասակ յետ պարտաւորելոյ իւրոյ յատենի
արքային՝ վկայութեամբ համօրէն Հայոց և
պարսից. որոյ տեսեալ զանձն 'ի յետին
թշուառութե՝ անբերելի տխրութ և անյոյս
միտօք դառնագինս հեծեծէր. և հայեցեալ
'ի զուարթութի սրտի և դիմաց երանելի կա-
պելոցն քահանայից և նախարարաց՝ առա-
ւել ևս ընկղմէր 'ի դառնութի. և ձաղանօք
սփռեալ զթաթս ձեռաց իւրոց՝ ինքնին զիւ-
րոյին ծեծէր զգէմսն՝ ասելով. ահա ընկալ
զայս ձաղս, զոր ետ բերել քեզ ուխտանեն-
գութի սբյ աւետարանին, և արիւն նահա-
տակութե սբյն վարդանայ մամիկոնէի, և
այլոց ցանկալի հաղորդելոցն ընդ նմա. ո-
րոց ժառանգեալ զյաւիտենից կեանսն՝ ըն-
կալան և յերկրի զանուն բարի և անանց
յազգաց յազգս իւրեանց. իսկ դու ( ասէ )
մեղաւոր անձն իմ կեաս խղճիւ և ցաւօք
մնաց զսակաւաթիւ զաւուրս կենցաղոյս,
և պատրաստեալ պահիս մշտնջենաւոր և
անանց գեհեննին։ Այլ որ չար ևս է, զի թէ-
պէտ և ճանաչէր զչարիս իւր, այլ ոչ երբէք
դայր 'ի ճշմարիտ զղջումն. անկաւ անդէն
յախտս դժնդակս, և բովանդակ մարմին
նր տորորեցաւ 'ի ցաւոց. լեզուն միայն կայր
կենդանի 'ի բերան նր, այլ ոչ դտաւ խոս-
տովանութի 'ի շրթունս նր. մինչև կորեաւ
զյետին կորուստն չարաչար։

Իսկ

Իսկ երանելի կապեալքն քահանայք և նա-
խարարք Թէպէտև էին 'ի մեծի նեղութե
բանտին, այլ սիրով տանէին ամի 'ի սէրն
քի. և զարմացեալ կային ը արդար դա-
տաստանն այ, որ հատոյց զչարիսն վասակայ
'ի գլուխ նր ։ Մխիթարէին զմիմեանս և
ասէին. որպ մինչև ցայժմ ձգնեցաք 'ի վը
սը հաւատոյ, և քաջութը պատերազմեցաք
ը Թշնամիս եկեղեցւոյ, յայսմհետէ և ա-
ռաւել ևս համբերութը ձգնեսցուք ։ Յուսեալ
է մեր 'ի սը հարցն մերոց, եթէ գլուխ ամ
առաքինութե համբերութիւն է, և իմաստութի
երկնաւոր՝ կատարեալ ածպաշտութի. և գիրք
քարոզեն՝ եթէ բազում նեղութբք պարտ
է մեզ մտանել յարքայութիւն երկնից. և որ-
չափ յաձախեն նեղութիք և ընդերկարին
չարչարանք, առաւել բազմանայ վարձ հա-
տուցման ։ Ոչ զայս միայն աղաչեսցուք
զած, զի համբերել կարասցուք, և որ ինք-
նին արասցէ հնարս մերում փրկութե ։ Յուսեալ
է մեր զօրինակ դատաստանին, որ ցուցաւ
'ի վր քառասուն զինուորացն քի նահատա-
կելոց 'ի սեբաստիա. որոց երեսուն և ին-
ունքն համբերութը պսակեցան և հասին
երկնային աւետեաց. իսկ մին 'ի նոցանէ ան-
ձամբ զանձն վրիպեցոյց 'ի սը պսակէն, և
այլ ոք եառ զպսակ նր ։ Հաւասիկ և մեր
ընկերակիցն վասակ, որ որոշեալ 'ի մէնջ՝ ե-
ղև գործակից սատանայի, մինչդեռ ոգին 'ի
մարմնի է՝ ընկալաւ զառհաւատչեայ գեհե-
նին տանջանաց. որ ոչ միայն սբցն է ողբա-
լի,

լի , այլև ա̃մ գազանաբարոյ մարդկան : Զայս ասելով բազում արտասուս 'ի վ̃ր կարուսելոյն հեղուին . և անդէն սաղմոսէին , բարի է յուսալ 'ի տ̃ր՝ քան յուսալ 'ի մարդիկ . և որ 'ի կարգին : Քաջալերէին զմիմեանս , և ասէին , զայս գիտելով եղբարք՝ մի երկիցուք յանա̃ծ ազգէն հեթանոսաց . զի թէպէտև իբրև զմեղուս խոցոտիչս պատեալ են զմեօք , այլ ըստ բանի գրոյն՝ անուամբ տ̃ն վանեսցուք զն̃ս . զի որպ̃ս մեղուք 'ի խայթել զայլս՝ վնասեն և ինքեանք , սոյնպէս և որ չարչարենն զմեզ՝ անձանց առաւել վնասակարք են քան մեզ :

Իսկ եղև յետ կալոյ երանելի քահանայից և նախարարաց 'ի բանտի անդ իբրև զտարի մի օքանչելի համբերութ̃բ , այն ինչ հանդերձեալ էր թագաւորն յազկերտ խաղալ պատերազմաւ ը̃դդէմ հոնաց , հրամայեաց՝ զի տարցին զկապեալսն հայոց առ հասարակ յամուր դղեակն նիւշապուհ քաղաքի , որ յապար շխ̃ին 'ի վրկանս : Իսկ յանձն արարեալ զնոսա մոգպետին մեծի , որ կարծիւր իբր 'ի ծագ հասեալ ա̃մ մոգական աղանդոց և պաշտամանց պարսից , վ̃յ և կարգեալ էր իշխան դենպետ ա̃ր պետ կրօնից յապար շխ̃ին , պատուիրեաց նմա , զի ողոքանօք և տանջանօք հնարեսցի ուսալ զքահանայս , և նոքօք զնախարարս՝ դառնալ 'ի հաւատոյն ք̃ի :

Զայս պատուէր առեալ մոգպետին՝ տարաւ եդ զն̃ս 'ի դղեակ անդր . և զաւուրս

բա-

բազում բազմօրինակ տանջանօք նեղեաց
զն՟ առաւել քան զհրամանն արքունի, զի
թերեւս մարթասցի խախտել զն՟ 'ի հաւա-
տոց ։ Այլ իբրեւ ետես, զի ն՟ք զուարթութ՟
տանին զմ՟ չարչարանաց, եւ այր զընկեր քա-
ջալերեն 'ի տանել սիրով նեղութեց, որո-
շեաց զքահանայսն 'ի նախարարաց եւ յաշա-
կերտաց իւրեանց, եւ փակեաց 'ի ներքնա-
տուն մի գէջ եւ խաւարչտին, հրաման տը-
եալ ծառայից իւրոց՝ միայն սակաւ ինչ
կերակուր ոգեպահիկ տալ ն՟ց ։ Եւ իբրեւ
կացին անդ ս՟ք քահանայքն զաւուրս քառա-
սուն, լուեալ մոգպետին՝ եթէ ն՟ք զօր ըստ
ուրախութ՟ օրհնեն զա՟ծ, զարմացաւ յոյժ ։
եւ 'ի կարծիս անկեալ՝ թէ գուցէ ոք 'ի սպա-
սաւորաց ակնկալութ՟ կաշառոց աւելի ինչ
դիւրութի՟ առնէ ն՟ց, գնաց անձամբ եւ կըն-
քեաց զդուրս բանտին ։ եւ զսակաւապէտ
կերակուր ն՟ց տայր տանել 'ի ձեռն հաւա-
տարիմ արանց ։ Եւ իբրեւ զփորձ էառ համ-
բերութե՟ ն՟ց այսպիսի խստութ՟ք այլ եւս ա-
ւուրս հնգետասան, եւ եգիտ զն՟ նոյնպէս
զուարթս եւ անդադարս յօրհնութիւն ա՟յ, զոր
եւ զարմացմամբ մեծաւ պատմէին ծառայքն,
սքանչանայր յանձն իւր ։

Ապա յարուցեալ 'ի գիշերի միում եկն անդր
լռելեայն. եւ հայեցեալ ը՟ լուսամուտ տա-
նեաց բանտին՝ ետես զերանելիսն, զի 'ի
քուն կային հանդարտութ՟՝ գետնախշտի
'ի վ՟ր մերկ հողոյ ։ եւ մարմինք իւրաքանչիւր
ն՟ց սքանչելի լուսափայլութ՟ պայծառացեալ՝

իբ-

երբեւ զկանթեղն պայծառս վառեալ բորբո-
քէին ։ Ո՛հ հարու է տեսիլն, և ահեղ է
միտս ընդ մոլար դենին . զի՞նչ իցեն այս մեծ
սքանչելիքս . ծածքն մեր ուրեմն եկեալ ի-
ջեալ են 'ի բանտս, և նոցա փառաւորութիւն է՝
որ այսպէս լուցեալ բորբոքի . ապա թէ ոչ՝
առանց նոցա անհնար է մարդոյ լոկոյ զայսպի-
սի պայծառութիւն լուսոյ յանձին զգենուլ .
և կամ թէ առէ կախարդանք ինչ իցեն քրիս-
տոնէից ազգին, զորոց լուեալ բազում ինչ այս-
պիսի առնել արուեստիւք ։ Այս մինչդեռ
յայսպիսի ունայն խորհուրդս վարանէր, ե-
տես՝ զի յարեան սրբքն 'ի քնոյ, և նովին լու-
սափայլ տեսլեամբք սկսան կատարել զպաշ-
տամունս իւր . յորմէ ստուգեաց՝ եթէ ո՛չ առ-
աւրք ինչ է տեսիլն, այլ՝ յանձանց նոցա ծագէ
պայծառութիւն լուսոյն . վասն որոյ և առ ահին ան-
կաւ 'ի թմրութիւն, և մնաց իբրև անշշունչ 'ի
վերայ տանեաց մինչև ցառաւօտ ։

Ապա յարուցեալ տկարաքայլ ոտիւք դար-
ձաւ յապարանս . և կոչեալ զպահապանսն՝
հրաման տայր, զի երթեալ հանցեն զերի-
ցունսն 'ի գիշերին բանտէ անտի, և պահես-
ցեն յանդորրու 'ի ցամաք վերնատան միում ։
Յայնժամ մի ումն 'ի դահճաց անտի վաղա-
գոյն ընթացեալ առ երանելիսն՝ պատմեաց
նոցա իբր աւետիս ինչ մեծ տալով վասն զերծա-
նելոյ 'ի նեղութեանց անտի բանտին . քանզի և
մեք իսկ աղաչեցաք առ է զմոգպետն, զի
հանցէ զձեզ յայսպիսի անբերելի վտանգէ ։
Իսկ սրբոց յանկարծ հեղաքար սկսաւ [illegible]

[illegible]

դաՀձին , թէ լինքեանք ո՛չ են յանկացեալ անյաւոր Հանգստեան , և ո՛չ իբրև առ Հարկի փակեալ կան 'ի բանտի անդ , այլ՝ կամաւոր սիրով և խնդութ͠բ վ͠ն անուանն ք͠ի ․ Եթէ կամեցեալ էր մեր ա͠ծ զդիւրութ͠ն մարմնոյ , 'ի ձեռս մեր էր չանկանել 'ի ձեռս թագաւորիդ ձերոյ ․ այլ որ͠պս յօժար կամօք և գիտութ͠բ եկաք յայսպիսի վիշտս վտանգի , սոյնպէս կամիմք՝ զի առաւել ևս ծանրացին նեղութ͠իք 'ի վ͠ր մեր ։ Քանզի ա͠ծն մեր՝ որ վ͠ն մեր մարդ եղեալ չարչարելի մարմնով՝ կամաւ յանձն էառ զա͠մ չարչարանս խաչի և մաՀու , նա ինքն յարութ͠բ իւրով շնորՀեաց մեզ զօրութ͠ն երկնաւոր՝ աներկիւղ մտօք չարչարակից լինել նմին և մաՀակից , որով և փառացն Հաղորդակից ․ մինչև փոքր Համարել մեզ զչարչարանս զայս առ սէր փոխարինին , զոր եցոյց տ͠ր մեր առ ազգս մարդկան ։ Իսկ դուք քանզի ըմբռնեալ էք յանցաւորս , զանանց բարեաց ինչ ոչ գիտէք , և կուրութ͠բ մտաց չտեսանէք և ոչ լսէք և ոչ իմանայք , եթէ մոլորեալ էք , և յանիրաւի առանց յանցանաց զծառայս ք͠ի անողորմ դատիք ։ Այլ մեր թագաւորն առատ է և բարերար , և բաց է դուռն արքայութ͠ն ն͠ր ․ եթէ ոք կամի դառնալ յապաշխարութ͠ի , դիմեսցէ Համարձակ ․ զի նա քաղցր է որոց դառնան առ նա ։ Զայս և առաւել քան զսոյն լուեալ առն՝ յապուշ կրթեցաւ ․ և երթեալ անդրէն պատմեաց մոգպետին ։ Իսկ մոգպետն առաւել ևս յիմարեալ 'ի միտս իւր՝ զարմանայր

նայր 'ի վ՟ր սքանչելի համբերութե՟ն մ՟ցն և 'ի վ՟ր եղելոց իրացն ․ և հատեալ էր քուն

յաչաց ն՟ր զբաղում գիշերս ։

Ապա յաւուր միում յերեկուն պահու միաանգամ յարուցեալ գնաց առ նո միայնիկ մնջիկ ․ և հասեալ 'ի դուրս բանտին՝ հայեցաւ ը՟ ծակ մի 'ի ներքս, և ետես ը՟ առաջին տեսլեան՝ զի լուսափայլ անձամբք 'ի քուն կային խաղաղիկ ։ Զայնեաց մեղմով յանուանէ զսահակ եպս՟, զի նա քաջ գիտէր պարսկերէն ․ և ն՟ր եկեալ 'ի դուրսն՝ հարցանէր ․ ո՞վ ես դու ։ Նա ասէ ես ինքնին իսկ եմ ասէ մոգպետն ․ կամիմ 'ի ներքս մտանել, և տեսանել զձեզ ։ Եւ իբրև եմուտ 'ի մէջ ն՟ցն, ոչ ևս տեսանէր զնշանն ․ այլ պատմեաց ն՟ց զերկիցս երևումն սքանչելեացն ։ Յայնժամ ասէ ցնա զևոնդ երէց ․ տ՟ծ՝ որ ասաց 'ի խաւարի անդ, եղիցի լոյս, և եղև լոյս, և լուսաւորեաց զաներևոյթ արարածս, նոյն զօրութի ծագեաց և այսօր 'ի խաւար մտաց քոց, և բացան կուրացեալ աչք ոգւոյդ, և տեսեր զանշիջանելի լոյս շնորհացն ն՟յ ․ փութա՛, մի՛ հեղգար, գուցէ դարձեալ կուրացեալ ը՟ խաւար գնայցես ։ Եւ զայս իբրև ասաց, յոտն կացին ամենեքեան ասելով ․ առաքեա՛ տ՟ր զլոյս քո և զճշմարտութի քո, զի ն՟ք առաջնորդեսցեն և ածցեն զմեզ 'ի լեառն ս՟բ և 'ի յարկս քո ․ արդարև ճշմարտի՛ տ՟ր առաջնորդեցեր և ածեր զմոլորեալս զայս յանանց ուրախութիւն և յանմերժելի հանգիստ ․ ահա նմանեալ

է

է օրս այս՝ աւուր սրբ չարչարանաց քոց . զի որպէս անդ ապրեցուցեր զմահապարտ աւազակն յերկրորդ մահուանէն , և նովաւ բացեր զաղխեալ դրունս դրախտին , նոյնպէս և այսօր գտեր զայս կորուսեալ այրս , որ էր պատճառ մահու բազմաց . և արարեր զսա պատճառ կենաց անձին իւրում և մեզ ։ Գոհանամք զքեզ տր ած մեր , և ձայնակից լինիմք սրբ մարգարէին . մի մեզ տր՝ մի մեզ , այլ անուան քում տուր զփառս վս ողորմութե և ճշմարտութե քո . մի երբէք ասասցեն ՝ի հեթանոսս , թէ ուր է ած նց . այլ և այսօր եւս յայտնի եղև զօրութի քո մեծ ՝ի մէջ ապարասան խաւարազգեստ ազգիս ։

Ընդ և մոգպետն ինքնին լուսաւորեալ յայտ՝ սկսաւ փառաւորել զած վս շնորհացն , որք եղեն առ նա . զի որպէս ՝ի խաւարէ ՝ի լոյս եկեալ , կիսայլեկոծ նաւէ ՝ի ցամաք ապրեալ, նորոգեցաւ զուարթացաւ սիրտ նր ՝ի տր . և աղաչէր պաղատէր առ ճշմարիտն ած՝ ասելով . մի որոշեր զիս տէր ՝ի սրբ գառանցդ՝ յորս խառնեցայ . զի մի արտաքոյ փարախիդ քո գտեալ՝ մատնեցայց ՝ի ժանիս չար գազանին . մի հայիր տէր ՝ի բազմամեայ ամպարշտութի իմ , և մի թողուր զիս միւսանգամ ՝ի նոյն մոլորութի ընկղմել և կորուսանել զանձն իմ և զայլս . այլ որոց եղէ պատճառ մահու , նոցին եղէց պատճառ կենաց . և սատանայ՝ որ զիս ունէր զէն չարութե իւրոյ , ինև կորացեալ ամաչեսցէ ՝ի մէջ իւրոց աշակերտաց ։

Եւ այնպէս կացեալ ամենեցուն յաղօթս և ի հոգևոր քաղցրութիւն հանդերձ մոգպետիւն մինչև յերրորդ պահ գիշերոյ, ապա ի քուն մտին մինչև ի ժամ առաւօտու աղօթիցն։ Իսկ մոգպետն ոչ եղև ի քուն. այլ յոտն կացեալ, և զձեռսն ի վեր ամբարձեալ կայր յաղօթս։ Եւ մինչդեռ ը̃ երդմն ի վեր պշուցեալ հայէր յերկինս, յանկարծակի լի եղև լուսով տունն բանտին. և երևեցան նմա սանդուղք լուսեղէնք՝ կանգնեալ յերկրէ յերկինս, ընդ որ ելանէին ի վեր գունդք գունդք զօրաց չքնաղ և սքանչելի իբրև զտեսիլ հրեշտակաց. և ի միտ առնոյր զթիւ նց̃ ուրոյն, գունդ մի հազարաւորանց, գունդ մի երեսուն և երից, և գունդ այլ՝ երկերիւր և երեքտասանից։ Եւ այնպէս մօտ նշմարէր զնոսա, մինչ ձանաչէր նմա զերիսն ի նոցանէ, զմեծն վարդան և զնիզակակիցս նր̃ զարտակ և զխորէն. որք ունէին ի ձեռս իւնն պսակ. խօսէին ընդ միմեանս վն̃ եղելոցն ի բանտի սր̃ց երիցանց, և ասէին. ահա եկն եհաս ժամ, զի և սք̃ խառնեսցին ի գունդս մեր. քանզի և մեք սոցա իսկ մնայաք, և զառհաւատչեայ պատիւ սոցա բերաք. և որում ոչ եա մնայաք, եկն և դա խառնեցաւ, և եղև իբրև զմի ի զինուորաց ք̃ի։ Եւ իբրև երիցս երևեցաւ այդ չքնաղ տեսիլ առնն երանելւոյ, զարթեայց զսք̃սն ի քնոյ անտի, և պատմեաց նց̃ զա̃մ տեսիլն կարգաւ։ Յայն ժամ յառուցեալ յա-ղօթս կացին, և գոհացան զա̃յ մն̃ ...

Ք·Ն ... թէն,

թէն, զոր արար առ մոգպետն, և վն աւետեացն՝ զոր ընկալան 'ի ձեռն նր վն մերձաւոր պսակման իւրեանց . և այսպէս յերկարեալ զաղօթս՝ յորդ արտասուօք աղաչէին զա՟ծ, զի հաստատուն կացցեն 'ի վիճակս Ճրգանցն, և մի զրկեսցին 'ի ցանկալի պսակացն՝ զոր ունէին սբն 'ի ձեռս իւրեանց . քանզի յայտնապէս 'ի միտ առին ազդմամբ սբ հոգւոյն, զի մերձեալ էր ժամանակ կոչման նց . և կարօտագին փափաքմամբ մնային կատարման իւրեանց : Եւ քանզի ինքն մոգպետն իշխան էր տին, և 'ի ձեռս նորա յանձնեալ էին կապեալքն, վյ և համարձակութբ ը առաւօտն առեալ տարաւ զերիցունսն յապարանս իւր . ետ բերել անդր և զնախարարսն՝ որք կային յայլում բանտի . և լուաց և որբեաց զնս յաղտեղութեց բանտին . և առեալ զջուր լուացման սրբցն՝ արկանէր զիւրով մարմնովն . Ապա ուղղեալ 'ի տան իւրում աւազան՝ մկրտեցաւ 'ի սբ երիցանցն . և հաղորդեցաւ 'ի կենդանի մարմնին և 'ի քաւիչ արեան տն մերոյ յսի քսի . և լցեալ հոգւով մեծաձայն օրհնէր զա՟ծ : Առնէր այնուհետև և սեղան ը մարմնոյ կերակրոյ, և սփոփէր զամենեսին . և էին ամենեքեան 'ի մեծի խնդութե վն նոր սքանչելեացն եղելոց . և չյիշէին ամենեւին՝ եթէ վիշտք անցեալ էր ը նս :

Այլ 'ի ժամ նստելոյ 'ի սեղան՝ կարծիք իմն եղեն 'ի միտս սրց երիցանց վն արշէն երիցու, որ մի էր 'ի նոցանէ . զի որովհետև 'ի

մէջ շինական մարդկան կեցեալ էր , և չէր այնչափ տեղեակ գրոց , կասկածէին՝ զի մի՛ վտանգ ինչ հասցէ նմա · վա՜յ առ 'ի քաջալերել և զօրացուցանել զնա՝ պատուհասիրէին և բռնադատէին ունել զառաջին տեղի 'ի մէջ բազմականին ։ Իսկ երանելի այրն ասէ · զի՞նչ է այդ՝ զոր դուքդ գործէք , և կամ յինէն զի՞ թաքուցանէք զծածուկս խորհրդոցդ · ես կրսերագոյն եմ յամենեսին 'ի ձէզ , և յետնագոյն ամ իրօք · զիա՞րդ կարացից այդմ պատուհոյ տանել ։ Այս իսկ մեծ էր ինձ , զի ո՛չ կապանացդ ձերոց հաղորդեալ եմ · և արդ եթէ արժանի համարիք զիս ձերում սեղանոյ , կալջիք դուք զիւրաքանչիւր տեղիս բազմականիդ , և հրամայեցէք ինձ զիմ տեղին ։

Այլ ո՛չ եղև սահակ բռնադատեաց զնա միաբան հաւանութեամբ ամենեցուն , և բազմեցոյց 'ի վերոյ քան զամենեսին ։ Իսկ իբրև բոլորեցաւ ակումբ բազմականին , և սկսան ճաշակել զուրախութեանն սրտի , յոտն եկաց ո՛չ յովսէփ , և մարգարէաբար աւետիս տայր ասելով · Ուրախ լերուք ամենեքեան 'ի քս , քանզի վաղիւն 'ի այնմ ժամու ունիմք մատանալ զա՛մ նեղութիս և զչարչարանս , և փոխանակ սակաւ աշխատութեանս բազմապատիկ հանգիստ գտանել յերկնից արքայութեն , մտանելով փոխանակ խաւարային արգելանի բանտին 'ի լուսեղէն քաղաքն երկնային՝ որոյ ճարտարապետ իւրն քս է · այն՝ որ 'ի գլուխ տայրս զկատարել

յաղ-

յաղթութի ամենայաղթ նշանաւ սբյ խաչին , և զմեզ զօրացոյց 'ի նոյն հանդէս` 'ի փրկութի անձանց մերոց և 'ի պարծանս մեծափառ սբ եկեղեցւոյ ։ Իսկ զոր օրինակ տեսիք զեղբայրս զայս գլուխ բազմականիս մերոյ , սոյնպէս նախ սա ընդունելոց է վաղիւ զպսակն 'ի ձեռն կատարման մերոյ . զի առհա մերձեալ է առ մեզ թշնամին կենաց մերոց , և պսակիչ սբ չարչարանաց ծառայից քնի ։

Յայնժամ լցաւ հոգւով և երանելի երէցն արշէն , և սկսաւ խօսել զուարթութի բանս ուրախութե լի աւետեացն , զոր լուաւ . որով յոյժ մխիթարեցան ամենեքեան . զի զորմէ կարծիս ունէին , թէ գուցէ երկիցէ 'ի մահուանէ , նա կաթոգին կարօտանօք առաւել քան զամենեսին ցանկայր տեսանել զօր վաղուին , և նահատակիլ յառաջ քան զնս ըը գուշակութե սբյն յովսեփայ . Ի սբ աղօթից ձերոց ասէ այսպէս արասցէ ինձ քս , և կատարեսցէ զելս վախճանի իմոյ յօժէս ըստ բանի քում ։ Եւ հա ըը ասելդ քո ազդումն եղև հոգւոյս իմոյ . և յիշեցի ես զմարգարէութին քնի . և ակն ունիմ , զի որպէս գթացաւ յաւաղակն , և յառաջեցոյց զնա լինել կարապետ մտելոցն յերկնային դրախտն , նոյնպէս և զիս արասցէ տէր քս սպասաւոր մեծաշուք գնդիդ ձերոյ . քանզի և սբ զօրականքն` որք երևեցան , զուրախութե աւետիսն մեզ հասարակաց տային ։ Ես ղաչեմ զձեզ տեարք իմ և հարք , աղօթս արարէք 'ի վը անարժանութես իմոյ , զի ար-

նացեալ յանձն իւր՝ պատճառէր զանմիաբանութիւն զօրաց, և զանհոգութիւն մոգուց, որպ թէ վն չպատուէլոյ նց առատ զոհիւք զդիսն՝ ձախողակի վճարեցաւ մարտն : Եւ առաւել՝ ՚ի վարանս լինէր միհրներսեհ հազարապետն մեծ՝ խորհրդատուն պատերազմի, զի մի յիւր վր հեղցէ արքայ զցասումն. վՙյ հնարս չարուն ածեալ զմտաւ՝ եդ բանս ՚ի բերան մոգուցն ասել ցյազկերտ. մեք գիտեմք արքայ քաջ ՚ի զօրութէ դենիս մերոյ, զի ոչ ոք ՚ի մարդկանէ կարօղ է յաղթել քեզ. բայց քանզի խնայեցեր դու ՚ի քրիստոնեայս, և մինչև ցարդ կենդանի պահեցեր զկապեալ քահանայս նց, որք սպանին զածս մեր, վՙյ ածքն բարկացան, և թոյլ ետուն զօրաց քոց կոտորիլ ՚ի հոնաց :

Օ այսպիսի բանս անմտութե լուեալ յազկերտի՝ հաւան գտաւ սուտ հրապուրանացն. և նախ ետ կոչել վաղվաղակի առաջի իւր զերկոսին սրբ քահանայսն զսամուէլ և զաբրահամ, որք կային կապանօք ՚ի կարաւանին. և ետ հատանել զաջ ձեռս նց, և դընել ՚ի վր ձախոյ ձեռաց իւրեաց. փոխանակ զի իշխեցին ասէ ձգել զձեռս ՚ի սպանանել զկրակ. և ապա ետ տանել զնս հեռագոյնս ուրեք ՚ի բանակէն և գլխատել. զի մի լիցի ումեք ՚ի քրիստոնէից գտանել զոսկերս նց և պատուէլ : Եւ եղև կատարումն երկոցունց սրբցս յեօթներորդ աւուր հրոտից. (այն է Է յայսմաւուրաց ՚ի յուլիսի. 13) : Յետ այսորիկ յղեաց յազկերտ մոգս

յասորեստան՝ նահատակել և զսբն թաթիկ եպսն բասենոյ , որ և էր յաշակերտաց սբյն սահակայ և մեսրոպայ ; կանխագոյն տարագրեալ անդր բանիւ ուրացելոյն վասակայ , և մատնեալ 'ի կապանս և 'ի տանջանս • զոր և բազում կոտանօք չարչարեալ զաւուրս բազումս՝ քերեցին զմարմին նր մինչև յոսկերս • և ապա հատին զգլուխ երանելւոյն :

Իսկ վն երիցանց եղելոցն 'ի նիւշապուհ Ը̄ սբյն ղևոնդեայ՝ առաքեաց զդենշապուհ Ծ̄ ասացելոցս , հրաման տուեալ նմա , զի կամ հնարեսցի դարձուցանել զնս 'ի մոգութի , և կմ բարձցէ 'ի կենաց գաղտ յամենեցունց • զի մի ոք 'ի քրիստոնէից պաշտեսցէ զնոսա իբրև զսբս , և պահեսցէ զնշխարս նց : Իբրև ահա 'ի գիշերին յայնմիկ , յորում մկրտեցաւ երանելի մոգպետն , եհաս սա ինքն դենշապուհ 'ի նիւշապուհ քաղաք • և առ ծածկելոյ զիրսն՝ համբաւեաց , թէ եկեալ է ազատել զքահանայս արքունի հրամանաւ • իսկ զնախարարս ասէ՝ ինքնին արքայ գայ արձակել 'ի կապանաց : Իսկ յաւել պատուիրել պահապանաց և վերակացուաց քաղաքին սպառնալեօք մահապարտութե՝ չթողուլ զոք 'ի հայոց գտելոց անդ ելանել զքանի մի աւուրս 'ի քաղաքէ անտի • զի մի ինչ գիտասցեն վն նահատակութե սբց :

Բայց խնամօքն այ եկեալ էր Ը̄ դենշապհոյ և այր ոմն խուժիկ , այն է յերկրէն և յազգէն խուժաստանի , քրիստոնեայ հաւատով 'ի ծածուկ • որ և ծանօթ իսկ էր հայոց , և

փա

պնդափութէր 'ի ձեռս բերել զնշխարս նոցա յաւուր նահատակութեան . այլ դենշապհոյ խափանեալ 'ի նմանէ՝ կարծէր զնա ջերմ կրակապաշտ և վրէժխնդիր Ըրդէմ քրիստոնէից . վասն և առեալ էր զնա իւր գործակից . զի տեսանէր զնա այր յաջողակ յամենայնի : Նորա քզի քաջ գիտէր խուժիկ զմիտս դենշապհոյ , 'ի հասանել 'ի քաղաք անդր կոչեաց լուելեայն զոմն 'ի դահճաց՝ որ բարեկամութեան էր ընդ-կապեալս , և ետ ազդ առնել սրբոց երիցանց և նախարարաց զպատճառս գալստեան դենշապհոյ : Այն իբրև լուան սրբքն , լցան անպատմելի ուրախութեամբ . զի տեսին՝ թէ եկեալ հասեալ է կատարումն գուշակութեան սրբոյն յովսեփայ յառաջինկայ աւուր անդ :

Նակ նախարարքն սկսան մորմոքել յանձինս՝ տեսանելով , զի առաջի կայ նոցա բաժանիլ 'ի հոգևոր հարց իւրեանց , և մնալ իբրև ոչխարս առանց հովուի 'ի մէջ գայլոց . վասն և արտասուօք անկեալ առ ոտս նոցա՝ աղաչէին զնոսա յանձն առնել զինքեանս հոգւոյն սրբոյ , զի մի՛ ոք 'ի մէնջ ասէն թուլացեալ և ելեալ արտաքս 'ի հաւատոյ միաբանութենէս՝ կերակուր լիցի չարաբարոյ գազանին : Նայց սրբքն միաբան քաջալերէին զնոսա՝ ասելով . զօրացարուք եղբարք 'ի տէր , որ ոչ թողու զձեզ որբս . ունիմք հաւատս 'ի քս , զի ոչ շիջանի վառումն կանթեղաց ձերոց , և ոչ ուրախ լինի խաւարասէր թշնամին կենաց ձերոց . այլ նոյն իսկ տէրն՝ որ զօրացոյց զառաջին նահատակսն՝ խառնելով զնոսա 'ի

Զ 4 գումդս

դունդս հրեշտակաց իւրոց, հանդիսի լինել և ձեզ աջոյ իւրոյ. և հոգիք ամ̃ց և զաւակք արդարոց հասանելն ձեզ յօգնականութիւն համբերութեն. զի է նորին նոցունց պսակացն

արժանի լինիք.

Ուչ յաւելլին ևս զուշակել նոցա, թէ այցելութի այս արարացէ ձեզ տր, զի արձակել զձեզ ըստ ժամանակին յերևելի կապանաց սատոի՝ դարձուցէ խաղաղութի յե հայրենի. և յանէրևոյթ կապանաց սատանայի արձակեալ զոգիս ձեր՝ տարեալ հասուսցէ 'ի մասն ժառանգութե քսի է ա̃ս տմ. Ուրեմն մեք փութամք ձեռպիմք. է հանձոյս բարերարին վաղագոյն երթալ 'ի բնիկ հայրենիս մեր յերկիրն. և դուք մի տրտմիք, այլ ուրախակից մեզ լերուք. և զոր օրինակ եթէ ոք 'ի ձէնջ յուղարկեալ լինէր 'ի հայս, աղջոյն ողոյ և թուղթս ողջունացայցս յղէիք առ սիրելիս ձեր մեծաւ խնդութի, և խրնդարէիք ևս 'ի տեսել զյաջողութի հասանելոյն 'ի տեղին՝ յոր դիմեցեալն է. նոյնպէս և այժմ քանզի յուղարկիմք մեք 'ի ձէնջ առ տր, խնդակից սրտի խնդրեցէք 'ի տե լինել մեզ անձնեցուն արժանի երկնաւորաց ցանկալի ուղւոյն, և տանել զձեր աղերսանս առ բազումողորմն քո, և զողջոյն ձեր և բարեխնամութի առ երջանիկ դունդս առաքելոց և մարգարէից և այլ ա̃ց. որոց բարեխօսութի թախանձեսցի զորովագին գութ ամենողորմ արարչին՝ լինել ձեզ մխիթարիչ և փրկիչ և այցելու յամ ժամ.

Ողջեր

Յանձամբ պլինի եռուն և նախարարքն ար-
տասուածախառն զուարթութբ̃ , և ասեն ․ քան-
ւեցի մեզ տրտմիլ վս̃ մեկնելոյ ձեր 'ի հով-
տէս տրտմութե և մտանելոյ առ ա̃ծ․ և ընդէ՞ր
իսկ ծնանիցի տխրութի 'ի սիրտս մեր , որք ար-
ժանի եղաք ցանկ զհոգևոր ծնօղս մեր և
զվ̃դպս 'ի կենդանութե մերում իբրև զհրեշ-
տակս 'ի մարմնի տեսանել , և 'ի վախճանի
իբրև զզուարթունս․ բայց որ արտասուեմքս
ողբալով , զայն խորհիմք՝ թէ ընդէ՞ր իսկ ան-
մահ և անախտ ստեղծեալքս յարարչէն՝ դար-
ձեալ 'ի հող մահու անկանիմք․ այլ անդրէն
մխիթարիմք հաստատուն յուսով անմահու-
թե․ և զօրս զայս կատարման ձերոյ կարա-
պետ մեզ գիտեմք աւուրն տեսանելոյ զձեզ
յերկնից բարութիւն ։

Նա իբրև լուան սբ̃ քահանայքն ն̃յ զայս-
պիսի բանս աւետալից յերանելւոյն նախա-
րարաց , մեծաւ ուրախութբ̃ սկսան ամենե-
քեան տարածել զձեռս 'ի յերկինս , և ա-
սել․ Գոհանամք զքէն ա̃ծ , որ 'ի շնորհէ
քարոզութե սբ̃ առաքելոցն բազում ծնար
առաքեալս , և 'ի շնորհէ սբ̃ց մարտիրոսաց
անթիւ ծնար նահատակս , և 'ի ձեռն առա-
քելաշնորհ սբ̃յն գրիգորի բազում որդիս 'ի
փառս ածեր , վ̃դպս և նահատակս , միան-
ձունս և դասս կուսանաց , առնելով զամե-
նեսին տաճար բնակութե քումդ սրբութե ։
Գոհանամք զքէն փրկիչ , որ 'ի հօտէն սբ̃յն
գրիգորի զոչխարսն առաւել քան զհովիւս
բանաւորս արարեր , և զաշակերտս 'ի ժողո-

վրդնենէն առաւել քան զվկդս յօրինեցեր գիտունս. աՀա և մեք այժմ զօրացեալք քաջալերեցաք 'ի բանից շնորհալից Հոգևոր որդւոցս մեր, Հարց յորդւոց, վրդպք յաշակերտաց, քահանայք 'ի ժողովրդոց: Եւ արդ սոքա ուրախութբ յուղարկեն զմեզ առ քեզ տր. և ինքեանք մնալով 'ի մարմնի՝ ընդ քեզ են և առ քեզ, և քև զօրանան: ՊաՀեա զսոսա ամենազօր աջովդ քո, պարապեա՛ զսոսա ամլութբ սբ Հոգւոյդ, մխիթարեա՛ զսոսա ուրախութբ բանի քո. զխաղաղութի քո տուր սոցա, և աճեցո՛ 'ի սոսա զշնորՀսն: Եւ այսպէս օրՀնեալ սրբցն զկապեալ նախարարս՝ յանձն արարին զնս տն. և էր առաջնորդ բանից վկդպուէ և մխիթարութե երանելին ղևոնդ՝ ըս Հրամանի սրբյն յովսէփայ և սաՀակայ: Ապա մեկնեցան նախարարքն ողբալով և խնդալով 'ի բանտն իւրեանց. և քաՀանայքն գնացին յիւրեանց տեղի բանտարկութե. ուր և ինքնակամ բանտակից եղև նց երանելի մոգպետն՝ արկեալ անձամբ յինքն զկապանս շղթայից: Եւ իբրև այն ինչ Հաւախօսն առաւօտու լսելի լինէր, և սրբքն միաբան ասէին, ծագեա՛ զողորմութիս քո՝ որք ճանաչեն զքեզ, եկեալ Հասին դաՀիճք դենշապՀոյ՝ Հանել 'ի բանտէ զկապեալ քաՀանայս, և տանել առ նա: Այլ յորժամ տեսին զմոգպետն՝ որ վերակացուն էր կապելոց, զի նստէր կապանօք 'ի մէջ նց, և լսէր նց, և քաջալերէր իսկ զնս չերկնչել 'ի մաՀուանէ, զարմացան յոյժ ընդ իրսն.

իրան․ և ընթացեալ պատմեցին Դենշապհոյ :
Այլ նա․ իբրև լուաւ, զահի մեծի հարաւ․ և
փութացոյց զդահիճսն, զի վաղվաղակի լուծ-
ցեն զկապանս քահանայից, և բերցեն զնս՟
ուր ինքն երթալոց էր՝ արտաքոյ քաղաքին․
նոյնպէս և զմոգպետն առանձինն ածցեն առ-
նա : Այլ անդրէն դահիճքն 'ի բանտն՝ բե-
րեալ Ը իւրեանս զդարբինս 'ի քակել զշղ-
թայս սրբոցն․ և զի ստուար շղթայք էին երա-
նելեացն, և մանաւանդ սրբոյն յովսեփայ կա-
թողիկոսին, բազում աշխատ եղեալ դարբ-
նացն՝ ոչ կարացին խարտել կամ կտրել և 'ի
բաց հանել զերկաթսն 'ի ձեռաց և յոտից և
'ի պարանոցաց սրբոցն․ որպէս և փափաք սրբոցն
այն էր, զի նովին շղթայիւք հասցեն 'ի տեղի
վկայութե, և նոքիմբք կատարեսցին, առա-
ւել շուք փառաւորութե համարեալ անձանց
զծանրութի կապանացն որ վս ածն՝ քան զբմ
զարդ ոսկւոյ և ականց պատուականաց և
մարգարտաց : Բայց քանզի առ նեղութե
հրամանն տուեալ էր Դենշապհոյ․ լուծանել
զկապանս նց, ոչ զի կարծեսցի 'ի քաղաքի՝
թէ յաշտարակի դնան նք, ստիպէին դահիճք
զդարբինս, զի որ և է հնարիւք արհեստի իւ-
րեանց խորտակեսցեն զշղթայսն : Այլ յայնմ
վայրի զեղան 'ի տես նց բազմութիք 'ի հեթա-
նոսաց․ ոչ և ոմանք 'ի քրիստոնէից 'ի համ-
բոյր սրբոցն․ վյ փութացեալ դարբնաց՝ եդին
զշղթայս իւրաքանչիւր նց 'ի վէմ սալիցն, և
ուռամբք [illegible] հարին զերծուցին և հա-
նին զերկաթսն՝ ճարաչար կոտորելով և վի-
րաւ

թաւորելով զմարմինս սրբյն. և առեալ տանէին զնս արտաքոյ քաղաքին :

Եւ զի ցնծալից ուրախութբ ընթանային սրբքն ՚ի նահատակութի, կարծելով դաՀճայ՝ թէ նք խնդան վն յուսոյ ազատութե, և զերծանելոյ ՚ի շղթայից, այպանէին զնս ընդ միտս իւրեանց՝ ծաղրելով իբրև անգէտս Հրամանի թագաւորին, և ասէին գաղտ ցմիմեանս. զի թէ գիտէին երկուքս այս զմաՀն՝ որ պատրաստեալ է նց, ունէին արդեօք բազում պատՃառս լալոյ զանձինս, և ոչ լինէին կարօղ այդպէս ծիծաղիլ և ուրախանալ : Եւ զայն ոչ գիտէին անմիտքն, թէ այն իսկ էր պատՃառ մեծի խնդութե սրբցն՝ զոր ինքեանք տրտմութե առիթ Համարէին :

Եւ եղև իբրև ածին զսրբսն առաջի դենշապՀոյ, առեալ նր նախ առանձինն զմօգպետն՝ Հարցանէր ցնա ՚ի ծածուկ, թէ զի՞նչ պատՃառք իցեն կապանացն, զոր արկեալ էր զանձամբ ՚ի բանտին իբրև զմի ՚ի քրիստոնէից կապելոց : Նա պխնի երանելին և ասէ. մի՛ խօսիր ընդ իս ՚ի ծածուկ, և մի՛ լսեր զխորՀուրդս լուսոյ ՚ի մէջ խաւարի. զի բաց են աչք իմ. քանզի տեսի զլոյսն երկնաւոր : Եւ իբրև լուաւ ՚ի նմանէ զամ բան տեսալեանն և զօրինակ դարձի նորա, և զՀաստատուն միտս նր մնալոյ ՚ի քրիստոնէութե և ՚ի միաբանութե սրբցն, փութացաւ ծանոյց թագաւորին՝ որ ՚ի բանակի անդ էր ոչինչ Հեռի ՚ի տեղւոջէն : Ընդ որ զարմացեալ թագաւորին՝ յաՀի եղև. և արգել չմխճել Ը նմա

՚ի

'ի վ̅ր̅ հաւատոց , զի նա գիտակ գոլով ասէ ա̅մ̅ բանի՝ յամօթ առնէ զմեզ · և ես զգուշացոյց , զի մի՛ ոք 'ի պարսից լուիցէ զերևել տեսիլն , և խափանեսցի 'ի դենէ իւրմէ · և մի՛ ոք իմասցի՝ թէ նա քրիստոնեայ եղև և վասն հաւատոց պատուհասի · այլ եթէ ոչ դարձցի անդրէն ողոքանօք և սպառնալեօք , դի՛ր ասէ 'ի վ̅ր̅ ն̅ր̅ սուտ յանցանս ը̅դ̅էմ թագաւորութե̅ն̅ , և աքսորեա՛ իբրև մահապարտ 'ի հեռաւոր երկիր · և անդ ընկեցեալ 'ի վերայ մի՝ ընկալցի զմահ թշուառութե̅ն̅ ։ Իսկ զքրիստոնէից երիցունսն փութանակի կարճեա՛ 'ի կենաց , զի մի՛ և զ̅ս̅ա ողջոյն դարձուսցեն յարէնս իւրեանց · զի թէ զճարտար մոգպետն այնպէս երագ աշակերտեցին , տգէտ մարդիկ զիա՞րդ կարասցեն կալ առաջի ն̅ց̅ պատիր խաբէութե̅ն̅ ։

Արդ եկն նստաւ դենշապուհ արտաքոյ բանակին յառաջնում վայրի · և ասէ առանձին ցմոգպետն · իշխանութի̅ն̅ առի վ̅ս̅ քո ո՛չ լոկ բանիւք հարցանել , այլ՝ ա̅մ̅ հարուածովք դատել մինչ 'ի մահ · ա՛ղէ մինչև ձեռն արկեալ է իմ 'ի քեզ , ընկա՛լ զառաջին պատիւն քո , և զերծի՛ր 'ի տանջանաց մահու՝ խնայելով 'ի պատուական ալիսդ · թո՛ղ անդր 'ի բաց զքրիստոնէութի̅ն̅՝ զոր ոչ ունէիր 'ի բնէ , և դարձի՛ր անդրէն 'ի մոգութի̅ն̅ · ո̅վ̅ և էիրն իսկ մոգաց պետ և վ̅ր̅դ̅պ̅ բազմաց ։ Նա պնդեր երանելին և ասէ · աղաչեմ զքեզ՝ որ յառաջ իբրև սիրելի հարազատ համարեալ էիր յաչս իմ , և այսօր թշնամի հոգւոյ գտանիս , մի՛ ը̅դ̅

առաջին սիրոյն զԹաւր դու յիս. այլ կատարեա՛ 'ի վ̃ր իմ զկամս չարութեան Թագաւորին քո, դատելով զիս՝ ոչ և առաւել հրամանս: Տեսեալ դենշապհոյ զանշարժելի միտս նորա և զաներկիւղութիւն, արար ը̃ նա ը̃ հրամանի արքային. և այնպէս կատարեցաւ երանելին յօտարութեան յանձանօթս ուրեք վկայական հանդիսիւն, և արժանի եղև պսակացն՝ զոր ետես 'ի տեսլեան:

Յետ այսորիկ փութացեալ դենշապհոյ բառնալ 'ի կենաց և զքահանայս, եհաս ը̃ իւր և զայլ երկուս յաւագաց պարսից, զջնիկան մարզպետ կմ՛ մայպետ, և զմոգան անդերձապետ. և հրամայեաց դահճաց և սպասաւորաց՝ ը̃ ոյս խառնեալ էր և խուժիկն, զի տարցին զս̃ոսն 'ի խորագոյն ևս անապատ անմերձ 'ի մարդկանէ. և էր տեղին այնպէս առապար դժնեայ, մինչև չգտաւ և տեղի նստելոյ երեցունց իշխանացն. ապա իջեալ նոցա հետագոյնս՝ հրամայեցին դահճաց կապել զոտս և զձեռս ս̃րց, և արկանել երկայն պարանս յոտս նոցա, և ը̃ քարշ ածել: Իսկ դահիճքն երկու երկու լծեցան, և առին 'ի քարշ զերանելիսն. և այնպէս ձգձգեցին ը̃ ապառաժ տեղիսն, զի ամենևին խայծ ոչ մնաց 'ի մարմինս ս̃րցն. և ապա լուծին և ածին 'ի մի տեղի:

Խոստեր իշխանաց, Թէ սովաւ կակղեցան միտք երանելեացն, և այնուհետև դիւրին լիցի ձգել զնս՛ 'ի կամս իւրեանց. և ոչ գիտէին, Թէ նոքին իսկ էին և քաջ զինուորա

վա-

վրնեցին և վարժեցին զնս. զի եթէ և սա-
կաւ ինչ երկիւղ մարդկային կայր 'ի սիրտս
նց յառաջագոյն, հայեցեալ նց 'ի չարաչար
վէրս մարմնոց իւրեանց՝ իսպառ 'ի բաց մեր-
ժեցին զերկիւղ, և սկսան մի քան զմի յա-
ռաջել 'ի պնդատուութիւն հանդիսի նահա-
տակութեան. քանզի փութային իբրև ծարա-
ւիք յաղբիւր, եթէ ո՛վ վաղ զիւր արիւնն
հեղցէ վս նրս ։

Խօսել սկսաւ ը նս դենշապուհ, և ասէ. արքայ յղեաց զիս առ ձեզ՝ ասել, թէ ամ աւեր երին հայոց, և կոտորածք զօրաց հայոց և պարսից առ 'ի ձէնջ եղեն, և 'ի պատճառս ձեր կան նախարարքն հայոց 'ի կապանս. արդ 'ի ձեռս ձեր է արձակել զնս, և զայլ ևս բազմութիւն գերեաց, և առնել շինութիւն երին. ապա թէ ոչ՝ դուք չարաչար մահու մեռանիք, և աշխարհ ձեր կորնչի. և ամ արիւնքն՝ որ հեղան և որ հեղլոց են, 'ի ձէնջ խնդրին 'ի ձեռն ոծոց ։ Ահա դուք ձեզէն տեսիք թէ զօրպլիսի այր երևելի 'ի դենիս մերում, որ սիրելին էր արքայի և ամ մեծամեծաց, վս խոստովելոյ 'ի կրօնս ձեր անխնայ դատեցաք՝ տարագրելով յոտարութի հեռաւոր. մինչև և յերթալն իսկ մեռանի, և ոչ հասանէ 'ի տեղի պատուհասին իւրոյ. արդ եթէ 'ի բուն սիրելիս ոչ խնայեաց արքայ, որչափ ևս 'ի ձեզ 'ի տարաձիկս, որ մահապարտ իսկ էք իբրև վնասակարք յիրս արքունի. վոյ չէք այլ ձեզ հնարք ապրանաց, բայց եթէ երկիր պագանիցէք արեգական ը կամս թագաւորի. զի յայնժ

**յայնժամ ոչ միայն 'ի մահուանէ ապրիք , այլ և մեծամեծ պարգևօք յուղարկիք յՏ̃ն ձեր :**

Զայս և առաւել ևս զայն խօսեցաւ դենշապհոյ՝ հրաման ետ սահակայ ե̃պսի , որ առաւել տեղեակն էր պարսկական լեզուի , պարզ իմացուցանել և այլոց ընկերաց իւրոց : Իսկ նա ասէ . մի՛ ստիպէք զիս՝ զայդպիսի ծաղրական բանս յեղուլ 'ի լսելիս սր̃ց . արարէք դուք զոր ինչ և գիտէք , և մի՛ յերկարէք խօսել առ մեզ բանս մնոտիս . զոր եթէ լուիցեն՝ զասացեալսդ այպանեն , և ը̃ իս ցասնուն իբրև ը̃ ժամանակավաճառ և վայրախօս : Սրտմտեալ ը̃ այս դենշապհոյ համդերձ գործակցօքն՝ ասէ ցսահակ . դու հարկաւորութե̃ ասա՛ ցդոսա՝ զոր ինչ և լուար , թո՛ղ գիտասցուք և զդոցա կամս և զխօսս : Իսկ սր̃ն կարճ 'ի կարճոյ և վեր 'ի վերոյ բանիւք պատմեաց նց̃ ծաղու և այպանօք . և նք̃ իբրև լուան , առհասարակ այպն արարին մեծաձայն ծաղու :

Յառաջ մատեաւ յայնժամ երանելին ղևոնդ երէց , և կացուցեալ թարգման զնա ինքն զսահակ ե̃պս՝ ասէ ցդենշապուհ . Ո՞ խա̃րդ լուիցուք երկդիմի հրամանացդ քոց , որ զերկրպագութի̃դ ետուր նախ արեգական , և զկատարումն երկրպագութե̃ն 'ի կամս թագաւորին ձգեցեր . և այնպէս մեծացուցեր զթագաւորն քան զարեգակն՝ զոր մեծարել կամէիր . յայտ արարեալ՝ թէ արևն չունի ինչ կամս , այլ հարկաւ արբանեկէ արարա-

ծոցս Քի վերին հրամանի ․ իսկ Թագաւորն
ձեր ըստ կամի՝ զոր կամի մծացուցանէ, և
զոր կամի ծառայեցուցանէ ․ և ինքն գլխա-
ւորն անգէտ է, թէ ո՛ր իցէ ած ճշմարիտ ։
Այլ մեք քանզի գիտեմք զճշմարիտն ած,
չկարեմք փոխանակել զնա ը ստութե ․ և
նորին իսկ հրամանաւ հպատակեմք արքայա-
կան իշխանութե, ցորչափ չհակառակի այ
իշխանութեն ․ վյ 'ի զուր եդեր զմեզ լինել
պատճառ ապստամբութե և աւերածոյ Երի ․
զի այդ արտաքոյ է օրինաց մերոց ․ այլ դուք
ձեզէն հակառակ կացիք այ և մարդկան ։
Մի՛ խօսիր ընդ մեզ իբրև ընդ տղայս, և մի՛
կարծեր յաղթել մեզ՝ իբր մեկուսի զատեալ
զմեզ յառաջինի զօրականաց մերոց ․ չեմք
մեք միայն՝ որպէս դուդ կարծես ․ չի՛ք տեղի
ունայն, ուր ոչ իցէ Թագաւորն մեր քս զօ-
րացուցիչ մեր և փրկիչ ․ միայն այնոքիկ Թա-
փուր են 'ի նմանէ՝ որք ուրացեալ են 'ի նմա-
նէ ։ Իսկ զի՞արդ ակնունիցիս փոխել զմիտս
մեր հաստատեալս 'ի քս ․ ուր և զինուորք
Տին մերոյ՝ որք մեզ աշակերտեալ էին 'ի քս,
առ ոտն հարին զանարժան հրամանս Թա-
գաւորին ձերոյ, և առ սէրն քսի յոչինչ հա-
մարեցան զամ ինչ և զկեանս իւրեանց, և
զերկրպագուս արեգական չարաչար հար-
ուածովք սատակեցին, և ինքեանք յառա-
ջեցին քան զմեզ 'ի յարքայութիւն այ, և խառ-
նեցան 'ի զուարթնոց դասս հրեշտակաց յանպա-
տում ուրախութիւն ․ 'ի նոյն բարիս վիճակե-
ցաւ և երանելի մոգպետն, զորմէ դու ասեր

Թէ յաքսորս յղեցի ։

Ետ պ՟խնի մովան անդերձապետն և ասէ. ա՟ծքն բարերար են, և երկայնամիտ լինին առ ձեզ, զի վայելեսջիք 'ի բարիս ն՟ց 'ի ձեռն Թագաւորին մերոյ, յորոյ 'ի բերանոյ ելանէ հրաման կենաց և մահու. և ձեզ ոչ էր յանդգնել ի այդպէս ը՟դդիմանալ, այլ յանձն առնուլ զերկրպագութի արեգական և հրոյ, որովք կեայ և կերակրի տս. և մեք զի տեսանեմք զձեզ անգէտս, երկայնամիտ լինիմք 'ի վ՟ր տգիտութ՟եդ ձերոյ. խնայեցէք յանձինս ձեր, և մի՛ խառնէք զմեզ ակամայ յարիւնս ձեր ։

Ու. այս ասէ ս՟րբն սահակ. իբրև ուսեալ և յոյժ խրատեալ խօսիս. բայց զայդ կարի տգիտաբար ուսուցանես, զի ա՟ծս բազումս խոստովանիս, և հակառակ կամս 'ի նոսա գտանես. և եթէ վեհքն հակառակ են միմեանց, մեք խոնարհագոյնքս չկարեմք հպատակել ն՟ց, մ՟յ և ոչ սնոտի բանիցդ անսալ. միօրինակ վեհ համարիք դուք և պաշտէք զկրակ և զջուր, որք եղծիչք են իրերաց. արեգակն անկերակուր է, այլ կարօտի օդոյ 'ի ձգել զճառագայթս լուսոյ և 'ի ջեռուցանել. 'ի ձմեռան ցրտանայ և սառուցանէ զերկիր, և յամառան տօթանայ և տոչորէ զտիեզերս. իսկ հուրն միշտ անյագ ուտէ զփայտս յարքունի ծախուց, և աշխատ առնէ զծառայս. և ոչ երբէք ինքնին մնայ կենդանի, այլ հանապազ մեռանի. և զիա՞րդ հնար իցէ այսպիսեաց փոփոխելի և եղծական տարրե-

ընկերաց նահատակին անուն ընդունել , և կամ այլոց կենսատու լինել ։ Բազում և այլ բանիւք յամօթ արար զկուրութի՟ն հեթանոսաց , և յանդիմանն կացոյց զճշմարտութի՟ն քրիստոնէութե՟ն ։

Այսպէս և ս՟ն յովսէփ բազմօք խօսեցաւ առ իշխանսն , եթէ 'ի զուր է ձեզ վաստակիլ առ որսալոյ զմեզ ։ զի այդպիսի հարցուածք և այլ անգամ եղեն առ մեզ յատենի պարսից ։ և միշտ 'ի սոյն միտս և 'ի կամս հաստատուն գտաք և ծանուցաք արքային ձերում ։ և ո՛չ կարեմք փոփոխել զբանս մեր , ո՟զ թէ յառաջն այլազգ ինչ խորհեալ իցէ մեր ։ այլ այս ևեթ խորհուրդ վառեալ կայ 'ի սրտի մերում , և որ քան զօր բորբոքի , զի այսօր քան զերէկն և զեռանդն առաւել ցուցցի յանձինս մեր լաւութի՟ն և գործ բարի ա՟յ հաւատոցն ք՟ի ։ յորում կամիմք կեալ և մեռանել ։ Ա՛յլ վայրապար սպառնայք մեզ զմահ , որում տենչացեալ եմք սիրով ։ կամ խոստանայք մեզ բարիս առնել , զոր չար գիտեմք ։ ապա եթէ 'ի հաւանել մեր առնէք արձակել և զնախարարս , մի՛ և մի՛ լիցի ումեք 'ի հաւատացեալ կապելոցն արձակիլ յըստ մարմնոյ ազատութի՟ մերովս ուրացութ՟ք , և 'ի յաւիտենից անլոյծ կապանսն անկանիլ ։ ո՟զ և նոքին իսկ իբրև զմեզ խնդրեն այժմ յա՟յ զմեր վ՟ն ա՟յ զվախճանն , քան թէ զկեալն մեր կենդանեաց իւրեանց ուրացութ՟ք ։ Հա՛պա զոր ինչ կամիք՝ արարէք վաղ , և կ՟մ երբ և կամիք ։ Զսոյն և այլ ընկերք ս՟ցն ասէին՝

մուշէ երեց, արշէն երեց, և քաջաջ սարկաւագ. որք և աղաչեցին զսահակ եպս ասել ցիշխանսն բանիւ նց, թէ զոր ինչ ասացին սբ վդպքն մեր և հոգևոր հարքս մր յովսէփ և տէր ղևոնդ, դոյն են մեր կամք և խնդիրք. կատարեցէք փաղփաղակի՝ յոր եկեալ էք, և մի յապաղէք։

Տեսեալ դենշապուհոյ զհաստատուն նոցա և զզօրաւորթութն, հրամայեաց յառաջ մատուցանել զկրտսերագոյնն 'ի նց և զառկարագոյն կարծեցեալն. այն է արշէն երեց. և ետ կապել զոտս նր, և մեծաւ ուժով պնդել զձեռսն, մինչև ճարճատեալ հատան ջիլք նր։ Եւ մինչդեռ կայր երանելին յանհնարին պրկոցսն, եբաց զբերան իւր և սաղմոսէր ասելով. ահա շրջեցան զինև շունք բազումք, և ժողովք չարաց պաշարեցին զիս. ծակեցին զձեռս և զոտս իմ, և փոխանակ բերանոյ իմոյ աղաղակեցին նմ ոսկերք իմ։ Առ ինձ տր, և լուր ձայնի իմում. և ընկալ զոգի իմ 'ի ժողով սբ զօրականին քո, որ երևեցան նորակերտ դաստակերտին քո (հաւատացեալ մոգպետի). գոհանամ զքէն տր, զի ես որ կրսեր էի յամենեսեան՝ ողորմութն քո գթացեալ յառաջեցոյց զիս։ Եւ զայս իբրև ասաց, ոչ ևս կարէր բանալ զբերանն յանհնարին պըրկոցսն գելարանին. և անդէն փաղփաղակի հրամանաւ երեցունց նախարարացն հատին դահիճքն սրով զպարանոց երանելւոյն, և ընկեցին զմարմինն 'ի խորխորատ մի ցամաք.

մաք . և այնպէս կատարեցաւ ս՟ն արշէն յառաջ քան զայլ ընկերս իւր՝ ը՟ դուշակութե՟ ս՟յն յովսեփայ յընթրիս :

Դարձեալ սկսաւ խօսել դենշապուհ ընդ սահակայ եպ՟սին , և ասէ . խնայեմ 'ի քեզ և 'ի յովսէփ . զի զերկոցունց զձենջ բազում գովութի՟ լուեալ է իմ 'ի ժամանակին՝ յորում շրջեցայ յՅին հայոց տարի մի և վեց ամիս . և ես աչօք իմովք տեսանէի զքո լաւութի՟ս , որ՟պ և զյովսեփայն՝ թէ որպէս բարիոք քաղաքավարէր մարդասիրութ՟ ան ամենեսեան , հայր հաստատուն համարեալ ա՟մ ա՟ին , և հաւատարիմ յերս արքունի . արդ փոխանակ ձեր ես աղաչեմ զձեզ , խնայեցէք 'ի պատուական անձինս ձեր . և մի մատնիք 'ի մահ դառն՝ որ ձեզ առաջիկայ վ՟ս յամառութե՟ ձերոյ : Գիտեմ ես , զի 'ի հրապոյրս առնդ այդորիկ ղևոնդի ըմբռնեալ էք դուք , որ 'ի մահ կրթէ զձեզ . քանզի ինքն ախտացեալ է մարմնով , և ոչ գտեալ հնարս առողջութե՟ 'ի բժշկաց , և հիւանդոտ կենօք ձանձրացեալ՝ փափաքէ 'ի մահ քան 'ի կեանս :

Եւ այս եւս պնդի ս՟ն յովսէփ . գովութիդ՝ զոր ետուր մեզ ը՟ կարգի պատուոյ ալեացն , արդարանայ ա՟մի . և արդարև պարտ իսկ էր մեզ անարատ քաղաքավարել յառաջնորդական վերակացութե՟ս մերում , որ՟պ վայել է Քրիստոսի ծառայից ա՟յ . ոչ իշխանաց դիմադարձ լինել , և ոչ զժողովուրդս 'ի տրտունջ ձգել , այլ՝ օրինօք ընթանալ յա՟մի :

Այնպէս և զոր առաքեցեր մեզ հրապուրանաց ատնս պյտորիկ, ոչ ստեցեր. այլ ոչ եթէ ոմն օտար ոք հրապուրէ զմեզ, այլ քանզի յոյժ սիրէ զմեզ, յօգուտ մեր յորդորակից լինի. և որ հրապոյրք քեզ կարծին, այդ իսկ է մեր հաստատուն խորհուրդ յամժամ, զի անքակ ունիցիմք զկենաց միաբանութիս. իսկ եթէ սա ձանձրացեալ իցէ յախտալից մարմնոյս, առաւել ևս մեք ամենեքեան. զի չիք ոք ամենևին՝ որ ունիցի զմարմին առանց ցաւոց չարչարանաց:

Դենշապուհ ասէ. զայդ ո՞չ գիտէք՝ որչափ երկայնամիտ լինիմ ես 'ի մեծի ձեր արտաքոյ արքունի հրամանին իմոյս քաղցրութեամբ. զի չեմ անպատրոյն իբրև զձեզ, զի անձանց ատելի էք, և այլոց թշնամի. իմ զի այդ և հաց կերեալ է յայսմ ձերում, զուլթ և սէր ունիմ առ նոսա: Ապա պատասխանի ետ Ղևոնդ, և ասէ. որ այլոց գթայ, առաւել յանձն իւր ունի խնայել՝ կատարելով զպատուիրանս նորա. զի չեմք անձանց տէր, այլ ունիմք համար տալ նորա մեծի նմին: Ապա եթէ դու երկայնամիտ լինիս մեզ՝ ոչ հայելով 'ի հրամանս թագաւորին, չէ ինչ. զի բարուք առնեք չանսալ թագաւորին ձերոյ՝ որ մահկանացուն է, և սատակիչ անմեղ մարդկան, բարեկամ սատանայի, և թշնամի Աստուծոյ. այլ մեք ոչ կարեմք անցանել զհրամանաւ մերոյ թագաւորին, և ոչ զանանց կենաց փոխանակել ընդ պատրանս ձերս: Նաև մեծ իմ զի ասացեր, թէ չգտեալ առողջութիւն 'ի բժշկաց

տեղէ

մերժէ զմահ քան զկեանս, ոչ ուղիղ խորհե-
ցար. զի թէ զԾի զմիջակ գիտէիր, ընդ էր
ինչ ոչ զարմանայիր կիր մեղադիր լինէիր.
ո՞ որք 'ի մահկանացուաց ունիցի կեանս
անտրտում. ո՞չ ահա լի են ամ ախտիւք, և
տառապանօք հոգւոյ և մարմնոյ. և չեն ինչ
զարմանք, եթէ չկարեն բժշկել զամի ըզ-
դեղ գտանել. վս զի մահկանացու են՝ այն
որ բժշկէն, և որ բժշկին :

Բայց երանի՛ թէ և դուք այնչափ ինչ հոգ-
տանէիք նախ հոգւոց ձերոց, և ապա այլոց,
որչափ հոգան բժշկել վս մարմնոց. զի թէ
զհոգիսդ բժշկէիք յամ ախտից մոլորութեց
Ծիս, այնուհետև դիւրաւ կային ձեզ այլք
մարմնով 'ի ծառայութի : Իսկ զի դուք ագի-
տութեն զանմահ հոգիսն մահկանացու արա-
րիք՝ պարտաւոր առնելով անվախճան պատ-
ժոց գեհենին, մարմնովդ՝ եթէ կամիք և ե-
թէ ոչ կամիք՝ ախտացեալ էք յանողջանալի
ցաւս. և զմեզ նախատէք այդպիսի ցաւովք
մարմնոյ՝ որ ոչ է 'ի մեր ձեռս, այլ ամ և վի-
ճակեցաւ 'ի բնութեն մր իւրաքանչիւր ան-
ձին : Բայց ես խնդամ և ուրախ եմ, յոր-
ժամ տեսանեմ զմարմինս չարչարեալ, գի-
տելով զի զօրանայ յիս առողջութի հոգւոյս.
և զի ամ որ անկակից լինի մահու փրկչին
մերոյ, նաև յարութեն նր հաղորդ լինիցի :
Իսկ արդ դու որ ունիս իշխանութի 'ի վր մեր,
մի՛ հեղգար, այլ արագ արագ դատեա՛ զմեզ
ըստ կամս քո. չեմք ինչ զանգիտելոց 'ի սպառ-
նալեաց մահու, զոր ածելոց ես 'ի վր մեր :

Զարմացեալ երեցունց իշխանացն ը իմաստուն պլինիս և ը անհերկիւղ համարձակութին նց՝ անդրէն ստիպէին զսահակ ասել ցղևոնդ. մեր լուեալ է վա քո, թէ չիք ոք իբրև զքեզ տեղեակ օրինաց քրիստոնէից, և առաւել՝ ի քոյ խրատուց եղև մր անցք ծին Հայոց և կորուստ բազմաց. արդ այդպիսի մեծ և իմաստուն մտաց պարտ է ճանաչել զբարերարութն արքայից արքայի, որ զայնչափ ժամանս թողու ձեզ, և շնորհէ ըզկեանս ձեր, եթէ ծանիցիք զմտածս մեր: Արդ ոչ եղեր խրատատու չարեաց և պատճառ մահու բազմաց, լսե՛ր այժմ խրատատու կենաց, և թո՛ղ կեան կ՛ դոքա կ՛ այլ բազում անձինք. յորդորեա՛ զդոսա, զի պագցեն արեգականն երկիր, և կեցցեն. և դու այնպիսի պատիւս գտանես ՚ի թագաւորէն, մինչև անուանի լինել՝ ի քում ծին և յազգս ամենայն:

Եւ իբրև թարգմանեաց զայսոսիկ սճն սահակ երկայնմտութբ և ծաղրելով, ասէ ցնա սճն ղևոնդ. ապաքէն չէր մեզ պարտ այսչափ երկար ակնելոյ արժանի առնել զսոսա. շա՛տ էր այնչափ ինչ ասել՝ որչափ պլինի արար փրկիչն յառեանն պիղատոսի. բայց զի ծանուցուք անմտութե դոցա զհաստատութի ճշմարտութեն և զանյեղլի կամս մեր, առա՛ անդրէն ցդոսա. Դուք ասացիք ասադիկ զոր ինչ լուեալ է ձեր վա իմ, թէ օրինացն մերոց տեղեակ եմ, և բազմութե ժողովրդոց եղեալ եմ ուսուցիչ զայսչափ ամս մինչև ՚ի

լինու-

լինելութիւն ծերութեան. և արդ զիմ՛ըրդ զայսպիսի ընտրողութիւն լաւ գիտութեան իմոյ՝ որում դուք իսկ վկայէք, զի ուսեալ եմ յայն և ոչ՚ի մարդոյ, այսօր յաղագս երկիւղի մահկանացու և ապուշ մարդոյ ՚ի մոռացօնս արկեալ՝ փոխանակեցեմ ընդ մոլար ոգւոյն, և կորնչիցիմ. քաւ լիցի ինձ առնել զայդ, և լսել զիրաւացի յանդիմանութիւն, թէ որ ուսուցեր զբազումս, զանձն քո ոչ ուսուցեր. և մի՛ լիցի ինձ առնուլ՚ի մահկանացու մարդոյ զանսուտ պատիւ և զփառս՝ զոր ինձ խոստանայք, և զրկել ՚ի ճշմարիտ փառաւորութենէն՝ զոր ունիմ զգենուլ յերկնաւոր և յանմահ աջոյն բարձրելոյ. զոր ոչն արժեն երկինք և երկիր և ամ զարդք նց։ Մ՚ի ինչ պակաս է ՚ի մեր երանելի փառաւորութենէս, բաժակ մահուդ՝ որում իբրև զպատքեալ ծարաւիս փութամք ըմպել. այլ արբուցէք վաղվաղակի, և թոյլ տուք մեզ զերծանիլ ուրախութեամբ յերերալից կենցաղոյս. և մի՛ ևս յերկարել ձգէք զանմիտ և զխնասակար բանս բանդագուշեալ թագաւորիդ ձերոյ։

Յայնժամ զամօթի հարեալ և դառնացեալ դենշապհոյ՝ ոչ ևս խօսեցաւ ընդ ղեւոնդեայ, այլ մեկուսացոյց սակաւիկ մի զերանելին ՚ի միմեանց, և ասէ առանձինն ցսուրբն Սահակ. Գովութիւն զոր ետու քեզ յառաջ, չետ քեզ իմանալ զպատիւ անձին քո. և դեռ այպանես զբանիւք մերովք՝ մոլորեալ՚ի բանից առն այնորիկ. և արդ ես ինձէն յիշեցուցանեմ քեզ զչարիս քո, զի անձամբ զանձն

քո

քո մահապարտ արասցես․ ասա՛ ինձ, ար-
դարև դո՞ւ աւերեցեր զատրուշանսն յաշտա-
նիս, և կամ զկրակն դո՞ւ սպաներ, չարչարե-
լով զմոգսն, և զսպասս պաշտամանն 'ի քեզ
կորզելով։ Ասէ սուրբն․ այժմ ուսանել կամիս
զայդ, եթէ յառաջագոյն գիտէիր։ Դեն-
շապուհ ասէ․ այլ է համբաւն, և այլ է ճըշ-
մարտութիւն․ իմ լուեալ էր՝ եթէ զամ վնաս
յաշտանիս դու արարեր․ այլ զճշմարիտն 'ի
քէն կամիմ ուսանել։ Ասէ եպիսկոպոսն․ ե-
թէ այդպէս լուա՛ր հաւատեաւ, 'ի զուր էր
քեզ կրկին հարցանել․ իսկ այժմ ո՛չ զօգուտն
կենաց կամիս լսել յինէն, կամ նոր ինչ ուսա-
նել, այլ արեան իմում ցանկան միտք քո։
Դենշապուհ ասէ․ չեմ զազան արիւնա-
խանձ, այլ վրէժխնդիր եմ ածոցն անարգուէ։
Սահակ ասէ․ զտարերս համերս ած խոստա-
վանիս, և զմարդիկ պատկերակից քո խող-
խողել կամիս․ այլ գիտեա՛, զի ընդունելոց
ես զհատուցումն վրիժուց հանդերձ թագա-
ւորաւն քով յանկաշառ ատենին այ։ Որդ-
զոր քո չար կամքդ կամին, զայդ ես ասեմ
քեզ․ զկրակատունսն արդարև ես աւերեցի․
և զմոգսն ես չարչարեցի գանիւ, և զկահս
պղծութե որ 'ի տանն էր, 'ի ծովն ընկեցի․
այլ զկրակ ո՞ կարէ սպանանել, զորոյ զբնու-
թիւն որպ և զայլոց տարերաց անմահ հաս-
տատեաց արարիչն։ Ա՛ղէ սպան դու զօդ,
եթէ կարես․ և կամ ապականեա՛ զհող, զի մի՛
բուսուսցէ զդալարի․ փողոտեա՛ զգետ, զի
մեռցի ջուրն․ մեռանի այն՝ որ շնչէ և շար-
ժի

շատ մատուցանեմք նմա զկերակուրն, յորժ քաղցնու. և եթէ բնաւ չուտեմք, բնաւ անցանէ և սպառի, և 'ի մոխիր դառնայ. մեր այդպէս համեալ է 'ի վ՟ր բնութեան դորա:

Եւ ասեմ ցնա. և ո՞յր ուսուցեալ է ձեզ զայդպիսի մոլորութիւն, զի խոտիցե՞ք արդեօք, կամ լուծեա՞լ իցէ ձեր ուստեք: Նոքա ասեն. զի՞ 'ի լսելոյ հարցանես զմեզ. այլ հայեաց յաշխատանսն՝ զոր եդին 'ի վ՟ր մեր. քանզի և այս օրինադրաց մերոց է գործ, որք ոգւովք մեռաց միայն են կուրացեալ. իսկ թագաւորն մեր մարմնոյ միով ակամբն կոյր է, այլ հոգւոյն բնաւ չիք իսկ աչք: Զայս իբրև լուայ ես 'ի մոգուցն, յորժ ողորմեցայ. զի տգիտութ՟բ զարդարն խօսեցան. սակաւիկ մի չարչարեցի զնա գանիւ, և նոցունց իսկ ետու զկրակն 'ի ջուրն ընկենուլ. և այսպէս ասացի, ա՟ծք որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն 'ի ներքոյ երկնից. և ապա զմոգսն 'ի բաց արձակեցի:

Իբրև լուաւ դենշապուհ զայս ա՟մ անարգանս դենին 'ի բերանոյ ս՟բյն սահակայ, գոչեաց իբրև զառիւծ զայրագին, և հանեալ զսուսերն՝ յարձակեցաւ գազանաբար, և եհար զաջ ուսն եպ՟սին 'ի վերուստ մինչև 'ի գօտին, և 'ի վայր ընկեց զբազուկ նո՟ր թիկամբն հանդերձ. և նո՟ր յահեակ կողմն թաւալեալ՝ յեցաւ 'ի քար մի. դարձեալ անդրէն զօրացաւ, և առեալ 'ի վեր զաջ ձեռն զայն զհատեալ՝ մեծաձայն գոչեաց առ ա՟ծ. ընկա՛լ տ՟ր զկամաւոր պատարագս, որ յինձէն

զիս

զիս քեղ մատուցի բոլորովին . և խառնեա՛
զիս 'ի գունդ ս̃բ զինուորացն քոց ։ Գոհա֊
նամք զքէն ք̃ս գառնդ կենդանարար , որ
բազում անգամ անմահական զենմամբ մա֊
տակարարեալ բաշխեցար անծախապէս 'ի
ձեռաց մերոց . իսկ այժմ և զմեզ իսկ մար֊
դասիրապէս հաճեցար ընդունել 'ի զենումն
պատարագի և 'ի հոտ անուշից ։

Եւ ցընկերսն ասէր քաջալերելով . հա՛պա
ա՛ռաքինիք , եհաս ժամ պսակման մերոյ .
խցէ՛ք զաչս մարմնոյդ վայր մի , և այժմ տե֊
սանէք զլոյսն մեր ք̃ս ։ Եւ ինքն թաւալե֊
լով ընդ արիւն անձին իւրոյ՝ սաղմոսէր
ասելով . օրհնեցից զտ̃ր յամ ժամ , հանա֊
պազ օրհնութի նր̃ 'ի բերան իմ , մինչև ցայն
տեղի , բազումնեղութիք են արդարոց . յամ̃է
փրկէ զն̃ս տ̃ր , և պահէ զա̃մ ոսկերս նց̃ ։

Եւ մինչդեռ կայր յուժի մարմնոյն , հայե֊
ցեալ ետես՝ զի իջանէր յերկնից գունդ բա֊
զում հրեշտակաց , և վեց պսակ 'ի ձեռին
հրեշտակապետին . և գայր ձայն 'ի վերուստ,
որ ասէր . Քաջալերեցարո՛ւք սիրելի՛ք իմ ,
զի ահա մոռացայք զվշտալից զկեանսդ , և
հասիք երանելի պսակացդ՝ զոր ձեռովն ճգ֊
նութ̃եդ կազմեցիք . առէ՛ք դի՛ք յիւրաքան֊
չիւր գլուխ ձեր զնիւթ պատուական , որ 'ի
ձէնջ գործեալ հիւսեցաւ . իսկ Ճարտարուն̃
գործոյդ յամենասուրբ ձեռացն ք̃սի կազմե֊
ցաւ . զոր և 'ի սպասաւորաց այտի իսկ ըն֊
կալեալ է̃ ստեփաննոսի լինիք պսակակից ։
Յայնմ վայրի հրամանն ետ դահճաց դենշա֊

պուհ

պուհ համադերձ ընկերօքն, զի առանց յա-
ղաղելոյ գլխատեսցեն զամենեսին: Յայն
ժամ ասէ սբն ղևոնդ ցսբն յովսէփ կաթու-
ղիկոս. մատիր յառաջեայց դու ըդդէմ սրոյն.
քանզի դու աստիճանաւ 'ի վեր ես քան զա-
մենեսեան: Նկարկեաց և այլոց ընկերաց
կալ ըստ կարգի իւրեանց. և խրախուսէր զա-
մենեսին 'ի տր: Եւ 'ի մերկացուցանել դահ-
ճաց զսբն յովսէփ՝ ասաց երիցս. դարձ անձն
իմ 'ի հող և 'ի հանգիստ քո, զի տր բարի
արար քեզ. և անդէն հատին զգլուխ նր:
Որպէս կարեցին սրով և զգլուխս սբյ ե-
րիցուն մուշէի, և սարկաւագին քաջաջայ,
որք և ասացին 'ի ժամ կատարմանն. տր յս
ընկալ զոգիս մեր:

Եւ մինչդեռ կէսք 'ի դահճացն զհետ էին
գլխատման սբց, այլոց հրաման ետուն իշ-
խանքն, զի զղևոնդ մի փութով սպանցեն,
այլ մերկացուցեալ զնա քարշեսցեն ուժգին
ըստ քարաժեռ տեղիս, առ 'ի զովացուցանել
զտապ սրտից իւրեանց ըդդէմ նր. քանզի զե-
րանելին ղևոնդ գիտէին լինել առաւելա-
պէս խրատատու և պատճառ ամ իրացն սբց
վարդանանց, և արդեամբք տեսին՝ զի նոյն-
պէս քաջալեր և զօրացուցիչ եղև սբ ընկե-
րացն իւրոց: Եւ դահիճքն այնպէս քարշե-
ցին զսբն ըստ ժայռս և ընդ քարուտս, մինչև
քանցեալ քերեցան ամ մարմինք լանջացն և
թիկանցն մինչև ցոսկերս. և ապա վատա-
կեալ ածին զնա կիսամահ 'ի նոյն տեղի,
ուր այլքն կատարեցան:

Եւ

Այլ իբրեւ պատրաստեցաւ դահճին հատա-
նել և զգլուխ սրբոյն Ղեւոնդեայ, նա առէր
զուարթագին ձայնիւ. գոհանամ զքէն քս,
որ բազում գթութբ քո օգնեալ պահեցեր
զիս 'ի մանկութէ իմմէ. և հասուցեր 'ի ժամս
յայս՝ արժանի արարեր մասին սրբց. 'ի ձեռս
քո փ'րկիչ յանձն առնեմ զհոգի իմ. և այն-
պէս կատարեցաւ և նա սրով ։ Յայս վայր
կենդանի կայր տակաւին սրբ եպսն Սահակ,
և տեսանէր զշողալ սուսերացն 'ի վր պարա-
նոցի երանելեացն. և ապա զկնի ամենե-
ցուն հատին և զգլուխ նր. որոյ մատուցեալ
նուաղ ձայնիւ զվերջին աղօթս, և ասացել
զամէնն՝ աւանդեաց զոգին ։

Այս օրինակ պանծալի վկայութբ կատա-
րեցան 'ի վեշտասաներորդ ամի Թագաւո-
րութեն Յազկերտի, 'ի իե ամսոյն հրոտից (որ
էր յայնժամ յուլիսի. 25. կմ ըստ յայսմաւու-
րաց՝ յուլիսի. 31.) յամի տն. 454. վեցեքին
սրք Ղեւոնդեանք սրբ քահանայք 'ի մեծ անա-
պատին յապար Ձի մերձ 'ի գեօղն մոգուց
ռէվան կոչեցել 'ի սահմանս նիւշապուհ քա-
ղաքի. և անուանք սրբցն ըստ կարգի երիցութ-
նց, Յովսէփ կթղկս 'ի վայոց ձորոյ 'ի հողո-
ցմէք գեղջէ. Սահակ եպս ուշտունեաց գա-
ւառին՝ որ 'ի վասպուրական Ձին արծրունե-
եաց. Ղեւոնդ երէց 'ի վանանդայ 'ի գեղջէ
իջաւանից. Մուշէ դրան երէց ներշապհոյ
արծրունւոյ յերկրէն աղբակոյ. Արշէն երէց
'ի բագրեւանդայ յեղեգեակ գեղջէ. Քա-
ջաջ սարկաւագ սահակայ եպի 'ի ուշտունեաց ։

'Ի

'Ի Թիւ ս̃բց ղեւոնդեանց համարին և ը̃ նո-սին տօնախմբին և այլ չորեքին ընկերք նո̃ց 'ի նոյն աւուրս նահատակեալք յայլեւայլ տեղիս, ո̃ւ որում յիշեցաք յընթացս վկայա-բանութե̃ս. ո̃ք են Սոդպետն 'ի Նիւշապուհ քաղաքէ, որ մկրտեցաւ 'ի ղեւոնդեանց, և կատարեցաւ յօտարութե̃. Սամուէլ երէց յա-րարատեան Ծէ 'ի գեղջէն արածայ, և Աբ-րահամ երէց՝ սարկաւագ նո̃ր 'ի նմին գեղ-ջէ, որ 'ի կարաւանին արքունի կատարեցան 'ի փառգեա կամ 'ի փարդգէս գաւառի. և Խաթիկ եպս̃ որ յասորեստան կատարեցաւ. ը̃ ա̃մ ողջք տասն. որք միով առթիւ 'ի հրա-մանէ յազկերտի նահատակեալ՝ ընկալան զանթառամ պսակն վկայութե̃:

Ապա երկ յետ կատարման ս̃ցն ղեւոնդեայ և հնգեցունց ընկերաց նո̃ր՝ կարգեաց դենշա-պուհ 'ի պահպանութի մարմնոց ս̃ցն զար-ինն, և վերակացու նո̃ց զխուժիկն, որ ըստ ասացելոցս կարծիւր մտերիմ դենշապհոյ, զգուշանալ անդ զաւուրս տասն, մինչև անց-ցէ կարաւանն արքունի. ո̃ւ զի մի լիցի ու-մեք 'ի քրիստոնէից գալ և առնուլ զնշխարս նո̃ց. և ինքն դարձաւ 'ի քաղաքն հանդերձ գործակցօք իւրովք: Եւ ա̃ր ունայնացոյց զխորհուրդս չարին. զի այն՝ որ ա̃մ ոգւով զհետ էր գողանալոյ զմարմինս ս̃ց, անդէն իսկ էր, ո̃ է խուժիկն. որ ստէպ խնդրէր 'ի տե̃ն ցուցանել նմա հնարս հասանելոյ փափաքանաց իւրոց:

Մինչդեռ նա յայս միտս դեգերէր, յանկար-

ծակի 'ի նմին աւուր յերեկորեայ գիշերոյն՝ շարժումն մեծ եղև 'ի տեղւոջ անդ, դղր-դիւնք և ձայնք յանդնդոց, և ահագին որոտ-մունք և փայլատակունք 'ի վերուստ. մինչև միաձայն դղրդիլ լերանց և դաշտաց յարհա-րաց երկնի և երկրի. և առ նմին այլ նշան սքանչելի, զի մարմինք սրբոցն կանգնեալ տե-սան 'ի վր̃ ոտից, և սիւն լուսոյ իջեալ յերկ-նից իբրև զծիածան շուրջ պարուրէր զնո-քօք. յորոց տեսութ̃է պակուցեալ պահա-պանացն՝ թմրեալ անկան, և կիսամեռ մնա-ցին զաւուրս երիս ը̃ տեսելոյ նշանին ։ Ապա զկնի ժամու աւուրն երրորդի սակաւիկ մի ոգի առեալ յահագին ապշութ̃է՝ աչս ածէին փախչել 'ի տեղւոջէն. այլ 'ի յոյժ թեկմանէ ոտիցն ոչ կարէին 'ի վեր կանգնիլ. միայն յե-րեսս միմեանց հայէին, և ոչ կարէին խօսել ։ Բայց խուժիկն զօրացեալ սկսաւ կամաւ կաղ 'ի կաղս փախչել, զի և այլոց յորդոր լիցի հեռանալ 'ի տեղւոջէ անտի. որպէս և եղև իսկ. զի և նոքա զհետ նորա սկսան երթալ գայթ 'ի գայթ մինչև 'ի տեղի մի. ուր յա-ւուրն չորրորդի երկուք 'ի պահապանաց ան-տի չարաչար լլկեցան 'ի դիւէ. և ընկերք նոցա տակաւին կային յառաջնում սոսափ-ման. այլ յաւուրն վեցերորդի զգաստա-ցեալ՝ փութացան անկանիլ 'ի քաղաքն նիւ-շապուհ. և պատմեցին դենշապհոյ և գոր-ծակցաց նր̃ զեղեալսն ա̃մ ահաբեկ սրտիւ ։ Եւ նա̃ լուեալ զայն՝ յահի եղեն յոյժ. այլ պատուիրեցին պահապանաց չյայտնել ու-

մեք զիւրսն, և ո՛չ զմահ երիցանցն. ապա նմա-
քեանք նախարարքն երեքին խօսել սկսան 'ի
մէջ իւրեանց հիացմամբ, և ասել. Ո՛չ են
իրք քրիստոնէից թեթև ինչ և դուզնաքեայ,
այլ՝ հաստատ մեծ է զօրութիւն օրինաց նոցա
և հաւատոց. և մեք արդեօք յանգիտութե
մալով կորնչիմք և չզգամք. ապա թէ ո՛չ
զի՞նչ գործեսցուք, զի՞նչ արասցուք վասն ամքն
նկն աղանդոյս քրիստոնէից. քանզի մինչդեռ
կենդանի են, զարմանալի են կեանք իւր-
եանց. ընչատեացք են իբրև զանկարօտս,
որբասէրք են իբրև զանմարմինս, անաչառք
են իբրև զարդարադատս, աներկիւղք են
իբրև զանմահս: Իսկ եթէ զայս ամ̃ առդի-
տուբ̃ և յանդգնուբ̃ գործեն, զի՞արդ ապա
զամ̃ ցաւոտս սքանչելեօք բժշկեն 'ի կենդա-
նութեան և 'ի մահու: Քանզի և յետ մեռա-
նելոյ առաւել սքանչելի երևին. ո՞յր ուրուք
դի կանգնեցաւ երբէք յոտին, ո՞րպ սոցայս.
և չէ՛ մարթ ասել՝ եթէ սուտ ինչ յօդեցին
զի մի բերան հաւատարիմ սպասաւորք մեր.
զի թէ նենգել կամէին, փաղս տանէին ըզ-
դիակունս նց̃ առ քրիստոնեայս, և զի կշռոյ
իւրաքանչիւր մարմնոց ոսկի առնուին:
Թո՛ղ զի և արքն որք 'ի դիմէ չարչարեցան,
առողջ են յառաջին, ո՞րպ մեք մեզէն գիտեմք.
ապա յայտ է թէ այժմ նշան մեծ երևեցաւ:
Իսկ եթէ լուռ լինիմք, ո՛չ ծածկին այս մեծ
սքանչելիքս. ապա եթէ հասցէ 'ի լսելիս թա-
գաւորին, գուցէ և օրինացս մերոց քակտումն
ինչ հասանիցէ: Յայնժամ մովպան անդեր-

ձա

Տեսեալ քաջալերեաց զընկերս իւր , և փա-
րատեաց զխորհուրդս նոցա սնոտի յուսով մա-
գաղական նահատակից . և ընդդէմ կատականաց
նոցա ասէ . այդ խնդիր մեր միայն է , և մեք
հաճեմք զմիտս թագաւորին :

Իսկ մեծաւորք խուժիլին իբրև տեսին զկայարանս
իշխանաց , և իմացան թէ չէ ինչ նոցա փոյթ
այնուհետև վասն մարմնոց երանելեացն , էառ
վաղվաղակի ընդ իւր արս տասն 'ի քրիստո-
նէից , և գնաց նոքօք հանդերձ գիշերայն
մօտ 'ի տեղի կատարման սրբոցն . այլ վրիպե-
ցաւ 'ի փափագացն : Այլ մինչդեռ ցաւէին և փա-
րատէին յայժ , յանկարծակի եղ 'ի բարձանց
արծուի լուսաւորայլ , և նշաւ 'ի վերայ մարմնոց
սրբոյն զետեղեալ . յորմէ այնչափ լուսաւորե-
ցաւ տեղին , մինչև պայծառ քան 'ի լուսոյ տուընջ-
ջեան տեսանել և զայլ մարմինս . ընդ որ ու-
րախացեալ գոհացան զԱստուծոյ : Այլ փութանա-
կի ժողովեալ զմարմինս սրբոցն 'ի մի մի սպաս'
տարեալ հեռացուցին յայլ տեղի ամայի . և
անդ հանդարտեալ զաւուրս եօթն' իբրև
յանհոգս եղեն , որբեցին կազմեցին զոս-
կերս երանելեացն' որոշելով 'ի մարմնոց , յո-
րոց բուրէր հոտ անոյշ , և զմայլեցուցանէր
զամենեսին :

Նոյն պատեալ զսուրբ մարմինս 'ի մաքուր կը-
տաւս' բազում պատուով և զգուշութեամբ թա-
ղեցին 'ի տեղւոջն . իսկ զոսկերսն զամենայն աւել
ընդ իւրեանց' բերին 'ի նիւշապուհ քաղաք . և
ատ սակաւ սակաւ տեսան բաշխել հաւատա-
ցելոց յայլևայլ տեղիս . այլ զառաջինն ըն-

Ծայրն եռուն նախարարաց կապելոց. և եղև
այն նը մխիթարութի անպատմելի, և համա-
րեցաւ զանձ անմահութե, և առհաւատ-
չեայ ազատութե իւրեանց 'ի կապանաց՝ ըն
զուշակութե նոցին իսկ սրբցն. որ և կատա-
րեցաւ յաւուրս պերոզի յաջորդին յազկեր-
տի. զի դարձան յ⁓ իւրեանց 'ի հայս:

Իսկ երանելի խուժիկն զամ աւուրս իւր
պատմէր մի ըն միոջէ նախարարաց զօրինակ
նահատակութե սրբցն, որում եղև ականա-
տես. և գոհանայր զայ վմ արժանի լինելոյ
այսպիսի պարգևաց՝ որում միշտ փափաքէր.
զի փոխանակ երկրաւոր ընչից վաճառակա-
նութե՝ յորում երբեմն վաստակէր, եղև հաւ
զարապետ և մատակարար երկնաւոր գան-
ձուց մարտիրոսական նշխարաց:

Նշխարք ինչ սրբց ղևոնդեանց ասին լինել
ցարդ 'ի մաշալթ յերկրին խորասանու, և
փայլել սքանչելեօք. այլ առաջինն շահա-
քաս արքայ պարսից խորհելով ջնջել զյիշա-
տակ սրբցն՝ ետ ասեն համբաւել, թէ այն ի-
ցէ տեղի շիրմաց իւրոցն նախնեաց իբր դիւ-
ցազանց. թող զայլ նշխարս՝ որք սփռեցան
'ի հայաստան ⁓, և մնացին ուր և մնացին.
յորոց սակի է և յիշատակեալն 'ի սրբյն գրի-
գորէ նարեկացւոյ 'ի ճառն խաչի: Նատա-
րումն սրբց ղևոնդեանց եղև երեք ամօք և
երկու ամսօք զկնի նահատակութե սրբց վար-
դանանց. այլ 'ի կարգաւորութե տօնացուցի
երկաւուրք յառաջ եդեալ է տօն ղևոնդեանց
իբրև վկայից վարդանանց:

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ։

(1) Յայտնի են կրկնավոռակ աղքերը պանծալի վկայաբանութեան սրբոց ղեւոնդեանց՝ որն եղիշէ աշակերտակից նոցին, և ղազար փարպեցի նոյնպէս ժամանակակից. և զի գրեանք նց կան ցարդ եւս ամբողջ, ոչինչ հարկ 'ի մէջ կայ ծանօթութիւն յաւելուլ՝ թէ զխորդ յերկոցունց 'ի նոցանէ քաղեալ է թարգմանչականութիւն մեր. զի է զի զմիոյ, և է զի զմիւսոյ բանս Ճօրինակեալ տեսանես 'ի մէնջ՝ յարմարելով դիւրիմաց ոճոյ մերում, կամ պարզաբանելով զնոյնս այլ և այլ եղերօք։ Եւ թէ կայցէ ինչ գիտելի մի ժամանակագրութեն կմ այլոց հանգամանաց պատմութեան, գտանես 'ի կարգի պատմութեն հայոց և 'ի ծանօթութիւնս նորա։

Ճառընտիրք գլխովին զսքն եղիշէ օրինակեն. և յայլ մասունքս զնոյն քաղեն. այլ կան անդանօր հետք ինչ բանից նաև փարպեցւոյն։





# ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ

## Սրբոց Վարդանանց զօրավարաց և զօրակա-նաց՝ ուղղ վկայից :

Տ. օգոստ. 7 : Տե՛ս Եղիշէ : Փարպեցի : Լամբրոն. և այլ ճառընտիրք հայոց : (1)

ՊԱՐԾԱՆՔ ՏԱՆՍ հայոց, և պսակ եկեղեցւոյ հայաստանեայց հիւսեալ 'ի կարմրափայլ վարդից սրբ. ա-րեան իւրոյ Վարդան քաջ նահատակն՝ էր թոռն սրբոյն Սահակայ պարթևի հայրապե-տին մերոյ 'ի սահականոյշ դստերէ նորա, որդի համազասպայ մամիկոնէի՝ հանդերձ երկու եղբարբք, որոց անուանք էին Հմայ-եակ և Համազասպեան : Սորա՝ առ ժամա-նակօք բարձման թագաւորութեան հայոց 'ի տանէ արշակունեաց՝ սա ինքն մեծն Վարդան առեալ պատիւ սպարապետութեան, որ զօրա-վարութիւն, 'ի կայսերէն յունաց՝ այն է Թէո-դոս փոքր, և մեծարեալ բազմօք 'ի պարսից վասն մեծամեծ գործոց քաջութեան իւրոյ, եղև երևելի քան զամենայն նախարարս հայոց արդ-եամբք վաստակոց իւրոց յօգուտ ազգին. քան-զի արութեամբ էր մի միայն, և առաքինութեամբ և աստուածպաշտութեամբ աննման. զգօն 'ի խորհուրդս,

զգօ-

զօրաւոր 'ի բանս, և յաջողակ յա̃մ 'ի գործս. մինչև առաջնորդութ̃ նր̃ և առանց թագաւորի առաւել քան զժամանակս թագաւորութե̃ փայլել Տե̃ն Հայոց յա̃մ բարեկարգութի̃ս. այլ քանզի տրու̃ Տե̃ն անկեալ էր է̃ բռնակալութ̃ հեթանոսաց, իսկ և իսկ հեղան զեղան աղէտք անհնարին 'ի վերայ հայաստանեայց:

Քանզի կրակապաշտ արքայն պարսից յազկերտ որդի վռամայ մոլեալ յօրէնս իւր անօրէնս՝ եդ 'ի մտի 'ի դեն մոգութե̃ շրջել զա̃մ ազգս քրիստոնէից, որ է̃ տրու̃ իւրով. և այսմ խորհրդոյ թելադիր և զօրացուցիչ եղև մեծ հազարապետ դրանն արքունի՝ վեհմիհրներսեհ անուն, գործակցութ̃ մոգուց և մոգպետաց: Եւ զի յազկերտ 'ի թագաւորէն յունաց ևեթ ակնածէր, մի̃ արդեօք ձեռնտու լինիցի հաւատացելոց, նախ զնա խորհեցաւ լռեցուցանել ահարկութ̃. վ̃ս որոյ խաղաց պատերազմաւ 'ի սահմանս տրու̃ կայսեր. աւերեաց և կողոպտեաց զքաղաքս և զաւանս, և այրեաց զեկեղեցիս. յորմէ զահի հարեալ թէոդոսի փոքու՝ զիջաւ իբրև խաղաղասէր հաշտութի̃ առնել 'ի ձեռն անատոլեայ զօրավարին արևելից, տալով զոր ինչ և խնդրեաց յազկերտ. մինչև տալ 'ի ձեռս նր̃ և զհաւատացեալ պարսիկս անկեալս 'ի կոստանդինուպօլիս:

Դարձ արարեալ այնուհետև յազկերտի փքացմամբ 'ի տեղի իւր՝ համարձակութ̃ ե-

 հան

հան հրաման ՚ի վր քրիստոնէից եղելոց ՚ի պարսս՝ դառնալ ՚ի պաշտօն կրակի. և յոչ առնուլ նց յանձն՝ չարաչար տանջանօք նահատակեաց զբազումս. և զայլս մատնեաց ՚ի բանտս և ՚ի կապանս և ՚ի մետաղս։

Այն ինչ խորհէր և յայլ աշխարհս ձեռն արկանել, գործի չարութե եգիտ զերկուս յիշխանաց հայոց աշխարհին՝ զվարազվաղան սիւնի և զվասակ սիւնի, որք թշնամիք էին միմեանց։ Քանզի վասակ՝ որ նենգանօք եր սպանանել զհօրեղբայր իւր զվաղինակ, և եղե փոխանակ նր իշխան սիւնեաց, տուեալ էր զդուստր իւր ՚ի կնութի վարազվաղանայ. և զի նա ատելութ վարէր ընդ կինն, ՚ի լինել գժտութե ՚ի մէջ նց՝ խոյս տուեալ վարազվաղանայ յերեսաց աներոյ իւրոյ՝ գնաց ՚ի պարսս, և գրգռեաց զմիհրներսեհ և զյազկերտ ընդդէմ վասակայ և բովանդակ աշխարհին հայոց. և ՚ի կատարումն չար կամաց իւրոց յանձն էառ և զմոգութի։ Տեսեալ յազկերտի զայսպիսի մատնութի ՚ի տանէ հայոց՝ խորհուրդ արար ընդ իշխանս իւր և ընդ մոգս, թէ որպիսի օրինակաւ մարթասցի ձգել զամ հայս և զայլ ևս քրիստոնեայս օտարաշխարհիկս ՚ի կրօնս պարսից։

Եւ քանզի պատերազմ էր յայնժամ ընդ պարսիկս և ընդ հոնս, խրատ ետուն միաբան մոգքն, և ասեն. դիւրին է քեզ արքայ ՚ի գլուխ տանել զկամս քո, եթէ հնարիւք հեռացուսցես զմեծամեծս քրիստոնէից հանդերձ զօրօք յիւրաքանչիւր աշխարհաց իւրեանց.

արդ

արդ յղեալ հրաման առ ամենեսին, զի գիտաւոր իշխանք տ͞մ Ծաց և այլուստի ն͞ց եկեղեցեն ը͞ քեզ 'ի պատերազմ 'ի վ͞ր հոնաց. և իբրև սնցուսցես զնոսա անդր քան զդուռն պահլայ (որ և դուռն ալանաց և Ճորայ), յետ վանելոյ զհոնս՝ արգել և փակեա՛ զքրիստոնեայս անդէն, և բռնադատեա՛ 'ի պաշտօն արեգական և հրոյ, սպառնալիս եդեալ ջնջել զա͞մ ազգ և զերկիր նոցա. և այնպէս հարկաւ հնազանդին քեզ. յայնժամ պարսիկ մոգք և վերակացուք սփռեա՛լ ը͞ Ծս նոյն քրիստոնէից՝ դիւրաւ ճգեսցեն զամենեսին 'ի մոգութի՛ն:

Հաճեալ յոյժ յազկերտի ընդ այս՝ գրեաց հրովարտակս յա͞մ երկիր իւրոյ ո͞րութե՛ 'ի չորրորդ ամի թագաւորութե՛ իւրոյ (այն է յամի տ͞ն 442.) առ հայս, առ վիրս, առ աղուանս, և առ այլ ազգս քրիստոնէից, պատուէր տուեալ ամենեցուն քաղցրաբանութ͞բ և վեր 'ի վերոյ մարդասիրութ͞բ՝ գալ հասանել զօրօք և զօրավարօք յապար Ծ 'ի վրկանս, զի անդէն ճմերեալ՝ խաղասցեն ը͞ իւր 'ի վ͞ր հոնաց: Իսկ առ 'ի չտալոյ հայոց զկարծիս զիւրոյ նենգութե՛ն՝ յղեաց առ վասակ սիւնի զպատիւ մարզպանութե՛ փոխանակ պարսիկ մարզպանի, իբրև յանդէտս լինելով զանցիցն վարազվաղանայ. և զքաջն վարդան սպարապետ զնահապետն մամիկոնէից հաստատեաց 'ի պատիւ ընդհանուր սպարապետութե՛ հայոց Ծլին, և յորդորեաց զնո 'ի գործ դնել անյապաղ զարքունի հրամանս:

Իսկ

Խոփթալի էր Հայոց և այլոց ամենեցուն պատուէրն և պատրիճն յազկերտի . այլ զի չէին գիտակ յայտնապէս զաղանեաց չարութեան նր , փութացան կամակատար լինել ան տաճկին կարգի . և այնչափ առաւել , որչափ լուեան , եթէ բեկաւ և զօրութի յունաց տաճկի պարսից : Վն որոյ արձակեցին Հայք և այլք 'ի քրիստոնէից զունդս զունդս 'ի ձեռն զօրավարաց և զօրագլխաց՝ որ յազգատոց և 'ի նախարարաց , հանդերձ կատակարանօք՝ քահանայիւք և պաշտօնէիւք իւն սատարութեան բանակի հաւատացելոց :

Նաև յանդիման եղեն յազկերտի յապարտի , ուրախ եղև յոյժ թագաւորն , և 'ի մերին երեսս բազում խնամս և սէր եցոյց նց : Ապա դիմել նոքօք հանդերձ 'ի վր Հոնաց , բազում անգամ պատերազմեցաւ և վտանգեաց զնս . այլ յոչն կարէր նուաճել զնոսա խոպաս , երկարեցաւ գործն . վն որոյ շինեաց բերդ ամուր 'ի դուռն ալանաց , որ կոչեցաւ պահակ հոնաց . և արար անդ իւր արքունիս և քաղաք բնակութե մարդկան . և առ իւ ածէ բերել տայր նոր զօրս յիւրաքանչիւր ազգաց՝ յետս առաքելով զառաջինսն , զի մի լքանիցին զօրքն , և մի լինէր կարծիք ացին չարութե . և լինէին երբեք երբեք գնայր 'ի տիզբոն յաթոռ թագաւորութե իւրոյ , և անդրէն դառնայր . և այսպէս առնէր իւրև զամս եօթն մինչև 'ի մետասաներորդ ամն

Թագաւորութե իւրոյ :

Նա զայնչափ ժամանակս հանգստեան եկե-

ղեց

նէր թագաւորն որսալ զզօրս քրիստոնէից 'ի կամս իւր. էր զի սիրով խօսէր ընդ նոսա, և էր զի ահագին սպառնայր. ոչ և երբեմն ցուցանէր՝ ոչ թէ 'ի խնդիր իցէ ճշմարտութեան. քննեսցի ասէ և տեսցի, ո՞ր լաւն իցէ 'ի դենից. և զայն կալցուք. այլ անդրէն զառածանէր 'ի գովութիւն մոգութեան՝ մեծացուցանելով զարեգակն և զհուր իբրև զաստուածս, և արհամարհելով զքրիստոս. զի՞նչպիսի աստուած իցէ ասէ՝ այն, որ խաչեցեալ է և մեռեալ և թաղեալ ։ 'Ի յաճախել անօրէնին զայսպիսի հայհոյանս օր քան զօր, եռայր սիրտ հաւատացելոց ընդդէմ նորա. այլ ոչ ոք իշխէր ասել ինչ ։ Իսկ մի ոմն 'ի մանկագոյն նախարարաց հայոց գարեգին անուն 'ի տանէ սրուանձտեայց՝ չհանդուրժեալ ընդ անարգանս անուանն քրիստոսի, ասէ յաւուր միում ցթագաւորն. Արքայ քաջ՝ դու ուստի՞ գիտես զի աստուածն մերոյ, եթէ տանջեցաւ, խաչեցաւ, մեռաւ և թաղեցաւ ։ Ասէ յազկերտ. իմ իսկ առաջի ընթերցան զգիրս մոլորութեան ձերոյ ։ Յանժամ պատասխանի լցեալ հոգւով՝ ասէ ցթագաւորն. ընդէ՞ր արքայ ցայդ վայր միայն ետուր ընթեռնուլ. ա՛ռ այլ ևս յառա՛ջ մատո ըզկարդացումն, և լուես անդ և զյարութիւն և զերևելին բազմաց, զվերացումն յերկինս, զնստիլն ընդ աջմէ հօր, և զխոստումն միանգամ գալստեանն հրաշալի փառօք՝ յարուցանելով զմեռեալս, և հատուցանելով արդար դատաստանաւ իւրաքանչիւր ըստ գործս իւր ։

Սորա լուեալ զայս Թագաւորն, 'ի խոր խռովեալ՝ վեր 'ի վերոյ ծիծաղեցաւ. և ասէ. այդ մեծ խաբէութիւն է: Սուտ պէնիր քաջ զկնաւորն քնի և ասէ. եթէ արժանահաւատ համարիս զմարմնով չարչարելն փրկչին, առաւել ևս խրատեցի եր քեզ հաւատալ և զփառաւորութիւն նր և զերկրորդ գալուստն: Յայնժամ բորբոքեալ Թագաւորին 'ի բարկութիւն՝ վճիռ մահու ետ 'ի վր նր. այլ զի մի խռովութիւն լիցի 'ի քրիստոնեայս, հրաման ետ արկանել 'ի բանտ չարչարանաց կապել ոտիւք և ձեռօք. ուր եկաց երանելին զամս երկուս. և ապա արձակեալ ՃԸ այլս՝ նահատակեցաւ 'ի պատերազմի:

Այս փորձ հանդիսի քնազօր նահատակին լքոյց զսիրտ յաղկերտի, և զօրացոյց զսիրտս հաւատացելոց առ հաստարակ եղելոց 'ի բանակին: Յայնժամ տեսեալ Թագաւորին՝ թէ ոչինչ վճարէ գաղտնի հնարիւք, յայտնապէս հրաման եհան ընդ ամ բանակն, զի ամենեքին դարձցին 'ի պաշտօն արևու: Նա իբրև ոչ ոք գտաւ հաւան կամաց նր, այլ միաբան աղաղակէին՝ թէ քրիստոնեայ եմք և պատրաստ 'ի մեռանիլ, ոչ կարաց բռնանալ 'ի վր նոցա. այլ փոխեալ զբանս իւր՝ թոյլ ետ նոցա առժամն կալ 'ի կամս իւրեանց:

Յետ այսորիկ քանզի յաղթեաց հոնաց խապառ 'ի մետասաներորդ ամի Թագաւորութե իւրոյ, այնուհետև հրաման եհան բռնի ձգել զքրիստոնեայս յօրէնս պարսից. և որ

ոչն

ոչն առնու յանձն, մատնեսցի՛ ասէ 'ի բանտ և 'ի մահ, և ամ̅ ստացուածք նր̅ յարքունիս լիցին : Բայց և ոչ այնպէս շահեցաւ ինչ. մն̅ զի կամակար յանձն առին հայք և որ այլ ևս հաւատացեալք՝ զամ̅ նեղութի̅ և զտանջանս մահու. և ոչ թողին զք̅ս :

Ապա յանհնարս մտեալ յազկերտի՝ առաքեաց զդենշապուհ ոմն հարկահան յե̅ն հայոց՝ նեղել զն̅ս արտաքին խստութե̅ք, զի առ զերծանելոյ 'ի նեղութե̅ց՝ ակամայ հարկեսցին զիջանիլ 'ի կամս թագաւորին. այլ նոքա սիրով յանձն առին զամ̅ տուգանս, և ոչ ետուն տեղի բանից կրակապաշտից : Յաւել թագաւորն գրել թուղթ 'ի հայս՝ ոմ̅ և յայլ տեղիս, 'ի գովութի̅ պարսկական դենին, և 'ի պարսաւ քրիստոնէութե̅. զնոյն գրեաց երկար աղճատանօք և մեծ մոգպետն 'ի դիմաց միհրներսեհի հազարապետի :

Զորս յառաջ բերեալ հայոց յատենի նախարարաց և եպս̅ց՝ ծաղր արարին և անարգեցին. և գրեցին պխ̅նի առ թագաւորն և առ հազարապետն, ունայնացուցանելով զսնոտի օրէնս մոգուէ̅, և քարոզելով զանսուտ ճշմարտութի̅ քս̅ական հաւատոց. ուր և կրկին կրկին բողոք կալեալ ասեն. Ոչ կարեմք մեք թողուլ զարարիչն մեր՝ զա̅ծն ա̅ծոց, զթագաւորն թագաւորաց և զտ̅րն տ̅րանց, և պաշտել զարարածս և զանբան տարերս. ոչ ոք կարէ խախտել զմեզ 'ի ճըշմարիտ հաւատոյս մերմէ՝ որ 'ի հայր և յորդի և 'ի սբ̅ հոգին, ոչ դևք և ոչ մարդիկ,

ոչ

ոչ տանջանք և ոչ մահ. ամ կեանք մեր և մար-
մինք մեր 'ի ձեռս ձեր. 'ի ձէնջ տանջանք,
և 'ի մէնջ յանձնառութիւնք. սուր քո, և պա-
րանոց մեր. այսուհետև մեք քանիւք զմեզ
հարցանէ՛ք, այլ արարէ՛ք զի՛նչ և կամիք. զի
ոչ եթէ է մարդոյ է ուխտ հաստատոց մերոց,
յորմէ պատրեցիմք իբրև զտղայս, այլ՝ է Այ
կենդանւոյ. յորմէ չէ՛ հնար մեզ քակել և
'ի բաց ելանել երբէք:

Այս եղև իբրև եհաս պիտակին Հայոց առ թագա-
ւորն կնքով նախարարաց և եպիսկոպոսաց, և
ընթերցեալ եղև յատենի, զամօթի հարան
յոյժ մոգպետն և հազարապետն, և ինքն
թագաւորն ափիբերան եղև. քանզի և բա-
զումք 'ի լսողաց սկսան շշնջել ընդ միմեանս,
և գովել զհաստատութիւն Հայոց 'ի հաւատս
իւրեանց. և առ հասարակ զարմացեալ կայ-
ին ընդ համարձակ պիտակս նց: Այնժամ ա-
նօրէն մոգպետն գրգռեաց զթագաւորն, զի
սաստիկ հրամանաւ կոչեսցէ զնախարարա-
ցն Հայոց և վրաց և աղուանից 'ի դուռն
արքունի յաշխն պարսից, և բռնութբ տացէ նց
երկրպագանել արևու. զի ո՛վ կարէ առ
ընդդէմ կալ բռնոյն հրամանաց ածանման
նր մերոյ արքային արքայից: Զայդ կա-
մէր լսել և յազկերտ. վն որոյ վաղվաղակի
գրեաց հրովարտակ առ գլխաւոր նախարարս
Հայոց, զորս ինքնին ճանաչէր յականէ յանու-
նանէ, պատուէ՛ր երևելով նց ծանր ծանր սպառ-
նալեօք անյապաղ գալ 'ի դուռն:

Ընկալեալ նախարարացն զայսպիսի հրաման՝

յայտ

յայտնի իմացան զչարութիւն նորա · բայց քանզի չէր ինչ յազկերտի յայտնեալ 'ի բանս իւր՝ թէ առ ի՞նչ կոչէ զնոսա , ապստամբութիւն համարեցան չերթալ 'ի կոչ արքայի · և քաջ իսկ գիտէին , զի 'ի չերթալն իւրեանց՝ 'ի սուր սուսերի մաշէ բռնաւորն զամենայն քրիստոնեայս որ 'ի պարսս և որ 'ի բանակի · միայն լաւ վարկան երթալ , և զելս գործոյն յԱստուծոյ ապաստան առնել ։ Ուխտ եդին միաբան ընդ առաջարկութեան սրբոյն յովսեփայ կաթուղիկոսի նախարարք երեցունց աշխարհաց Հայոց և աղուանից և վրաց՝ անսասան մնալ 'ի հաւատս · և ապա յուղի անկեալ գնացին յդուռն պարսից ։ Իսկ էին երևելիքն յաւագ նախարարաց այսոքիկ · վասակ սիւնի մարզպան Հայոց · ներշապուհ արծրունի ռմբոսեան · արտակ ռշտունի · գադիշոյ խորխոռունի · վարդան մամիկոնեան սպարապետ · արտակ մոկացի · մանեճ ապահունի · վահան ամատունի · գիւտ վահևունի , և շմաւոն անձաւացի ։ Ընդ որս և արքայն վրաց վաղգէն փեսայ վարդանայ · բդեշխն գուգարացւոց աշուշայ · և արքայն աղուանից վաչէ արավաղէնեան , հանդերձ այլ ևս իշխանօք · թող և զորս կային 'ի դրան · յորոց մի էր և կամսարականն արշաւիր արշարունի՝ միւս փեսայ վարդանայ ։

Իսկ իբրև յանդիման եղեն ատենի թագաւորին այս ամենայն արք մեծամեծք , որ օր էր յառաջընթաց սրբոյ զատկի , այն է աւագ շաբաթ՝ յամի տն · 450 · սկսաւ յազկերտ մռնչելով

և

և ողոքալով խօսել ը նմա անարգանօք. և ասէ ցնախարարս Հայոց. զի՞նչ համարիք դուք զիս, և զանձինս ձեր, արարէք պ՟նի: Նա նոքա ասեն. չե՛ն ինչ պէտք պ՟նւոյ առ այդ. զի ինքնին իսկ յայտ է ա՟մ արեաց և անարեաց. մեք զձեզ թագաւոր գիտեմք ամենեցուն՝ առաւել ևս մեր, տիրաբար ունող իշխանութի սպանանելոյ և կեցուցանելոյ:

Յայնժամ ասէ թագաւորն. այդ պ՟նի շատ հեռի է 'ի նամակէն՝ զոր յառաջն գրեցիք. զի անդ ցուցեալ էր ձեր, թէ է ինչ՝ յորում պարտական եմք հնազանդիլ քեզ. և է ինչ՝ զոր ոչ քեզ պարտ է ասել, և ոչ մեզ առնել: Նա արդ նախկին և կարևոր հրաման թագաւորութե մերոյ այս է, զի ընկալջիք զմեր օրէնս. որով ճանաչի տ՟րուի մեր 'ի վ՟ր ձեր, և ծառայութի ձեր առ մեզ: Իսկ եթէ զայդ կամս մեր՝ զոր վ՟ր ձեր հոգւոյ փրկութե հոգացաք, յանձն առնուցուք, մեծամեծ փառօք արձակիք 'ի մէնջ. ապա թէ ոչ՝ կանամբք և որդւովք և բովանդակ ազգաւ սատակեցից զձեզ, և ջնջեցից զյիշատակս ձեր յերկրէ:

Յառաջ մատեաւ քաջն Վարդան, խօսել բակսաւ զուարթ դիմօք և համեստ բանիւք, և ասէ. բազումք են աստ քան զիս աւագագոյնք գահու և աւուրբք, և են որ կրտսերագոյնք են. և ամենեցուն մեր հաւատարիմ ծառայութի առ ձեզ և վաստակ բազմապատիկ յայտնի է առաջի տ՟րութե ձերոյ.

մինչև աւելորդ է երկրորդել, և պատրաստ ես եմ դարձեալ ծառայել ձեզ ըստ առաջնոյ կարգի. և թէ մարթ ինչ իցէ՝ և ևս աւելի. զի թէ գոյր հնար, զմի անձն իմ բազմացուցանէի, և իմ անձամբք և բովանդակ ուժով առաւել քան զամենեսին վաստակէի իբրև մտերիմ ծառայ ձեր։ Բայց բանդ՝ զոր այժմ հրամայէք, չէ ծառայութիւն, այլ՝ ապստամբութիւն յԱստուծոյ կենդանւոյ, և յետին թշուառութիւն. զոր չէ մարթ ինձ յանձն առնուլ. և ոչ իսկ ձեզ օրէն է բռնի պահանջել։ Եթէ զծառայութիւն իմ խնդրէք, աւասիկ եմ. ապա եթէ զհաւատս իմ խախտել կամիք, այդ անհնարին է. զի զպարգևն՝ զոր ընկալայ յԱստուծոյ անդստին ՚ի մանկութէ, չկարեմ թողուլ, և կամ ուրանալ զՏէրն իմ վասն մարդկան երկիւղի. զի թէ՝ և ՚ի մարդոյ առեալ էր իմ զայն, և գիտելով զճշմարիտն լինել՝ ուրանայի, ողորմելի զանձն իմ համարէի. քանզի ես զոր յԱստուծոյ ընկալայ, և ՚ի բերանոյ նորա ուսայ, անհնար է վաճառել վասն սնոտի փառաց. քաւ լիցի ինձ առնել զայդ. իմ պինդ այդ է. յօժարեմ ցանկամ մեռանիլ, քան թէ ուրանալ և կեալ առանց Աստուծոյ։

Յայնժամ զօրացեալ և այլոց նախարարաց՝ յայտ արարին արքային պարզաբար, քանզի վաստակեալ է իւրաքանչիւր նոցա ՚ի ծառայութեան նորա առաւել քան յաւուրս այլոց թագաւորաց. և ընդէր ասեն յուզեալ իցէ այժմ ցասումն քո ՚ի վերայ մեր. զինչ վնաս արար քեզ օրէնք քրիստոնէութեան մերոյ. ոչ ապաքէն ՚ի

հրամանի օրինաց մերոց հնազանդել կամք քեզ 'ի ծառայութի՟՝ հարկօք և վտանգօք կենաց մերոց 'ի պատերազմի ։ Իսկ Թագաւորն զերեսս 'ի բաց դարձուցել՝ ասէ ․ մինչ համարիմ ը՟ունել 'ի գանձս իմ զհարկս ժողովեալս 'ի քրիստոնէից , և անօգուտ են ինձ ծառայութիւնք ձեր՝ որ գործին առանց ա՟ծոց մերոց ․ վ՟ զի տգիտութ՟ մոլորեալ անարգէք զպաշտամունս մեր , զկրակ սպանանէք՝ ոչ պահելով միշտ անշէջ , և զհող ապականէք՝ թաղելով զմեռեալս ։ Այլ արդ եթէ կամիք ապրել և կալ 'ի ձերում պատուի , վաղի՟ 'ի ծագել սքանչելոյն արևու՝ վաղվաղակի երկի՛ր պագէք նմա ․ ապա թէ ոչ՝ զմ՟մ տանջանս ածից 'ի վ՟ ձեր , մինչև ակամայ կամօք կատարեսջիք զհրամանս իմ ։

Զայս լուեալ նախարարաց՝ միաբան աղաղակեցին յատենին ․ մի՛ ևս ասեր մեզ զայդ բան ա՛րքայ ․ զի ոչինչ բան կարէ խախտել զհաւատս եկեղեցոյ , որ ո՛չ է շինուա՛ծ մարդկան , կ՟մ տուրք արեգական , այլ՝ սիւն հատատութե՟ հիմնեալ զօրութե՟ն ա՟յ 'ի վ՟ անշարժ վիմի ․ զոր ո՛չ երկիր և ո՛չ երկինք կարեն դրդուե՛ցուցանել , թո՛ղ թէ մարդ մահկանացու՝ որ խոտոխտայ յաղթել նմա ։ Զա՛պա զի՛նչ և կամիս՝ արա՛ , պատրա՛ստ եմք յն՟մ նեղութ՟իս և 'ի մահ գլխովին ։

Լի եղև դառնութ՟ յազկերտ , և ահագին սպառնացաւ նո՟ց՝ երդուեալ յարեգակն երիցս և չորիցս ․ եթէ արդարև ոչ զիջանիք առէ 'ի կամս իմ , զամենեսին զձեզ հանդերձ

այլ և ս քրիստոնէութք որ 'ի բանակին` կապա-
նօք տամ տանել իբրև անարգ գերիս մին-
չև 'ի սագաստան ընդ առապարս . ուր կէսք
զճանապարհայն կորիցեն , և կէսք յանել
բանտս մատնեսցին : Իսկ յետ ձեր առաքեմ
զօրս փղօք բազմօք , ոտնակոխ առնել և սա-
տակել զամ̃ դիմակացս . զամ̃ ընտանիս ձեր
և զորդիս 'ի խուժադուժն տամ խաղացու-
ցանել . քանդեմ զեկեղեցիս ձեր և զվկայա-
րանս , և զամ̃ Դն յաւէր դարձուցանեմ . և
զմնացեալսն ակամայ կամօք ձգեմ յօրէնս
մեր :

Զայս ասաց , և անդէն հրամայեաց հա-
նել զնոս մեծաւ անարգութ՟ յատենէ անտի ,
պատուհեր տուեալ դահճապետին , զի զամ̃
նախարարս հանդերձ այլովքն որ յառաջնմէ-
խոկ անդ էին , պահեսցէ 'ի դիպահոջ . զի
կամ յանձն առցեն զհրամանն արքունի , և
կամ յանձինս ընկալցին զմահու պատուհասին :
Իսկ և այս այնպէս եղև , անկան նախարարքն
ամ̃ 'ի վարանս անհնարինս . զի վտանգ կո-
րստեան մարմնոյ կամ հոգւոյ առաջի' կայր նմ̃
և ամ̃ ազգին . ոչ ժամանակ գոյր խորհելոյ ,
և ոչ հնար փախչելոյ , քանզի և օրն էր տա-
րաժամեալ , և ստիպումն հրամանին 'ի վ[ր]ա
կայր մի վաղուեան աւուր : Բազում խոստա-
մամբք ընչից միջնորդ ունէին զիշխանս պալ-
ատին , և ինչ ոչ շահէին :

Իսկ յորժամ անցուցին զայն գիշեր կոծով և
տրտմութ՟ , և արտասուաճախ պաղատա-
նօք առ Տր , [illegible] կոչեաց զնոս Թագա-
ւորն .

ւորն . և վերստին հարկեցուցանէր զնոսա ողոքանօք և սպառնալեօք պատրաստ լինել յերկրպագութի՛ն արեգական ։ Իսկ նոքա մերժեցին զբանս նորա , հրաման ետ յազկերտ դնել զնս անդրէն 'ի տան միում նոքա 'ի բանտի , և պահել 'ի խիստ նեղութե՛ն` ա̃մ զգուշութ̃ հանդերձ , զի մի՛ ոք զերծանիցի . և ասաց պատրաստել գունդ մի , զի չարաչար վշտօք վարեսցեն զնս յանդարձ օտարութե՛ն 'ի սագաստան ։

Իսկ մինչդեռ կէսք 'ի նախարարաց յօժարամիտ ցուցանէին զանձինս յայն պատուհաս , և կէսք վարանեալ ծփէին 'ի խորհուրդս , տեսեալ զաղէտս տարակուսանաց նց ներքինի ումն 'ի խորհրդականաց արքայի քրիստոնեայ 'ի ծածուկ` եկն առ նոսա զանխուլ յերկրորդումն գիշերի , խրատ չար ետ ոմանց 'ի նոցանէ պատճառանօք բարւոյ և զերծանելոյ յե՛ս մեծագոյն չարէ . ոչ գիտէք ասէ , զի ը̃ ձեզ և հն կորնչի , և յօտարանալ ձերում ա̃մ ազգ ձեր հարկի 'ի հրամանս արքունի . և արդ ա՛ղէ առ վայր մի արտաքուստ արտաքս յա՛նձն առէք զկամս Թգրին` երկիրպագանելով արեգական , և զմիտս առ ք̃ս ուղղելով . և յետ անցից վտանգիս երԹա՛յք յտն ձեր , և ապրեցուցէք զանձինս և զհն ։ Այս խորհուրդ անքերելի` հաճոյ Թուեցաւ լսելեացն . վն̃ և ծածուկ 'ի վարդանայ առաքեցին բանս առ Թագաւորն , և աղաչեցին Թոյլ տալ նց խորհել առ ժամանակ մի ։ Ուրախ եղև յազկերտ , և Թողացոյց նց աւուրս

գուրս ինչ՝ ընտրել զոր կամին ։ Եւ էր տեսանել յայնժամ. ալէկոծ խորհուրդ և վէճ՝ ՚ի մէջ Նախարարաց՝ տակաւին գաղտ ՚ի վարդանայ . զի թուլամիտք հանգոյն վասակայ սիւնւոյ և գադեշոյի խորխոռունւոյ ինքնին զիջանէին ՚ի խորհուրդն անօրէնութե . երկիւղածքն վարանէին . տգէտքն օրհնաւոր կարծէին առնել զչարն՝ զի եկեսցէ բարի . և գիտնաւորքն տկարացեալ՝ առ հարկի կամակից լինէին նց , զմտաւ ածելով զելս չարագոյնս . եթէ զանձանց և եթ փրկութի հոգամք ասեն յայժմուս , վտանգեմք զփըրկութի ծին . ապա եթէ ՚ի ժամուս պատճառանօք գայթակղեսցուք , ապա երթեալ յԾ մեր՝ պինդ ունիմք զքրիստոնէութի , և վանեմք զանօրէնս ։

Այս խորհուրդ յաղթեաց մտաց բոլորեցուն . այլ ոչ իշխէին յայտնել մեծին վարդանայ՝ գիտելով զկատարեալ ածպաշտունր և զտեղեկութի օրինացն այ և զպատուիրանապահութի . բայց զի մի՛ յոչն միաբանել նորա՝ այլազգ շրջեցին իրքն , թո՛ղ զի և առանց նր անբաւական համարէին զանձինս զդէմ ունել յետոյ պարսից , ժողովեցան առ նա բազմութի , և սկսան թախանձել բազմօք՝ զի միաբանեսցի ՚ի խորհուրդն , զոր խորհեցան . Հայեա՛ց ասեն ՚ի վտանգդ առաջիկայ , որով կորնչելոց են ազգք և ազինք քրիստոնէից տանօք և որդւովք և կանամբք՝ առաւել հոգւով [illegible] մարմնով մինչև ՚ի կատարած . գթա՛ ՚ի հօտքս անթիւ բազմութե ,

և լեր պատճառ փրկութեան . միայն յանձն առ-
ու փոքր մի հիւանդանալ ըն̃ մեզ . և յետ սա-
կաւուց ողջացուսցէ զքեզ և զմեզ անմահ
բժիշկն յս :

Նաև և իսկ 'ի բաց հերքեաց մեծն վարդապետն
զայն խորհուրդ անարժանութեան . մի՛ լիցի ինձ
ասէ ասել արարչին իմում , կամ մոռանալ բը-
բանն Տր , թէ որ սիրէ զհյրն կմ զորդին առա-
ւել քան զիս , չէ՛ ինձ արժանի . և արդ մի՛
ևս ասէք ինձ զայն ինչ , զոր չէ՛ ինձ արժա-
նել , թո՛ղ թէ արդեամբք կատարել . այլ
զմեր հոգիս հոգասցուք այժմ , և Տր ինքնին
հոգասցի զհոգս փրկութեան այլոցն ամենե-
ցուն :

Նոքա իբրև լուեան զբանս վարդանայ թէ-
պէտև իրաւացի համարէին , բայց յանհնարա-
մինել մարդկօրէն խորհրդով՝ անողրէն թուա-
խանձէին զնա . և զի առաւել ընտանի էր
և սիրելի վարդանայ արտակ մոկացի , զսա
յորդորէր բդեշխն գուգարաց աշուշայ հա-
ւանեցուցանել զվարդան . և ինքն աշուշայ
բազում բանս խօսէր ձայնակցութ այլոց նա-
խարարաց , 'ի մէջ բերելով և բանս 'ի գրոց
յստակ միտս՝ ոչ թէ արժան իցէ վտանգել
առ փոքր մի և զանձին փրկութն վն այլոց-
ն թէ առաքեալըն պօղոս յանձն առնոյր անա-
նզով լինել վն փրկութեն եղբարց և ազգա-
կանաց ըս մարմնոյ , յանձն առ և զու նզով
լինել վն փրկութեն հոգւոց համօրէն ազ-
հայոց և վրաց և աղուանից . յայժմուս զը-
լխաղ լեր մեզ , և մեք զոր ինչ հրամայես յե-
ռայ

տոյ՝ առնեմք , մինչև հեղուլ զարիւնս մեր ՚ի պաշտպանութիւն հաւատոց . միայն առ անգամ մի զերծցուք ՚ի վտանգէս :

Եւ առ հաստատելոյ զբանս իւրեանց՝ միաբան երդուեան՝ ձեռս դնելով յաւետարանն քնի . որ ոք ստեսցէ ասէն այսմ երդման , ուրացեալ ձեղքեսցի յարքայութենէն այ , և զամ վնաս հոգւոց խնդրեսցէ ած ՚ի ձեռաց նր :

Զայս ամ տեսեալ վարդանայ՝ դառն հեծութբ և լի արտասուօք զիջաւ ՚ի կամս նց . և ապա ամենեքին աղօթս մատուցեալ՝ խոստովան լինէին այ արտասուօք զչարն՝ զոր ինչ գործելոցն էին . քանզի և ինքեանք գիտէին՝ թէ չէր արժան , զոր առնել կամէին :

Եւ մինչդեռ նքը յայս միտս ծփէին , գուժկան եհաս առ թագաւորն՝ թէ հոնք ապստակաւ արշաւեցին ՚ի կողմն մի պարսից ձէին :

Յայնժամ փութացեալ յազկերտի խաղալ ըդէմ նց՝ փութացոյց յառաջ քան զգնալ իւր ստիպել անդրէն զնախարարսն . և նոցա առիթ դիպող վարկուցեալ զմեկնիլն յազկերտի վաղվաղակի՝ ծանուցին արքային խաբանօք , եթէ յանձն առին կատարել զկամս նր . զի փութով արձակեսցէ զինքեանս :

Յայնժամ լցեալ յազկերտի ուրախութբ՝ առ տարաւ զնս շքով յատրուշանն . և ՚ի մատուցանել նր երկրպագութիւն հրոյ և արեգական՝ զնոյն արարին յարտաքին երևոյթս և նախարարքն առ հասարակ , թէպէտև յակամայս և պատճառանօք կորացուցանելով զանձինս ՚ի ցոյց երկրպագութե , բաց յեր-

կուց եւ յերկից ոմանց անօրէն ուրացողաց,
որք անխտրաբար մխեցին զանձինս յերկրպա-
գութիւն եւ 'ի զոհ ըստ օրէնս մոգութեան. եւ թուէ-
ցաւ յազկերտի՝ թէ ամենեքին 'ի նոյն միա-
բիցեն: Եւ յետ կատարման գործոյն դաւ-
նութեան՝ յորժամ եկին յատեան, առ իսպառ-
խաբելոյ զմիտս թագաւորին՝ ոմանք սուտ
գովութիւնս եւ շնորհակալութիւնս առնէին նմա,
ասելով թէ ձեր նախնիքն սիրէին զմեզ՝ հա-
գալով զմեր օգուտ մարմնաւոր, այլ դուք
եւ վասն հոգւոյ օգտի խնամ կալայք. եւ եթէ
նոցա ծառայեցաք յօժարութեամբ, առաւել եւս
ձեզ ծառայեսցուք: Եւ ոչ ինքեանք շատա-
ցեալ՝ ստիպէին եւ զվարդան ասել նոյնօրի-
նակ բանս. քանզի գիտէին՝ թէ նմա առա-
ւել հաւատայ թագաւորն՝ քան ամենեցուն:
Յայնժամ ասէ վարդան երկդիմի բանիւք առ
աջի թագաւորին եւ մեծամեծացն. Ով վսա-
տակս եւ զհպատակութիւն իմոց նախնեաց առ
ձեր թագաւորութիւնդ դուք ամենեքեան քաջ
գիտէք. եւ ինձ չէ օրէն պանծանօք զնոյն
յեղյեղել: Եւ ես թէպէտեւ բազմօք յետ-
նեալն եմ քան զիմ նախնիս, սակայն որչափ
եւ կարն էր յիս՝ փոյթ ունէի յամենայն՝ արդար
վաստակօք հաճել զձեզ. եւ որ ուրեք եր-
թեալ է իմ 'ի գործ պատերազմի 'ի ձեր հը-
րամանէ, տեսեալ է զօրագլխաց ձերոց եւ ըն-
կերաց իմոց զիմ աշխատութիւն ըստ իմում
միամտութեան: Բայց արդ եթէ մինչեւ ցայժմ
գործեալ ինչ է իմ, այլ ոչ արժանի անուա-
նեմ գովութեան, յայսմ հետէ զայն գործեմ եւ-

հնա

հնարիւք ամենայն զօրութեամբ և ուժով օգնականութեան տեառն՝ առնել գործ այնպիսի, որոյ համբաւն ոչ միայն առաջի ձեր արժեաց, այլև 'ի դրան կայսեր յունաց և յամենայն ազգս պատմեսցի մինչև ցյաւիտեան ։ Զայս բան ասաց արին վարդան՝ նշանակելով զկամս իւր արիաբար նահատակելոյ ընդդէմ պարսից մինչև ցհեղումն արեան վասն տեառն . այլ յազկերտ և աւագանին պարսից համարեցան, թէ 'ի ծառայութիւն նոցա ունի աշխատել առաւել քան զառաջինն ։

Որդ այսպիսի բանիւք և գործովք նախարարաց գլխովին պատրեալ յազկերտի՝ մեծարեաց զնոսա բազում պարգևօք . և հաստատեալ զամենեսին յառաջին աւագութեան իւրեանց՝ հրաման ետ դառնալ յաշխարհս իւրեանց հանդերձ այլ ևս երևելի արամբք, որք կային 'ի կապանս ընդ դարեգնի սրոշանձտեան ։ Արձակեաց ընդ նոսա բազում զօրս 'ի պարսից հանդերձ զօրավարօք, և մոգս և քուրմս եօթն հարիւր հանդերձ մոգպետաւ, յորդորելով զնոսա փութով գնալ 'ի հայս, և դարձուցանել զամենայն ազգն 'ի մոգութիւն ։ Բայց զերկուս որդիսն վասակայ կալաւ առ իւր 'ի պատանդի, որպէս և զթագաւորն վրաց, և զթագաւորն աղուանից, և զեղբարսն գուգարացւոց . տեսանել՝ թէ զինչ անցք անցանեն ընդ ազգն հայոց, զի նոյնպէս արասցէ և ընդ ազգն նոցա . և ինքն աւետաւորս առաքեալ ընդ ամենայն տեղիս վասն սոցին իրաց՝ փութանակի խաղաց գնաց 'ի [illegible] գնդին հոնաց ։

Իսկ քրիստոնեայքն՝ որք կային յԾին պար-սից 'ի զանազան ազգաց, և էին 'ի վիշտս հալածանաց, իբրև լուան զգործ ուրա-ցութեան նախարարացն, անկան 'ի սուգ ան-հնարին. զի և չէին գիտակ գաղտնի խոր-հրդոց նց. վասն և ոմանք 'ի նոցանէ եկին առ նախարարս, և սկսան արտասուօք ասել ցնո-սա. Դուք էիք մեր հաստատութիւն և ապա-ւէն. դուք էիք մեր ուսուցիչ և խրատտու 'ի քրիստոնէութեան. դուք էիք մեր պարծանք առ թշնամիսն ճշմարտութեան. արդ զի՞նչ լի-նիցի մեզ 'ի կործանիլ ձերում. զիա՞րդ թո-ղիք զած, և հնազանդեցայք դիւաց. զիա՞րդ ընդ կուրացեալսն և դուք կուրացայք. գի-տիցէ՞ք արդեօք, զի երկինք և երկիր սուգ առեալ են ի կորուստ ձեր. եթէ 'ի մարդոյ երկնչիք, իսկ զի՞նչ առնիցէք զածասաստ բարկութեան. ոչ միայն զանձանց դատաս-տան տալոց էք առաջի ահեղ ատենին այ, այլ և զայլոց բազմաց՝ որք 'ի պատճառս ձեր վտանգին։ Այս և առաւել քան զայս լուեալ նախարարաց 'ի քրիստոնէից անտի՝ արտասուօք զերեսս թանային, և հեղձա-մղձուկ լինէին յոգիս. զի ոչ կարէին յայտ-նել նց զխորհուրդ իւրեանց, զի մի՛ գիտաս-ցեն պարսիկք. և դառն էր նց լսել զայնպի-սի բանս զանձանց իբրև զկատարեալ ուրա-ցողաց.

Իսկ քահանայքն՝ որք կային 'ի Տիզբոն թա-գաւորական քաղաքս պարսից, փութացեալ առաքեցին առ յԾին հայոց, և ծանուցին

երա

երանելւոյն յովսեփայ կաթուղիկոսի և այլոց եպսաց զգործս նախարարացն ։ Զոքա իբրև լուան, յանչափ տրտմութն ընկղմեցան ․ և գիտացեալ թէ գալոց են ը̄ նոսա և մոգք առ 'ի բառնալ զկարգ եկեղեցւոյ և կարգել մեհեանս, հաստատեցին լուծ ազգի և աշխի պատերազմիլ ը̄ նս ․ մի խնայեսցէ ասեն ձեռն եղբօր 'ի մերձաւոր իւր ․ և այնպէս ամ բնակիչք աշխին արք և կանայք, եկեղեցականք և աշխականք միով հոգւով վառեալ պատրաստեցան ընդդէմ նց ։

Իսկ եղև իբրև եհաս բանակ նախարարաց և մոգուց 'ի ծաղկոտն գաւառ մօտ 'ի գիւղաքաղաքն անգղ, իմացեալ զայն երանելւոյն ղևոնդեայ քահանայի՝ դիմեաց 'ի քաղաք անդր զօրավիգն լինել հաւատացելոց ։ Իսկ ահա յետ աւուրց ինչ մոգպետն ինքնին եկն անդր յաւուր միաշաբաթու զօրօք հանդերձ ․ և մատուցեալ 'ի դուռն եկեղեցւոյն՝ կամէր քակել ըստ արքունի հրամանի ։ Յայն ժամ սբն ղևոնդ հանդերձ ուխտիւ եկեղեցւոյ ըդդէմ եկաց նց քաջութ, և 'ի բաց վանեաց ․ և 'ի լինել աղաղակի զեղան անդր և բազմութիւք 'ի քաղաքացւոց քրիստոնէից արք և կանայք ․ և դիմեալ 'ի վր անհաւատից քարամբք և փայտիւք՝ հարին չարաչար զմոգպետն և զմոգսն հանդերձ գնդաւ նոցին ․ մինչև հազիւ փախստեայ անկանիլ նոցա 'ի բանակն ։

'Ի տարածիլ համբաւոյն՝ ընթացան անդր զինուք այլ և ս բնակիչք աշխին մեծամեծք և

փոքունք՝ հանդերձ կաթուղիկոսիւ՛ և այլ՛ ևս եպիսկոպոսք և քահանայիւք. յորս յաւելան և այլք ՚ի քահանայից և ՚ի ժողովրդոց՝ որք կային ՚ի բանակին նախարարաց. և ոմանք ՚ի սոցանէ՝ որք գիտակն էին գաղտնի խորհրդոց նախարարաց, պատմեցին կաթուղիկոսին և որոց ընդ նմա։ Նոքա յղեալ ՚ի ծածուկ՝ կոչեցին զսպարապետն Վարդան. որոյ եկեալ անկաւ արտասուօք առ ոտս հայրապետին և եպիսկոպոսաց. և խոստովանեալ զարտաքին ուրացութիւն իւր և զընկերացն՝ յայտնեաց նոցա զիրսն ստուգութիւն. և քաջալերեալ զնա՝ ինքն դարձաւ անդրէն ՚ի բանակն։

Իսկ մոգպետն զփորձ առեալ հաստատութեան հայոց՝ գիտաց, եթէ անհնար է հարկեցուցանել զնա ՚ի մոգութիւն. սկսաւ ՚ի խորհուրդ մտանել ընդ Վասակայ Սիւնւոյ հայոց մարզպանի, և ասէ. թող գրեցից առ թագաւորն, զի թոյլ տացէ ազգիդ կալ ՚ի խաղաղութեան, և առ փոքր փոքր սիրով շահեսցի զմիտս դոցա. ապա թէ ոչ՝ բռնութեամբ ոչինչ ունիմք վճարել. զի թէ անզէն մարդիկն այնպէս բռնացան, եթէ յանկարծ և զզինաւորս միաբանեսցեն ընդ իւրեանս, ո՞ կարէ կալ առաջի յանդուգն յարձակմանն նոցա. որոց առաջի արհամարհեալ է մահ և կեանք, թող թէ ստացուածք և փառք, կապանք և տանջանք։ Նոյն յաւել պատմել մոգպետն, թէ զիարդ յաւուրս շապհոյ արքայից արքայի գուն գործեցին պարսիկք ջնջել զքրիստոնէութիւն յԾէն պարսից, և նահատա-

կե-

կեցին զբազումս · բայց չահեցան և ոչինչ · զի ը՟ յաճախել հալածանաց բազմանային հաւատացեալք ։ Եւ դու ասէ՝ որ գիտէիր զայդպիսի անդարձ միտս աշխարհիդ , ընդէ՞ր համարձակ չասացեր յատենի արքային , թէ անհնար է կատարել կամաց նր՟ · ապա թէ ոչ՝ յայտ առնես , թէ և դու կամակից ես նոցա՝ կատարել նենգանօք զպարսիկս · զի դու ես մարզպան աշխարհին ։

Իսկ անօրէնն վասակ՝ որ 'ի սրտէ ևս արհամարհեալ էր զսուրբ հաւատս , և ակն ունէր ուրացութեամբ հասանել մեծ ևս փառաց՝ մինչև թագաւորել 'ի մէջ աշխարհին , խորհուրդ տայր մոգպետին և այլ գունդ զօրաց տալ բերել 'ի պարսից , և բռնանալ ընդդէմ քրիստոնէից ։ Եւ զի ոչ հաւանեցաւ այսմ մոգպետն , յուդորեաց զնա հանդարտել առ վայր մի · զի ես ասէ այլով ճարտարութեամբ 'ի գլուխ տարայց զհրամանն արքունի ։ Արդ երթեալ վասակայ անձամբ 'ի քաղաքն անդր՝ պատիր բանիւք խաղաղացոյց զամենեսին , որպէս թէ յակամայս իւր լեալ իցէ ձեռնարկել մոգպետին յեկեղեցի · զի ես ասէ ունիմ հրաման յարքայէ յանդորրու պահել զաշխարհն ։ Եւ յետ ցրուելոյ զբազմութիւն յիւրաքանչիւր տեղիս՝ թոյլ ետ և նախարարաց որ 'ի բանակին , երթալ 'ի տունս իւրեանց · և ինքն սկսաւ յորդոր լինել աստ անդ , զի առ ժամանակ մի՝ թոյլ տացեն մոգուց վարել յառանձին տեղիս զպաշտամունս իւրեանց · զի սովաւ ասէ հաճեալ զթագաւորն՝ առ սակաւ սա-

կաւ յետոյ դարձուցանեմք զնա. և մեք հա-
մարձակ պաշտեմք զքրիստոնէութիւն։

Իսկ այսպիսի հրապոյրք անօրինին լսելի լի-
նէին, զի էր խորամանկ բարուք և իշխան աշխարհին, և յառաջ ժամանակաւ անուն ունէր
բարեպաշտութեան յիւր իրս. վն որոյ կարծէին
լաւք, եթէ ողջմտութեամբ խօսի զամն։ Իսկ
իբրև այսու օրինակաւ և դիւրական հնա-
րիւք պղտորեաց զմիտս մեծամեծաց և փո-
քունց, սկսաւ սփռել զմոգս 'ի տունս նա-
խարարաց. յորոց և զոմանս ձգեաց կաշա-
ռօք 'ի խորհուրդս չարութեան իւրոյ. և լինելին
տայր առնել խրախուճս կոչնոց յայլ և այլ
տեղիս, և զամ ինչ թ հեթանոսական կար-
գի յարմարէր. մինչև սկսաւ տարածիլ կրա-
կապաշտութի, և խափանիլ հանդէս ածպաշ-
տութեան։ Քանզի 'ի յաճախել մոգուցն ըզ-
գարշ պաշտամունս իւրեանց 'ի քաղաքս և 'ի
գիւղս, 'ի յայտ ելին այնուհետև և ըստու-
գապէս ուրացեալք. մինչ զի երկուք ոմանք
յաւագ իշխանաց հայոց՝ շաւասպ արծրունի
և Վնդոյ դուռնեցի՝ կանգնեցին կրակատուն
'ի դուռին քաղաքի. որոյ քրմապետ եղև չե-
րոյ որդի Վնդոյի։ Իսկ տեսեալ ուրացելոյն
Վասակայ զյաջողուածս անօրէնութեանց՝ առա-
քեաց գաղտ, և ետ բերել զունդ նոր յաշխարհէն
պարսից. զի անկասկած լիցի յուխտապահ
նախարարաց, յորոց խիթայր։

Տեսեալ մեծին վարդանայ սպարապետի,
եթէ յընտանի թշնամեաց է կորուստ աշխարհին,
և չիք ոք 'ի նախարարաց՝ որ զօրասցի վանել
զպար-

զպարսիկս, անյոյս եղև 'ի գլուխ տանել զխորհուրդն առաջին. և փութացաւ ապատել զանձն իւր և զիւրսն 'ի կորստենէ: Կոչեաց առ ինքն զա̃մ ազգականս և զընտանիս, և ասէ ցնս̃. Ես ոչ ուրացայ զարարիչն իմ և զտ̃ր յս̃ քս̃ կամաւ և կամ առ երկիւղի. այլ յակամայս առ վայր մի թաքուցի զճշմարտութի̃ խաբանօք՝ դնելով զանձն իմ 'ի վտանգ կորստեան վասն ձեր. և զի թողի զտ̃րն իմ պատճառանօք, կամիմ ստուգութ̃ թողուլ զա̃մ ինչ կենցաղոյս առ 'ի գտանել զնա. և արդ չէք այլ մեզ հնար յայսպիսում ժամանակի, բայց եթէ 'ի բաց լքանել զերկիր հայրենի և զտուն, և դիմել յերկիր տ̃րութ̃ կայսեր: 'Ի սոյն յորդորեաց և եղբայր նր̃ Հմայեակ. որում ասէ անյապաղ՝ որ ինչ հաճոյ թուի քեզ. և մեք պատրաստ եմք ը̃ քեզ 'ի կեանս և 'ի մահ: Եւ այնպէս միաբանեալ համագերձ ընտանեօք՝ թողին զա̃մ ինչ, զոր ունէին. և յուղի անկան գնալ 'ի կողմանս յունաց:

Ազդ եղև նախարարաց չու Վարդանայ, և զահի հարան առ հասարակ. ք̃զի գիտէին՝ զի առանց նր̃ կորնչէին և ինքեանք. կէսք խորհէին և ինքեանք զնոյն առնել, և խոյս տալ յաշ̃էն. այլք ասէին փութալ յետս դարձուցանել զՎարդան. 'ի սոյն խորհուրդ առաւել յորդոր լինէր Վասակ, զի մի և այլք զհետ նր̃ երթիցեն, և դատարկասցի աշ̃ն՝ յորոյ վր̃ կամէր թագաւորել. և կամ թէ չարիք ինչ հասցեն ինքեան յարքայէ,

զի մարզպան գոլով Յին՝ ոչ կարաց պահել զՅն ։ Ապա կոչեալ զուխտապահ նախարարսն հանդերձ եպսօք և քահանայիւք՝ գրեաց թուղթ աղաչանաց ՚ի դիմաց ամենեցուն առ վարդան՝ մի մեկնիլ յՅէն. և երդումն տուեալ ՚ի Սրբ. աւետարանն կնքով իւրով և բոլորեցունց՝ ետ տանել առ նա զնոյն աւետարան ՚ի ձեռն երանելւոյն ղևոնդեայ և այլ երկուց ՚ի քահանայից, և ՚ի ձեռն արշաւրի կամսարական իշխանի, և այլ երկուց նախարարաց, խոստանալով՝ զի ՚ի դառնալ վարդանայ՝ հնազանդեսցին նմա ամենեքին, և նովաւ վանեսցեն զմոգս յաշխարհէն, և միաբանեալ ընդ կայսեր յունաց՝ զդէմ կալցին պարսից ։

Եւ իբրև եհաս այս պատգամ միաբանութեան առ վարդան ՚ի գիւղն արամանեայ ՚ի բագրեւանդ գաւառի, չկարաց ընդդէմ կալ խնդրոյ նց յօգուտ համօրէն Յին. այլ փութանակի դարձ արար՝ հաստատեալ ՚ի միտ դնել զանձն ՚ի մահ վս փրկութեան անձին և ազգին ողջոյն ։ Եւ մինչդեռ նա այսպիսի հոգւով ժամ ՚ի ժամէ պատրաստէր զանձն և զիւրսն, միասանգամ ուրացեալն վասակ յապաղումն ՚ի վր ածէր պէսպէս պատճառանօք ։ Եւ եղև յաւուր միում յորժամ ժողովեալ էին նախարարքն յապարանս մեծին վարդանայ ՚ի շահապիվան, հասին անդ եպսունք ՚ի վաղարշապատէ հանդերձ կաթուղիկոսիւն, բաղոք բարձին և ասեն. մինչև յե՞րբ լռիցէք, զի ահա կորնչի Յս հեթանոսութբ. ասանիկ

տեսաք եւ անօրէնութի նոր, զի կանայք մո-
գուց եւ իշխանաց պարսից հրամանաւ վաս-
կայ մարզպանի եւ մոգպետին պատառեցին
զհանդերձս հաւատաւոր կանանց, եւ շիջու-
ցին զճրագունս յեկեղեցիս. եւ արդ եթէ եւ
դուք կամակից էք այդմ ամի, նախ զմեզ
սպանէք աստ, եւ ապա զոր եւ կամիք՝ արա-
րէք:
Իսկ իբրեւ զահի հարան լսօղքն, յոտն եկաց
քաջն վարդան, խրախոյս ետ, եւ ասէ. Հա՛-
պա ո՞ւմ կայք անաքինիք. ժամ է մեզ զարթ-
նուլ 'ի քնոյ, եւ առնուլ վրէժ 'ի թշնամեաց
ճշմարտութե: Իսկ անդէն միաբանեցան ուխ-
տիւ, վանել զկրակապաշտս մահուչափ պա-
տերազմաւ 'ի վ̃ր ս̃բ հաւատոյ, եւ երդուեալ
հաստատեցին աւետարանաւ զուխտ իւր-
եանց. եւ զվարդան սպարապետ դարձեալ
ընտրեցին գլուխ եւ առաջնորդ ամենեցուն,
բանս եդեալ՝ ժողովել իւրաքանչիւր զօրս
դաղտ 'ի վասակայ, եւ սկիզբն առնել մար-
տին յամսեանն մարերի, ըստ 'ի յունիսի:
Իսկ զանդաղան ոմն յոստանեայ տանէ. գի-
տացեալ զխորհուրդ նախարարացն՝ ազդ ա-
րար վասակայ. զայն իբրեւ իմացան նախա-
րարքն, առաքեցին կալան զմատնիչն, եւ ե-
դին 'ի բանտ. եւ յետ քանի մի աւուրց ետուն
քարկոծ առնել հրապարակաւ. զի յայտնի
լիցի ամենեցուն վրէժխնդրութի նց վս ճշ-
մարտութեն: Իսկ 'ի հնչել այսր համբաւոյ՝
բազումք յորոց ակամայ միաբանեալ էին ԾԷ
մոգս, կմ պահէին զնս 'ի տունս իւրեանց,

**'ի բաց վարեցին զնա, և եկին յարեցան 'ի վարդանանս :**

Յայնժամ աճապարեալ և մօգպետին և զօրավարացն պարսից՝ ժողովեցին զնմ զօրս իւրեանց 'ի բագրևանդ գաւառ, գործակցուք ուրացելոյն վասակայ՝ որ առաճարացոյց զգունդսն : Ապա յամենեանն մարերի եկին հասին նախարարք հայոց ընդ ժամադրութե յամուրն անդ 'ի ծաղկունն գաւառ, և եղեն բանակ մեծ. ընդ որս էր և յովսէփ կաթուղիկոս հանդերձ եպսօք և քահանայիւք : Եւ անդ յերկիս առաջս բաժանեալ՝ դիմեցին 'ի վր պարսից, և չարաչար հարին զնս. և զերևելիս 'ի նոցանէ ձերբակալ արարեալ եդին կապանօք 'ի բերդս ամուրս :

Այլան և զանօրէնն վասակ. և մինչդեռ խորհէին սատակել զնա, կամ մատնել 'ի կապանս, նա ընդ կեղծուպատիր և չարապոճեստ բարուց իւրոց ողոքէր և աղաչէր խնայել 'ի նա իբրև 'ի մեղուցեալ, երդումն առնեալ յաւետարանն սրբ՝ հաստատուն կալ 'ի հաւատս, և զնմ ապաշխարանս յանձին կրել, միայն թէ մի մեկնեսջիք զիս աստ 'ի սրբ միաբանութէ ձերմէ : Եւ նքա վստահացեալ յահագին երդումն նր՝ ոչ յանձն արարին զդատաստան նր, և ընկալան յիւրեանս՝ թէպէտև կասկածանօք հանդերձ :

Յետ այսորիկ 'ի հաստատութի իրացն ժողով մեծ արարին եպսունք և նախարարք 'ի վանս սպարապետին 'ի շահապիվան հանդերձ ժողովով բազմուք. և սկսան առնել

յան-

յանդիմանն Վասակայ ։ Մ՚եզ այլ ոչ է խոր-հել ինչ, բայց եթէ յայտնապէս պաշտպա-նել սրբոյ հաւատոյս ։ ջնջել զհետս մոգուն յԹէս հայոց, և համարձակ պաշտել զՔս ։ և եթէ մահ առաջի կայցէ սրով կամ պատե-րազմաւ, անխնայ տալ զանձինս մեր՝ ՚ի սէր փրկչին մերոյ և եկեղեցւոյ նորա ։ Զայս լուեալ Վասակայ՝ առաւել քան զամենե-սին նախանձախնդիր զանձն ցուցանէր ։ և առաջի ամենեցուն վերստին երդուեալ՝ կնը-քէր զաւետարանն իւրով մատանեաւ ։ Ըդ-նոյն արարին և ամ իշխանք ը կարգի պատ-ուոյ և երիցութեան իւրեանց ։

Այս միաձայնութ ժողովոյն գրեցին եպիս-կոպոսունք ՚ի բերանոյ նախարարաց դաւա-նութի ուղղափառ հաւատոյ ՚ի ձև մաղթա-նաց առ ած, խոստովանելով զերեքանձնեայ մի էութի ածութե Հօր և որդւոյ և Հոգւոյն սբյ, և զմարդեղութի միածնին յածածին սբյ կուսէն վս մեր մարդկան և վս մերոյ փր-կութե ։ ՚ի վր բերելով զխոստովանութի յան-ցանաց ուրացութեան իւրեանց, և աղաչելով ընդունել զապաշխարութի իւրեանց իբրև զդարձ անառակ որդւոյ ։ Եւ ասեն առ փր-կիչն ։ որպէս հեղեր դու զարիւնդ քո սբ ՚ի վր մեղաւորաց ՚ի փրկութի յանցաւորաց, պարգևեա և մեզ հեղուլ զարիւնս մեր ՚ի վր խոստովանութեանս այսորիկ և իւրաքանչիւր Թողութե մեղաց ։ Կարգեցին զկնի և նզովս ահագինս ՚ի վր այնոցիկ, որք ուխտազանց լինիցին և քակեսցին ՚ի միաբանութէ երդ-

 մանն ։

մանն ։ Նաւ զայս եւս նամակ կնքեցին ամե-նեքին՝ սկսեալ 'ի վասակայ մինչև 'ի ստորին իշխանս ․ և եդեալ զայն 'ի մէջ աւետարա-նին՝ յանձնեցին 'ի ձեռս սբյն յովսեփայ կա-թուղիկոսի ։

Յայնժամ վայրի հնչեաց ժողովրդեանն 'ի քաղաքու-թէ մարդկան՝ մեծաց և փոքունց, որք միա-ձայն յամ խրախուսեալ ասէին ․ Պատրաստ եմք 'ի հալածանս և 'ի մահ և յամենեղունս վն սբ եկեղեցեացն, զոր աւանդեցին մեզ սբ հարքն մեր առաջինք զօրութ գալստեան տն մերոյ յսի քսի ․ որով վերստին ծնաք 'ի սբ աւազանէն, և կամիմք միաբանգամ չար-չարանօք և արեամբ նորոգել զանձինս մեր ․ քանզի հայր մեր զնա աւետարանն գիտեմք, և մայր զառաքելական կթղկէ եկեղեցի ։ Նաւ այսպէս միով ոգւով վառեալ առհասա-րակ՝ զմի զինուորութիւն զինուորէին 'ի քն, միով զրահիւք հաւատոյ սպառազինեալ ․ ըզ-կեանս իւրեանց 'ի մահ համարէին, և զմահն վն տն անշուշտ կեանք ։ Նաւ այս բարբառ ստէպ ընթանայր առտնին և 'ի հրապարա-կի ․ քաջութ միայն մեռցուք, զանուն և ըզ-հոգիս եւեթ ժառանգեսցուք ․ զի կենդանի իցէ 'ի մեզ քն ․ որում դիւրին է միաբան-գամ նորոգել զմեզ 'ի հողոյ, և հատուցա-նել իւրաքանչիւր ըստ գործս ։

Զայս այսպէս հաստատեալ ազգ՝ այնուհե-տև ձեռն 'ի գործ արարին իշխանք և քահա-նայք հայոց մաքրել զաշխն յամ գարշութեանց հեթանոսական կրօնիցն պարսից, և 'ի խառ-
նակ

նակ զնացից միաբանեալոցն ՃԸ նմ ։ Իսկ նախ
դիմեալ երանելւոյն Վարդանայ հզօր գնդաւ
՚ի վերայ դրանն քաղաքի՝ կործանեաց զմե-
հեանն զշինեալն ՚ի շաւասպայ արծրունւոյ
և ՚ի մշկանայ պարսկէ ․ զշաւարշ սատա-
կեաց, և զմշկան արար փախստական ․ նոյն-
պէս և զմոգոյ դրունեցն այրեաց ՚ի կրակա-
րանի նր, և զորդի նր զշերոյ քրմացեալն
կախեաց զփայտէ, և զկրակատունն քան-
դեաց ․ և կանգնեաց ՚ի տեղի մեհենին զե-
կեղեցի մի փայտեայ յանուն սբյն գրիգորի
հայաստանեայց լուսաւորչի ։
Ամին նման արարին և յայլ ամ քաղաքս և
՚ի գիւղս՝ յորս գտանէին մոգք և պաշտօն-
եայք կրակի ․ զոմանս կոտորեցին, զայլս ՚ի
բանտ մատնեցին ․ և զամ տեղիս պղծեալս
՚ի պարսից սրբեցին, և աւերեցին և բնա-
ջինջ արարին զհետս հեթանոսուե ։ Իսկ զի
յայտնի լիցի՝ թէ որ ինքնին յաջողէր զգործ
նց, մեծամեծ նշանք ևս գործեցան զօրու-
թբ սբյ խաչին ․ զոր տեսեալ անհաւատից՝
դարձան բազումք ՚ի հաւատս քի ։
Մինչդեռ յայս գործ քաջուե կայր հայաս-
տան Ե, հասին աղաչաւորք յԵէն աղուանից՝
կաթուղիկոսանն նց և հազարապետն՝ խնդրել
օգնականութե ՚ի հայոց ․ քանզի և յԵ մեր
յղեաց ասեն յազկերտ երեք հարիւր մոգս
զօրօք բազմօք՝ դարձուցանել ՚ի դեն պար-
սից ։ Զայս գոյժ իբրև լուան հայք, ան-
կան ՚ի վարանս ․ զի ձեռն տալ աղուանից
կարևոր դատէին վն սիրոյ քրիստոնէուե ․

այլ հայեցեալ և 'ի պէտս Ցին իւրեանց՝ զոր հաղիւ՞ ապրեցուցին, չիշխէին բաժանել և հեռացուցանել զզօրս ։

Այսնժամ քաջալերեալ զաղուհանս՝ խոստանալով յետ սակաւուց հասանել նմա 'ի թիկունս, ինքեանք փութացան նիզակակից առնել զյոյնս . վ՚նյ յղեցին դեսպանս առ կայսրն յունաց Թէոդոս փոքր զաստուածգնոանի զազգակիցն սըյն ատոռմայ առաջնոյ, և զհմայեակ մամիկոնեան զեղբայրն երանելոյն վարդանայ, ընդ որս և զվահան ամատունի, և զմերհուժան արծրունի 'ի մասն հայոց՝ որ ընդ ձեռամբ կայսեր, հանդերձ թղթով աղաչանաց առ ինքնակալն 'ի դիմաց յովսեփայ կաթուղիկոսի և ամ̃ եպսկոպոսաց և նախարարաց, յայտ առարեալ զվտանգ Ցին հայոց և մերձակայ Ցուց յերեսաց անհաւատից, և աղերս առաջի արկեալ ձեռն տալ նմ̃ վ՚ն սիրոյ քրիստոնէութե̃ ։

Այլ զի ոչ գոյր ժամանակ տպաւելոյ պատասխանւոյ, ինքեանք ըստ տանելոյ ժամանակին յերկուս բաժանեցին զզօրս Ցին . զմին ետուն ներշապհոյ արծրունւոյ՝ երթալ յատրպատական Ց, և կալ 'ի պահպանութե̃ ընդդէմ արշաւանաց պարսից՝ հանդերձ զօրաւոր նախարարօք . զերկրորդն ետուն 'ի ձեռս քաջին վարդանայ սպարապետի՝ գնալ յաղուանս, և վանել զզօրս պարսից . և եղեն նիզակակիցք վարդանայ և այլք 'ի նախարարաց՝ որք ամ̃ օգուտ վաստակալ էին 'ի վերջ խնդրութե̃ սր̃ եկեղեցւոյ . վ՚նյ և կանխամնեալ

մտեալ յեկեղեցի՝ համբուրէին զնշան խաչն և զաւետարանն ջերմ արտասուօք , և դնէին 'ի վերայ աչաց և ճակատու իւրեանց , պատրաստելով զանձինս 'ի մահ 'ի պաշտպանութիւն հաւատոյ :

Իսկ զերրորդն հնարեցաւ վասակ սիւնի յին-քըն առնուլ իբրեւ մարզպան և վերակացու աշխարհի , ընտրելով իւր գործակիցս զայնոսիկ յիշխանաց՝ զորոց գիտէր զթուլամտութիւն 'ի հաւատս : Սոյն և յետ մեկնելոյ վարդանանց՝ գրեաց առ զօրավարն պարսից սեբուխտ , որ էր 'ի սահմանս աղուանից , ծանուցանելով նմա՝ թէ զզօրս հայոց յերկս գունդս բաժանեցի . և ահա սակաւուք գայ ընդդէմ քո վարդան . հա՛ր զնա և զօրս ընդ նմա . և յետ նուաճելոյ զաղուանս՝ եկ այսր յաշխարհս հայոց . զի ես եղէց քեզ ձեռնտու :

Իսկ եղեւ իբրեւ պատահեցան միմեանց սակաւաթիւ գունդն վարդանայ , և բազմամբոխ զօրքն սեբուխտայ 'ի սահմանս ուտէացւոց և աղուանից 'ի դաշտի միում հանդէպ խաղխաղ քաղաքի , սրտապնդեաց երանելին վարդան զիւրսն՝ յԱստուած ապաւինել , և մի երկնչել : Յայնժամ յաղօթս կացեալ նյ̃ ա-մ̃բ յաղագս վանելոյ զհակառակորդս սուրբ հաւատոյ՝ զօրութեամբ փրկական նշանի , և տալոյ 'ի ձեռն սակաւուց զյաղթութիւն ընդդէմ բազմութեան , համարձակ 'ի վերայ յարձակեցան , հարին կոտորեցին զբազումս 'ի սուր սուսերի . մինչեւ զահի հարեալ գնդին պարսից՝ քակտեցան 'ի միմեանց . կէսք փախուցեալ

անկան 'ի պահակին հոնաց , և մնացեալքն ցիրևցան եղեն . զորոց զհետ մտեալ հայոց՝ մղեցին զնոս 'ի գետն լորնաս . և անդ դոմանս ջրահեղձոյց արարին , զայլս նետահար կորուսին . մինչև ոչ մնաց 'ի նոցանէ ապրեալ , բաց 'ի միոյն՝ որ անցեալ երկվարաընդ գետն՝ մազապուր զերծաւ 'ի պահակն հոնաց . իսկ 'ի հայոց ոչ ոք անկաւ՝ բաց 'ի միոյ ևեթ , այն է երանելին մուշ դխմաքսեան՝ խրեալ 'ի տղմուտս :

Յետ այսորիկ անցեալ հայոց ընդ կուր գետ՝ մտին յերկիրն աղուանից . կոտորեցին զամենայն մօգս պարսից , և սրբեցին զամենայն տեղիս պղծեալս 'ի զոհից նոցա . և զերկիրն զերծուցին 'ի ձեռաց նոցա : Յայնժամ և աղուանք բնակիչք երկրին՝ որք ցրուեալ էին 'ի լերինս , եկեալ և միաբանեալ ընդ գնդին հայոց՝ դիմեցին առհասարակ 'ի դուռն ձորայ , որ հանէր յերկիրն ալանաց և հոնաց , և հարին զբանակն պարսից՝ որ կայր անդ 'ի պահպանութիւն , և զամենայն այր պարսիկ՝ զոր և գտին . կործանեցին զբնակութիւնս նոցա , և տապալեցին զձեռակերտն յազկերտի զպահակն մեծ . և հրեշտակս առաքեալ առ հոնս՝ դաշնաւորեցան ընդ նոսա ընդդէմ պարսից : Նա և յայս ամենայն պատերազմունս ևս՝ ոչ ոք անկաւ 'ի հայոց . զի տէր ինքնին էր՝ որ խորտակէր զթշնամիս հաւատոյ առաջի երեսաց նոցա :

Յայնմ վայրի զուժկան հասանէր առ վարդան յերկրէն հայոց , եթէ տէրն սիւնեաց վասակ հանդերձ ուխտադրժանց գործակցօք իւ-

իւրովք յոգնիս ապաստան արար զՋերմ հաւատացեալս ք՟նի, և կորոյս զե՟ն՝ աւերելով զբազում տեղիս, և գերելով զորդիս տոհմին մամիկոնէից և այլոց միաբանելոց ընդ վարդանայ. դարձեալ և 'ի ձեռն ստայօդ թղթոց օտարացոյց 'ի հայոց զյոյնս և զհայս որ 'ի բաժնին յունաց, ուխտ եդեալ ընդ պարսիկս դարձուցանել զազգն ողջոյն 'ի մոգութիւն. վ՟ն կալաւ և զոմանս 'ի քահանայից՝ եդ 'ի բանտի. զբազում միայնակեացս հալածեաց յե՟էն, և կողոպտեաց զսպասս եկեղեցեաց:

Զայս լուեալ ս՟բյն վարդանայ և որոց ընդ նմա՝ տրտմեցան յոյժ յոյժ. այլ յա՟ծ եդեալ զա՟մ յոյս իւրեանց՝ ասէին. ահա առեալ հեծանոց 'ի ձեռս փրկչին ամենեցուն ք՟ի՝ սրբէ զկալ իւր՝ ընտրել զհատս ցորենոյ, և շտեմարանել յարքայութիւն իւր, և զյարդն մատնել անշէջ հրոյն. արդ եղիցուք մեք ցորենահատք սրբեալք՝ ժամ 'ի ժամէ սպասելով աւուր նահատակութե՟ մերոյ 'ի սէր անուանն Տ՟ն. որում եթէ արժանի գտցուք, հաղորդս գտանիցեմք մասին սրբոց:

Ապա փութացեալ դարձան յե՟ն հայոց յամսեանն տրէի, այն է նոյեմբեր, հանդերձ բազում աւարաւ. զոր լուեալ վասակայ չարին և ընկերաց նո՟ց տագնապաւ անկան յերկիրն սիւնեաց յամուր տեղիս: Իսկ գունդն վարդանայ պնդեալ զհետ ուրացելոցն՝ արարին կոտորած և աւերս բազում 'ի տեղիս գոր-

ծակ-

ծակցացն. և գերի բազում ածեալ յարա-րատեան ծ՝ ահ մեծ արկին ՚ի վ̄ր̄ ամ̄ ուխտանենգից. և տիրեալ ՚ի վ̄ր̄ ամրոցացն՝ յորս բռնացեալ էին վաստակեանք, կալան զծն ը̄ ձեռամբ իւրեանց. և գահանայն զն̄ւ̄յ։ Իսկ ը̄ն հրամանի ն̄ր̄յն յովսեփայ կաթողիկոսի զառաջիկայ ամիսն քաղոց մինչև ՚ի տօն յայտնութ[եան] կատարեցին պահօք և աղօթիւք՝ ՚ի շնորհակալութ[իւն] յաղթութեան եղելոց, և ՚ի յաջողութ[իւն] առաջիկայից. քանզի և որ քան զօր պատրաստէին զանձինս ՚ի մեծ նահատակութ[իւն] ը̄դդէմ պարսից, գիտելով՝ թէ յազկերտ ունի խառնել ընդդէմ իւրեանց ամ̄ զօրութ[եամ]բ իւրով։

Ակն ունէին գտանել ինչ օգնութ[իւն] ՚ի յունաց ը̄ն խնդրոյ դեսպանացն՝ զորս արձակեցին առ նոսա, այլ ՚ի դերև ելին ՚ի մարդկային յուսոյ. քանզի և թ̄ն յունաց պատաղեալ էր յայնժամ յեկեղեցական աղմուկս և ՚ի քննութիւն ժողովականս ՚ի պատճառս ժանատին եւտիքեայ. թող զի ՚ի նոյն ատաքս մեռաւ թէոդոս, և յաջորդ նորա մարկիանոս զանգիտեալ յերեսաց յազկերտի, մանաւանդ թէ և գրգռեալ ՚ի բանսարկու արանց կարգելոց ՚ի վերակացութ[եան] արևելից՝ չկամեցաւ քակել զբարեկամութ[իւն] ը̄րացեն ը̄ պարսիկս, և ձեռն տալ հայոց։ Զայն իբրև իմացան նախարարք և եպիսկոպոսք հայոց, ոչինչ զչարեցան. այլ յղեցին անդրէն զնիտրոյ առ ուխտ եկեղեցւոյն յունաց՝ պատամելով նմ̄ զյաջողութիւն, զոր արար ա̄ծ ընդ նոսին

նին ը՟ հայս . և խնդրեցին 'ի նոցանէ փոխա-
նակ մարմնաւոր օգնականութե՟ զձեռնտուու-
թի՟ աղօթից . զի ո՟չ սկսաքս աւեն , 'ի նմին
և կատարեսցուք :

Իսկ յազկերտ արքայ պարսից 'ի վ՟ր հասեալ
զօրութե՟ հայոց և յաջողութե՟ ն՟ց , խորհեցաւ
նենգամիտ հաշտութե՟ խօսել ը՟ նոսա , և
թոյլ տալ ն՟ց կալ 'ի խաղաղութե՟ . զի յան-
կարծակի հասցէ 'ի վ՟ր ն՟ց : Զայս գիտե-
լով և հայոց` չետուն տեղի սուտակապաս
պատգամաւորութե՟ ն՟ր . մեք աւեն ապրե՟լքս
զօրութե՟ն ա՟յ , և հաստատեալքս 'ի յոյսն ք՟ի`
ո՛չ պատրիմք այսուհետև իբրև զտղայս ,
այլ պատրաստ եմք ա՟մ փորձութեց և մահու
'ի վ՟ր եկեղեցւոյ ս՟ր :

Ապա 'ի յաջորդ ամի 'ի սկիզբն գարնայնոյ
յայտնապէս պատերազմ բացեալ յազկեր-
տի` յղեաց զզօրավարս իւր 'ի հայս անհա-
մար զօրօք և բազմութե՟ փղաց , պատուէր
հրամանի տուեալ ն՟ց սատակել զա՟մ այր
քրիստոնեայ յե՟րին հայոց , փոխանակ զի չա-
ռին յանձն զօրէնս մոգութե՟ , և կոտորեցին
զմոգս և զայլ պարսիկս . և այնպէս բռնա-
նալ ե՟րին , և կամայ ակամայ ձգել զմնա-
ցեալսն 'ի կրակապաշտութի՟ . Ու էր վերա-
կացու գործոյն միհրներսեհ հազարապետ
արքունի . որոյ եկեալ 'ի փայտակարան` կո-
չեաց առ ինքն զուրացեալսն վասակ . և տե-
ղեկացեալ 'ի նմանէ զվիճակ հայոց միաբա-
նելոց ը՟ վարդանայ` զգուշացաւ անդէն և
ա՟նդ 'ի մարտ մխել . այլ խոստացեալ վասա-

կայ

կայ բազում ինչ՝ մինչև Թագաւոր Հայոց զնա կացուցանել, յորդորեաց՝ զի հնարիւք քակտեսցէ զմիաբանութիւն ազգին ։

Յայնժամ և վասակ ամենայն չարութե̃ ՚ի գործ եդեալ զա̃մ չարարուեստ խաբէութիւնս իւր՝ սկսաւ սուտ երդմամբք հաւանեցուցանել նախ զսիւնիս, թէ յազկերտ խաղաղութիւն խնդրէ, և վարդան զթշնամութիւն յեղծումն ազգին Հայոց. ապա և ՚ի ձեռն սուտ երիցանց և սարկաւագաց աւետարանս շրջեցուցանէր ը̃ ա̃մ ազն Հայոց ՚ի հաստատել զխաղաղասիրութիւն Թագաւորին. և այնչափ ինչ արար, զի բազումք ՚ի հայաստանեայց խորշեցան ՚ի վարդանայ, և ոչ սակաւք յընկերաց նո̃ր ՚ի բաց որոշեցան ՚ի նմանէ. թող զի և աղուանք և վիրք օտարացան, և հոնք չառին յանձն նիզակակից լինել. ո̃պ և յոյնք իսպառ ձեռնթափ եղեն. քանզի ուրացեալն վասակ գտեալ զայլ ա̃մն վասակ անուն մամիկոնեան վերակացու Հայոց՝ որ ՚ի բաժնին յունաց, ՚ի ձեռն նո̃ր անդադար չարախօսէր զվարդանայ և զընկերաց նո̃ր մինչև ՚ի դուռն կայսեր ։

Զայս ա̃մ իբրև ետես միհրներսեհ, ուրախ եղև յոյժ, և շնորհս կալաւ անօրէնին վասակայ իբրև քան զինքն անօրինագունի. և յետ կարգելոյ զբանակն պարսից ը̃դէմ պատրաստութե̃ զօրացն վարդանայ՝ ը̃ լրտեսութե̃ վասակայ, յանձն արար զհոգս պատերազմին ՚ի ձեռս մեծի զօրավարին, որ կոչիւր մուշկան նիւսալաւուրտ, պատուիրելով նմ̃

զհետ

զհետ երթալ խրատուն վասակայ . և ինքն դարձ արարեալ 'ի պարսս առ թագաւորն՝ զա̃մ հնարս վասակայ ուրացելոյն պատմեաց իբրև զիւր գործ , և զնա ը̃վայր եհար և ատելի կացոյց յաչս յազկերտի :

Իսկ քաջն վարդան սպարապետ հայոց յուժամետես զյայտնի չարութիւն վասակայ՝ ուրով անկաւ երկպառակութի 'ի մէջ ազգին , թէպէտև գիտաց այնուհետև զմօտալուտ վտանգ կորստեան հոգւոյ և զձ̃ակործան աղէտս՝ իբրև 'ի պատուհաս մեղացն , որով բարձաւ թգ̃րութի հայոց և քահանայապետութի 'ի տանէ ս̃բ լուսաւորչին առ մեծն սահակաւ , այլ ոչինչ թերեհաւատեցաւ 'ի յուսոյն որ առ ա̃ծ . զօրացաւ ոգ̃ , և եդ 'ի մտի ոգւով չափ ճգնիլ վս̃ հաւատոյ՝ դնելով զանձն 'ի վ̃ր եկեղեցւոյ ս̃բյ :

Վս̃յ իբրև էառ զլուր պատրաստութե մեծի գնդին պարսից՝ որ 'ի փայտակարան , առաքեաց պատգամաւորս առ ուխտապահ նախարարս և առ միաբանեալսն ա̃մ , որք յաղագս տօնի զատկին սփռեալ էին 'ի տունս իւրեանց , յորդորել զնո̃ ոչ 'ի մարմնաւոր պատերազմ , այլ 'ի հոգևորն նահատակութի . Ահաւանիկ ասէ գունդ բազում հասեալ գայ՝ բերելով ա̃ծասիրացն պսակս երկնաւորս . արդ որք ցանկայք առնուլ զպսակն վկայութե , անձապարեցէք և մի հեղգայք , զի մի վրիպեսցի ոք և զղջանայցէ . ապա թէ ոք այլազգ ինչ խորհի , ո̃պ և այլքն՝ որք խոտորեցան զկնի սատանայի , դադարեալ հանգիցէ՝

ցէ՝ ուր և հաճոյ թուեսցի ինքեան . քանզի ոչ ոք պակասի ՟Է ընկերս իւր , թէ ոչ չարչարեալ ի ՟Է նոսա . այլ իւրաքանչիւր ոք անձին իւրում զանձէ զհոգեղէնան կմ՝ զյաւիտենականսն ։

Այսնժամ եկին ժողովեցան փափաքողքն նահատակութեն և վրէժխնդիրք ճշմարտութե՝ նախարարք և ազատք հանդերձ իւրաքանչիւր առանձին գնդաւ յարտաշատ քաղաք , յաւուրս յինանց քանի մի աւուրբք յառաջ ՟Բ զատն համբարձման փրկչին . և էին անուանք գլխաւորաց և զօրավարաց նոցա այսոքիկ . Վարդան մամիկոնեան սպարապետ և առաջնորդ համօրէն բանակին . Ներշապուհ արծրունի երևելին ՚ի նախարարս , և ազգակից նորին վահան արծրունի . խորէն խորխոռունի . արտակ պալունի տրն մոկաց . վահան ամատունի . գիւտ կմ՝ գունոտ վահեւունի . հմայեակ տրն դիմաքսենից . թաթուլ դիմաքսեան տրն վանանդայ . գազրիկ դիմաքսեան տրն աբեղենից . արշաւիր արշարունի տրն կամսարականաց՝ փեսայ վարդանայ . շմաւոն անձաւացի . տաճատ գընթունի . ատոմ գնունի . խորոխ գաբեղեան . կարէն սահառունի . ներսեհ քաջբերունի . փարսման մանդակունի . արսէն ընձայացի . պերուկ սղկունի . ապրսամ արծրունի . շահ ախտուսպետ . վրէն տաշրացի . խուրս և գաբեղին սրուանձտեանք , հանդերձ այլ և ազատորերով և սեպհօք , և նիզակակցօք նոցա ։

Եւ էր թիւ համարոյ համօրէն զօրականացն
քնի՝ Ը հեծել և Ը հետևակ, վաթսուն և
վեց հազար այր. որոց ամենեցուն մի սիրտ
էր և մի կամք՝ կամակար մեռանել վն ան-
ուանն ՏՆ՝ 'ի մեռուցանել զթշնամիս ճշմար-
տութե. զի ոչ այլ ճանապարհ գոյր նց պաշտ-
պան լինելոյ քնական հաւատոյ Ըդդէմ հե-
թանոսաց ։ Նմին իրի եկեալ մտանէին 'ի
հանդէս ճակատու նց և բազմութիւք քահա-
նայից և պաշտօնէից եկեղեցւոյ. յորս երե-
ւելիքն էին սբն յովսէփ կթղկս ամ հայոց,
սբն սահակ եպս ռշտունեաց, և սբն ղևոնդ
երէց վանանդացի. զի ոչ եթէ մարմնաւոր
ինչ կռիւ համարէին զառաջիկայ գործն,
այլ հոգևոր ճակատամարտ 'ի պաշտպա-
նութի սբ հաւատոյ. յորում և ցանկային հե-
ղուլ զարիւնս իւրեանց Ը երանելի նահա-
տակացն 'ի պարծանս անուանն քնի ։

Եւ եղև յորժամ եկն եհաս մուշկան նիւ-
սալաւուրտ սպարապետն պարսից 'ի դաւառն
զարևանդ և 'ի հեր բազմագունդ զօրօք իւ-
րովք՝ հանդերձ վասակաւ և բազմուբ գոր-
ծակցաց նր, և սկսաւ ստապատակ սփռել 'ի
մերձակայ տեղիս, փութանակի ընտրեաց
քաջն վարդան 'ի զօրաց իւրոց սեպուհ մի ա-
ռանձար անուն ամատունի՝ երկու հազար
հետևակօք և երեք հարիւր հեծելովք, և
առաքեաց Ը առաջ ստապատակաւորաց ։ Յո-
րոց վր հասեալ առանձարայ՝ եհար և սա-
տակեաց զբազումս 'ի նցնէ, և զմնացորդս
փախստական էարկ 'ի մեծ բանակն. և ինքն

իւ-

իւրովքն հանդերձ դարձաւ ողջանդամ առ վարդան. և եղև ուրախութիւն մեծ զօրուն հայոց։

Իսկ մուշկանն նիւսալաւուրտ զահի հարեալ ընդ զօրութիւնն հայոց՝ ՚ի խորհուրդ մտանէր ընդ չարին վասակայ. զի վերստին հնարեսցի քակտել սուտ անուամբ հաշտութեան զմիաբանութիւն գնդին հայոց։ Եւ նա ընդ իւրումն անպատկառ կեղծաւորութեան առաքեաց ՚ի բանակն վարդանայ զսուտ երիցունս իւր հանդերձ պարսիկ իշխանաւ՝ խօսել զխաղաղութենէ։ Բայց քանզի յայտնի էր ամենայն իմաստուն մտաց խարդախութիւն չարին, կորակոր յետս դարձան՝ որք առաքեցանն. սակայն արկին և որոմն ՚ի միտս ոմանց ՚ի պարզամտաց. որք թէպէտև ՚ի բանակի անդ վարդանայ կային, այլ սիրտք նոցա միտեալ էին զհետ վասակայ։

Յետ այսորիկ այլ ևս յառաջ խաղացոյց մուշկան նիւսալաւուրտ զբանակ իւր՝ գալ հասանել յարտազ գաւառ հայոց։ Զայն իմացեալ մեծին վարդանայ՝ աճապարեաց և ինքն դիմել ընդ առաջ գնդին պարսից, և էջ բանակաւ իւրով ՚ի մեծ դաշտն արտազու մերձ ՚ի գիւղն աւարայր առ տղմուտ գետով յաւուր ուրբաթու մեծի պենտեկոստէին։ Իբր տեսեալ հայոց ՚ի հեռաստանէ զպարսիկս այն ինչ հասեալ, և յանհոգս դադարեալ ցրիւ այսր և անդր, թէպէտև դիւրաւ կարէին խռովել զնոսա և վնաս մեծ առնել, այլ թոյլ տուեալ դադարեցին և ինքեանք

քեանք զայն օր ․ զի ոչ էր այնուհետև կամք նց՝ հնարիւք որսալ զմարմնաւոր յաղթութի, այլ ապատադէմ շահատակութբ մատնել զանձինս 'ի տենչալի մարտիրոսութի ։ Ապա հանդարտեալ առ եւեղ՝ սկսան առաւել զհոգևոր պատրաստութի հոգալ քան զարտաքինն ․ և նա ինքն պարագլուխն նահատակաց քի քաջն վարդան լցեալ հոգւով՝ խօսել սկսաւ առ նիզակակիցս իւր բանս հոգևորական մխիթարութե, և զօրարթացուցանել զամենեսին 'ի տր ։

'Ի բազում պատերազմունս մտեալ է մեր ասէ, և առաւել յաղթօղ գտեալ յամի՝ ք թէ յաղթեալ ․ այլ այն ամ մարմնոյ պարծանք էին 'ի հրամանէ երկրաւոր թագաւորի ․ ուր որ փախչէրն՝ վատանուն երևէր յնի, և պատուհաս մարմնոյ ընդունէր 'ի թագաւորէն ․ իսկ որ քաջութբ յառաջ մատչէր, քաջ անուն ազգի ժառանգէր, և պարգևս մեծամեծս 'ի մահկանացու թագաւորէ ընդունէր ․ ոմ և մեք իսկ աւասիկ յիւրաքանչիւր մարմինս ունիմք վէր և սպիս բզմս 'ի նշանակ արութե, որ վո առեալ է մեր և պարգևս մեծամեծս ։

Այլ անարգ և անօգուտ համարիմ զայն քաջութիս և զայն պարգևս, զի խափանելի է ամն ․ իսկ արդ՝ եթէ վո մահկանացու հրամանատուի զանձինս 'ի մահ դնելով՝ զայն արութիս կատարէաք, ո՞րչափ ևս առաւել արժան է այժմ զնոյն առնել վո անմահ թագաւորին մերոյ, որ տրն է կենդանեաց

և մեռելոց, և ունի հատուցանել իւրաքանչիւր ըստ գործս իւր։ Ապաքէն թէպէտ և 'ի խոր ծերութիւն հասցուք, հարկ է 'ի ժամուն ելանել 'ի մարմնոյ աստի. այլ գործ է, զի յելս մեր յաստեաց երբ և իցէ՝ մնասցուք անմահ կենդանի, որ ոչ ևս ելանիցեմք 'ի նմանէ։ Որդ. աղաչեմ զձեզ քա՛ջ նիզակակիցք իմ. գիտեմ զի բզմք 'ի ձէնջ լաւագոյն էն քան զիս արութբ, և գահու 'ի վեր ըստ հայրենի պատուոյն. բայց յորժամ ձերով կամօք և յօժարութբ առաջնորդ և զօրավար զիս ձեզ կացուցիք, ընդունելի լիցին բանք իմ 'ի լսելիս ձեր ամենեցուն՝ մեծի և փոքու։ Մի զանգիտեսցուք 'ի բազմութէ հեթանոսաց, և մի յահագին սրոյ առն մահկանացուի ըզթիկունս դարձուսցուք. զի եթէ տացէ տր յաղթութի 'ի ձեռս մեր, սատակեսցուք զզօրութին նց. զի բարձրասցի կողմն ճշմարտութե. ապա եթէ հասեալ իցէ ժամանակ կենաց մերոց որ մահուամբ պատերազմիս, ընկալցուք խնդամիտ սրտիւ. բայց միայն յարութի քաջութես վատութի մի խառնեսցուք։ Դուք իշխանքն իսկ գիտէք, եթէ զիարդ ոմանք 'ի մէնջ յակամայ կամս և խաբանօք յանձն առաք զկամս ամպարշտութե թագաւորին, և վտանգեցաք զանձինս առ 'ի կարօղ լինելոյ ազատել զեղբարս մեր առ հասարակ 'ի վտանգէ անտի կորստեան հոգւոյ և մարմնոյ՝ մարտնչելով ըստ անօրէն իշխանին 'ի վր ածատուր օրինաց. և արդ զի եհաս ժամ օրինօք պատերազմիս զնոյն վճարել,

քաւ լիցի մեզ թուլանալ, և կրել յանձին զանուն ուրացութեան իբրև զայլսն, և այնպէս վն օգտի մարմնաւոր սիրելեաց զհոգիս կորուսանել, և զածն ը մարդոյ փոխանակել ։ Եւ զի Տր ինքնին օգնական է մեզ, յայտնի եղև յերկուս և յերիս կռիւս, յորս զօրացաք մք ․ զզօրսն արքունի հարաք, զմոգսն սատակեցաք, և զպղծութիւն կռապաշտութեան 'ի տեղեաց տեղեաց սրբեցաք ․ և զանօրէն հր-բաման թագաւորին առ ոտն հարեալ ունայնացուցաք, և զբարձրութիւն ամբարտաւանութեան նր 'ի խոր խոնարհեցուցաք ։ Եւ արդ մի ակնկալցի որով և աղեղամբ և նիզակաւ յաղթել անվանելի եկեղեցւոյն քի ։ Հաստատուն կացէք յանշուշտ զօրագլուխն մեր, որ ոչ երբեք մոռասցի զգործ նահատակութեանս ։

Ով քաջք, և այս մեծ պարգևք են մեզ 'ի տնէ՝ մեռանիլ 'ի փառս անուան նր ․ զի թէ զթշնամիս ածային օրինաց սատակելով պարծանս ժառանգեցաք յերկրի, և վարձուց մեծաց ակնունիմք յերկինս, ո՞րչափ ևս առաւել՝ եթէ մեք մեռանիմք 'ի վն մեծի վկայութեան տն մերոյ յսի քի ։ Եւ այս ոչ ամենեցուն է, այլ որոց պատրաստեալ է 'ի բարերար տնէ ․ որում և երկնաւորք արդեօք ցանկային, թէ գոյր հնար նց մեռանելոյ ։ Եւ ահա մեզ պարգևեալ տեսանեմք զայս շնորհ աննախանձ պարգևատուին ․ զի լցցի ասացեալն, եթէ ուր առաւել եղեն մեղքն, անդէն առաւելան շնորհքն այ ։

Համպա ոչ երբեմն առաւելապէս երևեցաք մարդկան ամպարշտեալք, այժմ սովին հան-դիսիւ՝ նահատակութեան կրկին առաւելութեամբ երևեսցուք արդարացեալք՝ մարդկան և հրեշտակաց և հօրն բոլորեցունց. և ուրախ արասցուք զմարդիկ և զհրեշտակս՝ ՚ի վերայ մեր։ Այս արդ եկն եհաս ժամանակ, զի զամենայն պատճառս տրտմութեան և զկեղծ անուն ուրացութեան ՚ի բաց բարձցուք. և որք երբեմն իբրև թախծեալ սգաւորք յոգի և ՚ի մարմին՝ շրջէաք, այսօր երկոքումբք զուարթացեալ յԱծ խնդասցուք. քանզի և զբարերար Տէրն ընդ մեզ տեսանեմք յառաջնորդութեան։

Ոչ մեզ մարդ զօրավար, այլ զօրագլուխն ամենայն մարտիրոսաց Քրիստոս. որ հանդիսադիրն է մրցանացս, և պսակիչ վաստակաւորաց. ահաւադիկ բացեալ է փրկիչն զդուռն արքայութեան, և մնայ ընդունել զամենեսին զմեզ և ուրախ առնել. որոյ ուրախութիւն մշտնջենաւոր է և անանց և անվախճան. փութասցուք ժամանել առ նա առանց յապաղելոյ. մի՛ ոք յետնեալ գտցի ՚ի մեծէ բարեմասնութենէս։ Այլ ես բաժակին՝ որում վաղնջուցն ցանկացեալ էի, պապաքեալ կամ, և փափաքանօք ընդունիմ. և ընդ գրեցելումն գոչեմ, զբաժակ փրկութեան ընկալայց, և զանուն Տեառն կարդացից։

Այսպիսեօք յորդառատ բանիւք և հոգելից զուարթութեամբ խօսեցաւ առաքինի զօրավարն ընդ ամենայն զօրս. և ՚ի ձեռս առեալ զգիրս մակաբայեցւոց՝ ընթեռնոյր ՚ի լսելիս բազմութեան

-մուն զմանկաբեանց արունս ըղձեմ հեթանոսաց ՚ի վ՟ր ա՟ծային օրինաց , և ՚ի նոյն խրախուսէր զամենեսին . և զմի մի քաջալերէր և սրտապնդէր , և զա՟մ պէտս զինուց նոցա լնոյր . և զուարթագին զինքն ցուցանէր ամենեցուն ։ Եւ իբրև ընդ երեկս լինէր , աւազան ուղղեալ քահանայից՝ մկրտեցին զերեխայս , որ գտան ՚ի զօրուն . զ՟ի որում զայնու ժամանակաւ յերկարէր մկրտութի ոմանց յարքունս հասակի . և զա՟մ գիշերն անցուցանէին ՚ի հոգևոր մխիթարութիս ։

Ընդ և երանելին ղևոնդ երէց՝ այր լի հոգւով ս՟բվ , և առատ ՚ի բանս վարդապետութե , հրաման ընկալեալ ՚ի ս՟բյն յովսեփայ կաթուղիկոսէ, և յեպ՟սէն սահակայ՝ ըստ փափաքելոյ զօրաց և զօրագլխաց , խօսեցաւ բազում ինչ ՚ի յորդոր ք՟ստկան բանակին , յուշ առնելով նոցա զկատարումն երջանիկ նահապետաց և մարգարէից և առաքելոց և մարտիրոսաց վկայական հանդիսիւն ՚ի վերայ ճշմարտութե և կարգաց ա՟ծպաշտութե՝ ՚ի վրէժխնդրութի փառացն ա՟յ . և ևս առաւել ղձենումն անպարտական և անմահ գառինն ա՟յ ՚ի փրկութի տիեզերաց . որ իւրով մահուամբն խափանեաց զիշխանութի մահու ։

Եւ արդ ասէ՝ եթէ մահուամբ մահ մեռանի , մի երկիցուք մահակից լինել ք՟ի փրկչին մերոյ . զի թէ ը՟ նմա մեռանիմք , ընդ նմին և կենդանանամք ։ Զայս գիտելով եղբարք՝ մի թուլութե լքանիցիմք , այլ պնդութե սրտի և հաստատուն հաւատովք

կամակար յարձակեսցուք 'ի վերայ թշնամեացն հաւատոյ, որ յարուցեալ գան 'ի վերայ մեր։ Մ՛եր յոյսն մեզ կրկին երևի. եթէ մեռանիմք, կեանս ընդունիմք. և եթէ մեռուցանեմք, նոյն կեանք մեզ առաջի կան։ Միանգամ ճշմարտութեան միացեալ էք ընդ սիրոյն Քրիստոսի, հոգւոյ աչօք տեսանէք զաներևոյթ յստակ լոյսն ճառագայթից իմանալի արեգական. որ լուսաւոր արար և առնէ զսիրտս ձեր, և ուղղեաց 'ի վեր յերկինս. և 'ի բարձրութեան անդր ամպային մեծութեան իւրոյ ձգեաց զսիրելիս իւր 'ի ժառանգութեան անանց և անտրտում ուրախութեան։

Մ՛ի տեարք իմ պատուականք՝ յետ այսչափ 'ի բարձունս վերանալոյ՝ այսրէն յերկիր անկեալ թաւալիցիք. այլ զտեղի առեալ անդրէն 'ի բարձրութեան հաստատեսցուք։ Նա և այն զի՝ եթէ հայեսցուք 'ի ստորին կողմ երկրիս, տեսանեմք զսա լի ամենայն ապականութեամբ և ազգի ազգի թշուառութեամբք անբերելի աղետից հոգւոյ և մարմնոյ. յորս առհասարակ ըմբռնեալ կան ազգ մարդկան, և հանապազ տանջին 'ի միշտս դառնութեան ներքոյ և արտաքոյ. իսկ որ թուին մեզ՝ եթէ յանդորրու վայելեն, յաջողեալք 'ի մեծութեան և փափկացեալք ուրախութեամբ 'ի ապականելի կեանս, մեծամտեալք հպարտութեամբ յանցաւոր փառս Տիս, և օտարացեալք յԱյ՝ փոխանակելով զարարիչն ընդ արարածս, այնպիսիքն են՝ որ գլխովին կուրացեալ են հոգւով, և անմասն 'ի ճշմարիտ կենացն, ողորմելի

մեծի քան զբ̃մ մարդիկ :

Այլ մեր բացայայտեաց աչօք տեսեալ զլոյսն երկնաւոր, մի՛ պատահեսցէ մեզ խաւարն արտաքին : Նորանի՛ տամ դասուցդ ընտրելոց, որք հրաւիրեալդ էք 'ի մասն ժառանգութե սրբ̃ցն 'ի լոյս, լինել ժառանգորդ վերին իմանալի քաղաքին . ուր նստի է̃ աջմէ հօր առաջնորդն փրկութե ձերոյ . այն՝ որ քաջութ̃ նահատակեցաւ ը̃դէմ բանսարկուին, և զնոյն արութի ուսոյց գործակցաց իւրոց . յորոց կարգի և դուք այսօր երևեցայք, օրհնեալք յաջոյն բարձրելոյ, և զինեալք հաւատովք ը̃դէմ աներևոյթ թշնամւոյն, և պատենազէն զրահիւքդ ը̃դէմ արքանեկաց սատանայի :

Գիտէք դուք ամենեքեան, զի յառաջ ժամանակաւ 'ի մտանել ձեր 'ի պատերազմ՝ թէպէտև անպակաս ունէիք է̃ ձեզ զքահանայս 'ի բանակի, այլ 'ի ժամ ճակատուցն յանձն արարեալ զձեզ յաղօթս նց̃՝ յամուր տեղւոջ ուրեք թողուիք զնոսա . իսկ այսօր եպ̃ք և երիցունք և սարկաւագունք, սաղմոսերգօղք և դպրակարդացք՝ իւրաքանչիւր կարգաւ կանոնաւ իւրեանց իբրու զինուորեալք և պատրաստեալք 'ի պատերազմ, կամին է̃ ձեզ յարձակիլ հարկանել զթշնամին ճշմարտութե . և եթէ մեռանել ևս հասցէ յայսմ հանդիսի, ոչինչ են զանգիտելոց . քանզի լաւագոյն համարին զմեռանելն քան զմեռուցանելն : Որ և կրկին աշխատացեալ ունին . հաւատոյ աչօք զկատարումն

րումն նախնի նահատակաց տմի տեսանեն , և մարմնոյ աչօքս զքաջութի ձերոյ նահատակութեդ . մանաւանդ թէ 'ի ձեզ զերկոսեանն իսկ տեսանեն . ոչ և դուք իսկ տեսանէք նովին տեսութբ զքարկոծանս մարգարէիցն , զչարչարանս սրբ առաքելոցն , և զառաքելաշնորհ հայրապետաց , ընդ որս և զմեծի նահատակին գրիգորի լուսաւորչին հոգւոց ձերոց . և միանգամայն զսպանումն տմն տր մարտիրոսաց . որոց մահուամբն հաստատեցաւ տր եկեղեցի . և հեղումն արեան նոցա եղև 'ի պարծանս երկնաւորաց և երկրաւորաց . և նոյն նահատակուի անպակաս կատարեսցի յեկեղեցւոջ՝ մինչև 'ի միւսանգամ գալուստ փրկչին , եթէ՛ տանջանօք և եթէ մահուամբ 'ի սէր կենարարին . Թող զորս նահատակին 'ի ճգնութենս պահոց և գետնատարած անկողնոց , և յայլ ազգի ազգի առաքինութիս ընդ տմյ քաղաքավարութբ . և սոքա ամենեքեան գեղեցիկ վաճառաշահութբ գընեն ընդ անցաւորիս զանանցն և ընդ ապականացուիս զանեղծուի :

Նու ահա 'ի սոյն վիճակ բարերջանիկ հրաւիրեցայք և դուք ընդ դասս երանելի վկայից. զորոց զպատուականութին տաղմոսերգուն գոչէ ասելով . պատուական է առաջի տն մահ սրբց իւրոց : Ահա և ճգնաւոր հայրապետն գրիգորիոս վարդապետն ձեր կոչէ զձեզ յերկնային քաղաքն եղեմ յամենատենչ և յանուշահոտ ընթրիսն քնի , [illegible] ժեալ են ցաւք և տրտմութիք և հ[illegible]

Օ այս ամ և առաւել քան զայն խօսելով սքյն Ղեւոնդեայ յորդաբուղխ իմաստութբ և հոգեշնորհ վարդապետութբ՝ լնոյր ուրախութբ զսիրտս ամենեցուն . և սքն Յովսէփ հայրաբար յանձնանձէր զամենեսին , և քաջալերէր 'ի տր , և յորդորէր յած ապաւինել 'ի բոլոր սրտէ ։ Եւ այսպիսի հոգևոր բանիւք սփոփեալ զամ գիշերն , և ամիւ զօրացեալ զինուորացն քսի՝ վառեցան զինունք հոգւոյն իբրև անվանելի ամրութբ . և այնպէս բոլորեցաւ յոգիս նց հուր սիրոյն քսի և փափաք հանդիսի նահատակութե , մինչև զսովորական ժամս գիշերոյն կարծէին երկայնագոյն քան զայլ գիշերացն , և բաղձային փութով տեսանել զառաւօտ փրկութեն . որպ զի հասեալք 'ի կատարումն՝ արբցեն զբաժակ արքայութեն երկնից ։

Եւ իբրև այն ինչ հաւախօսն մերձենայր , հրաման ետ սքն Յովսէփ հանդերձ ամ քահանայիւք կատարել զպաշտօն կանոնական աղօթից ձայնակցութբ ամ զօրականին . և ապա սեղան կանգնեալ քահանայից՝ մատուցին զսբ խորհուրդ պատարագին , և հաղորդեցուցին զամենեսեան մեղսաքաւիչ և կենարար մարմնոյ և արեանն տն . և այնպէս կազմ և պատրաստ սպառազինեալ հոգւով՝ սկսան ամ բազմութի զօրացն մեծազուարթութբ աղաղակել , և ասել . Հաւասարեսցի մահս մեր մահու արդարոցն , և հեղումն արեանս մերոյ ը արիւն նց մարտիրոսացն . և հաճեսցի ած կամաւոր պատա-

րագաւս, և մի տացէ զեկեղեցի իւր 'ի ձեռս հեթանոսաց ։

Եւ 'ի մերձենալ ժամու ելից արեգական, յորժամ յոքնախուռն գունդն պարսից վառեալ կազմէին 'ի պատերազմ ահագին պատրաստութե̃ հանդերձ բազմութե̃ փղաց, յայնժամ և քաջն վարդան առեալ զօրհնութիւն 'ի տ̃ե քահանայից՝ յարդարէր զճակատ իւրոյ բանակին՝ բաժանեալ 'ի չորս գունդս հաւանութե̃ աւագանւոյն հայոց, տալով զմի մի գունդ յիւրաքանչիւր երևելի նախարարս, և թևակից նմ̃ զայլս 'ի կրտսերագունից ։ Նոյնպէս և յինքն առնոյր զգունդն չորրորդ՝ ընտիր ընտիր նիզակակցօք հանդէպ հզօրագոյն կողման պարսից ։ Իսկ զհամազասպեան զիւր եղբայրն թողոյր վերջապահ զօրուն՝ պատուէր տուեալ նմա մի զօք բռնադատել, այլ յորդորել միայն բանիւք յաղագս իւրեանց փրկութե̃ ։ քանզի խիթայր 'ի թուլամտաց ոմանց համախոհ լինել է̃ վասակայ, որ էր 'ի բանակին պարսից հանդերձ ուխտանենգարամբք ։

Եւ իբրև պատրաստեցան կողմանքն երկոքին, յամբառնալ դրօշակաց և 'ի հնչել փողոց մատչէին մօտ 'ի միմեանս՝ ունելով 'ի միջի զտղմուտ գետն ։ և նախ նետիւք և նիզակօք վտանգէին զմիմեանս, և ահագին շառաչմամբ զերկիր դողացուցանէին ։ և յանկանիլ վիրաւորաց առ ափն գետոյն և 'ի կարմիրանալ ջուրցն յարենէ, թանձրամիտքն յիմարէին և վատասիրտք լքանէին, քաջքն խե-

ղա-

ղախէին , և նաՀատակքն գոչէին ։

Իսկ 'ի զանգիտել պարսից ընդ գետն անցանել , գունդքն Հայոց Համարձակ անցեալ , ձի 'ի վեր առեալ յարձակէին , և սաստկանս բաղխէին ընդ Թշնամիս Հաւատոյ . և 'ի խառնիլ պատերազմին՝ սաստկանայր կոտորածն 'ի սուր սուսերի . և արք անուանիք յերկուց կողմանց մեռանէին , և բազում վիրաւորք յերկիր անկեալ՝ դիաԹաւալ խաղային . ուր անՀաւատք դառն Հեծութեամբ մռնչէին , և Հաւատացեալքն յարեան իւրեանց Թաթաւեալ՝ ուրախութեամբ աւանդէին զոգիս 'ի ձեռս փրկչին ։

Յայնժամ մեծի տագնապի 'ի վեր Հայեցեալ քաջն վարդան՝ տեսանէր զձախակողմն գընդին Հայոց վտանգեալ առաջի ընտիր ընտիր զօրուն պարսից . մեծաւ ուժով 'ի տեղին յարձակէր , և զաջ Թեւն գնդին պարսից բեկեալ չարաչար Հարուածով՝ արկանէր 'ի վերայ փղաց . և զգազանսն ձեղքեալ՝ շրջան առնոյր և կոտորէր մինչև 'ի նոյն տեղի ։ Իսկ 'ի ցրուիլ բազմութեան յառաջոյ նորա՝ ընդ առաջ ել նմա նիզակակիցն վարդանայ արին վաՀան արծրունի , և դարձոյց զնոսա յետս սաստկութեամբ . և այնպէս 'ի մէջ փակեալ զնոսա երկուց քաջաց ԹիկնապաՀօք իւրեանց՝ կոտորեցին զբազումս 'ի նոցանէ , և զայլ ևս գունդս սփռեալս աՀաբեկեցին . և այնպէս շտապ տագնապի 'ի վերայ Հասուցին . մինչ գունդն Հզօր՝ մատեան կոչեցեալ , և անմաՀ կարդացեալ առ պարսիկս՝ քակտեալ բաժանեցան 'ի մեծամուր

պատրաստութե իւրեանց ։

Ընդ վտանգէր և ուրացեալն վասակ իւրովքն հանդերձ. այլ աճապարեալ թաքչէր անօրէնն 'ի մէջ փղաց, և անկեալ յամրափակ բանակն՝ զերծանէր ։ Զայս տեսեալ համախոհից չարին՝ որք գտանէին 'ի ծածուկ 'ի կողմն ճակատուն Վարդանայ, սկսան շփոթիլ և շփոթ արկանել 'ի զօրականս քնի. և ահ արկանելով նիզակակցաց՝ ոպ թէ անհնար իցէ առաջի կալ բազմութե զօրու թըշնամեաց, սկսան 'ի փախուստ դառնալ. որով և հզօրք ոմանք սրտաբեկեալ քակեցան և ընկրկեցան յետս կոյս ճակատուն 'ի հովիտս լերանց ։

Բայց այլքն առհասարակ զպատերազմ նոցա պատերազմելով՝ հարկանէին վանէին զորս առաջի իւրեանց. և աներկիւղ տուեալ զանձինս 'ի մահ՝ քաջութե նահատակէին ։

Իբրև հայեցաւ մուշկանն նիւսալաւուրտ 'ի խառնուրդ մարտին, և 'ի բազմութե կոտորածի իւրոցն յերեսաց Վարդանանց, զոր ոչն կարծէր, գոչէր առ զօրս պարսից ուշ ունել առանձին գնդին Վարդանայ. փութացուցանէր զարտաշիր փղապետ՝ հասուցանել զգազանսն 'ի տեղի անդր. և 'ի ձայն գալարափողոց ստիպեալ զիւր գունդն՝ յառաջամարտիկ զօրօք 'ի ներքս փակէր զՎարդան և զորս ընդ նմա ։ Իսկ կորովին Վարդան իւրովք քաջ նիզակակցօք ոչ սակաւ նախճիրս 'ի տեղւոջն գործէր, և իբրև զբոց հնոցի ծախէր զայլովս 'ի պարսից, ո՛չ յանձին վը-

տանգ

տանգ հայելով, այլ զԹշնամիս քի վարա-
նելով. զի ոչինչ էր այնուհետև առաջի
նորա մահ և կեանք, այլ բոլորովին 'ի սէրն
քի փոխարկեալ՝ մնայր փոխիլ 'ի մահուա-
նէ 'ի կեանս. որպէս և արժանի իսկ եղև
առնուլ 'ի տեղւոջ անդ զկատարեալ նահա-
տակութիւն. զի յամենայն կողմանց պաշա-
րեալ 'ի պարսից, և վիրաւորեալ 'ի բազմու-
թենէ նիզակաց և սուսերաց՝ անկանէր քաջ
նահատակն. և զուարթութբ աւանդէր զսբ
հոգին 'ի ձեռս զօրագլխին իւրոյ քի՝ հան-
դերձ նահատակակից ընտրելովք 'ի տր։
Այս եղև ը անկանիլ սոյն վարդանայ՝ և ա-
րեգն 'ի մուտս խոնարհէր. և զօրք հայոց
մնացեալ առանց զօրավարի՝ դիմեցին սաստ-
կութբ իւրաքանչիւր հանդէպ երեսաց իւ-
րեանց, և վանեալ խորտակեալ զտմ ախոյ-
եանս իւրեանց՝ ելին 'ի պատերազմէ. ո-
րով առաւել յաղթի եղեն պարսիկք, տեսեալ
թէ ոչ իբրև զվատասիրտս 'ի փախուստ դար-
ձան, այլ իբրև՝ զպատերազմ տն վճարեալ՝
համարձակ 'ի բաց մեկնեցան. թող զի տե-
սանէին, զի սակաւք ոմանք անկան 'ի սա-
կաւաթիւ զօրաց հայոց, և բազումք յոյժ 'ի
բազմաթիւ գնդից իւրեանց։ Այլ և առ
զայրոյթ սրտին 'ի վր յարձակէին ոմանց ո-
մանց 'ի հայոց, զորս գտանէին այսր անդր
ցրուեալ արտա[illegible] բանակին, և բերեալ 'ի
տեղի ճակա[illegible] սպանանէին զնս. որպէս և
զայլս բազումս՝ որք զկնի պատերազմին առ-
րացան 'ի բերդս անառիկս հանդերձ քահա-
նայք

նայիւք, նենգանօք 'ի վայր իջուցեալ կատա-
րեցին ։

Բայց արդեամբք յաղթող հանդիսացաւ բա-
նակն հաւատացելոց, և բարձրացաւ բազում
ճշմարտութիւն Ք՟ի հակառակամարտից ։
մինչև 'ի միտ առեալ այնուհետև իշխանաց և
զօրագլխացն պարսից՝ թէ անհնար է նուա-
ճել զքրիստոնեայս 'ի հեթանոսութի, հա-
ւանեցուցին զթագաւորն՝ թողուլ զհայս 'ի
կրօնս քրիստոնէութեան իւրեանց ։ քանզի և
յազկերտ ամբարտաւանն զիջաւ փոքր մի 'ի
բարձրամտութենէ իւրմէ, և որոտաբեկ եղև
յոյժ, յորժամ լուաւ զքաջութ՟ն նահատա-
կին վարդանանց ։ զի ոչ ոք կարծէր՝ այն-
պէս վճարեցաւ ։ վ՟ զի 'ի պարսից և 'ի դա-
սուց ուրացելոց անկան յաւուր միում 'ի մե-
ծի պատերազմի անդ երեքհազար հինգհա-
րիւր քառասուն և չորս արք ։ յորս էին արք
'ի մեծ պատուաւորաց էին և 'ի կարի սիրե-
լեաց արքայի ։ Իսկ 'ի հայոց 'ի պատերազմի
անկան նուազ քան զերեքհարիւր անձինս ։
այլ յետ վճարելոյ մարտին ապա անդ ձեր-
բակալութ՟բ մատնեալ 'ի ձեռս անօրինաց՝
նահատակեցան շատ ևս բազմութիւնք ։ որով
և թիւ ամ՟ նահատակաց վարդանանց եհաս
'ի հազար երեսուն և վեց ։ Եւ այս է թիւ
համարոյ նց՟ ը՟ անուամբք գնդի պարագլուխ
սր՟ զօրավարաց ։

'Ի մարտի անդ կատարեցան սր՟ վկայքն ք՟ի՝
քաջն Վարդան Մամիկոնեան սպարապետ
հարիւր երեսուն և երեք ընտիր ընտիր ա-
րամբք ։

րամբք . կորովին Խորէն Խորխոռունի՝ իննև-
տասան արամբք . արին Արտակ Պալունի յի-
սուն և եօթն արամբք . զարմանալին Տա-
ճատ Գնթունի իննևտասան արամբք . Խմա-
տունին Հմայեակ Դիմաքսեան քսանևերկու
արամբք . Հրաշակերտն Ներսեհ Քաջբերու-
նի եօթն արամբք . մանուկն Վահան Գնու-
նի երեք արամբք . արդարն Արսէն Ընծայ-
եցի եօթն արամբք . յառաջադէմն Գարեգին
Սրուանձտեան՝ երկու հարազատօքն, և ութ-
նևտասան արամբք . Է̃ ոմ՝ երկերիւր իննսուն
և վեց . կին երկու հարիւր ութսունևեօթն
զօրականք՝ ընդ զօրավարօք հանդերձ ։

Իսկ որք յայլևայլ նախարարութե̃ց 'ի նոյն
աւուրս պատերազմի ըմբռնեցան և սպանան
'ի պարսից , կին յամրոցաց իջուցեալ գլխա-
տեցան , եղեն եօթն հարիւր քառասուն ,
կին եօթն հարիւր յիսուն ։ Եւ այսպէս միա-
համուռ գումար նահատակաց ս̃ց վարդա-
նանց լինի հազար երեսուն և վեց հոգի . որք
զանուանս իւրաքանչիւր գրեցին 'ի դպրութե̃
կենաց , և ընկալան 'ի ք̃է զպսակն վկայ-
ական՝ հեղմամբ ս̃բ արեան իւրեանց ։ Որ
և հրաշալի տեսլեամբք հաստատեաց ա̃ծ
յաւուրս նահատակութե̃ ս̃ց ղևոնդեանց
քահանայից՝ զկնի երից ամաց կատարման
վարդանանց , ցուցանելով մոգպետին դար-
ձելոյ 'ի հաւատս զգունդս գունդս ս̃ց վար-
դանանց զօրավարաց և զօրականաց հրեշ-
տակակերպ տեսլեամբ՝ բերելով պսակս առ
ս̃բ ղևոնդեանս ։

Նա՝

Գ.րդ՝ պանծալի նահատակուն սբյն մեծին
Վարդանայ և ընկերաց նր եղև յամի տն․
451․ 'ի մարերի վերջն, կմ 'ի սկիզբն մար֊
գաց ամսոյ․ այն է ը֊ ժամանակին ը֊ այնմիկ
յունիսի․ 2․ յեօթներորդ աւուր ամսին պեն֊
տեկոստէին յաւուր շաբաթու յերեքտասա֊
ներորդ ամի թգրութե յազկերտի երկրոր֊
դի, և 'ի մետասաներորդ ամի կթղկոսութե
սբյն յովսեփայ, 'ի փառս և 'ի պատիւ ան֊
ուան քնի այ մերոյ, և 'ի պարծանս և 'ի նո֊
րոգումն եկեղեցւոյ նր սբյ ։

Զանկալի՛ էր մեզ գիտել ինչ վս նշխարաց
սբցս, մանաւանդ թէ և ունել մասն 'ի պա֊
տուական ոսկերաց սբյն Վարդանայ․ զորոց
ինչ ոչ նշանակեն երանելին եղիշէ և ղազար
փարպեցի ականատես և ժամակից պատմիչք՝
նոյն և վկայաբանք մեր ։ Միայն 'ի յայսմա֊
ւուրս նշանակի՝ թէ յետ իբր ամսոյ միոյ ամ
փոփեցան անկեալքն 'ի պատերազմի, և թէ
մարմինք սբց նահատակաց յայտնի լինէին
'ի լուսափայլ տեսլենէ և 'ի բուրմանէ անու֊
շահոտութե ։ Նաև 'ի մեծ Ճառընտրի մերոյ
'ի լուսանցս՝ ուր կան ազգի ազգի յիշատա֊
կարանք վս հոգևոր յիշատակաց տուելոց
ուխտի սբ լուսաւորչին, որ և են վաւերա֊
կան ը֊ հաստատուն աւանդութե նոյն վա֊
նաց, գրել կայ այս բան․ * Գրիգոր միայ֊
,, նակեաց՝ որ շրջէր յՏի լեռն մաշկով, նա
,, ա սերն՝ զոր ունէր, յիշատակեաց ( փո
,, ետ յիշատակ ) 'ի գամբարանս սբ լուսա֊
,, ւորչիս նշխարս երկուս, զսկաւառակն սբ

 վար֊

րացօղ զա՟ծութ՟ի հոգւոյն և զկատարեալ անձնաւորութ՟ի ն՟ր, որպէս արիոս ուրացաւ զա՟ծութ՟ի և զմշտնջենաւորութ՟ի որդւոյն. ընդ նմին 'ի վեր երևեցան և այլ ևս անխծակուռ շառաւիղք եւնոմեանց, ապողինարիտաց, փոտինեանց, և այլոց հերեսիովտաց:

Արդ մակեդոնս այս հերեսիովտապետ՝ միանգամ և երկիցս նստաւ յաթոռ պատրիարգութե յունաց 'ի կոստանդինուպօլիս թագաւորեալ քաղաքի՝ յամի տ՟ն 342. և 351. փոխանակ երանելւոյն պօղոսի խոստովանողի՝ զոր երկիցս ընկէց կոստանդ կայսր յաթոռոյ վ՟ն ուղղափառութե ն՟ր 'ի սադրելոյ արիոսեան եպսաց, և ընտրեաց 'ի տեղի ն՟ր զմակեդոն. զի էր համախոհ արիոսի: Այլ սակայն ատելի գտաւ մակեդոն ոչ միայն ուղղափառաց դասուն, այլև արիանոսաց վ՟ն հարստահարելոյ և կեղեքելոյ զն՟ս զազում իրօք: Եւ զի ձեռնամուխ ևս ե[illegible]ռանց գիտութէ կայսեր և ընդդէմ կամաց ժողովրդեան փոխադրել զմարմին մեծին կոստանդիանոսի յեկեղեցի ակակիոսի վկային՝ քաղաքում այնմիկ, մինչև լինել և արիւնհեղութե առ դուրս տաճարին, անկաւ այսուհետ և յաչաց կոստանդեայ. վ՟ն որոյ ընկեցաւ իսպառ յաթոռոյ յամի տ՟ն 361. և նստաւ 'ի տեղի ն՟ր եւդոքսիոս արիոսական՝ ձեռնտուութե ակակիոսեանց՝ որք էին նշանաւորք 'ի մէջ արիանոսաց:

Ընդ որ զչարեալ մակեդոնի՝ յետս եկաց 'ի խմբէն արիոսեանց, և յարեցաւ 'ի [illegible] եանս՝

եանս՝ քարոզելով այնուհետեւ զմեղմագոյն կարծեցեալ վարդապետութիւն նոցա՝ առ որսալոյ զշնորհս նոցա · զի որ յառաջն ընդ ակակիոսեանց արխանոսաց ասէր զորդի սոսկ նման հօր, սկսաւ այնուհետեւ ասել ընդ կիսարիոսեանց նմանագոյակից հօր · եւ 'ի նոյն վարդապետութիւն ձգեաց եւ զայլս, զի մի յանձն առնուցուն ասել երբեք ընդ ուղղափառս համագոյակից ընդ հօր, ըստ նոյնագոյ եւ բնութենակից : Նաեւ իբրեւ օր քան զօր բազմանային համախոհք մակեդոնի, յաւել անօրէնն միւս եւս նոր մոլորութիւն՝ առ 'ի լինել գլուխ առանձինն աղանդոյ, եւ ստանալ իւր ժողովուրդ առանձին · քանզի բացեալ զպիղծ բերան իւր ընդդէմ ամենասուրբ հոգւոյն՝ սկսաւ հայհոյել, թէ չիք հոգւոյն սրբոյ հաղորդութիւն ընդ աստուածութեան հօր կամ որդւոյ, այլ օտար է յէութենէ եւ 'ի բնութենէ նոցա, եւ լոկ պաշտօնեայ նոցին : Նաեւ թէպէտ ոչ ընդերկարեալ հոգեմարտ հայհոյչին զաւուրս իւր՝ սատակեցաւ չարաչար ցաւովք, այլ անհնարին աղանդ նորա մնաց 'ի համախոհս նորա, որք կոչեցան մակեդոնեանք · յորոց ոմանք ուղիղ դաւանէին զորդւոյ, եւ ոմանք է զի այսպէս՝ եւ է զի այնպէս · այլ միաբան ընդդէմ զլինելին աստուածութեան հոգւոյն սրբոյ · վասն որոյ եւ հոգեմարտ անուանեցան :

Մինչ եւս շառաւիղ դառնութեան յարիոսեան արմատոյ երեւեցաւ ընդ այն աւուրս աղանդն եւնոմեանց · եւ առաջնորդ նոցա սարկաւագ ոմն գէորգեայ եպիսկոպոսի յաղանդոյ արխանոսաց

և մեղետափանոսաց՝ այետիոս կմ Եւտիոս ա-
նուն. (Աետիոս թարգմանի անամօթ. ոմք և
Եւտիոս՝ ամօթ.) այլ վս խորոց հայհոյութեց
կոչեցաւ և աթեօս, այն է անած. սա՝ որ
մինչև յարքունս հասակի անմասն էր 'ի գի-
տութե գրոց, յետոյ ուրեմն գնացեալ յա-
ղեքսանդրիա՝ մտեցաւ 'ի սոփեստականն ուս-
մունս. և յանդգնեցաւ զհաւատոյ վարդա-
պետութիւն ըստ մտի յեղյեղել՝ ճարտարութե
մարդկային բանից, և նուԹական ծրագրու-
թբ ձևոց. մինչև սերմանել պատ 'ի պատ
և մանուածոյ սասցուածովք զարիոսի և
զմակեդոնի մոլորութիւն միանգամայն. և մի-
օրինակ մերժեալ զասել համագոյակից և
նմանագոյակից՝ հնարեցաւ խելք ասել զորդ-
ւոյ և զհոգւոյ այլագոյակից, կմ օտար բնութ։
Արդ գլխաւոր աշակերտ այետիոսի եղև
Եւնոմիոս անուն՝ չարագոյն քան զվրդ իւր.
զի յայտնապէս խիզախեաց ուսուցանել ըստ ա-
րիոսի՝ զորդի արարած ասել, իբրև զերա-
գոյն և առաջին 'ի ստեղծուածս՝ օտար 'ի
բնութե հօր. նոյնպէս և զհոգին հայհոյե-
լով ըստ մակեդոնի՝ արարած գոլ ասէր, և
այն ոչ 'ի հօրէ յառաջագայեալ, այլ յորդ-
ւոյ նախ քան զայլ արարածս. նմին իւր և
զմկրտութի ուղղափառաց՝ որ յանուն ամենա-
սբ երրորդութեան՝ ծեքել կամեցաւ. ան-
կնունքս զնա կոչէր, և զխոստովանեալսն զկնի
մոլորութե իւրոյ կրկին տայր մկրտել նորա-
ձև մկրտութբ 'ի մահն քսի եւեթ. Որպա-
նեակք չարութե սորա եւնոմեանք անուանե-
ցան.

ցան. նոյնք և անոմեանք ասէին, թէ աննմանք՝ վն չընդունելոյ և զնմանագոյակիցն կիսա-րիոսեանց. այլք լաւ ևս կոչեցին զնս անո-մոսս, թէ անօրէնս՝ հանգոյն անձն առաջ-նորդի իւրեանց ։

Ր.յապխեացն անզգամութեն չկարացեալ հանդուրժել և կայսրն կոստանդ՝ ետ աք-սորել զգլուխս նց, զայետիոս 'ի փռիւգիա, և զեւնոմիոս 'ի պամփիլիա. այլ աշակերտք նց կացին մնացին ։ Սոյն և զայլ հերձուածս ազգի ազգի 'ի մէջ կիսարիոսեանց յաւուրց անտի ժողովոյն արիմինու. որպ և զփոտի-նեանս և զլուկիփերեանս և զապողինա-րիտս. յորոց այլ և այլ որոմունք մոլորութե սերմանեցան 'ի բարի ագարակի եկեղեցւոյն քի. և ծաւալեցան ընդ բազում տեղիս առ կայսերութբ կոստանդեայ և յաջորդաց նր մինչև 'ի սատակումն վաղեսի արիոսամոլ կայսեր. որ յայտնագոյնս հալածեաց զուղ-ղափառս, և արտասահմանս արար զբազումս 'ի նց եպսաց. ընդ որս և զմեծն ներսէս հայ-րապետ հայոց ։

Իւ եղև իբրև թագաւորեաց ածասէր և բարեպաշտ կայսրն թէոդոս մեծ՝ գահակից գրատիանոսի ուղղափառ ինքնակալի, յամի տն. 379. անյապաղ փոյթ կալեալ հաստա-տութե ուղղափառ հաւատոյ և խաղաղութե եկեղեցւոյ, հրաման եհան տիրապէս՝ զի ամ քրիստոնեայք, որ կան ընդ թագաւորու-թբ նր, միաբանեսցին 'ի նիկիական դաւա-նութին և 'ի մի ճշմարիտ հաւատ կաթողիկէ

եկեղեցւոյ, որ 'ի Հայր և յՈրդի և յամենասուրբ Հոգին. և որ աքսորեցանն 'ի վաղեսէ չարափառէ, յետոյ դարձցին 'ի տեղիս իւրեանց. զի որս դարձոյց և զսուրբն Ներսէս, և պահեաց առ իւր 'ի կոստանդնուպօլիս. զի առաջիկայ լինիցի ժողովոյն մեծի, զոր խորհէր առնել ընդդէմ մոլորութեան հոգեմարտից և այլոց աղանդաւորաց ժամանակին, միանգամայն և վասն հաստատելոյ զԱստուածաբանն Գրիգոր զախոյեանն հաւատոյ յաթոռ պատրիարգութեան կոստանդնուպօլսոյ. ուստի ընկեցեալ էին զնա անգղուխք ոմանք, և կարգեալ փոխանակ նորա մաքսիմոս զոմն անարժան. և էր ոչ սակաւ խռովութիւն 'ի թագաւորական քաղաքին:

Ապա յամի տեառն. 381. յամսեանն մայիսի՝ ըստ հրամանի քրիստոսասէր ինքնակալին Թէոդոսի, և հաւանութեամբ սրբոյն դամասոսի հռովմայ հայրապետի՝ եկին գումարեցան 'ի կոստանդինուպօլիս հարիւր և յիսուն եպիսկոպոսունք. յորս կային բազում հարք նշանաւորք սրբութեամբ և իմաստութեամբ. որպէս սուրբն գրիգոր նազիանզացին՝ այն է Աստուածաբանն՝ ջահ եկեղեցւոյ. սուրբն գրիգոր նիւսացի՝ եղբայր մեծին բարսղի կեսարացւոյ. սուրբն մելիտոս հայրապետ անտիոքայ. սուրբն կիւրեղ հայրապետ երուսաղէմի. սուրբն Ներսէս պարթև հայրապետ հայոց. սուրբն ամփիլոքիոս եպիսկոպոս իկոնիոյ՝ գածակից բարսղի և գրիգորի. եղաշխիոս եպիսկոպոս կեսարու կապադովկացւոց՝ յաջորդ [illegible] ղի. տիմոթէոս հայրապետ [illegible]

Թալասիոս կմ̃ գելասիոս կեսարեայ պաղեստինու . և այլ առաջնորդք երևելիք :

Ընդ նախ զառաջինն իբրև բանք եղեն վ̃ր աթոռոյն կոստանդնուպօլսոյ՝ նոր հռոմ կոչեցելոյ, և իբր երկրորդ զկնի հնոյն հռոմայ, միաբան հաւանութ̃ ՚ի բաց հանեին զմաքսիմոս աղանդաւոր, և դարձեալ նստուցին զա̃ծաբանն գրիգոր իբրև հովիւ արժանաւոր : Այլ մինչդեռ երկարէր գործ ժողովոյն, վախճանեցաւ ս̃րն մելիտոս անտիոքայ հայրապետն . յորոյ վ̃ր ասաց ճառ ներբողական գրիգոր նիւսացի յատենի հարց . (զորոյ զբանս շփոթեն ոմանք ընդ բանից գրիգորի ա̃ծաբանի) : Իսկ զի ս̃րն մելիտոս էր առաւել ձեռնտու ա̃ծաբանին, ՚ի մեռանիլ նր̃ գրգռեցան անդրէն յաչաղկոտք ՚ի բաց հանել յաթոռոյ պատրիարգութեան զա̃ծաբանն գրիգոր : Իսկ նր̃ տեսեալ՝ թէ սաստկանայ խռովութին, ել յատեան սր̃ ժողովոյն, և հրաշալի ատենախօսութ̃ ինքնակամ աղաչանօք խնդրեաց հրաժեշտ ՚ի պատուոյ աթոռոյն կոստանդնուպօլսոյ : Յայնժամ ակամայ կամօք զիջեալ ս̃բց հարցն՝ ՚ի բանս նր̃՝ ընտրեցին յայն աթոռ զնեքտարիոս տարսոնացի այր երևելի ՚ի դրան արքունի և ընտիր վարուք :

Ապա այնուհետև անզբաղ մտօք պարապեալ ս̃բց հարանց ՚ի քննութի բանիցն հաւատոյ՝ յառաջ կոչեցին զերեսուն եպ̃սունս ՚ի դասուց մակեդոնեանց, և պահանջէին ՚ի նոցանէ ընդունել զէ̃ կաթողիկէ եկեղեցւոյ

զնի-

,, աւուր, և ելեալ յերկինս. և գալոց միւս-
,, անգամ դատել զկենդանիս և զմեռեալս ||,
եդ այսպէս. * մարմնացեալ 'ի Հոգւոյն սբ̃յ
,, և 'ի մարիամայ կուսէն և ներմարդացեալ.
,, և խաչեալ վ՛ն մեր առ պոնտացւ պիղա-
,, տոսիւ, և չարչարեալ և թաղեալ, և յա-
,, րուցեալ յերրորդ աւուր ը̃ գրոց. և ել-
,, եալ յերկինս, և նստեալ ը̃ աջմէ հօրն.
,, և միւսանգամ գալոց փառօք դատել զկ-
,, կենդանիս և զմեռեալս. որոյ թագաւո-
,, րութե̃ ոչ եղիցի վախճան ||։

Իսկ 'ի վկայութ̃ ածութե̃ ամենասբ̃ Հոգւոյն, ուր 'ի նիկիական հանգանակի պարզապէս ասիւր և եթ. * Եւ 'ի Հոգին սբ̃ ||. արար ժողովն կոստանդնուպօլսոյ յաւելուած զայս.
* Եւ 'ի Հոգին սբ̃ տէրն, կենդանարարն, 'ի
,, Հօրէ ելօղն, ը̃ Հօր և ը̃ որդւոյ երկրպա-
,, գակից և փառաւորակից, որ խօսեցաւ
,, մարգարէիւք ||. նոյնպէս յաւել և զմնա-
ցեալ բանքս. * 'Ի մի սբ̃ կաթողիկէ և ա-
,, ռաքելական եկեղեցի։ Խոստովանիմք մի
,, մկրտութի 'ի թողութի մեղաց. ակն ու-
,, նիմք յարութե̃ մեռելոց, և կենացն հան-
,, դերձեալ յաւիտենից. ամէն ||։

Յետ այսորիկ սահմանեցան 'ի ժողովն անդ և այսպէս կանոնք վ՛ն բարեկարգութե̃ և բարեզարդութե̃. որովք հաստատեցաւ խաղաղութի եկեղեցւոյ ։ Բանզի և ինքն իսկ ինքնակալն թէոդոս հրաման ետ սաստիկ, զի թէ ոք յեպսաց իշխեսցէ ստարանալ 'ի վարդապետութէ սբ̃ ժողովոցն նիկիոյ և կոս-

տան-

տանդնուպօլսոյ, անկցի յաթոռոյ իւրմէ, և արտաքսեսցի յեկեղեցւոյն. և մի՛ թողցի այնպիսումն երթալ յարիլ 'ի մին յեկեղեցեաց ուղղափառաց, և ոչ 'ի քաղաք նոյն մտանել. և որք ընդդէմ դարձան, արքունի իշխանութի՛ւն սանձեսցի զնոսա. և այնպէս անդորրացոյց զտիեզերս :

Արձակեաց և զմեծն ներսէս պատուով մեծաւ 'ի հայս յաթոռ իւր. որ և ըստ օրինակի սրբոյն առիստակեայ դարձ արարեալ փառօք 'ի վիճակ իւր օրհնակաւ սահմանի և կանոնաց ժողովոյն, յաւել ըստ պիտոյից հօտի իւրոյ՝ յետ սրբոյ հօրն մերոյ գրիգորի լուսաւորչի՝ բացատրութիւս ինչ 'ի նիկիական հանգանակին լուսաւորչեան, զոր անվրէպ պահէր եկեղեցի հայաստանեայց : Այլ նախ ոչ կարեւոր համարեցաւ դնել վասն ուղղոյ աւանդինն * յառաջ քան զամենայն յաւիտեանս ||, որովհետև 'ի լուսաւորչէ կանխաւ եդեալ կայր վասն ամենասուրբ երրորդութեան միանգամայն, * Նաև մեք փառաւորեսցուք՝ որ յառաջ քան զյաւիտեանս երկիր պագանելով սրբոյ երրորդութեանն և մի աստուածութեան || ևն : Յորոյ 'ի դնիլն և ոչ հարկ կայր յաւելուլ վասն հոգւոյն * երկրպագակից և փառաւորակից || . այլ եդ կամ եգիտ արդէն եդեալ 'ի լուսաւորչէ զայսուիկ կարեւոր եզերս. * Հաւատամք և 'ի սուրբ
„ հոգին յանեղ և 'ի կատարեալ. որ խօսե-
„ ցաւ յօրէնս և 'ի մարգարէս և յաւետա-
„ րանս || ևն. Այնպէս և զեղեցիկ յաւելաւ 'ի հանգանակն լուսաւորչեան վասն մար-

դեղուն բանին ըդ̃էմ ա̃մ Հերետիկոսաց ․
* մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարե-
,, լապէս 'ի Մարիամայ ս̃յ կուսէն Հոգւով
,, ս̃վ․ որով էառ մարմին, Հոգի և միտք,
,, և զա̃մ որ ինչ է 'ի մարդ, ճշմարտապէս
,, և ոչ կարծեօք, (կմ̃, և ոչ կարծիս ունե-
,, լով)"։ Որովք յայտ է, թէ մի և նոյն Հան-
գանակն է Նիկիական, զոր ժողովն Կոս-
տանդնուպօլսոյ այս ինչ բացատրութ̃բք, և
ս̃ լուսաւորիչն և Նախնիքն յաջորդքն̃ այն
ինչ բացայայտութ̃բք պարզաբանեցին ։ Նաև
դարձեալ յայտ է, թէ Հանգանակն մեր կմ̃
լուսաւորչեանն է առաւել Նիկիական՝ քան
կոստանդնուպօլսեան․ իսկ յոյնք և լատինք
վարեն զկոստանդնուպօլսին 'ի պաշտամունս
եկեղեցւոյ․ և ա̃ն է մի և նոյն ուղղափառ
դաւանութե̃ կաթողիկէ և առաքելական ս̃
եկեղեցւոյ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Յիշատակ ս̃յ ժողովոյս, կմ̃ որ նոյն է՝ ս̃ց հայ-
րապետաց ժողովոյն կոստանդնուպօլսոյ միօրինակ զատ-
նի յա̃մ տօնացոյցս մեր հինս և նորս․ յորս ոմանք առա-
ջի դնեն և զպատմութիւն սակաւատող կամ բազմատող
բանիւք ։ Իսկ 'ի Հ․ փ 'ի յայսմաւուրս չէք ուրոյն օր՝ յի-
շատակի․ այլ միայն առաջի դնի պատմութի̃ ժողովոյն
'ի վարս մեծին Թէոդոսի․ 'ի յունվ․ 18։ Այլ 'ի Ճառընտ․
Բ․ երկիցս տեսանի համառօտ յիշատակութի̃ այսր ժո-
ղովոյ․ մի՝ 'ի վարս Թէոդոսի կայսեր 'ի կայսերական
դրոց, և 'ի սոկրատայ և յայլոց յոյն պատմաբանից․ յե-
րես․ չլճ․ և միւս ևս յերես․ ջղէ․ առեալ 'ի բանից խո-
րենացւոյն՝ քաղելով ինչ ինչ և 'ի գրիգորէ ածաբանէ ։

Թող

Թուղթ զոր յիշէն Հարևանցի և այլ պատմիչք Հայոց 'ի կարգի գործոց սբյն Ներսեսի ։

Արդ մեր կամեցեալ տալ որոշ ինչ տեղեկութի վն երեքելի հայրապետաց սբ ժողովոյս, և առաւել վն գլխաւոր պատճառաց և գործոց նր, կարևոր համարեցաք առաջի դնել փոքր 'ի շատէ զպատմութի ժողովոյս՝ քաղեալ 'ի սինհոդոսական մատենից · յոր հայցին և աւանդեալքն յայլ ամ մատենագրաց ։

Յոյնք և լատինք չունին զյիշատակ այսր ժողովոյ 'ի պաշտամունս իւրեանց ։ Վն լատինացւոց չեն ինչ զարմանք · զի առ նոսա չէք սովորութի առնելոյ զառանձին յիշատակ ժողովոց 'ի կարգս տօնից ։ Որ թողից զայն, զի հռովմայեցիք 'ի սկզբան անդ ընկալան միայն զսահման ժողովոյն, թէ զբան դաւանութե նր · իսկ զկանոնադրութիս բարեկարգութե ոչ կամեցան ընդունել · մանաւանդ զմին 'ի կանոնաց յայտնապէս մերժեցին, զայն՝ որ վն ունելոյ եպսին կոստանդնուպօլսի զերկրորդ պատուոյ 'ի մէջ պատրիարգաց իբրև երկրորդ աթոռ յետ գահին հռովմայ՝ անուամբ նոր հռովմայ · և եթէ յետ ժամանակաց զիջան այնմ, ոչ այնչափ բանիւ կանոնին եղև այն, որչափ սովորութբ ։

Բայց յոյնք՝ որք տօնեն զայլ քանի մի ժողովս, որ յառաջ և որ զկնի, երևի թէ 'ի վաղ ժամանակաց զայս սբ ժողով իբրև ըն մի համար դասելով ըն ժողովոյն նիկիոյ՝ ըն որում էր 'ի հաստատութի նր, ոչ կարգեցին տօն առանձին · քզի 'ի Յ · թ 'ի բասիլեան հին յայսմաւուրս յունաց գտանին միայն յիշատակք այս ժողովոց · նիկիոյ ա ընդդէմ արիոսի · նիկիոյ է ընդդէմ պատկերամարտից · քաղկեդոնի ընդդէմ եւտիքեանց · և կոստանդնուպօլսի մասնաւոր ժողով ինչ կէ եպսաց, զոր ոմանք նոյնացուցանեն ըն հինգերորդ ժողովոյ ։ Միայն 'ի ժամագիրս յունաց 'ի յուլիսի 16 · յիշի ընդ այլ ժողովս և ժողովն կոստանդնուպօլսի ։

Ծանի՛ր և զայն, զի խորենացին ըն հարս ժողովոյս թուէ և զբարսեղ կեսարու հայրապետ · բայց ըն այլոց վախճանեցաւ նա փոքր մի յառաջ, և ոչ եհաս 'ի ժողովն · այլ եկն յաջորդ նր եղագիոս՝ հանդերձ եղբարբ բարսղի, այն է գրիգոր նիւսացի · զոր և խորենացին յիշէ ։ Իսկ 'ի ճառընտիրն նախանշակեալ յերես · ՃՂԳ · յաւելեալ է 'ի գրչաց և աթանաս և գրիգոր սքանչելագործ, յոհան, պրոկղ, երանոս, եպիփան, եփրեմ · որ են հարք այլ և այլ դարուց առաջնոց և յետնոց ։ Պատճառ սխա֊

լմնացս է այն, զի ը հնագոյն կարգաւորութե ճաշո
ցոյ 'ի ամին աւուր՝ որ 'ի շաբաթու աւուր, որ նախ ք
զբուն բարեկենդանն, դնի յիշատակ ոչ միայն հայրա-
պետաց կոստանդնուպօլսոյ սբ ժողովոյն, այլև համօ-
րէն սբ հայրապետաց կմ եպսաց, թուելով յանուանէ
զոմանս յերևելեաց. որպս զի կարգ ընթերցուածոց ա-
ւուրս ծառայեսցէ յաւուր յիշատակի որ և է հայրապե-
տի. նոյնպէս դնի յայլ օր ընթերցուած մարտիրոսաց
վս տմ մարտիրոսի. ևն ։

Իսկ վասն գտանելոյ սբյն ներսեսի մեծի յայս ժողով. վկայեն տմ պատմաբանք և մատենագրութիք ազգիս. թէև այլք չյիշեն. զորմէ տես և 'ի ծանօթութիս պատմութե հայոց ։ Այլ որ ասի 'ի հ. ք 'ի յայսմաւուրս, թէ թէոդոս զսբն ներսէս * ածեալ պատուով կացոյց գլուխ ժողովոյն որ ժողովեալ էին 'ի քաղաքն յաստմպօլ|| է յաւելուած ագիտի ուրուք՝ անհեթեթ բացատրութբ, փոխանակ ասելոյ՝ թէ սբն ներսէս էր մի 'ի գլխաւո-րաց. ապա թէ ոչ՝ ոչ ոք կարէր լինել գլուխ ժողովոյն վս երից պատուոյ. այլ ը աստիճանի աթոռոց նստէին. վսյ որչափ և վերագոյն նստուցեալ իցեն զսբն ներսէս, ոչ էր մարթ նստիլ նախ քան զպատրիարգունս. մանաւանդ թէ և ոչ յառաջ քան զհայրապետն կեսարու և զնմանիս նց. զի և ոչ սբն ներսէս առնոյր յանձն՝ եթէ առ խոնարհութեան, և եթէ 'ի սակս յարգելոյ զկարգ ժողովոյն ։



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թէոդորոսի զինուորին՝ տիրոնին կամ տիրոնն կոչեցելոյ: (1)

Ծ. և ԺԳ. փետր. 17: Լ. նոյեմբ. 9. Գր. նիւս. 'ի Ճառն Թէոդորոսի: Յառաջն. Բ. ոժղ. և Ե. ՃԺԹ: Մետափր. առ սուրիոսի. հատ. Ղ. երես. 226: (2)

ԲԱԶԱՅԱՂԹ ՎԿԱՅՑ քնի, ծաղկապարգև անուն առդիւնական՝ սրբն Թէոդորոս զինուոր՝ քեռի սրբյն Թէոդորոսի ստրատելատի տրակլացւոյ, եր 'ի ժամանակս դիոկղետիանոսի և մաքսիմիանոսի, հայրենեօք 'ի կողմանցն ամասիայ քաղաքին պոնտոսի, 'ի քիմիաղոն գաւառէ 'ի սաքուէ կամ ստուրբէ գեղջէ՝ մօտ 'ի վերին քաղաք երկրորդ հայոց, հաւատով քրիստոնեայ՝ և բարեպաշտ ծնողաց զաւակ: Նա մինչդեռ եր մանուկ տանդիւաց, մեռաւ մայր նր. վյ և հայրն սնոյց զնա խարշեալ հատոր ցորենոյ և հատաճրով:

Նա ընդ աճել հասակին՝ զարգացաւ Թէոդորոս գովելի վարուք առաքինութե, վարելով զմանկունս ընդ զգաստ և պարկեշտ յամս. և ընդ անդաստին սովորութեն զնոյն ցորենա-

ԻԲ հատո

Հատս ունէր իւր կերակուր ախորժական, և այնու շատացեալ՝ ոչինչ աւելի կամէր ճաշակել ։ Իսկ յարբունս հասեալ՝ եղև երիտասարդ առոյգ և բարեկազմ, խորագոյն մորուօք, կարճ և գանգուր հերովք . թխամորթ երկաթագոյն մարմնով, և ահաւոր տեսլեամբ . միջակ և բարեվայելուչ հասակաւ,
և կատարեալ արութ͞ե ։

Զոր տեսեալ զօրավարին և զօրաց կայսեր՝ որ կային ՚ի պահպանութ͞ի կողմանցն այնոցիկ, և նստէին յամասխա, ձգեցին զնա ՚ի գունդն իւրեանց՝ որ կոչիւր մարմարացւոց կամ մառմառիտոն պոնտոսական . և կարգեալ ՚ի թիւ համարոյ նորեկ և նորակերտ զօրականին՝ անուանեցին տիւռոնն (այն է ըստ յունաց դի՛ռօն, և ըստ հռովմայեցւոց դի՛ռօ, ա͞յ համբակ կամ նորամուտ ՚ի կարգ զինուորութ͞ե) ։ Իսկ զփորձ առեալ արիական ոգւոյն՝ կամէին հաստատել զնա ՚ի զօրականութ͞ե, և հանել ՚ի պաշտօն աւագութ͞ե արքունի բանակին . այլ նա չառնոյր յանձն՝ ասելով . ես երկնաւոր թագաւորին զինուորեալ եմ՝ ո՛չ մարդոյ յ͞ի ք͞ի որդւոյն ա͞յ ։ Իսկ լուեալ զայս բանս ՚ի բերանոյ ն͞ր զօրքն, քանզի հեթանոսք էին, արհամարհանօք ՚ի բաց թողին զնա՝ կալ ը͞ս կամս իւր ուր և կամիցի . ակն ունելով՝ թէ նա իւրովին զղջացեալ խնդրեսցէ յարիլ ՚ի ն͞ս . և կէսք գիտելով զանկարծելի պնդութ͞ի ն͞ր՝ ՚ի հակառակութ͞ի և ՚ի թշնամութ͞ի բերէին ը͞ն նմա, և երկնէին չարիս ը͞նդդէմ անձին ն͞ր . բայց որ

անձամբ ընթացաւ ընդ առաջ նորա, և բուռն հարեալ աղաչէր յառնել 'ի տեղւոջէ անտի, և պատսպարիլ 'ի տուն իւր :

Մինչդեռ նա զայն խօսէր, եղև մեծապէս խօշիւն դալուտեան վիշապին. մինչև ձիչ բառնալ եւսեբեայ և փախչիլ. իսկ վիշապն քաջալանջ և մեծապարանոց յարձակեցաւ 'ի վր երիվարին ահագին և քստմնելի շչմամբ : Յայնժամ քաջ զօրականն քսի Թէոդորոս կնքեալ զինքն նշանաւ ամենայաղթ սբյ խաչին՝ եհար նիզակաւ զգլուխ վիշապին. և շեշտակի ձեղքեալ՝ առ ժամայն սատակեաց զնա. որ և տապալեալ յեղեգնուտն հուպ 'ի ջուրն՝ իբրև զգերան մեծ՝ ահագին տեսողացն երևէր : Եւ յայնմ օրէ եղև ծանօթութի և սէր բարեպաշտին եւսեբեայ առ երանելին Թէոդորոս ոպ առ յիւրմէ ծնեալ որդի : (3)

Իսկ սբն Թէոդորոս երթեալ առ զինուորակիցս իւր և հաւատակից հեծեալս՝ պատմէր նց զյաջողուածն, զոր արար տր 'ի ձեռն նր. և այնու առաւել զօրացուցանէր զնս 'ի հաւատատունի քրիստոնէութե, համարձակագոյնս ուսուցանելով վս զօրութե անուանն քսի փրկչին մերոյ, և խրատելով զնս յայտնի ունել իբրև զինքն զքսական հաւատս, և պահել զպատուիրանս նց. և զոր ասէր բանիւք, առաւելապէս գործովք յանդիման կացուցանէր 'ի ձեռն ածահաճոյ վարուց և ջերմ պաշտամանն :

Յայնու ժամանակաւ ել հրաման դառնու-

Թէ 'ի մաքսիմիանոսէ արքայէ գաղերիոսէ(4), որ թագաւորեաց յամի տն. 304. և 'ի գործակցաց նր առ ամ դատաւորս՝ որք ընդ իշխանութեամբ հռովմայեցւոց, զի ամ քրիստոնեայ՝ որ ճաշակէ զզոհէն, կեցցէ. և որ ոչ կամիցի զոհել, և ոչ 'ի զոհից ճաշակել, չար դատաստանօք դատեսցի: Յայնժամ ըմբռնեցաւ ընդ բազումս յերկրէն արևելից և երանելին Թէոդորոս տիրոնն. զի յորժամ կայր նա 'ի ձմերոցն ամասիոյ ընդ այլ զինուորակիցս, բրինկաս անուն ոմն իշխան ունէր զվերակացութիւն կայսերական գնդին՝ պրեպոսիտոս պատուով, որ 'ի մեզ զառաջաւոր անուանի և սենեկապետ արքունի. սա տեղեկացեալ՝ եթէ կան 'ի մէջ տիւռոնից կամ նորընտիր զինուորաց և քրիստոնեայք, հրամայեաց գրել ըզնոսա 'ի կարգ արքունի գնդին, զի հաւասարեսցին ընդ այլս 'ի զոհս:

Իսկ մեծին Թէոդորոսի քանզի պատմեցաւ, թէ յայտնի պաշտէ զքրիստոնէութիւն, և ոչ կամի կցորդ լինել կարգի հեթանոս զօրականին, հրամանն ետ ածել առաջի իւր յատեան. և սկսաւ հրապուրել և ստիպել զնա, զի զոհեսցէ դից: Նա որպէս հաւատարիմ ծառայ Այ բարձրելոյ կայր անդրդուելի 'ի մէջ բազմութեան զօրականին. և լի հոգւով համարձակ բարբառէր. ես քրիստոնեայ եմ, և զոհել գարշելեաց և ուրուական պատկերաց ոչ հաւանիմ. Նմին իրի ահա 'ի բաց հանի յանձնէ և զզարդ զինուորութեան, զի մի՛ եղէց հաղորդ անհաւատից: Ասէ բրինկաս.

ուստի

ուստի՞ այդ չափ յանդգնեցար Թէոդորէ, մինչ
չև անարգել զօրէնս ինքնակալաց, և ոչ ստորա-
նկիլ դողութե̃ թագաւորական հրամա-
նին. և արդ անսամ ինձ. և առ զգէն զինուո-
րութե̃ քո, ոպ̃ և զինուորեալդ իսկ ես կայ-
սեր, և անցեալ 'ի գիր համարոյ. հապա միա-
բանեալ ը̃ համօրէն գնդին՝ եկ 'ի մեհեանն
հանդերձ ըն̃մ պատուով, և զոհեա՛ ա̃ծոցն
մերոց. և լինիս սիրելի թագաւորին:

Յայնժամ աներկիւղ համարձակութե̃ և հաս-
տատուն դիմօք պնդի եա երանելին և ասէ.
չգիտեմ զի՞նչ ա̃ծքն իցեն ձեր. ք̃զի և չեն
իսկ ճշմարտութե̃. զայս գիտեմ, զի ա̃մ կուռք
հեթանոսաց դևք են. զորս դուք պատրա-
նօք չարին ա̃ծական անուամբ պատուէք.
այլ ա̃ծն իմ ճշմարիտ ք̃ս է, տ̃րն իմ և Թա-
գաւորն իմ. և ես զօրական եմ իմում Թա-
գաւորին երկնաւորի, և այլում զօրական
ոչ կարեմ լինել:

Բարկացաւ Բրինկաս և ասէ. և սորա ամե-
նեքեան՝ որ կան աստ, ո՞չ ապաքէն քրիստո-
նեայք են և զինուորեալ ինքնակալի: Պա-
տասխանի ետ սր̃բն. ուրաքանչիւրոք գիտէ՝
ո՞րպէս և կամ ո՛ւմ կամիցի զինուորիլ. ես
զիմս գիտեմ, ում զինուորեալ եմ՝ Թագա-
ւորին անմահի. և այլում զինուորիլ ոչ կա-
միմ, բայց միայն ա̃յ մերոյ ճշմարտի, և միա-
ծնին որդւոյ ն̃ր տ̃ն յ̃ի ք̃ի: Նա 'ի վ̃ր այսր
ճշմարիտ խոստովանութե̃ պատրաստ եմ 'ի
տանջանս և 'ի մահ սրոյ և հրոյ. և ոչ դա-
դարեցայց երբեք 'ի վկայելոյ ճշմարտութե̃.

և խաղ առնելով ցուցանէին՝ թէ կամէր և ինքեանց ընդունել զքեզ, եթէ իմացէին ինչ ստուգութիւն վ՟ն ն՟ր ։ Նմին իրի ասէ բրինկաս զառաջաւոր․ մեք կարեմք արդեօք ճանաչել զա՟ծն քո ք՟ն կոչեցել ։ Պ՟ննի եւ ս՟քն Թէոդորոս․ մարդասէրն ա՟ծ եւ մեզ զիմաստուն, զի ծանիցուք զնա․ իցէ՞ թէ և դուք խնդրէիք 'ի նմանէ, և տայր ձեզ իմաստութիւն ճանաչել զնա․ զի օգուտ մեծ լինէր ձեզ ։ Իսկ պոսիդոնիոս և բրինկաս ասեն․ թէև ճանաչէաք զնա և կամէաք հաւատալ 'ի նա, չեմք բաւական թողուլ զթագաւորն մեր, և դառնալ առ նա ։

Ասէ ցնա երանելին․ ոչինչ կարէ ոք խափանել զձեզ 'ի թողուլ զխաւար, և դիմել առ լոյսն․ և զառժամանակեան համարձակութիւդ՝ որ առ մահկանացու թագաւորն ձեր՝ 'ի բաց ընկենուլ, և դառնալ յա՟ծ կենդանի, և անսպառ համարձակութ՟բ ճանաչել ձեզ զթագաւորն անմահ, և զինուորիլ նմա յաւիտեան, ո՟պ և ես ։ Իբրև ետես բրինկաս, թէ չէ՛ մարթ բանիւ՛ յաղթահարել զվկայն, ասէ ցիւրսն․ աղէ սակաւ ինչ աւուրս թողութե՟ տացուք մոլելոյդ այդմիկ․ զի անձամբ զանձն խրատեսցէ, և ինքնին եկեսցէ յօգտակարութիւն իւր․ և զայլս եւս 'ի նոյն կրթեսցէ․ այլ ես կասկածիմ, գուցէ ոք զմեզ նախատիցէ վասն այսր բանի ։ Զայս ասացեալ՝ արձակեաց զնա 'ի բաց․ և խորհէր նախ ձեռն արկանել յայլ քրիստոնեայս, որք էին 'ի զօրուն և 'ի քաղաքի

անդ. ամասիոյ :

Իսկ երանելւոյն Թէոդորոս իբրև եառ զնե֊րումն, ոչ միայն անձին ինչ հոգայր, զի փութայր էր 'ի մի՝ մատնել զանձն իւր 'ի մահ վասն սի֊րոյ նր(ա), այլ մն այլոց առաւելապէս հոգ 'ի մտի դնէր, զի մի՛ ոք վտանգեսցի . վասնորոյ ա֊ռեալ այնուհետև զհասակակիցս իւր՝ որ 'ի զինուորական կարգէ, և զայլս 'ի հաւա֊տացելոց, սաստիկ յորդորմամբ խրատէր և զօրացուցանէր հաստատութեամբ կալ յամբ : Այլ քանզի բազումք մերձենային առ սուրբն Թէո֊դորոս, և կարդային զնա մեծ, յայնժամ մոլեալ անօրինաց՝ կալան զամ ունկնդիրս բանից նր(ա), և առեալ տանէին 'ի բանտ . և սուրբն զհետ գայր խմբի նց(ա), և մեծաձայն ա֊ղաղակեալ զկնի՝ խրախուսէր 'ի մի, ուսու֊ցանելով նց(ա) զճանապարհս փրկութե(ան) և համ֊բերութե(ան), զի մի՛ ուրասցին զԹագաւորն քս : Այլ յայսր ամի մի ոչ արկին 'ի նա ձեռն ըս տուաջին հրամանի իշխանին, մինչև ինքնին ընտրեսցէ զոր կամի . Թող զի և ակնածէին 'ի զօրութե(ան) առն :

Իսկ բարեպաշտ նահատակն և զինուորն քսի տեսեալ, եթէ այլք 'ի նահատակաց արգելան 'ի բանտ, և ինքն յազատութե(ան) կայ, յարիագոյն ևս ճակատամարտ վառեալ պատ֊րաստեցաւ ըս օրինակիս ըս այսմիկ : Առաս֊պելեալ մօրն անծոց ուխտ, որ և կիւբեղէ ասի՝ կին կռանոսի, տաճար մի էր հոյակապ 'ի քաղաքի անդ. ամասիացւոց, շինեալ առ ափն ուխ կմ իրիս գետոյն, որ անցանէր ըս

մէջ

մէջ քաղաքին, և իջանէր 'ի ծովն պոնտոսի ·
արդ դիտելով քաջին Թէոդորոսի 'ի ժամս
անդ պարապոյ զպահ դիպողագոյն, յարեաւ
'ի գիշերին՝ յորում հողմ ուժգնակի շնչէր ·
և հուր արկեալ վառեաց զմեհեանն ողջոյն :
Եւ զայս ոչ գաղտագողի ինչ արարեալ թաքչէր, այլ կայր մնայր 'ի տեսիլ հրոյն բորբոքելոյ, յայտ արարեալ՝ եթէ գործովք պատասխանի առնէ հարցափորձի հեթանոսաց, և ակնկալութ՟ե նց՟՝ որում սպասեալ մնային : Եւ ոչ է՟ երկար ինչ ծածկէր գործն · զի 'ի մէջ քաղաքին յայտնապէս ցուցաւ բոցն · վ՟յ մինչ չև լուսացեալ աւուրն՝ ընթացան անդր բազմութ՟ կռապաշտից, և աճապարեալ կալան զԹէոդորոս · քանզի գիտացին՝ թէ նո՟ր է գործն · որ՟պս և ինքն իսկ պատմեաց նց՟ անպատրուակ և զուարթ դիմօք · և յաւել պարծել իբրև է՟ գործ ուղղութ՟ե, և մեծապէս ծիծաղել է՟ վարանս անմ՟տիցն վ՟ս մեհենի չ՟ածուհւոյն իւրեանց :
Եհաս 'ի վ՟ր և կուռնիդէս շահապ քաղաքին հանդերձ սպասաւորօք · և զահի հարեալ յանձին վ՟ս իրացն եղելոց՝ առէ զայրագին · ա՛յ չարամահ չարագութ և անողորմ, զքաղաքս ձաղ արարեր, զտաճարն հայրենի այրեցեր, և զա՟ծս մեր թշնամանեցեր : Եւ ոչ իշխեալ անձամբ առնել ինչ Թէոդորոսի՝ զոր ճանաչէր լինել 'ի զինուորաց դասէ, ո՛չ կամեցաւ տանել և առ զօրագլուխս՝ զի մի՛ արդեօք ապրեցուսցեն · այլ փութանակի առեալ ած առ գլխաւոր դատաւորն պօքղիոս սորա-

տա

տանեացի, և սկսաւ ամբաստան լինել այսպէս. Այրս այս նորեկ՝ ի կարգ զինուորութեն մեծ ոճիրս գործեաց ՚ի քաղաքիս. զտաճար մեր ածոյն հրձիգ արար, և թշնամանեաց զածս մեր. արդ իմ ըմբռնեալ զդա ածի առ քո մեծ իշխանութիւնդ, զի ամ ոք գիտասցէ՝ թէ չար մահու արժանի է դա:

Յայնժամ դատաւորն ետ կոչել զքրիստոնեայ զառաջաւոր արքունի գնդին, և ասէ ցնա առանձինն զանգատանօք. դո՞ւ ետուր դմա ժամանակ թողութե և իշխանութի, զի համարձակ հրկէզ արասցէ զտաճար ածոյն մերոց: Իսկ քրիստոնեայն ասէ. ես բազում անգամ աղաչանօք և սպառնալեօք խրատեցի զնա, զի հաւանեսցի գալ ՚ի դենս մեր ըս հրամանի թագաւորին. և մինչ թոյլ ետու նմա առ ժամանակ մի, զի զմտաւ ածել զօգուտ անձինն՝ զոհեսցէ. արդ եթէ արհամարհեաց նա զհրամանս մեր, և քամահեաց զածս, և ընտրեաց զիւրն միայն, ես զի՞նչ առնեմ. դու այսուհետև զհրամայեալն քեզ արա ըս իշխանութե քում:

Ապա նստեալ դատաւորն յաթոռ՝ հրամայեաց ածել զԹէոդորոս առաջի իւր. և ասէ ցնա լի ցասմամբ. զի՞ գործեցեր զայդ. փոխանակ երկրպագանելոյ ածոց մերոց, և խունկս անուշունս մատուցանելոյ, հրկէ՞զ արարեր զտաճար նց: Պատասխանի ետ քաջ նահատակն, և ասէ. զոր արարի, ոչ ուրանամ. փայտ մատուցի յածան ձեր, և իբրև զհուր եղև փայտն ՚ի մեհենի անդ դիցդ,

դիցդ , և վառեցաւ զնմանէ ․ ես զփայտան լուցի , և քարեղէն ա̄ծքն ինքնին այրեցան , զի կէր լիցին ․ և զիա՞րդ ձեր ա̄ծուհին այդչափ անպիտան գտաւ , զի դիւրաւ մերձեցաւ 'ի նա հուրն ․ յա՛յտ է թէ ճարակ են հրոյ գեհեննին նմ̄ ա̄ծք ձեր ․ այլ զգո՛յշ լինիջիք , զի և դուք ը̄ նոսին կորնչելոց էք հոգւով և մարմնով յանշէջ կիզմանն յաւիտեան ։

Արտմնեալ դատաւորին՝ հրամայեաց արկանել զս̄բն 'ի տախտապար , և գանել յոյժ ․ և մինչդեռ հարկանէին զնա , ասէ ցնա դատաւորն ․ ապաքէն հեզ բանիւք իմովք և այլոց՝ համարձակութիւն առեր դու , և այդչափ յանդգնեցար ․ այլ այսուհետև չար դատաստանօք դատեցայց զքեզ , և տաց քեզ թագաւորական հրամանաց ծառայել ։ Մեղդորոս ասէ ․ ո՛չ այդպիսի բանիւք սպառնալեաց հաւանեցուցանես դու զիս , և ոչ տանջանօք կարող ես զիս մեկնել 'ի սիրոյն ք̄սի ․ և թէ այլ ևս ահագին դատաստանս ածես 'ի վ̄ր , չերկնչիմ ինչ ․ զի յոյս ապաստանի իմոյ առ ա̄ծ եղեալ է , որ տայ ինձ համբերութի̄ , և փրկէ զիս 'ի քոյին խաբէութենէդ ․ և պսակէ անանց փառօք 'ի յերկինս ։ Դատաւորն ասէ ․ զոհեա՛ , և երթ փրկեա՛ զանձն քո 'ի տանջանացդ ․ զի խնայեմ յառոյգ հասակդ , և ա̄ծքն ներեն քեզ զվնասն ։ Ասէ վկայն ․ ո՛չ են տանջանքս այս յաւիտեան ․ և ես ո՛չ զանգիտեմ յառժամանակեայ տանջանաց ․ քանզի տէրն իմ և թագաւորն յս̄ ք̄ս̄

առաջի աչաց իմոց է. և փրկէ զիս 'ի տանջանաց քոց՝ զոր մատուցանես. այլ դու զնա ոչ տեսանես. զի կոյր ես հոգւոյ ակամբ, նմին իրի և ոչ զանձինդ քո չար նշմարես:

Զայս իբրև լուաւ դատաւորն, մռնչեաց իբրև զառիւծ, և ոչ ևս կամեցեալ տեսանել զնա առաջի իւր՝ հրամայեաց վաղվաղակի տանել և արկանել զնա 'ի բանտ խաւարային, և կնքել զդուրս, և թողուլ անմերձ 'ի մարդկանէ. զի 'ի սովու և 'ի ծարաւու մեռցի, և գերեզման նմա բանտն լիցի: Արդ իբրև արգելլին զերանելլին յայն դժնդակ բանտ, նա կայր մխիթարեալ սրտիւ, և կերակրիւր 'ի սուրբ հոգւոյն. այս է ըստ պատմելոյ ոմանց՝ հրեշտակ Տեառն կերակրէր զնա 'ի բանտին: Իսկ 'ի գիշերին յայնմիկ երևեցաւ նմա Տէրն մեր Յիսուս Քրիստոս, և ասէ ցնա. Թէոդորէ քաջալերեա՛ց, զի ես ընդ քեզ եմ, և մի՛ առնուր կերակուր 'ի մարդկանէ. զի քեզ պատրաստեալ է հաց հրեշտակաց յանապական և յերկնաւոր կեանս. և զայս ասացեալ փրկիչն վերացաւ 'ի նմանէ: Յայնժամ ընկաւ սուրբն Թէոդորոս գոհանալ զՏեառնէ, և օրհնել զնա ուրախութեամբ 'ի ձայն սաղմոսաց. և ահա եկին բազմութիւնք զօրաց երկնաւորաց, և ձայնակից եղեն կցորդելին սաղմոսաերգութեան սրբոյն:

Լուեալ բանտապետին զբարբառս բազմութեան, յարուցեալ ընթացաւ 'ի դուրս բանտին՝ տեսանել թէ զի՞նչ իցէ այն. և եգիտ զդուրսն փակեալ և կնքեալ՝ որպէս և էր յա-

ռաջադոյն. հայեցաւ ը̃ պատուհանն, և ե-
տես՝ զի բազումք էին ը̃ Թէոդորոսի սպի-
տակազգեստք, և սաղմոսէին ը̃ նմա. և ե-
րևէր սեննեակ բանտին լի պայծառ լապտե-
րօք իբրև լուսափայլ ջահաւորութ̃ : Զահի
հարաւ ը̃ հրաշափառ տեսիլն և ը̃ իրացն
պատահմանն. և յերկիւղէն դնաց և պատ-
մեաց պոբղիոսի դատաւորին :

Յայնժամ յարուցեալ դայր դատաւորն ինք-
նին 'ի դուրս բանտին. և դրօքն փակելովք
և կնքելովք լսէր զձայն սաղմոսին 'ի բերա-
նոյ բազմութե̃ : Ասէ. ո՞չ ապաքէն քրիստո-
նեայք են, որք գաղտ մտեալ են 'ի գիշերի
առ Թէոդորոս : Հրաման ետ զօրականաց
վառիլ զինուք, և կազմ կալ շուրջ պատե̃լ
զբանտի̃ն. և ապա ետ բանալ զդուրս բան-
տին, զի կալցին զորս 'ի ներքս : Եւ ահա
ոչ զոք գտին, բայց միայն զծառայն ա̃յ ըդ-
Թէոդորոս պնդեալ 'ի կոճեղս. և անկաւ
ահ մեծ 'ի վերայ դատաւորին և որոց ընդ
նմայն էին :

Ապա իբրև գթասիրել 'ի նա կամեցեալ
դատաւորին՝ հրամայեաց տալ նմա զութե-
րորդ մասն նկանակի միոյ, և զութերորդ
բաժին ջրոյ դորակի միոյ : Իսկ երանելի
նահատակն՝ ը̃ս պատուիրելոյ նմա փրկչին,
և ը̃ս գրեցելումն՝ թէ արդարն 'ի հաւատոց
կեցցէ, ոչ կամեցաւ առնուլ ինչ կերակուր
'ի նոցանէ. այլ ասէ, զիս կերակրէ տ̃րն իմ
և թագաւորն, բարերարն և ողորմածն :

Յետ այսորիկ հրաման ետ դատաւորն ա-

ծել

ծել անողորմն զմիտս զառաջնեաւ, և ասէ ցնո. Թէ՛որդորէ հաւանեալ ինձ, և զոհեալ անձոցն տուանց չարչարանաց. երդուեալ իմ յանձն անձս, զի գրովք ՚ի Թագաւորաց հաստատեմ զքեզ նոր ծիս, և քահանայապետ անձոցն, և ամենակից իշխանութե իմոյ. և յինէն ես ընկալցիս պարգևս մեծամեծս։ Իսկ երանելին համբարձեալ զաչս իւր յերկինս՝ կնքեաց զինքն նշանաւ սբյ խաչին. և ապա ասէ համարձակ ցթագաւորն. Մարմնոյ իմոյ ունիս իշխանութի, այլ ոչ ՚ի վե̄ր մտաց և կամաց հոգւոյս. և արդ եթէ ՚ի հուր արկանես, եթէ գազանաց մատնես, և եթէ այլ բազմազան տանջանօք պատուհասես զպատրաստ մարմինս իմ, ցորչափ իցէ շունչ յըռունգս իմ, ոչ ուրանամ զանուն տն մերոյ յսի քսի։

Այլ մի բանիւն՝ զի խոստանայինն նմա պատիւ քահանայապետութե կոչ, ներկայացոյն ծիծաղեցաւ երանելին, և ասէ. Ես զքահանայս դրօշելոց կռոցն եղկելիս համարիմ քան զմեծ մարդիկ, և ոչ պաշտօնեայս սատանայ ողջամ զնս. որչափ ես առաւել զքահանայապետութե թշուառականս դատիմ, և տաղտկամ իբրև ՚ի դարշելեաց. զի առ վատթարագոյնսն այն է առաւել հրդագոյն, որ մեծ ես իցէ և նախապատիւ. ոչ և առ անիրաւսն անիրաւագոյնն, և առ արիւնարբու գազանս մարդասպանն գլխաւխանձ եղեւոր իւրոյ. իսկ արդ՝ զիա՞րդ դու քեզ կարատանին հրապուրանօք ինձ խոստանիցես զմեծն

զմեծն 'ի չարեաց . և այն՝ յօժարելոյս ած-
պաշտութե̃ և ք̃ի ա̃յ առաքինութե̃ քաղաքա-
վարիլ , Թէպէտև անշուք կենօք 'ի յետին
ցածութե̃ . զի լաւ է ինձ ընկեցիկ լինել 'ի
տան ա̃ծ առաւել քան բնականալ 'ի յարկս
մեղաւորաց ։ Նա մ̃նկ իսկ ես զԹագաւորսդ
ձեր առաղեմ իբրև ողորմելիս . զի ոչ շատա-
ցեալ Թագաւորական իշխանութե̃՝ յաւելուն
յանձինս ձգել և զքրմապետութե̃ կարծե-
ցեալ պատիւ՝ քահանայապետ զինքեանս
կարգալով . և որ յարքունի ծիրանիս փայ-
լէին , այնուհետև և 'ի պղծալից բագինսն
մերձեալք՝ փոխանակ Թագաւորաց խոհա-
րարք և յաշտարարք լինին , զհաւան զոհե-
լով , և զմատթարագայն անասնոց զփորոտիս
շօշափելով , և արիւնաշաղախ ձեռօք իբրև
զմսավաճառս 'ի սպանդանոցս նստելով , և
ճարպով զոհիցն զանձինս զանգանելով ։
Զայս ա̃մ լուեալ հեթանոսաց՝ կրճտէին
զատամունս 'ի վ̃ր ս̃րյն , զի չարաչար մահու
կորուսցեն զնա իբրև հայհոյիչ դից և Թա-
գաւորաց ։ 'Ի խորհուրդ կոչէր դատաւորն
զբրինկաս զառաջաւոր , և ասէր ցնա . զի՞նչ
արասցուք զայս այր ։ Յայնժամ ե̃ խորհր-
դոյ ն̃ր հրամայեաց կախել զս̃րբն գլխիվայր .
և հարկանել զնա փշալից գաւազանօք . և
այնչափ հարին զերանելին , մինչև քանցե-
ցան ա̃մ մարմինք նորա ։ Նա ոչ այսու շա-
տացեալ անօրինացն՝ ակնարկեցին դահճաց
մատնել զնա և 'ի քերանս . և այնչափ քե-
րեցին երկաթի քերչօք , մինչև մերկացան

կողքն ,

կողքն, և անկանէր հատուած 'ի մարմնոյն յերկիր, և լեարդն թոքովն հանդերձ երևէր արտաքս: Իսկ քաջ նահատակն քնի֟ զուարթագին կայր 'ի տանջանս անհնարինս զօրութեամբ տն֟, ոպ֟ թէ այլոյ ուրուք մարմնին իցէ՝ որ տանջի. և ոչինչ տայր պատասխանի, այլ յաղօթս կայր, և ասէր. օրհնեցից զքեզ տր֟ յամ֟ ժամ, հանապազ օրհնութիւն քո 'ի բերանի իմում. և ստէպ զյս֟ կարդայր զփրկիչ իւր:

Իսկ դատաւորն իբրև լսէր զայս, զարմացեալ կայր ընդ սքանչելի համբերութիւն առաքինւոյն. և զչարեալ ընդ անպարտելի հաստատութիւն ոգւոյ նր֟՝ ասէր առ զայրոյթ սրտին. չամաչես դու տառապեալ քան զամ֟ մարդիկ, զի 'ի մարդ մեռեալ ունիս զյոյս քո, և մանաւանդ 'ի բռնամահիկ յն֟ անուն. այնպէս անբան ես, մինչ սնոտի յուսով այդպիսի տանջանաց զքեզ մատնեցեր: Յայնժամ ետ պատասխանի սբն֟ թէոդորոս, և ասէ. այս գեղեցիկ ամօթ ինձ եղիցի, և ամ֟ մարդոյ՝ որ երկնչի յայ֟, և կարդայ զանուն տն֟ յնի֟ քնի֟, որ տրն֟ է փառաց: Իսկ ամբոխն հեթանոսաց՝ որ կայր 'ի հեռաստանէ, աղաղակէր վաղվաղակի կորուսանել զնա:

Դարձեալ զուն գործէր դատաւորն լուծանել զպնդութիւն սրտի նր֟, և դարձուցանել զնա 'ի կամս իւր. վյ֟ խրատեաց զկիւրղիկոն դահիճն (կմ֟ զկիւրիկոն, որ է քարոզ և մունետիկ 'ի մէջ դահճաց), զի հնարեսցի ահարկութեամբ և քաղցրութեամբ կակղել զսիրտ

Թէոդորոսի · տամ տաց նմա, զոհեմ, և
երթ թափեմ 'ի տանջանացդ յայդցանէ ։
Իսկ քաջայաղթ վկայն Քրիստոսի զայրացեալ յո-
գի իւր վասն կուրութեան հեթանոսաց, և վասն
այնչափ ստիպելոյ նորա զնա 'ի յետին մոլորու-
թիւն, սկսաւ առաւել ևս կշտամբել զբռնա-
ւորն, և ասէ․ ո՛վ ամպարիշտ և ապիրատ,
լի ամենայն անիրաւութեամբ և թշուառութեամբ, որդի
սատանայի, ժառանգ դժոխոց, և գրաւա-
կան գեհենին, մինչև յե՞րբ ոչ երկնչիս յԱստուծոյ
շնորհողէն քեզ զայդպիսի իշխանութիւնդ, և
ոչ պատկառես 'ի հզօրէն․ և ոչ իմանաս,
թէ թագաւորք ամենայն ունին զթագաւորութիւնս,
և դատաւորք զիրաւունս․ և դու զիս բռնադա-
տես թողուլ զԱստուած կենդանի, և երկիրպա-
գանել քարեղինաց անշունչ պատկերաց ։
Ամօթի հարաւ պոռնկիս 'ի յանդիմանու-
թենէ սրբոյն․ և ոչ ևս կամեցեալ յերկարել
բանս ընդ նմա՝ ասէ․ ընտրեա զոր կամիս, զի
վաղվաղակի կատարեսցուք 'ի վերայ քո․ զի՞նչ
կամիս այսուհետև, ընդ մե՞զ լինել, եթէ
ընդ Քրիստոսին քում (5) ։ Պատասխանի ետ վկայն ուրա-
խութեամբ․ ես ընդ Քրիստոսին իմում էի և եմ և ե-
ղէց յաւիտեան․ և արդ դու զոր գիտես՝ ա-
րա՛ վաղվաղակի ։ Յայնժամ բռնաւորն ետ
վճիռ հրամանի վասն նորա օրինակ զայս․
Ս. Թէոդորոս ոչ հաւանեալ բարեյաղթ թա-
գաւորաց և աստուածոցն, այլ հաւանեալ Յիսուսի Քրիստոսի
'ի պահել զաւանդ նորա, որ խաչեցաւ առ-
պոնտացւով պիղատոսիւ 'ի հրէից, զսա հրա-
մայեմ հրկէզ առնել․ որում և արժանի

իսկ է վասն հրկէզ առնելոյ զտաճար մօրն ա̃ծոց ։

Այս ընդ ելանել վճռոյն՝ փութացեալ սպասաւորաց ատենին և ամբոխին վաղվաղակի պատրաստել զհուրն, թերին և կուտեցին 'ի միում վայրի 'ի փայտից՝ որ 'ի պէտս բաղանեաց ․ յայնժամ ետ դատաւորն պնդել զվկայն 'ի վ̃ր փայտի, և տանել 'ի փայտակոյտ անդր ։ Իբրև ածին զերանելին 'ի տեղին՝ ուր հրամայեցաւ, և հուրն պատրաստեալ բորբոքեցաւ, ծնադրեաց նա զդէմս և զանձն բովանդակ նշանաւ ս̃բ խաչին, և յաղօթս կացեալ նուիրէր զինքն ողջակէզ բանաւոր 'ի գոհ ընդունելի արարչին իւրոյ, և ասէր ․ Տուր ինձ զօրութի̃ ա̃ծ փրկիչ իմ, և շնորհեա՛ կատարել զընթացս իմ քրիստոնէութե̃, և առնուլ զնշան յաղթութե̃ քո ․ պարգևեա՛ մ̃ր և որք ընդ իս ըմբռնեցան 'ի դեռընտիր կարգէ զինուորութե̃ և յայլոց հաւատացելոց, զի և նք̃ ճշմարիտ խոստովանութե̃ և հաւատով անուան քո կատարեալ՝ յաղթեսցեն հակառակամարտին, և ընկալցին 'ի քէն զանթառամ պսակն ։

Զայս ասացեալ՝ համբարձ զաչս իւր 'ի բարձրութիւն ․ և ետես անդ զկղէոնիկոս կամ զկաղինիկոս (6) զինուորակից իւր և մտերիմ սիրելի, ը̃ որում միաբանաբար մտեալ էր 'ի տիրոնական կարգ նորակիրթ զինուորութե̃ ․ աղաղակեաց առ նա, և ասէ ․ Կղէոնիկէ քեզ ասեմ, փութա՛ հասանել ինձ ․ քանզի որ յայպանելի Ցիս ոչ թագուցանե զմե

զմիմեանս , այնպէս և 'ի կեանսն յաւիտենից
մի՛ թողցուք զմիմեանս :

Յետ այսց բանից դարձեալ աղօթէր երա-
նելին , և ասէր . Տ՛ր յ՛ս ք՛ս` որ միջնորդդ ես
ա՛յ և մարդկան . որ արժանի արարեր զիս
զտառապեալս յաղթել բռնաւորին , և կա-
տարել զհանդէսս զայս խոստովանութ՛ ան-
ուան ամենասուրբ երրորդութե՛դ . գոհանամ
զքէն , և առաւել գոհանամ առ ժամս և
յանսպառ յաւիտեանսն : Խնկա՛լ տ՛ր զհո-
գիս իմ խաղաղութ՛ , զի փառաւորեցի յիս
ոք անունդ հօր և որդւոյ և հոգւոյդ սր՛բ՝
յիս 'ի տառապեալս , որ գտի 'ի քէն զանըս-
պառ ողորմութի՛ քո , առաւելեալ 'ի շնոր-
հաց քոց պարգևս :

Զայս իբրև ասաց , առեալ արկին զնա 'ի
մէջ հրոյն բորբոքելոյ . և կայր երանելին 'ի
հնոցի անդ զուարթատեսիլ իբրև զվարդ
կարմիր և անուշահոտ . և զօրացեալ 'ի հոգ-
ւոյն սր՛բ՝ ետ միւսանգամ փառս ա՛յ , ասե-
լով . փա՛ռք քեզ հա՛յր ս՛բ , փա՛ռք քեզ որ-
դի՛դ միածին , փա՛ռք քեզ հոգի՛դ ճշմար-
տութե՛ . ոք երրորդութի՛դ միում ա՛ծութե՛դ՝
այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից :
Իսկ ասացեալ զամէնն՝ զօրէն փչման արձա-
կեաց զոգին , և աւանդեաց 'ի ձեռս ա՛յ : Իսկ
որք մերձն կային 'ի հաւատացելոց , տեսին
զհոգի երանելւոյն , զի իբրև զփայլակն վե-
րացաւ յերկինս : (7)

Իսկ եղև իբրև 'ի բաց փարատեցաւ ամբոխն ,
եկն նախայիշատակեալն եւսեբի եւքայի-

տացի՝ անուամբ և արդեամբք բարեպաշտ, և տուեալ ինչս բազում՝ խնդրեաց և էառ զպատուական մարմին սրբոյն Թէոդորոսի, զոր իբրև որդի սիրելի ունէր. և հանդերձեալ կազմեաց ազնիւ գինւով և անոյշ իւղով, և պատեալ 'ի մաքուր կտաւս՝ ամփոփեաց 'ի տապանակի. և տարեալ 'ի քաղաքէ անտի ամասիոյ 'ի գիւղն իւր Եւքայիտայ՝ հանգոյց 'ի տան իւրում. և սպասաւորէր նմա նշխարաց մեծաւ հաւատով, կատարելով ը̃ այլ հաւատացեալս զյիշատակ սրբոյն 'ի փառս ամենասուրբ երրորդութեան:

Եւ եղև այնուհետև տունն այն երևելի ուխտատեղի՝ փայլեալ սքանչելեօք. և ապա շինեցաւ եկեղեցի. ուր բարեխօսութ̃ սրբոյն Թէոդորոսի բժշկէին ախտաժէտք և դիւահարք. և համօրէն բնակիչք կողմանցն այնոցիկ յա̃մ նեղութիս իւրեանց դիմէին 'ի տապան փառաւորեալ վկային, և հաւատով դտանէին զօգնականութի̃: Ընդ բերեալ եղև ասեն յետ ոչ բազում ամաց և մարմին միւս նշանաւոր վկային Թէոդորոսի սորատելատի, որ քեռորդին էր սորին Թէոդորոսի տիրոնի. յորմէ և ոմանք շփոթեցին ի՛ւրք ի՛ւրք զգործս երկոցունց ը̃ միմեանս: Ընդ սրբոյն Թէոդորոսի առաջնոյ 'ի նոյն աւուրս ասին նահատակեալ և զինուորակիցք նր̃ և ազգակիցք՝ երեքին վկայք. կղէոնիկոս, եւտրոպիոս, և բասիլիսկոս. յորոց զառաջնոյն գուշակեաց յորդորանօք և սր̃ն Թէոդորոս ը̃ս նախաձայնելոցս:

Սա

Աստուածումն բարեյաղթ վկայիս սրբոյն Թէոդորոսի տիւռոնի եղև յամի տն իբր ․ 305 ․ ՚ի ժէ աւուր ամսեանն փետրվարի , որ հաստարակօրէն անկանի ՚ի սկիզբն աղուհացից ․ վն որոյ և յառաջին շաբաթու քառասնորդաց կատարի տօն նր ոչ միայն ՚ի մէնջ , այլև ՚ի յունաց առանձին հանդիսիւ ․ որոյ գլխաւոր պատճառն այսպէս առաջի դնի միաբան աւանդութբ՝ առեալ ՚ի պատմութէ նեքտառիոսի պատրիարգի ։

Յետ իբր վաթսուն ամաց ՚ի նահատակութէ մեծի սրբոյն Թէոդորոսի զինաւորի՝ յորժամ թագաւորեաց ուրացողն յուլիանոս , և յարոյց հալածանս սաստիկս ընդդէմ քրիստոնէից , տեսեալ անօրինին՝ թէ անմարթ է նուաճել զնս յայտնի բռնութբ , խորհեցաւ սատանայական հնարիւք շաղախել զնոսա ՚ի հեթանոսական պղծութիս ․ քանզի ՚ի մերձենալ քառասնորդական պահոցն աղուհացից կոչեաց առ ինքն զեպարքոսն , և ասէ ․ որչափ ջանս եդի վն քրիստոնէից դարձուցանել զնս ՚ի պաշտօնս մեր , ոչ կարացի՝ ոչ ողոքանօք և ոչ սպառնալեօք ․ իսկ ՚ի գիշերիս յայսմիկ քաջ խորհուրդ արկին ածքն ՚ի միտս իմ ․ զոր եթէ արարից , այնու հետև քրիստոնեայք կամ ուրանան և զոհեն դից , և կամ ՚ի սովոյ մեռանին ։ Այս խորհուրդն այս ինչ է ․ ահա մերձեալ է պահք իւրեանց մեծ , զոր նմ ոք ջանայ պահել սրբութբ ․ արդ պատուէր տուր ՚ի քաղաքդ , որ ոչ հաց և ոչ այլ ինչ ՚ի պէտս կերակրոյ կմ ըմպել-

ւոյ դիցեն 'ի վաճառ, այլ զոր եւն առաքե-
ցից 'ի վաճառարանսն՝ խառնելով զամ ինչ
'ի ճարպոյ և յարենէ զոհիցն. զի որք գնեսցեն՝
յակամայ կամս կերիցեն, և լուծեալ զպա-
հեցողութի 'ի պարարտաց՝ հաղորդ լիցին
միանգամայն զոհից ըղծոց մեհեաց. ապա թէ
ոչ՝ անսուհաղութ սատակեսցին: Իսկ եպար-
քոսն գովեաց զխորհուրդ չարին, և փու-
թացաւ կատարել զհրամայեալսն. վղյ 'ի
սկիզբն լինել աղուհացից ոչ ետ հանել 'ի
վաճառս այլ ինչ, բայց միայն զպղծեալ հացս
և զայլ պէտս կերակրոց՝ զոր առաքեաց
պիղծ արքայն: Այլ բարեխնամն Ած կան-
խեալ ունայնացոյց զչարաչար զայն խորհուրդ
ժանտագործին, և զիւր հաւատացեալսն պա-
հեաց 'ի զազրալի կերակրոցն. քանզի յա-
ռաջին գիշերի 'ի մտաւոր պահոցն երևեցաւ
վկայն քի սբն Թէոդորոս՝ պատրիարգին քա-
ղաքին (Թերևս անտիոքայ ասորւոց, ուր էր
յուլիանոս նախ քան զերթալն 'ի պարսս),
և ասաց. ընդ առաւօտն ժողովեա առ քեզ
զամ քրիստոնեայս, և պատուիրեա նց՝ զի
ամենևին կերակուր մի գնեսցեն 'ի վաճառա-
նոցէն. քանզի ամ ինչ պղծեալ և խառնեալ
է 'ի ճարպոյ և յարենէ զոհիցն հեթանոսաց:
Ասէ հայրապետն. որ մեծատունքն են, ու-
նին զի՞նչ ուտիցեն. քանզի կան նց մթերք
ամբարեալ 'ի տունս իւրեանց. իսկ աղքատքն
և օտարականք՝ որք զաւուրն պարէնս 'ի վա-
ճառանոցէ առնուն, ուստի՞ կամ զի՞նչ կե-
րիցեն: Իսկ սբն ասէ. ասա՛ նց, զի կուլիբա
կե-

կերիցեն ․ (այն է ռամկօրէն գօլիվա ը՟ս հնչ-
ման յունաց) ․ և որ ոչն ունէին և զայն , դու-
տուր ն՟ց ունել ․ և այնպէս ազատ կացո զն՟ս
'ի պղծութ՟է հեթանոսաց ։ Իսկ հայրապետն
անգիտացեալ զանսովոր անուն կուլիբային՝
հարցանէր , թէ զի՞նչ իցէ այն ։ Ասէ ս՟բն
Թէոդորոս ․ այն է ցորենահատ եփեալ ․ զի
մեք ասէ յերկիրն եւխայիտայ՝ եփած ցորե-
նոյն կուլիբա ասեմք ։ Որով յայտ արար
միանգամայն ս՟բն , թէ ինքն է ծանուցեալ
վկայն ք՟սի 'ի կողմանց եւխայիտայ , ուր
անդստին 'ի մանկութ՟է սնաւ ցորենահա-
տիւ ։ Բայց հայրապետն՝ որ ոչ գիտէր հա-
ւաստեաւ զստուգութ՟ի տեսլեանն , ոչ ծա-
նեաւ զս՟բն ․ վ՟ոյ և եհարց համարձակ՝ ա-
սելով ․ և դու ո՞ իցես տ՟ր , որ այդպիսի խը-
նամարկութ՟բ և գթով հոգացար զփրկութ՟ի
ժողովրդեանն ք՟սի ։ Եւ նա ասէ ․ ես եմ
Թէոդորոս զինաւորն և վկայն ք՟սի յեւխա-
յիտայ ․ որ առաքեցայ 'ի տ՟նէ ա՟յ ազդել ձեզ
զբանդ զայդ ։

Յարուցեալ պատրիարգին ը՟ն առաւօտն՝ ժո-
ղովեաց զա՟մ եկեղեցեաց աւագ երիցունսն ,
և պատմեաց ն՟ց զտեսիլն ․ և ասաց , զի ա՟մ ա-
ւագերէց պատուիրեսցէ իւր ժողովրդեանն
առնել ը՟ս հրամանի ս՟բյն ։ Զայն իբրև գի-
տաց ուրացողն յուլիանոս , յամօթ եղև գոր-
ծակցօքն իւրովք ․ և զի նաև վաճառօղքն
սկսան գանգատանօք բողոքել վ՟ն դադարե-
լոյ վաճառաց , զի ոչ գնէր ինչ ոք այր քրիս-
տոնեայ , հարկեցաւ թագաւորն յետս դար-

ձուցանել զանօրէն հրամանն. և ինքն յամաթոյն 'ի նաւ մտեալ եւ 'ի քաղաքէն ելեալ 'ի պէտս կարևոր ինչ գործոց: Իսկ հաւատացեալքն ելեալ հասին 'ի շաբաթ օրն, տօն կատարեցին 'ի պատիւ սբ̄յն Թէոդորոսի ուրախութ̄բ մեծաւ. և եփեալ ցորեան բաղում բաշխեցին աղքատաց 'ի յիշատակ սբ̄յն. և նոյն սովորութի պահեցաւ և առ յապայն 'ի փառս ա̄յ:

Գրեն դարձեալ պատմաբանք յունաց զոնարաս և կեդրենոս այլովքն համդերձ զայլ սքանչելիս, յորժամ շարժեցաւ յովհաննէս չմշկիկ կայսրն յունաց հայկազն 'ի նորոգել զեւքայիտա քաղաք, և անուանել Թէոդորոսուպօլիս. այլ առանց բացայայտ որոշման, թէ առ ո՞ր յերկուց համանուն և աշգակից սբ̄ց Թէոդորոս կոչեցելոց հայոց: Յորժամ ել ասեն յովհաննէս չմշկիկ կայսրն բարեպաշտ 'ի պատերազմ ը̄դէմ նախինի ռուսաց սկիւթացւոց՝ յամի ն̃ն. 971. յերկարել գործոյ պատերազմին դիմեաց յօգնականութի բարեյաղթ վկային ք̄սի սբ̄յն Թէոդորոսի, և այնպէս խորտակեաց զթշնամիս. քանզի երևեցաւ յանդիման զօրու քրիստոնէից այր հեծեալ 'ի ձի սպիտակ, որ խաղաց ահագին զօրութ̄բ ընդդէմ ճակատու թշնամեաց իբրև յառաջամարտ ախոյեան. և դղորդեալ սասանեցոյց զն̃ս. յորժամ եղև և կայսեր յառաջ մղել զիւր ճակատ, և 'ի գլուխ հանել զյաղթութի: Իսկ թէպէտև ոչ ոք ծանեաւ 'ի զօրացն՝ թէ ո՞ ոք էր այրն այն, այլ

հառ

Հաստատեցան 'ի բանից կայսերն՝ թէ սրբն Թէոդորոս ինքնին էր այն. որոյ և 'ի նմին աւուր հանդիպեցաւ տօն յիշատակի :

Նա ևս հաւատարմացոյց զնոյն տեսիլ այլ տեսիլ եղեալ 'ի Թգ̃ւորական քաղաքի. ք̃զի ասեն կին ոմն բարեպաշտ 'ի Կոստանդինուպօլիս՝ միով աւուրբ յառաջ քան զօր պատերազմին. այդ տեսանէր 'ի տեսլեան, զի կայր ինքն մօտ օգոստայ տիրուհւոյն սր̃ ա̃ծածնի, և լսէր 'ի նմանէ ասել առ զօրական ոմն. տ̃ր Թէոդորէ, իմ և քո սիրելին յովհաննէս (կայսր) 'ի վիշտս կայ վտանգի. փութա՛ հասանել նմա 'ի թիկունս օգնականութե̃. և զայս պատմեաց կինն մերձաւորաց իւրոց 'ի վաղիւն անդր. որ և գտաւ յետոյ լինել օր յաղթութե̃ : Նմին իրի 'ի շնորհակալիս երախտեաց սրբոյն Թէոդորոսի կայսրն չմշկիկ ետ 'ի հիմանց քակել զփոքրիկ վկայարան տապանի սրբոյն յեւքայիտա, և շինեաց մեծակառոյց տաճար, կարգեալ նմին և մեծահաս կալուածս. և զքաղաքն եւքայիտա (որ է̃ այլոց եւքանիա) կոչեաց Թէոդորուպօլիս. որ անխտիր հայի 'ի պատիւ սրբոյն Թէոդորոսի առաջնոյ և երկրորդի. զի և ռամկօրէն զերկոցունց անխտիր զոյգ է̃ այլոց համանուն վկայից սր̃ Թորոս ասի. ոչ̃ և այլ տաճարք և վկայարանք, որ գտանին յայլևայլ քաղաքս արևելից և արևմտից, մանաւանդ և նշխարք նց̃ սփռեալք 'ի բազում տեղիս՝ բազում մասամբ են դժուարագիտելի, թէ ո՛ւմ յերկոցունց իցէ ընծայելի. այն զի՝ ոչ̃

,, (որպէս ծանուցանէ գոհառ...) զի գլխաւոր էր 'ի
,, գունդն անուանեալ տիւռոնաց, և կամ հարիւրա_
,, պետ. և կամ զի էր լոկ 'ի կարգէ անտի տիւռոնաց՝
,, ըստ Նիկեփորի||. և ըստ այսմ արդարանայ 'ի մէջ երբեմն
զինուոր և երբեմն զօրավար կոչել զտիւռոն :

(2) Գեղեցիկ միաբանին ընդ բովանդակ վկայաբանութեա
ճառընտրաց մերոց՝ Հ. և Յ. և զնոյն վկայաբանութիւն
քաղէ գրիգոր նիւսացին 'ի ներբողեան սրբոյն. վասն որոյ
և չէք մեր բնաւին երկբայութիւն ընդ առաջիկայս պատմութիւն
ծագէ 'ի ծագ. և զի պանծագոյն ևս ունիմք 'ի ճառընտիրս մեր նաև զվկայաբանութիւն Թէոդորոսի ստրատելատի գրեալ 'ի ճարտար դպրէ նորին յաբգար գրչէ, վասն որոյ որոշեալ և յատակ է 'ի մէջ երկաքանչիւր վարք տիւռոնի և ստրատելատի, զոր շփոթ տեսանեմք ըստ իմիք առ յետինն յոյնս, և առաւել խառնակեալ առ լատինս : Պատճառ շփոթութեան այն է, զի սուրբս և այլ արևմտեան վկայագիրք՝ ոչ գիտեմ որպիսի օրինակի մետափրաստեսի հանդիպեալք, զսպանութիւն վիշապին ընծայեն Թէոդորոսի ստրատելատի առակլայցւոյ. զոր ճառընտիրք մեր. և Հ. և Յ. ըստ բասիլեան վաւերական յայսմաւուրք յունաց՝ պատմեն զառաջնոյն Թէոդորոսէ տիւռոնէ :

Միայն ժամագիրքն յունաց՝ որ բաղադրեալ է 'ի հին և 'ի նոր խառն աւանդից, յերկոսս հետս կաղայ. քանզի նախ բարւոք գրէ 'ի փետր. 17. վասն տիւռոնի. * զխո_
,, րագէտ վիշապին ջախջախեցեր զգլուխ. վասն որոյ և 'ի
,, նահատակութեան քում քրիստոս բոլորեալ պսակեաց զպատ_
,, ուական գլուխ քո ով մեծավայելչ նահատակ||. և թէ
* հրով ողջակիզեալ՝ ով հաց անուշակ՝ երրորդութեան
,, նուէրի||. և 'ի կարգի պատմութեան. * մտեալ 'ի զին_
,, ուորութիւն տիւռոնաց, և ընդ կարգաւ բրինկայ զառա_
,, ջաւորի գոեալ||. ևն. և * կատարի (ասէ) յիշատակ
,, տօնախմբութեան նորա 'ի սրբ վկայարանի նորա՝ որ 'ի փորակ,
,, 'ի շաբաթու առաջին եօթնեկի պահոց, յորժամ դի_
,, պեցաւ 'ի ձեռն նորա ազանչելեաց կուլիբայն. որով ըղ_
,, ձողմութրդն ուղղափառաց ազատեաց 'ի պիղծ կերակ_
,, րոյ զոհից||: Այլ յետոյ յաւուր տօնի Թէոդորոսի
ստրատելատի 'ի յունիսի. 8. երգի անդանօր զնմանէ.
* նիզակաւ արեան քո ջախեալ զվիշապն, հզօրացեալդ
,, մեծապէս՝ ով զօրական անպարտելի... ով ստրա_
,, տելատ զօրաւոր||. և այլն: Եւ զայս երկրորդ կար_
ծիս կալեան բազումք 'ի լատինացւոց :

Այսմ

վկայաբանութե̅ սուրատեղաւոյ. այն է բոնիդոս կիսասարկաւագ եկեղեցւոյն Նէապօլսոյ, հարկեցաւ կոչել զաբգար անուն գրիչ, չինականագոյն մօք, հետեւակ և անգրագէտ. զոր ոչ կարէր ասել, եթէ ընթերցեալ էր զընաիր օրինակ ն̅ր՝ որ անկաւ 'ի ձեռս Նախնեաց մերոց յօրինողաց զծառընտիրս ։ Եւ որ մեծն է, վկայէ նա ինքն բոնիդոս, թէ չէ գտեալ իւր զընաիր օրինակ վկայաբանութե̅ սուրատեղաւոյն յարեմուտս, այլ 'ի բազմայօք գրոհածոյ յանուն աբգարու և անանուն մատենագրաց հաւընտիր քաղելով կարգեալ է ինքն զվկայաբանութին ինչ. յորում պահէ և զպատմութին վիշապին 'ի սուրատեղաւէն. զոր թէ ոք համեմատէ ը̅ աւանդելոյն 'ի մէնջ ը̅ ծառընտրաց, գտանէ զբանս բոնիդոսի կարօտ բազում ուղղագրութե̅, և արժանի թօթափելոյ յաւելորդ պարագայից. ոպ̅ տեսցի 'ի յաջորդ ծան՛՛ ։

Ուր թողից զայն, զի նախ՝ ը̅ ասացելոցս բասիլեան յայսմաւուրք յունաց, որ առ ա̅մ քննիչս է արժանահաւատ քան զժամագիրս նոցա, միաձայնի ընդ մեզ ։ Երկրորդ՝ զի առ մեզ ոպ̅ վարք սուրատեղաւոյն, նոյնպ̅ և տիւռոնին է լիակատար, սկսեալ 'ի ծագմանէ նորա՝ անուամբ հայրենեաց, գաւառի և քաղաքի. եղանակ մնդեան և զինուորութե̅ն յայտնի. և սպանումն վիշապին՝ պատճառ ընտանութե̅ ը̅ եւսեբիայ բարեպաշտ տիկնոջ, որ և ամփոփեաց զնշխարս սր̅յն. ուր այլք և ոչ զմի յայտնեն գիտեն. վ̅ս̅ որոյ և խնդրեն քննիչք, թէ ո՞ է եւսեբին այն՝ որ թաղեաց զսր̅ն թէոդորոս ։ Այսպիսի անգիտութե̅ պարմանան և ոմանք, թէ զիա՞րդ երբեմն եւքայիտացի կոչին երկոքին եւս սր̅ք, և թէ որպէս երկու համանուն վկայք լեալ իցեն 'ի մօտաւոր ժամանակս 'ի նոյն գաւառի. զի ո՛չ զորոշ տեղի նոցա գիտեն և ո՛չ զազգականութի նոցա. զի ոչ ունէին 'ի ձեռին զստոյգ վկայաբանութիս, ոպ̅ մեքս ունիմք ։

Վասն այսպիսի անստուգութե̅ց՝ 'ի ժամագիրն հռովմէական եդեալ կայ միայն յիշատակ թէոդորոսի զինաւորի. և այն՝ 'ի նոյեմբ. 9. իսկ սուրատեղաւոյն ոչ. զոր այլ վկայագիրք հռովմայեցւոց դնեն 'ի փետր. 7. ուր խօսին և բոլլանդեանք չփոթ բանիւք, և ինքեանք զբարոնիոս համարին չփոթաբան. քանզի այսպէս խօսի անդանօր բոլլանդ. * Յայտ է, թէ իրաւամբք երկոքին
,, եւս ( սր̅ք՝ թէոդորոս անուանեալք ) ընծային եւքայի-
,, տացւոց ( ը̅ եւքայիտացի կոչին ). թէպէտև առա-
,, ւել վ̅ս̅ թէոդորոսի սուրատեղաւոյ քաղաքն այն եւ-

,, քայի-

,, և բուռն հարեալ զնմանէ՝ յարոյց զնա, ասելով. ա-
,, րի եղբայր իմ, և փութով 'ի բաց գնա 'ի տեղւոջէ
,, աստի. զի ոչ գիտես զերկիւղն՝ որ կայ 'ի տեղւոջս
,, յայսմիկ. քանզի կայ երկիւղ մեծ. այլ արի և փու-
,, թանակի երթ զճանապարհ քո: Իսկ երանելի վկայն
,, ք̃նի Թէոդորոս՝ իբրև յարեաւ, ասէ ցնա. զի՞նչ եր-
,, կիւղ և սարսափ կայցէ 'ի տեղւս յայս մայրիկ: Իսկ
,, աղախինն ք̃նի Եւսեբիա ասէ ցնա. որդեակ, կայ 'ի
,, տեղւոջս յայսմիկ վիշապ անհնարին մեծութ̃ե. վ̃ն որոյ
,, ոչ ոք կարէ անցանել ը̃ այս տեղի. քանզի զօր ամե-
,, նայն եղեալ՝ զոր և գտանէ առաջի իւր, եթէ մարդ
,, և եթէ արջառ կամ ոչխար, սպանանէ: Եւ կատա-
,, րեալ նահատակն ք̃նի Թէոդորոս ասէ ցկինն. երթ
,, մայրիկ, և հեռի կաց 'ի տեղւոջէ աստի, և տեսցես
,, զզօրութ̃ն ք̃նի ա̃յ իմոյ. Իսկ երանելի կինն 'ի բաց
,, մեկնեալ անտի՝ տարածեաց զանձն 'ի գետին, և ա-
,, ղէր լալով. օգնական լեր դմա ա̃ծդ քրիստոնէից 'ի
,, ժամուս յայսմիկ: Իսկ ս̃բ վկայն ք̃նի Թէոդորոս ա-
,, րարեալ զնշան ք̃նի, և բախեալ զկուրծս իւր, հայե-
,, ցաւ յերկինս, և ասէ. տ̃ր յ̃ս ք̃ս գեղեցիկ անուն, որ
,, ես ճառագայթեալ յէութ̃ե հօր, մի՛ անտես առներ
,, կատարել զխնդրուածս իմ, զոր հայցեմ առ 'ի քէն.
,, որ 'ի պատերազմունս ը̃ իս ես, և տաս ինձ յաղթու-
,, ը̃դէմ հակառակորդաց. և այժմ դու նոյն ինքն ես
,, տ̃ր ք̃ս ա̃ծ, առաքեա́ առ իս յաղթութ̃ն 'ի բարձրութ̃ե
,, սրբութ̃եց քոց, զի յաղթեցից հակառակորդ̃ վիշապիս:
,, Յայնժամ ապա և ը̃ երիվար իւր խօսելով իբրև ը̃
,, մարդոյ՝ ասէ. գիտեմք, զի բարեսէր կամօք բերի ա̃ծ
,, առ ամենեսին, եթէ առ մարդիկ, և եթէ առ ա-
,, նասունս. վ̃ն որոյ և դու լեր ինձ օգնական 'ի զօրա-
,, ցուցանել զքեզ ք̃նի, զի յաղթեցից հակառակորդին:
,, Եւ իբրև լուաւ երիվարն զբանս տ̃ն իւրոյ, եկաց
,, արթնութ̃ե՝ սպասելով շարժման վիշապին: Յայնժամ
,, ասէ վկայն ք̃նի ցվիշապն. քեզ ասեմ և հրամայեմ
,, յանուն տ̃ն մերոյ յ̃սի ք̃նի՝ խաչելոյն վ̃ն ազգի մարդ-
,, կան, և զօրութ̃ ն̃ր, ել 'ի տեղւոջէ այրի քումմէ, և
,, եկ առ իս: Եւ վիշապն լուեալ նահատակին ք̃նի
,, շարժեաց զինքն. և յորժամ նա շարժէր, քարինք
,, տեղւոյն խախտէին. և երկիր դողացաւ: Իսկ ս̃բն
,, Թէոդորոս արարեալ զնշանն ք̃նի՝ ել յերիվար իւր.
,, և 'ի մտրակել ն̃ր՝ եկաց կանգնեցաւ երիվարն 'ի վ̃ր
,, վիշապին ոտիւք իւրովք չորեքումբք: Յայնժամ նա-

,, հա-

„ հատակին Քսի Թէոդորոս մերկեալ զսուրն՝ եհար և
„ սպան զվիշապն. և ասէ. գոհանամ զքէն Տէր ՅՍ ՔՍ,
„ զի լուար ինձ ՚ի ժամուս յայսմիկ. զի յաղթեցից Թըշ-
„ նամւոյս: Այլա դարձ արարեալ Նր՝ գնաց խաղաղութ
„ զճանապարհ իւր, ուրախ լինելով և փառաւոր առ-
„ նելով զԱծ: Եւ բազումք ՚ի հեթանոս զինուորաց՝
„ որք անդ էին, իբրև լուան զսքանչելիսն՝ զոր արար
„ սբն Թէոդորոս, հաւատացին ՚ի Քս, ասելով այս-
„ պէս. արդարև մեծ է Ած Նր. և ՚ի նմանէ մկրտեցան
„ յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ. և եղեն ա-
„ մենեքին մի հօտ Քսի. և օրհնէին առհասարակ զԱծ
„ սբյ և մեծի վկային Թէոդորոսի: Իսկ լիկիանոս (Թա-
„ գաւորն) իբրև լուաւ զայսոսիկ զնմանէ, յղեաց առ
„ նա, և կոչեաց առ ինքն || . ևն:

Տեսանեմս, թէ զիարդ աղաւաղ և գժուճարալուր ոճով այլայլեալ է հարազատ պատմութիւն ՚ի չարաքան գրչէ ումեմնէ. զոր ՚ի գիրս սրբոց յունաց գտեալ՝ թարգմանեալ են և լատինք. բայց զարմանալին այն է. զի բանիգոս նէապօլսեցի ուղղագրել և հարթել կամելով զայն՝ ես քան զեւս կուտակէ օտարոտի բանիւք. զորս կամ ՚ի ռամկաց զրուցաբանութէ, և կամ ՚ի թելադրութէ մտաց իւրոց կցկցէ. արժան է յառաջ բերել և զայն՝ առ ՚ի ցոյց օրինակի օտարացելոց ՚ի հարազատ վկայաբանութէ մերմէ:

Այս բանք են բանիգոսի ը տպագրելոյ բոլլանդեանց ՚ի վարս Թէոդորոսի ստրատելատի. * Արդ՝ էր ՚ի ժա-
„ մանակին յայնմիկ այր ոմն նշանաւոր և հզօր նահա-
„ տակ Ծոյ Թէոդորոս անուն, իշխան քաղաքին եւքայի-
„ տայ. հաւատով երիտասարդ, այլ մտօք կատարեալ.
„ և ՚ի հիւսիսակողման քաղաքին ունէր ընդարձակ ան-
„ դաստան, յորոյ ՚ի բարձրաւանդակ տեղիս գոյր վիհ
„ ինչ անդնդախոր, և ՚ի ստորոտս Նր բուսեալ էր վի-
„ շապ մի ահագին. զոր երբեմն, առաւել մեծի ապիրա-
„ տութեամբ, աւաղելի ամբոխ տեղւոյն պաշտելով՝ ՚ի
„ տեղի Ծոյ ունէին զայն: Այլ յորժամ այրն Ծոյ նա-
„ խատացեալ սբն Թէոդորոս զժողովուրդ քաղաքին
„ եւքայիտայ յետս ընկրկեալ ՚ի գրօշելոց կռոց՝ առ սա-
„ կաւ սակաւ զուն գործէր դարձուցանել առ Քս քա-
„ րոզութբ իւրով, վիշապն այն զրգռութբ դիւին ՚ի
„ վհէ անտի երբեք երբեք ՚ի դուրս վաղեալ, զոր և
„ կենդանի գտանէր, իսկ և իսկ յօշոտէր: Եւ իբրև
„ կոտորած մարդոյ և անասնոյ լինէր ՚ի նմանէ, ժողո-

„ վճարքն իմ ընթացեալ առ ծառայն ա̄յ Թէոդորոս.
„ իշխանն իւրեանց՝ սպառնական բանիւք վերջին ը̄դէմ.
„ նր̄, ասելով. Թո՛յլ տուր մեզ ձօնել նուէրս ածոց մե-
„ րոց, ո՛ր օրէն էր հարց մերոց հանապազ առնել ը̄.
„ առաջին սովորութեան. զի յորմէ հետէ յետս կացաք 'ի
„ պաշտամանց նր̄, պէսպէս հարուածովք նեղիմք, և
„ վտանգիմք յերեսաց ազգի ազգի արկածից. և արդ
„ կամ զօրութ̄ ա̄յ քո՝ զոր ուսուցանես, կորո՛ զվիշապդ-
„ ծախիչ կենաց մերոց, և կմ̄ եթէ ոչ կարես առնել
„ զայդ, մերոց կամաց լիցի անխափան կատարումն:
„ Եւ իբրև լուաւ ծառայն ա̄յ զայս բան 'ի բերանոյ
„ նր̄, ամոք բանիւք խաղաղացոյց զբուռն յարձակումն
„ խուժանին. գնաք ասէ այսօր երթիջիք առաւ խաղա-
„ ղութ̄ այր իւրաքանչիւր 'ի տուն իւր. քանզի օգնա-
„ կանութ̄ն ա̄յ այսուհետև և ոչ մի ինչ վնաս ձեզ
„ հասցէ 'ի վիշապէն:
„ Եւ եկև յետ գնալոյ նր̄ երանելի նահատակն քր̄ի տա-
„ րածեալ զանձն իւր յաղօթս առ տր̄՝ զայս ասէր պա-
„ ղատանաց եհեղ առաջի ա̄ն, ասելով. ամենակալ տր̄
„ յս̄ քս̄՝ թագաւոր և տր̄ իմ էից, որ 'ի սկզբանէ.
„ Յիս իջեր վս̄ մեր մեղաւորացս 'ի կորզել զմեզ սր̄,
„ արեամբդ քով 'ի ժանեաց բանսարկուէին. որ և զիմ
„ մարդ 'ի վր̄ իմ երկրի 'ի կարդալն առ քեզ իբրև
„ զմի այր 'ի միում վայրկենի տեսանես և լսես. լո՛ւր
„ տր̄ հեծեծելոյս՝ որ կարդամս առ քեզ, և հայցեմ
„ զմեծ քո զողորմութիւն. ո՛ր զի 'ի սատակել վիշապիս
„ քոյով զօրութ̄՝ ծանիցէ ժողովուրդս իմ, զի դու
„ ես Ճշմարիտ և սքանչելի ա̄ծ սքանչելարար յերկինս
„ և յերկրի: Եւ 'ի կատարել այսպիսի աղօթից՝ այն
„ ինչ կամէր յառնել, իբր վաստակեալ ըմբռնեցաւ 'ի
„ թմրութ̄, և հանգարտեաց 'ի քուն: Եւ անդէն վաղ-
„ վաղակի երևեցաւ նմա 'ի տեսլեան երիտասարդ ըզ-
„ գեցեալ պատմուճան ձիւնափայլ՝ լուսաւոր դիմօք
„ և զուարթահայեաց աչօք, և ասէ ցնա. Թէոդորէ
„ Ճշմարիտ վկայ յս̄ի քս̄ի՝ գիտեա՛, զի լուեալ եղեն ա-
„ ղօթք քո. և արդ արի՛ և ե՛լ յերիվար քո՝ զգեցեալ
„ զսաղաւարտ փրկութ̄ե, և ամրացեալ վահանաւ սր̄.
„ հաւատոյ, և զկենսատու խաչն կրելով ը̄ քղամդաւ,
„ և զգեղարդն 'ի ձեռս առեալ, երթ աներկիւղ և ան-
„ կասկած՝ անուամբն յս̄ի քս̄ի. քանզի իսկ և իսկ սա-
„ տակեսցի 'ի քէն վիշապն: Զայս իբրև ասաց, և վե-
„ րացաւ յօդս, ապա յարուցեալ 'ի քնոյ այրն սր̄՝ ըն

„ մարխա ած կենդանի և մշտնջենաւոր Թագաւոր յամ
„ յաւիտեանս :

„ Զայս աղօթս մատուցեալ՝ դարձեալ աշտանակեաց
„ յերկվար, և զայրիճն ուր դադարէր վիշապն՝ երից
„ շուրջ եկեալ, և յետոյ ուրեմն արձանացեալ 'ի բե-
„ րան այրին՝ ձայնեաց առ նա այսպէս. ով չարաթոյն
„ և դժոխորովայն վիշապ, 'ի կենարար անուն յաւիտե-
„ նից Թագաւորին՝ ա̄ն մերոյ յ̄ի ք̄ի՝ հրամայեմ քեզ.
„ զի վաղվաղակի 'ի դուրս այսր առ իս եկեսցես յորջոյ
„ քումմէ : Եւ ը̄ աւել ն̄ր զայս՝ սկսաւ յամ կողմանց
„ դղրդիլ շրջապատն այրին, և խբրև յերեսաց ահագին
„ սասանութե̄ երկրի երերայր յոյժ գետինն մերձակայ.
„ և ահա վիշապն անհնարին ցասմամբ 'ի դուրս վաղե̄լ.
„ զգլուխն 'ի վեր ուղղեալ, զկոկորդն լայնաբաց տա-
„ րածեալ. և զպարանոցն ուռուցեալ մաղխք ցցուէ-
„ լով, ոլորեալ տտամբ 'ի Թիկանց, և հրացայտ լու-
„ սարանօք երկոքումբք, քամնելի ահարկութե̄ եւ ար-
„ տաքս առ նա : Յորոյ վ̄ր յարձակեալ երկվարաւ քաջ
„ զօրականն ք̄ի, զգեղարդն որ 'ի ձեռին՝ 'ի Թոքս ն̄ր
„ մխեալ հարստէր. և ն̄ր տտամբն զերկիր բախեալ, և
„ առ վայր մի՝ ցորչափ շունչ ն̄ր 'ի նմա էր՝ շարժլեալ,
„ յետ այնորիկ անշնչացեալ սատակէր : Յայնժամ խբրև
„ ետես այրն ա̄յ զյաղթականութ̄ն նորին, բերկրալից գո-
„ հաբանութե̄ նուագեաց զօրհնութիս զայս ա̄ն, և ասէ.
„ Դու Թագաւոր յաւիտենից,
„ ած փրկիչ տիեզերիս.
„ զերկինս զերկիր զբաւմբ ունիս,
„ փայլատակունս անդաս յերկնից :
„ Քև, ո՜չ առանց քո զօրութեան,
„ որ ինչ 'ի վեր, որ 'ի ստորինս.
„ զքեզ օրհնեն հնչմամբ ձայնից՝
„ համայնութի̄ք բոլոր էից.
„ երկինք, երկիր, ծով և այեր,
„ միշտ խրերաց քաջ ձայնակից :
„ Քեզ վայելէ փ̄ռ բոլորից,
„ ը̄ հօր, հոգւոյդ քո էակից,
„ փառք, մեծութի̄, և զօրութի̄,
„ զուգապատիւ յաւիտենից :
„ Եւ արդ ո՞ր զիս տ̄ր ամենակալ արժան համարեցար
„ զօրացուցանել օգնականութ̄ե քով, մինչև անկաւ արդ
„ վիշապս սատակեալ յինէն, սոյնպէս և զժողովուրդ
„ քաղաքիս՝ որք դիւական պաշտամանց անսան կուռ ,

„ քոյին ձեռնատուութեա͞մբ անձից 'ի ծանօթութեան ամենայն͞ի
„ Ճշմարտութեան քո: Եւ իբրև երգեաց զայս օրհնութիւն,
„ դարձ առնէր 'ի քաղաքս իւր յաղթանակաւ:

„ Անդէն վաղվաղակի ընդ առաջ եկն նմա նախատա-
„ ցեալն Եւսեբիա, ընդ որում նախ եղև խօսակից. զի
„ չև էր նո՟ր մեկնեալ 'ի տեղւոջէն, այլ սպասեալ մնայր
„ վարանական մտօք, թէ զի՞նչ ունիցի առնել զինուորին
„ ք͞ի. և իբրև ետես զգալուստ նո͞ր, տարածեալ բազ-
„ կօք ընթացաւ առ նա, և ասէ. զի՞նչ ասես տ͞ր իմ
„ բարեպաշտօն, սատակեցան արդեօք թշնամին մեր:
„ Եւ նա ասէ. անդստին իրագէտ է թշնամին տիեզե-
„ րաց է սատակումն իւր, յորմէ հեռաւ տ͞րն և փրկիչն
„ մեր յ͞ս ք͞ս գերեալ 'ի նմանէ զզօրութիս և զիշխանու-
„ թիս նո͞ր՝ նշաւակեաց զնա 'ի խաչին. զի թէ՝ և ինքն
„ իսկ առաջնորդն մահու ծանուցեալ էր զնա վ͞ն մեր
„ բեւեռել 'ի խաչ, ոչ ինչ կամակից լինէր այնմ. ա-
„ պա և զթշնամին կենաց մերոց գիտասջիր ձեռնատուու-
„ թեամբ նորին սատակեալ յինէն: Յայնժամ ասէ
„ կինն. օրհնեալ ա͞ծ յաւիտենական, որ եհան զքեզ
„ յայս պատիւ փառաց, զի նա 'ի բերանոյ քումմէ քա-
„ րոզեսցի, և վիշապն 'ի ձեռաց քոց սպանեալ գտցի:
„ Մինչ այս մինչ այն՝ և համբաւն լսելի լինէր 'ի քա-
„ ղաքի. և ահա ամբոխն առհասարակ արք և կանայք
„ յո͞մ հասանէ 'ի տեսարան անդր դիմեալ գային ճե-
„ պով: Եւ իբրև գտին զա͞ծն թէոդորոս զիշխանն իւ-
„ րեանց նստեալ 'ի ձի, և զարիւնամած գեղարդն 'ի
„ ձեռին, միաբան ընթացան ամենեքեան ընդ առաջ նո͞ր,
„ և ասէին. Դու փառք և ցնծութիւն մեր, դու քաղա-
„ քիս Եւքայիտայ սքանչելի վայելչութիւն, դու ուրա-
„ խութիւն, դու շուք պարծանաց ժողովրդեան մերոյ.
„ դու փրկութիւն և ազատութիւն մեծափառ՝ հոգւոց մե-
„ րոց. զի ոչ խնայեցեր յանձն քո, այլ յանուն ա͞յ քո
„ 'ի բաց բարձեր 'ի միջոյ զհակառակորդն մեր՝ որ տագ-
„ նայէրն զմեզ:

„ Ապա ընթացակից լեալ է քաջայաղթ զօրականին ք͞ի՝
„ եկին միաբան 'ի տեղին, ուր անկեալ տարածեալ կայր
„ վիշապն. և է տեսանելն զայն 'ի հեռաստանէ՝ մինչ-
„ չև մերձեալ էին, բազումք 'ի նոցանէ սոսս առեալ
„ 'ի տեղւոջէն յետս ընդ կրունկն սրացան երագ ըն-
„ թացիւք 'ի քաղաքն. քանզի ահ մեծ և դողումն կա-
„ լաւ զամենեսին. վ͞ն և բազումք սասանեալ կային.
„ և ոչ ոք իշխէր մերձենալ 'ի տեղին: Նմին իրի քաղա-
„ մար-

,, մարտիկ զլինաւորն քնի հուպ եղեալ 'ի նա, և իջեալ
,, յերիվարէն, եդ զոտս իւր զերկոսին 'ի վր աճապին
,, գաղանին. (թ այսմ կանգնեալ է և արձան նր 'ի վր
,, սեան 'ի հրապարակի վենետկոյ.) որով և այլոց հա_
,, մարձակել եղև այնուհետև մերձ լինել 'ի տեղի անդր:
,, Եւ 'ի կրթիլ ամենեցուն յապշութն մեծ՝ ասէ ցնոսա
,, քաջ զինաւորն քնի. Ահա դուք ինքնին իսկ տեսա_
,, նէք, թէ որչափ է զօրութն տն իմոյ յնի քնի, որոյ
,, անծային անուամբն սատակեալ տեսանի յանդիման
,, ձեր գազանս աճապին. հապա 'ի բաց թողեալ ըզ_
,, պաշտօն պիղծ կռոց՝ փութացարուք ընդունել ըզ_
,, ճշմարիտ հաւատս նր՝ յետ խոստակելոյ նր յայսմ ճի
,, զլթշնամին կենաց ձերոց. և եթէ յաստիս 'ի մահկա_
,, նացու ընթացս մարդկութեա հաստատուն կացջիք
,, 'ի նմա՝ հաւատալով յանուն նորա, սատակեսցէ նա
,, առաջի ձեր և զվիշապն մահաշունչ զատանայ զկա_
,, պեալն 'ի մշանջենաւոր կիզման, տալով ձեզ ցնծալ
,, յերջանիկ թագաւորութն: Եւ նչ լուեալ զայս՝ թո_
,, ղին այնուհետև և 'ի բաց մերժեցին զկռապաշտութն,
,, և վաղվաղակի ընկալեալ 'ի նմանէ զսբ մկրտութն՝
,, ամենեքեան հաւատացին 'ի քս, հռչակելով զմեծա_
,, մեծ գործս նր հիացմամբ, և գովելով և օրհնելով
,, զնա՝ որ սքանչելին է 'ի սբս իւր ||: Հմտ լիցի այս_
չափ ինչ մն օրինակի. թող զոր զկնի յերկարաբան
բաղդատութի ը սպանումն վիշապին, որ 'ի դանիէլէ,
և որ 'ի թէոդորոսէ: Ահա այսչափ ըլայնմամբ ընդար_
ձակէ բոնիդոս արևմտեան մատենագիր զհամառօտ պատ_
մութի վիշապին, որով և նոյնչափ օտարանայ 'ի ճշմար_
տութէ. զի թէ զպատմութին էառ 'ի վկայաբանութէն
տարատեղատի ըստ սխալ օրինակաց՝ զոր բերէ և սու_
րիոս ընդ անստոյգ անուամբ մետափրաստեսի, ուստի
յաւելու և զայլ բազմօրինակ հանդամանս բանից. յայտ
է թէ յիւրոց քմաց, կմ գտնէ 'ի շատաբանից ոմանց. և
զարմանք են՝ զի բոլլանդեանք, որք այլուր այնչափ հա_
մարձակախօս են յըվայր հարկանել զօտարին պատմու_
թիս, աստ համբերեն արևմտեան հեղինակի, մեղմով
ևեթ զայս ինչ նշանակելով. * ունի այս պատմութի
,, քան զառաջինն զայն որ 'ի մետափրաստեսէ, ոչ այնչափ
,, զիրաց, որչափ զբանից՝ և այն ոչ ախորժելեաց, զան_
,, հնարին կուտակութի ||:
Իցէ թէ և զայլոց արևելեան մատենագրութեց այս_
պիսի ճարտար ակնածութբ խօսէին: Այլ թողեալ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Կիւրղի Եջմայ Հայրապետի ։ [1]

Հ․ Յ․ Լ․ Մարտ․ 18 ։ ( Ճառընտ․ Ի․ ՀԷ։ ) Բոլլանդեանն բազմերորդ․ հատ․ Է․ Մարտի․ եր․ 625=633 ։ Տուտտէոս 'ի յառաջաբանէ․ գործոց կիւրղի ։ Սուրիոս․ հատ․ Է․ եր․ 307 ։ Սոզոմ ։ Սոկրատ ։ Թէոդորետ ։ Թէոփանէս․ և այլք ։ [2]



ՍՈՒՐԲ ՀԱՅՐԱՊԵՏՆ Կիւրեղ Եջմացի, մին յերկոտասան վարդապետաց եկեղեցւոյ, եղև տիրապէս պարծանք սիոնի և աթոռոյն Եջմի, ը̄ն որում յետ յակոբայ արդարոյ եղբօր տ̄ն՝ մեծանունն և բազմարդիւն հովիւ գտաւ 'ի մէջ տ̄մ եպ̄սաց ա̄ծակոխ քաղաքին, ականաւոր լուսափայլ վարդապետութ̄ք գրոցն՝ որ կոչի կոչումն ընծայութե, և հանդիսացեալ գրով՝ որ առ կոստանդ կայսր վ̄ն հրաշալի երևման ս̄բյ խաչին առ իւրև ։ Արդ՝ էր սա հայրենեօք պաղեստինացի, գուցէ և ծննդեամբ Եջմացի, բարեպաշտ ծնողաց զաւակ, սնեալ յա̄ծպաշտութե և յա̄ծային գիտութե անդէն յԵջմ քաղաքի․ քանզի եղև յոյժ հմուտ հին և նոր կտակարանաց, որպէս և տեղեակ ուսմանց

մանց արտաքին հանճարոյ փիլիսոփայութե .
այլ առաւելեալ անարատ քաղաքավարութբ,
որ առնէ զմարդն կատարեալ և գովելի յաչս
այ և մարդկան ։ Նա առ մեծի փութոյն՝
որով 'ի մանկութէ հետէ սիրէր զվարս ա֊
ռաքինութե, ընտրեալ զորբակրօն մաքրութի
և զճգնողական կեանս կրօնաւորութե՝ մի֊
այնացաւ յառանձնութի, տուեալ զանձն ա֊
ղօթից և պահոց և հոգևոր կրթութեց և
տեսութեց . վոյ և եղև խելամուտ խորհր֊
դոց տնծաշունչ տառից, և գեղեցիկ աւան֊
դից հոգելից հարց առաջնոց յաւուրց անտի
առաքելոց ցաւուրս իւր . մինչև լի լինել նմ
իմաստութբ, և առատանալ 'ի բանս վար֊
դապետութե Ըդդէմ հրէից և հեթանոսաց
և բիւրազգի աղանդաւորաց Ժմկին ։

Սմին իրի արժանապէս ընտրեցաւ և կոչե֊
ցաւ 'ի սարկաւագութի եկեղեցւոյ 'ի սբյն
Մակարայ հայրապետէն Էջմի . և ապա ըն֊
կալաւ զքահանայութի 'ի յաջորդէ նր յե֊
րանելոյն Մաքսիմոսէ խոստովանող հայրա֊
պետէ՝ յամի տն իբր 335 ։ Նյս այն Մաքսի֊
մոս է, որ յաւուրս հալածանաց կռապաշ֊
տից զրկեալ էր յաջոյ ական վս հաւատոցն
քի, ոտք և աջոյ սրունքն ջաղխեալ ։ Նա զի
սովորութի էր յաթոռանիստ եկեղեցիս, զի
քահանայք մի կմ երկու ևևս աւելի ընտրա֊
նաւ սահմանեալ՝ խօսելին բանս առ ժողո֊
վուրդն, և յետ նց ելանէր եպսն 'ի բեմն
քարոզել հովուական իշխանութբ կմ հրա֊
ման տալ վս իւրաց ինչ, սա լինէքն երանելին
կիւ֊

կիւրեղ մ̃ծ տասա և՝ սքանչելի վ̃պաւն՝ իւ-
րոյ կարգեցաւ ՚ի մաքսիմոսէ գլուխ քարոզ-
չաց բանին, ոպ̃ թէ վ̃պ վ̃պաց․ մինչ գրե-
թէ յա̃մ կիւրակէս ինքն էր՝ որ խօսէր ըղ-
բանս վ̃պութե̃ն բարև փոխանորդ հայրա-
պետին ։ Նա էր գործս ոչ թեթև, այլ ծանր
յոյժ քան զքարոզութի̃ և զբեմբասացութի̃
այլոց տեղեաց ․ մի՝ վ̃ծ բազմութե̃ն ազգաց
ամի ամի ժողովելոց ՚ի սբ̃ քաղաքն եէմ,
յորս գտանէին և երևելի անձինք գիտնա-
ւորք յեկեղեցական և յաշխական կարգէ․ որոց
առաջի պէտք էին բանից իմաստուն և ըղ-
գօնութե̃ ՚ի շինուն իմաստնոց և անմտաց,
մեծի և փոքու․ և միւս ևս՝ վ̃ծ բազմութե̃
երեխայից, զի̃ նորոգ դարձելոց ՚ի սբ̃ հա-
ւատս, ոչ յեէմ և եթ, այլև ՚ի քաղաքս հե-
ռաւորս․ զի և սոքա բազում անգամ գային
յեէմ վ̃ծ մկրտուե̃ ՚ի յորդանան․ զորս առ-
հասարակ հրահանգէր կիւրեղ ՚ի հաւատոյս,
և պատրաստէր առ արժանաւոր ընդունե-
լութի̃ սբ̃ մկրտութե̃ ՚ի ձեռաց հայրապե-
տին և գործակցաց նո̃ քահանայից և սարկա-
ւագաց․ և այս հրահանգութե̃ կոչիւք կոչման
ընծայութե̃, ի̃ յունաց կատեքեսիս ։

Նա յաղթէր ա̃մ դժուարութե̃ց միշտ վասն
զի ժամանակին յերեսաց բազմազգի և
բազմաձևի աղանդոց և հերետիկոսութե̃ց առ-
րածելոց ը̃ ա̃մ տեղիս ․ մ̃յ ձիգն մեծ էր
կրթել զժողովուրդն, և առաւելապէս զնո-
րատունկս՝ յողջամիտ վ̃պութե̃ ուղղափա-
հաւատոյ, կշտամբելով տխրապէս փաստիւք

և

և վկայութիւնք զմոլար մտածութիւնս , միանգա-մայն և հաստահիմն առնելով զանմոլար ճըշ-մարտութիւն ։ Այս աղա 'ի սոյն առաքելա-կան միաբանութեան բազմօք վաստակեցաւ ե-րանելին կիւրեղ անդստին յաւուրց անտի քահանայութեան իւրոյ՝ ձեռնարկութեամբ հայ-րապետին իւրոյ Մաքսիմոսի ․ և առաւելապէս կրեաց բազում վտ սոցին իւրաց ոչ միայն 'ի հերետիկոսաց ժամանակին և 'ի սուտանուն եղբարց , այլև 'ի սոյգ ուղղափառաց ան-դամ ։

Ան զի զայնու ժամանակաւ յալէկոծ ծուփս տագնապէր եկեղեցի համօրէն յերեսաց ա-րիանոսաց յետ դատապարտութեան պղծոյն արիոսի 'ի սբ ժողովն նիկիոյ ․ մինչ զի արի-ոսեանք նենգամիտք՝ յորս բանադրոյն էր եւ-սեբիոս նիկոմիդացի , ձեռնամուխ եղեն ըն-կենուլ յաթոռոց զերևելի երևելի եպիսկոպոսս ուղղափառաց , ոպ և ընկեցին իսկ զսբն ա-թանաս աղեքսանդրացի և զձայնակիցս նր ․ զորս աքսորանօք և հալածանօք վտարան-դիս առնէին , և 'ի նց տեղիս կարգէին կամ զչարափառս , կամ զայնս յուղղափառաց՝ զորս ակնունէին ձգել 'ի կողմն իւրեանց երկդի-մի բանիւք ․ քանզի և 'ի պատրել զանգէտս հնարեցան յօդել այլևայլ դաւանութիւնս նսեմ և պատիր ասացուածովք՝ ցուցանե-լով զանձինս ոչ օտար 'ի ճշմարտութենէ ․ և այսպիսի շփոթութեամբ զօրացաւ հանապա-զորդեան զժտութի և հակառակութի եպիս-կոպոսաց ը եպիսկոպոսունս , և ժառանգա-

ւո-

ւորաց եկեղեցւոյ ը̃ միմեանս՝ գրեթէ յամ
քաղաքս ։

Ի՛սկ առաւել սաստկացաւ խռովութիւն 'ի ժամանակին՝ յորում քակտեցան 'ի միմեանց եպիսկոպոսունք 'ի ժողովն սարդիկեայ՝ յամի տն̃ · 347 · զի թէպէտ և մեծաւ մասամբ ուղղափառք կային մնացին 'ի սարդիկէ առ 'ի մերժել իսպառ զաղանդն արիոսի և հետևողաց նր̃, բայց եւսեբեանք արիոսամիտք անկան 'ի փիլիպպուպօլիս առնել ժողովակ առանձին ընդդէմ դասուց ուղղափառաց · և այնպէս նզովք աստի և նզովք անտի 'ի վեր ելին ը̃դէմ իրերաց, և թուղթք շրջաբերականք յը̃վայր հարկանել զմիմեանս · սարդիկեանք զփիլիպպուպօլեանս հաստատէին լինել հետևօղս արիոսի և թշնամիս նիկիոյ սբ̃ ժողովոյն, և սոքա զնոյն իբրև զսաբէլեանց չարախօսէին ։

Յայսպիսի նամականւոյ երկպառակչիւր կողմանց 'ի վարանս անկեալ և այլոց եպիսկոպոսաց՝ որք ոչ մտին 'ի ժողովսն̃, կէսք յայս կողմն, և կէսք յայն հակամիտէին · իսկ այլք զմիջին կարծելով գնալ ճանապարհ՝ նոր հերձուած կացուցանէին՝ կիսարիոսեան · և 'ի նս̃ ումանք մոլորամիտք, ումանք ողջամիտք, այլ առհասարակ պէսպիսաձայնք և տարաձայնք ։

Յորում վիճակի վտանգ մեծ էր հաղորդիլ ը̃ այսմ կմ̃ ը̃ այնմ՝ առանց արատոյ հերձուածոց · որպ̃ և յոչն հաղորդիլ՝ դարձեալ առիթ հերձուածոյ նորոյ ։

Այն իրի և մաքսիմոս հայրապետ եկ̃մբ, ո-

որում անսայր և կիւրեղ իբրև առաջնորդք
իւրոյ, լուաւ համարեցաւ սիրով գնալ ընդ ամե-
նեսին, զի թերևս այսու շահեսցին երկո-
քին կողմանք. և յառաւել զիջանիլն՝ պատ-
րանօք եւսեբեանց ձգեցաւ և 'ի ժողովն
տիւրոսի գումարեալ յարիանոսաց ընդդէմ ա-
թանասի. և հարկեցաւ ևս առաջիկայ գը-
տանիլ 'ի միւս ժողովն եղեալ ընդդէմ նորուն
աթանասի. որով և առ ժամանակ մի եղև
'ի համարի կիսարիոսեանց. մանաւանդ զի
ոչ անսաց խրատու սրբոյն պափնուտիոսի խոս-
տովանողին, որ ընդ օրինակի նորա զրկեալ էր 'ի
միոյ ականէ վասն հաւատոյ. քանզի սա յառա-
ջիկայ լինել ընդ մաքսիմոսի 'ի ժողովն տիւ-
րոսի՝ տեսեալ թէ գլխաւորք ժողովոյն են
'ի կողմն չարափառաց ընդդէմ մեծին աթա-
նասի, կալաւ զձեռանէ մաքսիմոսի, և ա-
սէ. ծնն արի գնասցուք աստի. յայտ արա-
րեալ՝ թէ չէ արժան որոց մատնեցին զան-
ձինս իւրեանց 'ի խեղումն վասն խոստովանութե
անուանն քի, կալ մնալ 'ի ժողովս քնամար-
տից. իսկ մաքսիմոս չէառ առ ժամն 'ի միտ
զխորհուրդս չարաց։

Արդ թէպէտև այսպէս վտանգեցաւ մաքսի-
մոս, այլ յետոյ 'ի վն հասեալ խարդախա-
նաց արիանոսաց՝ 'ի բաց որոշեցաւ 'ի նոցա-
նէ, և միաբանեցաւ ընդ սրբոյն աթանասի։
Քանզի յորժամ դէպ եղև աթանասի ան-
ցանել ընդ պաղեստին (ընդ ոմանց 'ի դառնալն
'ի ժողովոյն սարդիկեայ, կմ ընդ այլոց 'ի դար-
ձին 'ի վտարանդութէ իւրմէ յարևմտից 'ի
կող-

կողմանս արեւելից՝ յամի . 349 . ) ընտանի
խօսակցութե՛ շինեաց նա զմիտս Մաքսիմո-
սի և որոց է՛ նմա . յայնժամ 'ի հրամանէ
Մաքսիմոսի ժողովեալ հնգետասան եպիսկոպոսաց
յե՛ղմ՝ ընկալան զԱթանաս 'ի հաղորդութի՛ ,
և խոստովան եղեն՝ թէ պատրանօք օտարաց
խաբեալ մեր զուգաջինն՝ յակամայս ձեռս
եդաք 'ի մերժել զԱթանաս յաթոռոյ . և
յաւելին գրել միաբան ստորագրութ. գիր
ուրախակցութե՛ յԱղեքսանդրիա և առ ե-
պիսկոպոսունս եգիպտացւոց՝ աւետաւորե-
լովն՛ց զդարձն Աթանասի և զընդունելութի՛
'ի հաղորդութե՛ իւրեանց :
Յետ այսորիկ իբրև վախճանեցաւ Մաքսի-
մոս յամի տ՛ն իբր 350 , անժառանգ մնաց առ
վայր մի աթոռն ե՛մի . զի արիանոսք ջանս
գործէին տիրել այնմ . և կէսք զՀերակլիոս
ան՛ն ասէին թողեալ 'ի Մաքսիմոսէ լինել իւր
աթոռակալ . իսկ ժողովուրդն խնդրէր ըզ-
Կիւրեղ աւագերէց հայրապետանոցին՝ իբ-
րև վ՛դպ հասարակաց . Նա յետ բազում խն-
դիր լինելոյ՝ ժողով շրջակայ եպ՛սաց զիջաւ
'ի խնդիր ժողովրդեան , և ընտրեաց զերա-
նելին Կիւրեղ իբրև արժանի ժառանգ այնր
աթոռոյ , և այսմ ոչ միայն ուղղափառք հա-
ւան գտան , այլև կիսարիոսեանք և թաքուն
արիոսեանք . որոց գլխաւորն էր աղուէսա-
միտն Ակակիոս եպ՛ս Կեսարու պաղեստինա-
ւոց : Որ թէպէտև գիտէին ն՛ք զԿիւրեղ
ջաղխիչ աղանդոյ իւրեանց , բայց հայեցեալ
'ի հեզահամբոյր բարս ն՛ր և 'ի խաղաղասի-
րու

րութէ, միանգամայն և 'ի զգօնութէ, որ և 'ի հերքելն զաղանդս այլոց՝ լուեր զանուանս աղանդաւորաց, յօժարեցան միաբանիլ յըն-տրութի նր. և զի գլխաւորն 'ի մետրապօ-լիտս պաղեստինացւոց էր եպսն կեսարեայ փիլիպպեայ, որ և կեսարիա պաղեստինու, նմին իսկ ակակիոսի եհաս ձեռն դնել նախ կիւրղի 'ի ձեռնադրութե անդ նր յաթոռն եղմի :

Իսկ այս գործակցութի ակակիոսի՝ որ էր մի 'ի հերքելոցն 'ի ժողովոյն սարդիկեայ, ա-րատ իմն գոգցես թուեցաւ արկանել 'ի վր սրբոյն կիւրղի. ոչ և նոյնօրինակ քամբասե-ցաւ զկնի սրբն մելիտոս անտիոքայ հայրա-պետս, որ 'ի նմին ակակիոսէ ձեռնադրեցաւ. զնոյն իմն և վս այլոց ոմանց ողջամիտ ե-պիսկոպոսաց, զորոց համբաւէին ակակիո-սեանք՝ թէ մեք ոչ ձեռն դնէաք նց, եթէ ոչ գիտէաք լինել զնս մեզ ձայնակիցս. այլ խաբեցան չարքն, և յամօթ եղեն յելից ի-րացն. զի ոչ այնպէս՝ ոչ կարծէին, վճարե-ցան իրքն : (3)

Քանզի երանելին կիւրեղ՝ որ յառաջին ըզ-գուշութի իւն ցուցանէր 'ի կշտամբել անդ զհերձուածս ժամանակին չկանոնսանելոյ յա-թոռ հայրապետութե առաւել համարձակ և անպատրուակ յանդիմանէր և յաղթահա-րէր զնս, և յայտնապէս Է բանիւ ասնէր զյայտնի հակառակօղսն Ճշմարտութե, և ըզ-բաղումս 'ի մոլորելոց դարձուցանէր 'ի Ճըշ-մարիտ հաւատս ուղղափառութե :

Իսկ

Իսկ յաւելուլ Տր շնորհել սրբոյ հայրապետին Կիւրղի լինել հայր բազմութեան նոր հաւատացելոց ՚ի ձեռն յաքարող սքանչելեաց երեւման սրբոյ խաչին յԵղմ. քանզի յառաջինում ամի անդ հայրապետութեան նր կմ ՚ի սկիզբն երկրորդին, այն ամին էր 351 կամ 352. յեօթներորդ աւուր ամսեանն մայիսի՝ զերրորդ ժամու աւուրն՝ երեւեցաւ յօդս խաչ մեծ հրաշալի լուսեղէն, որ յաղթէր պայծառութեամբ ճառագայթից արեգական, տարածեալ ՚ի վր սրբ լերինն գողգոթայ, և ձգեալ մինչև ՚ի լեառն ձիթենեաց, գեղեցիկ և սքանչելի յոյժ՝ պատեալ շուրջանակի պսակաձև նշոյլիւք իբրև զծիածան. և այն ոչ հարևանցի երևութացեալ, այլ հաստատուն տեսլեամբ ընդ բազում ժամս. մինչև ամենայնի տեսանել զայն ամ բազմութեան քաղաքին ։

Քանզի դղրդեցաւ քաղաքն ամ, և պակուցեալ հիացեալ կային առհասարակ ը սքանչելի տեսիլ սրբ խաչին ցուցեալ արփիափեղ. և ապա ամ բազմութի տեսողաց իբրև ՚ի միոյ ոգւոյ միաբան ընթացան ՚ի մայր եկեղեցին սրբ սիոնի՝ արք և կանայք, ծերք և տղայք, եթէ բնակք և եթէ եկք օտարականք, եթէ քրիստոնեայք և եթէ հեթանոսք. և իբրև ը մի բերան օրհնելով զքն մեծացուցանէին զնա հաւատս նր. և եղև ուրախուն մեծ հաւատացելոց. և բազումք յանհաւատից եկին ՚ի հաւատս քնի. և հրահանգեալ ՚ի սրբյն կիւրղէ՝ մկրտեցան ՚ի նմանէ

նէ և 'ի պաշտօնէից նր (4)։

Այս նա ինքն սբ Հայրապետն Կիւրեղ ականատես վկայ սքանչելեացն՝ մեծապէս գոհութիւն մատուցեալ փրկչին՝ փութացաւ գըրեաց գիր առ Կոստանդ կայսր, քարոզելով զմեծութիւն ահաւոր հրաշիցն։ Արդ թէպէտև քաջ գիտէր նա զխոտորումն Կոստանդեայ 'ի կողմն արիանոսաց, այլ առ շահելոյ զսիրտ նր՝ պատուասիրեաց ըստ սովորութէ անուանմբ գովութէ ածասէր և բարեպաշտ թագաւորաց. և յորդորեալ զնա ազդու բանիւք 'ի միտ առնուլ զզօրութիւն սբյ խաչին հանգոյն բարեպաշտ հօր իւրոյ Կոստանդիանոսի, և ածապաշտ կարգօք փայլեցուցանել զթագաւորութիւն իւր. զի և ոչ կարէր աւելի ինչ բացայայտագոյնս խրատել զնա վս ուղղափառութէ, զի մի գրգռեսցէ զնա ընդդէմ ուղղափառաց։ Յայս միտ խօսի և Ճառընտիրն զայն բան. * Մինչև Կոստանդեայ
,, թագաւորի որդւոյ մեծին Կոստանդիա-
,, նոսի գրել թուղթ աղերսանաց երանելոյն
,, Կիւրղի, և կոչել զնա բարեպաշտ և ած-
,,ային. իբր թէ ողոքանօք զնորայն կար-
,, ծեաց շահել փրկութիւն, որ մոլորեալ էր
,, զկնի արիանոսացն հերձուածոյն, ցուցա-
,, նելով նմա զածային նշանին երևումն,
,, և զբազմութիւն դարձելոցն նովաւ առ ած,
,, թէ զմէ՞ և ոչ դու ըստ նոսա ժամանեցեր‖։

Այս թուղթ է սբյն Կիւրղի, որ վերծանի յեկեղեցւոջ 'ի սկիզբն ընթերցուածոց տօնի երևման խաչին։

Յետ այսորիկ իբրև որ քան զօր մեծանայր համբաւ սրբութե և իմաստութե երանելոյն կիւրղի ճշմարիտ քարոզի բանին ուղղափառ վրդպութե , նախանձեալ է այն ակակիոսն չարանենգ եպսին կեսարու պաղեստինոյ , գրգռեաց հակառակութի ընդդէմ սրբոյ հայրապետին . և ժողովեալ զհամախոհս իւր յարիանոսաց և 'ի կեսարիոսեանց՝ յարոյց մեծ 'ի վր պատուոյ աթոռոյ , որպէս թէ չէր արժան կիւրղի այնպէս ինքնիշխանաբար վարել զհովուապետութի 'ի պաղեստինն . զի մեծ է առաւել պատիւ մետրապօլիտութե իմոյ քան զնորայն . և այլ ինչ բազում , յօդեաց 'ի վր կիւրղի և կեղծ անուն մոլորութե՝ որ յաղթահարելոյ նր է այլ աղանդոց և զարիոսեանն . և վն այսր ամի տիրաբար 'ի դատ կոչէր զնա , յուսացեալ յօգնականութի կայսեր . մինչև սպառնալ ընկենուլ զնա յաթոռոյ ։

Իսկ յոչ անսալ կիւրղի մնալոյ բանից նորա՝ եգիտ ակակիոս զայլ հնարս չարութե ամբաստանել զնմանէ առ իշխանակալն ։ Քանզի զայնու ժամանակաւ 'ի լինել սովու յերկրին պաղեստինացւոց , և 'ի դիմել բազմութե աղքատաց առ սր հայրապետն կիւրեղ , նա յետ բաշխելոյ զամ զոր ինչ ունէր՝ ետ վաճառել ինչ ինչ և 'ի սպասուց եկեղեցւոյ 'ի պէտս կարօտելոց ։ Ըստ այսմ կարծեաց տնտեսութե հայրագութ խնամոց քաղցր հովուէին , և զկատարեալ ողորմածութի նր՝ առիթ առեալ ակակիոսն , համբաւէր զերանելին իբրև գող

սպասաւոր եկեղեցւոյ, մատնիչ զանձուց, և քակտիչ ամ կարգաց. և հանդերձ համախոհ եպսօք վերստին սպառնալիս կարգեն 'ի վ՞ր նր՝ կոչեաց զնա 'ի դատ ժողովոյ, որպ թէ առ արդարացուցանել զանձն ։ Իսկ յոչ անսալ սրբոյն կիւրղի անիրաւ և կասկածելի կոչմանն նր և որոց է նմա կեղակարծ և մալորամիտ անձանց, զայրացաւ ակակիոս և 'ի բացակայութե սրբոյն ընկէց զնա իբրև պարտաւոր յաթոռոյն եհմի. և այնչափ բռնացաւ, մինչև հալածել զկիւրեղ քաղաքէ 'ի քաղաք, և ինքնին տիրել աթոռոյ նր, մինչև դիցէ զոք այլ արքունի իշխանութբ ։ Իսկ սրբոյն կիւրեղ իբրև հարկեցաւ մեկնիլ յեհմէ, բողոքեաց 'ի մեծագոյն ժողովս ողջամիտ եպիսկոպոսաց, և այնպէս փախստեայ անկայանտիոք տարսոնոց. այլ ոչ կարաց անդ մնարել լինել. զի այն ինչ վախճանեալ էր զևոնդիոս եպս տեղւոյն, և աթոռն էր առանց հովուի ։ Իսկ զի ոչ կարէր յայլ երևելի աթոռս դիմել, զի 'ի բազումս 'ի նոցանէ զօրացեալ էր բռնութի արիանոսաց, եկ դնաց 'ի տարսոն կիլիկեցւոց՝ առ երևելին սիղուանոս եպս. որ թէպէտև կուսակից էր կիսարիոսեանց, այլ ոչ ուստր յուղղափառաց. վսյ սիրով ընկալաւ զկիւրեղ, և պատուով թոյլ ետ նմա քարոզել զբանն այ առ ժողովուրդն տարսոնի ։ Յայնժամ գրեաց ակակիոս առ սիղուանոս, թէ կիւրեղ մերժեալ է յաթոռոյն, և չէ պարտ հաղորդիլ ը նմա. վսյ և յորժ մեղադրանօք սպառնայր սիղուանոսի

վս ընդունելութեն կիւրղի ։ Այլ նա զբանս նորա իբրև զառասպելս համարեցաւ ․ և ՚ի մեծ յարգի ունէր զկիւրեղ ․ Թող զի ակնածէր և ՚ի ժողովրդենէ՝ որք զվճպուն կիւրղի ամ փափաքմամբ ընկալան ․ նմին իրի ոչ ի՛իք արգել զնա յեկեղեցւոյ ․ և կիւրեղ իմաստութբ իւրով շահեցաւ զսիղոնանոս ՚ի բաց կալ ՚ի Թաքուն արիանոսաց և ՚ի կիսարիոսեանց ։ Իսկ զի յայնմ ժամանակի լինէր ժողով ՃԾ եպսաց ՚ի սելևկիա իսաւրացւոց յամի տն ․ 359․ գնաց անդր և կիւրեղ հանդերձ սիղոնանոսիւ, և ընկալեալ եղև յամենեցունց ՚ի հաղորդութի ։

Հասեալ անդր և ակակայ գործակցօք իւրովք՝ ասէ անպատկառ ցժողովեն եպսունս ․ չէ՛ մարթ մեզ հաղորդիլ ը ձեզ ՚ի խորհուրդ գումարմանց , մինչև ոչ հանցի ՚ի ժողովոյ աստի կիւրեղ՝ որ անկեալ է յեպսութէ ։ Իսկ ՚ի լինել հակառակութե , ոմանք յեպսաց իբրու հնարս խաղաղութե խորհելով յորդորէին զկիւրեղ ելանել ՚ի ժողովոյն , խոստանալով ևս նմա՝ զի յետ քննելոյ զխնդիր հաւատոյ՝ տեսցեն և զիրաւունս նր ։ Այլ անհնար եղև կիւրղի յանձն առնուլ զայն ․ զի ոչ միայն անարգութի մեծ էր այն սմա աթոռոյն ե.մի , այլև յայտնի նշանակ յառաջանալոյ գաղտնի հնարից կիսարիոսեանց ընդդէմ իւր և ընդդէմ ամ ուղղափառաց ․ վսյ պնդէր , թէ կամ որոշեսցի խնդիր հաւատոյ յառաջիկայումն իմում , և կամ նախ ցուցից ես զիրաւունս իմ և զբռնութի ակակիոսեանց ։

Իսկ

Այլ իբրեւ իրաւացի դատեցան հարքն զբանս կիւրղի, ըմբոստացեալ ակակայ՝ եւ ՚ի բաց ՚ի ժողովոյ անտի բարկութբ̃՝ իւրովքն հանդերձ։ Յայնժամ հարքն ժողովոյն քննեալ զդատ կիւրղի՝ հաստատեցին զնա անդրէն լինել արժանաւոր ժառանգ սր̃յ աթոռոյն եր̃մի. եւ կոչեցին զակակ զալ յանդիման լինել ատենին, եւ տալ պխ̃նի վ̃ս հակառակութե̃ց եղելոց ը̃դէմ կիւրղի, եւ արդարացուցանել զանձն ՚ի համախոհութե̃ արիոսի. նոյնպէս ազդ արարին եւ այլոց եպ̃սաց՝ որք համամիտք էին ընդ ակակայ։ Այլ յարհամարհել նց̃ զհարս՝ նք̃ եւ մերժեցին զակակ եւ զգործակիցս նր̃ իբրեւ խռովարարս եւ համախոհս արիոսի. յորս նշանաւոր էր եւդոքսիոս՝ որ բռնացեալ էր յաթոռն անտիոքայ, այլ չունէր զհաստատութի յարքունուստ։

Զայս գիտելով ակակայ՝ խրատ ետ եւդոքսիոսի չմտանել ՚ի ժողով անդր սելեւկիոյ, եւ սրտապնդեաց զնա չերկնչել յայլոց եպ̃սաց. զի եւ եղէց ասէ պաշտպան անձին քո առաջի կայսեր, եւ տաց զքեզ նստուցանել յաթոռն անտիոքայ կ̃ կոստանդնուպօլսոյ. զի ոչ մեծն եւսեբիոս կեսարացի սիրելի էր յոյժ յաչս մեծին կոստանդիանոսի, նոյնպէս եւ յաչս որդւոյ նր̃ կոստանդեայ պատուեալ էր անարժանն ակակիոս յաջորդ եւսեբեայ։ Սովին խորհրդով առեալ ակակայ զեւդոքսիոս ը̃ իւր՝ դիմեաց ՚ի թգ̃ւորն̃ քղ̃քն ՚ի կոստանդնուպօլիս. եւ մատուցե̃ առ կայսրն կոս-

քաղաքի անդ յամի 360 . ուր նոքա յանդգնեցան հերքել զկիւրեղ և զմիաբանեալսն ընդ նմա իբրև խռովիչս և մոլորեցուցիչս . վասն և կոստանդ. հաւատս ընծայեալ նմ՝ եհան հրաման արտաքսահմանութեան ընդդէմ կիւրղի և գլխաւոր գործակցաց նր . իսկ զեւդոքսիոս արիոսականն նստոյց ըստ խնդրոյ ակակայ յաթոռն կոստանդնուպօլսոյ ։ Այլ այնու հետև յամ կողմանց զօրացաւ ակակիոս չարն . և երթեալ 'ի տարսոն՝ ետ աքսորել զսիղուանոս և զկիւրեղ 'ի տեղիս հեռաւորս , նոյնպէս և զայլս յուղղափառ եպիսկոպոսաց .

Արդ զառաքունի հովուէութիւն ետ 'ի գայլ յափշտակիչ յեւնոմիոս եպս գերմանիկոյ . իսկ յեղէմ կարգեաց առ ժամանակ մի փոխանակ սրբոյն կիւրղի զեւտիքիոս ամն եպս թշնամի նր . որպէս և յետ սակաւուց զայլ ոք . զի հաւատացեալքն առաքինորդեալքն 'ի քաջ հովուէէն խուրեանց ոչ համբերէին այնպէսեաց չարափառ և չարաբարոյ առաջնորդաց . վասն որոյ զարձեալ ասի յոմանց՝ թէ 'ի սմին միջոցի առաջնորդէր եկեղեցւոյ հերետիկոս կմ արհենիոս անուն , և ընդ այլոց հերակլիոս կմ կիւրղոս անուն . զի սոյզն է անգիտելի . մինչև 'ի դէպ է կարծել , թէ հաւակ յետոյ ակակիոս 'ի խնդրոյ ժողովրդեան կացուցեալ իցէ առաջնորդ այնր աթոռոյ զծերունին յուդա , այն որ հաւատաց 'ի ժամանակս գիւտի խաչին առ հեղինեաւ , և կոչի միւս կիւրեղ՝ իբրև եպս եղմի . որ և

յետ սակաւուց նահատակեցաւ. հանդերձ մարբն 'ի յուլիանոսէ. ոպ՟ տեսցի զկնի:

Բայց արդ Թէպէտև ոչ սակաւ ժամանակս այսպէս աւեկոծ լինէր եկեղեցի յերեսաց արիանոսաց զօրացելոց, ոպ՟ և փոքր մի զկնի յուզէր հալածանօք յուլիանոսի ուրացողի, այլ ած 'ի բարին եկեղեցւոյ տնօրինեաց զամ: Քանզի իբրև մեռաւ յայն աւուրս կայսրն կոստանդ, և Թագաւորեաց յուլիանոս յամի տն. 361. սա զառաջինն առ 'ի տալ զկարծիս խաղաղասիրութե և սուտ մարդասիրութե, Թո՛ղ զցոյց իշխանասիրութե և փառասիրութե, հրաման ետ յետս կոչել յաքսորանաց զամ եպսն տարագրեալս 'ի հրամանէն կոստանդեայ:

Եւ այնպէս դարձաւ յարտասահմանութէ և սբն կիւրեղ. և 'ի դալ իւրում յեէմ՝ յոր ժամանցանէր ընդ անտիոք, ուր էր յայնժամ և Թագաւորն, բազում մարդասիրութբ ընդ կալաւ զնա սբն մելիտոս հայրապետ անտիոքայ. որ և յանձնեաց կիւրղի մանուկ զոմն որդի քրմի՝ այն ինչ եկեալ 'ի հաւատս, և փախուցեալ 'ի ձեռաց հօր իւրոյ և յուլիանոսի. և կիւրղի առեալ զայն գիշերայն՝ ել 'ի քաղաքէն, և եկն յաԹոռ իւր յեէմ. ուր երախայացոյց և մկրտեաց զմանուկն. և յետ ժամանակաց երանելի մանուկն այն դարձոյց և զհայր իւր 'ի սբ հաւատս: Եւ զի այսչափ ընտանութի էր ընդ մելիտոս և ընդ կիւրեղ, որք միանգամ Թշնամիքն էին մելիտոսի յուղղափառաց անգամ, ընդ ակամբ

հայ

Հայէին և 'ի կիւրեղ. և զերկոցունց եւս սուտ քամբասանս յօդէին՝ դիւրահաւան լինելով զրպարտութեց և չարախօսութեց բերանոյ արխանոսաց :

Յետ այսորիկ յամի Տն. 363. 'ի գալ միւսանգամ յուլիանոսի յարեւելս առ. 'ի գնալ 'ի պատերազմ ընդդէմ պարսից, իբրև դէպ եղև առնել նմա աւուրս ինչ 'ի պաղեստին, մատեան առ. նա գլխաւորք հրէից՝ որ յեհէմ. և խնդրեցին դիւրութի առնել նոցա յերեւսաց քրիստոնէից. և շինել համարձակ ժողովարան և աղօթատեղի. որով խորհէին խորամանկքն՝ եթէ հնար ինչ իցէ, և զտաճարն գլխովին վերստին կանգնել: Յայնժամ անօրէնն յուլիանոս՝ որ զամ հնարս հնարէր յեղծումն քրիստոնէութե, սկսաւ գովել զգիրս և զօրէնս հրէից՝ ոչ տեղեակ անծամբ՝ քան զքրիստոնէից. և տուեալ զամ ազատութի՝ հրամայեաց յայտնապէս զոհ եւս մատուցանել ըստ օրինացն մովսեսի: Իսկ հրէայքն ասեն. չէ մարթ մեզ մատուցանել ուրեք զոհ, եթէ ոչ շինեսցի տաճար, յորում եւեթ օրէն է մեզ զոհել: Եւ նա անդէն վաղվաղակի մտադիւր կամօք զիջանեալ նոցա առաւել քան զոր խնդրէին. զայն տաճար ասէ՝ զոր տիտոս կործանեաց, ես անդրէն 'ի տեղւոջն կանգնեցից. արդ բուռն հարէք դուք 'ի շինել 'ի հիմանց, և ես ըզծախս լցից յարքունի գանձուց. զի ոչ եթէ զտաճարէն ինչ փոյթ էր նմա, այլ ընդ Քսի կարծէր մարտնչել նովաւ :

Ընդ

Ընդ այս բանն նոյն լցան անսասելի խնդութեամբ ժողովք հրէից . և 'ի տարածիլ համբաւոյ՝ գունդագունդ հեղան զեղան որպէս մեղուք հրէայք յամ կողմանց յեէմ , և խնդամիտ ձեռն 'ի գործ առնէին արք և կանայք , զի և առքա զամ զարդս իւրեանց հանէին ժողովէին 'ի պէտս տաճարին . և զամ փափկուն մնացեալ՝ անձամբ գործակից լինէին գործաւորաց , ոչ 'ի բերել անդ զգեստինն , և 'ի կրել զհող 'ի գոգս իւրեանց : Այլ ո՞ կարէր տանել յայնմ վայրի մեծաբանութե ազգին հրէից , որով պալծէին ընդդէմ քրիստոնէից՝ նախատելով զնս , և հայհոյելով զքս . ոչ թէ եկեալ հասեալ իցէ նորոգումն թագաւորութե իւրեանց , և ասնհարութի ամ ժողովոց հաւատացելոց 'ի յն իւրև 'ի թագաւոր մեսիայն :

Այլ այնչափ մեծ էր ակնկալութի հրէից և փոյթ պնդումն նց , մինչև յուսովն այնուհիկ չինելոյ զնոր տաճար հոյակապ՝ քակեցին և զբազումս 'ի մնացեալ քարանց հիմանն հնոյ տաճարին : Յայնժամ լցաւ մարգարէութի սբյն կիւրղի , զոր ասացեալ էր նր երբեմն 'ի քարոզութե իւրում , թէ եկեսցէ ժամանակ՝ զի և այդ մնացուածք քարանց քակտեսցին ըս տն բանի , և թէ յերեսաց արկածից իւրեք , և եթէ պատճառանօք չինուե . և եղև այնպէս . զի հրէայք ինքնին ձեռօք իւրեանց քակեցին և 'ի բաց հանին զքարինս առ արկանել հիմն նոր . և զհող տեղւոյն հանեալ կուտեցին բլուրս բլուրս . ոչ

և

քեալն քո յուսայեալք դժնդակ նեղութք և զաւռն տանջանօք ելլին յՃէս, և ոչինչ օգտեցան . վմյ հաւանեցարուք ինձ, և զոհեցէք ածոցն . ապա թէ ոչ՝ անհնարին չարչարանօք կոտտամահ առնեմ զձեզ, մինչև հանից զհոգիս ձեր ։ Սրբյն ասէ . ոչ կարես այնպիսի տանջանս պատրաստել մեզ, ոպ և քո պատրաստեալ է դիւացն և որոց պաշտենն զնս, որ իբրև զքեզդ իցեն ։ Յուլիանոս ասէ . և դուք այդպիսի յուսով մեռանիք ՚ի զուր վն խաչելոյն ։ Սրբյն ասէ . ոչ է ունայն յոյսն մեր, զոր ունիմք առ խաչելեալն ած, որ մեռաւ վն մեր և յարեաւ, զի զմեզ կենդանացուսցէ յաւուրն յետնում . բայց դու մի ՚ի զուր հպարտանար ՚ի վն ծառայիցս քոց . որ ներելովն այ պերճացեալ ունիս զթագաւորութիւն՝ որ վաղվաղակի եղծանի, և դու ընդ նմին ապականիս . փոխանակ զի ոչ ծանեար զժամանակ այցելութե քո . այլ դարձար յետս, և եղեր չարին անօթ, և տեղի բանսարկուին ։

Բարկացեալ թագաւորին ընդ բանս սրբյն՝ ետ նախ հատանել զաջ ձեռն նր . զի զբազում դարձոյց ասէ ՚ի դիցն պաշտելութե դրով ձեռինդ այդորիկ, և մկրտեաց ։ Յայնժամ սկսաւ գոհանալ սբ եպսն զայ, և ասէ . այս առաջին յանցանաց իմոց քաւութի՝ հատումն ձեռինս, որով գրեի ՚ի բաց կալ ՚ի քոէ՝ մինչդեռ ՚ի հրէութեն էի . արդ լաւ է ինձ միաձեռանի ՚ի կեանս յաւիտենականս մտանել, քան ողջանդամ ՚ի գեհեանն ան-

թագին այնմ ։ Երկանէին և ձիւթ 'ի հուրն,
և աղաղակէր (ըստ այլոց՝ աղ և ճարպ) զան-
ձամբ սրբյն ։ Մինչդեռ յայն տանջանս էր
երանելին, ամբարձ զձայն իւր եբրայեցե-
րէն՝ ըստ որում յառաջ բերեն վկայագիրք, և
ասաց զաղօթս՝ որ թարգմանի հայերէն օ-
րինակ զայս ։ Ո՜վ Տէր անչափդ, որ վ͞ս մեր
չարչարեալ՝ եւ տուր կեանս այնոցիկ որ հա-
ւատան 'ի քեզ ։ որ մարգարէիւն յովնանու
զօրինակ երեքօրեայ յարութե քո ցուցեր մեզ ։
որ զընտրեալ մարգարէն քո զեղիաս հրե-
ղէն կառօք յերկինս յափշտակեցեր ։ Եւ որ
և յայս դատաստան, և թեթեւացո զիս 'ի
ցաւոցս յայսցանէ ։ զի վ͞ս անուան քո կրեմ
զայս ։ (3)

Զանձրացեալ յուլիանոսի յարիական համ-
բերութե սրբյն կիւրղի, և ոչ իշխեալ այլ ինչ
առնել, եւ տանել զերանելին 'ի բանտ ։ և
զմայրն պահել յընդարձակի ։ իսկ ծերու-
նին անմա մատուցեալ 'ի բանտն առ որդին
ասէր ։ որդեակ բարիոք նահատակեցար վ͞ս
անուանն քի ։ արդ կայ և մնայ քեզ արդա-
րութեն պսակն ։ զի պսակակից լիցիս սրբյն
ստեփանոսի նախավկայի, որ էր 'ի նախ-
նեաց հաւուց քոց ։ բայց յիշեա՛ որդեակ ։ զի
հայր քո հրէայ մեռաւ, (և չեղև արժանի
մասին սրբց ։ ոչ մեզս վիճակեցաւ 'ի տնէ) ։
արդ արա՛ աղօթս վ͞ս իմ, զի և զիս ընկալցի
ք͞ս Ը սիրելիս անուան իւրոյ (4) ։ և արժանի
եղէց տեսանել զհաւատոցումն քո 'ի տնէ
զանապական բարիսն և զանթառամ պսակն ։

Իբրեւ զգացուցին յուլիանոսի սպասաւորք մոք բանիցս այսոցիկ, հրամայեցաւ ածել զնա առաջի իւր. եւ ասէ ցնա. ով կին դու, որդին քո ընտրեաց զմահ, այլ դու զկեանս քո ընտրեա՛, եւ կեա՛ց 'ի պաշտաման դիցն ։ Նա ասէ. Նա զերկրաւորս արհամարհեաց, զի յաւիտենականին է ցանկացեալ. նոյնպէս եւ ես. մինչ ցորչափ իցեմ կենդանի, զպաշտօնն իմ քի մատուցանեմ, եւ ոչ դիւա՛ց պղծոց ընդ կռապաշտից ։

Յայնժամ ետ կախել զնա բռնաւորն զհերաց, եւ քերել զմերկ մարմինն երկաթի քերչօք, եւ հատուցանել մինչեւ յոսկերսն ։ Իսկ 'ի տալ նր գոհութի փառս այ, ասէ յուլիանոս. զի՞ է քեզ անմա, հաճեցա՞ր ընդ քերանս որք տիրեցին քեզ, եւ ընդ արիւնդ՝ որ թանայ զերկիր ։ Իսկ նա ասէ. ով ապստամբ յայ ամչ գիտես, զի չզգացի ինչ ես 'ի տանջանացս առ սէրն քի. եթէ ունիս եւ այլ չարչարանս մահուչափ, պատրաստ եմ սիրով ընդունել, եւ յամօթ առնել իմովս տկարութբ զհայր քո զսատանայ 'ի ձեռն փրկչին իմոյ, որ զօրացուցանէն զիս ։ Յետ այսորիկ մատուցին ջահս 'ի կողս նր, եւ այրէին զմէջսն. իսկ սրբ կինն կացեալ յայնպիսի տանջանս կախաղանին իբրեւ ժամս երիս՝ աղօթէր լռելեայն. եւ ապա ասէ լսելի ձայնիւ. Տէր ած զօրութեանց, արարիչ իմ եւ յոյս, որ փրկեցեր զսիրելիս քո յամ փորձութեանց հոգւոյ եւ մարմնոյ 'ի հին եւ 'ի նոր օրէնս, լուր եւ ինձ աղախնոյ քո, զի կատարեցից զընթացս իմ.

եւ

և ցնծալով մտից 'ի հարսնարանդ քո Է̅ սրբոյն
յուդայի որդւոյն իմոյ ։ Եւ զայս առաջեալ
անձնայի՝ աւանդեաց զհոգին իւր առ Ած ։
Իբրև գիտաց զայն որդի նր 'ի բանտի , ու-
րախ եղև յոյժ 'ի տր ։ և գոհացեալ զայ՝
խնդրէր փութով կատարել ըս օրինակի մօր
իւրոյ ։ Եւ կոչեալ զնա յուլիանոս յատեան ։
և տեսեալ զնա զոճարթերես , զարմացաւ ,
և ասէ ։ որո՞վ կախարդանօք զմեզ առ՝ հա-
սարակ բթեցեր և ապշեցուցեր՝ առ ոչինչ
համարելով զայնքան կարծրագոյն տան-
ջանս ։ Իսկ սրբ եպսն յանդիմանեաց զխրա-
տասրտութիւն չարին՝ ասելով ։ յամօթ լեր
ածամարտ դու , զի զզօրութիւն այ դիւաց
համարիս ։ և զի դու օտարացար 'ի Ճշմար-
տութէ , խորհիս 'ի խաւար ածել և զորդիս
լուսոյ ։ այլ ոչ թողցէ տր զյուսացեալս իւր ։
և դու ըս արժանի քում ամբարշտութեդ ըն-
կալցիս զպատուհաս յարդարադատ դատա-
ւորէն կենդանեաց և մեռելոց ։ քանզի և ոչ
ևս դարձցիս կենդանութբ 'ի Ճանապարհէդ՝
յոր երթալոցդ ես ։ փոխանակ զի այդչափ
դառնացուցեր զած կենդանի ։

Հրաման ետ յուլիանոս թողչաց՝ բերել
քարբս և օձս թունաւորս ։ և լցեալ զնա 'ի
գուբ մի՝ ընկեցին զսբն 'ի մէջ նց ։ Իսկ ե-
րանելին յարուցեալ կայր յաղօթս 'ի մէջ
դժնդակ սողնոց թունաւորաց , և ասէր ։
տր ած իմ լուր աղաչանաց ծառայի քո ։ որ
զյովսէփ փրկեցեր 'ի գբոյ տառապանաց , և
զդանիէլ 'ի բերանոյ առիւծուց ։ և ետուր

հրամանս ծառայից քոց գնալ 'ի վր իժից և քարբից, և կոխել զզօրութիւն թշնամւոյն. և այժմ արա առ իս զգութ մարդասէր շնորհաց քոց, և ապրեցո զիս 'ի թունից զազանացս. զի ծանիցեն ամենեքեան, թէ դու միայն ես ճշմարիտ Աստուած, և կարօղ յամի: Եւ իբրև ոչ մերձեցան 'ի նա ամենևին սողունքն, լի եղև յուլիանոս դառնութբ, և հրամայեաց հանել զնա եկեղն 'ի գբոյն, և զսողունսն հրով այրել:

Յայնմ վայրի թողեաց աւազն՝ որոյ անունն էր ադոն (կիրակոսն ադամոն, ըստ այլոց՝ ամմոն կիր. ադոն) լուսաւորեալ առ յոյս՝ մատեաւ առ թագաւորն, և ասէ. ով թագաւոր լի ես յիմարութբ. ոչ տեսանես զամենայն սա, զի ոչ այլուստ են այս սքանչելիք, բայց 'ի քէն. ո՛չ ձառեն գիրք քրիստոնէից զահաւոր զօրութիւն նր. և ոչ կարեն ըղձեմ կալ ձեռին նր կախարդութիւնք դիւապաշտից, և ոչ բնութիւնք արարածոց ումն. արդ զի՞ կամք մտամք տակաւին յանհաւատութէ մերում. այլ ես այսուհետև ճշմարտութբ հաւատամ, եթէ մե՛ծ է Աստուծն քրիստոնէից, և նա միայն է Աստուած ճշմարիտ, և չիք ոք այլ բաց 'ի նմանէ. նոյն ժամայն ընկալցի և զիս իւր 'ի ծառայ ըստ անքակտելի ողորմութեն իւրում:

Յայնժամ ել հրաման 'ի թագաւորէն՝ փաղփաղակի բառնալ զայրն 'ի կենաց սրով. և նա այնպէս բարի հաւատով կատարեցաւ 'ի քս՝ մկրտեալ արեամբ իւրով: Իսկ թագաւորն դարձեալ սկսաւ խօսել ընդ եպսին, և ասէ.

աւէ · ապշեցուցեր զամենեսեան , եւ մոգու-
թեամբ քով կորուսեր զմեծն 'ի Թովիչս · բայց
դու մի՛ ակնկալցիս ապրել 'ի ձեռաց իմոց ,
մինչեւ ուրացցիս զխաչելեալն : Պ՟խնի ետ
սբ̃ն կիւրեղ · ով Թշնամի ճշմարտութեան եւ
ատելի այ̃ , սիրտ ծորեալ , եւ միտք շրջեալ ·
զայդչափ բարերարութեան զարմանս տեսեալ
քո եւ ոչ դադարես 'ի մոլորութենդ · այլ յամա-
ռեխս յազդմանէ չարին 'ի խորհուրդս չարու-
թեան , եւ զիս կարծես նման քեզ առնել ու-
րացող :

Իսկ բռնաւորն ցդահճս · լցէք սան մի մեծ
ձիթով , եւ ջեռուցեալ սաստիկ , ընկեցէք
անդր դդա · զի խարշատեալ կիզցի եւ կորի-
ցէ : Իսկ սբ̃յն կնքեալ զինքն նշանաւ սբ̃յ
խաչին՝ եմուտ ինքնին 'ի սանն · եւ ահա առ-
ժամայն շիջաւ հուրն , եւ զովացաւ եռանդն
ձիթոյ · եւ նա յարուցեալ օրհնէր զած̃ 'ի մջ̃
անպատում սքանչելեացն : Իսկ բռնաւորին
մոլեալ ցասմամբ՝ ասաց գեղարդեամբ խո-
ցել զնա · որով աւանդեաց զհոգին՝ կատա-
րեալ յաղթութեամբ երանելին Եպ̃սն կիւրղոս ,
զկնի բարեյաղթ մօր իւրոյ աննայի , եւ բա-
րեբախտիկ Թովչին ադամի : Իսկ յուլիանոս
քսամարտ՝ ոչ դարձաւ 'ի պատերազմէն՝ յոր
գնաց , ըստ գուշակութեան սբ̃յն կիւրղի · այլ ան-
դէն սատակեցաւ յաներեւոյթ զօրութենէ փրկ-
չին մերոյ եւ այ̃ · որում փառք յաւիտեանս ·
ամէն : (5)

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Ասացաք սակաւուք 'ի ծանօթութեանս նախընթաց սրբոյն կիւրղի եՃմայ հայրապետի, թէ ընդ հին տօնացու-ցի և Ճառընտրի մերում նոյն աւանդի նա ընդ անուն կիւր-ղի եպիսի նահատակելոյ ընդ մօր իւրում աննայի. այլ ընդ Հ. և այլ վկայաբանից՝ զատանին յերկուս. ուստի և մեք տօնեմք այժմ զերկոսին ուրոյն ուրոյն 'ի միում աւուր սոսա. այժմ հարկ է տեսանել զստուգութիւն կամ զանստուգութիւն իրացս՝ ընդարձակ քննութեամբ: Եթէ ստոյգ դատանիցի վկայաբանութիւն կիւրղի եպիսի, ստուգի և զա-նազանութիւն նորա յաւագինոյ կիւրղէ. ապա թէ ոչ՝ հարկ է կամ նոյնացուցանել զերկոսին, և կամ պարտութ խոս-տովանել՝ թէ մնայ իսկութիւն իրացն անգիտելի:

Ստոյգ երևի վկայաբանութիւնս կիւրղի եպիսի ընդ մօր իւ-րում աննայի. զի միօրինակ աւանդեն զայն ոչ միայն յայսմաւուրք Հ. Յ. և Լ. ընդ այլևայլ համառօտ ոճով իւրեանց, այլև ընդարձակ վկայաբանութիւն գտեալ՝ 'ի հին մատենանս 'ի կարգի պատմութ գիւտի խաչին, զոր բաղ-դատութեամբ բազում ձեռագրաց տպագրեցին բոլլանդ-եանք, զնոյն ունի պատմութիւն. և 'ի նոյն աղբերէ ա-ռեալ երևի որ ինչ աւանդի յառաջին պատմագիրս և 'ի վկայագիրս. մինչ զի և Ճառընտրին թէպէտ նոյնա-ցուցանէ զերկու կիւրեղս, այլ շատ է զի ընծայէ կիւր-ղի զնահատակութիւն հանդերձ մարբն. որ ոչ է անկ աւագինոյն կիւրղի, այլ՝ երկրորդին կիւրակոս կոչե-ցելոյ:

Եւ այնչափ հանդիսացեալ է յարեմուտս այս կիւրեղ յուդայ՝ որ և կիւրակոս, զի ընդ եկեղեաց եկեղեաց ա-ռանձին յիշատակաւ պատուեալ՝ յաւելուն և զանազան աւանդութիւնս, որք թէ և ստեացին ընդ անհամաձայնու-թեանց, այլ ոչ սակին ընդ միաձայնութեան. զոր և արժան է լսել երկայնմտութեամբ:

Հռաբանոս և Նոտկերոս 'ի վկայագիրս իւրեանց 'ի մայիսի. 1. ունին յայտնապէս այսպէս. * Ցեղէմ նա-
„ հատակութի սրբոյն յուդայի կամ կիւրակոսի եպսի, ո-
„ րում յայտնեցաւ փայտ տէրունական խաչին ||: 'Ի նոյն միտս և յայլ բազում վկայագրութիւնս արևմտեայց, ուստի և յօրինակն բեդայի գնի. * 'Ի նմին աւուր (մայիսի.
„ 1)

„ 1) Նահատակութիւն սբ̃յն յուդայի եէմացւոյ՝ կիւրա-
„ կոս կոչեցելոյ ||: Միայն ոմանք զօրն միով աւուրբ յառաջ դնեն, ցայարիլի. 30. ուր դնելի էր յիշատակ կոմկրինոսի վկային՝ որ ՚ի հռովմ, շփոթելով զանուանն կիւրակոս ընդ կոմկրինոս: Այլ բազումք են՝ դուցէ ուղղագոյն են՝ եդին է ուստանարգասի և ադոնի վկայաբանից ՚ի մայիսի. 4. (զորմէ և զկնի լիցի բան): Զնոյն չորրորդ օր մայիսի ունին և անկոնացիք վն̃ տօնի սբ̃յն կիւրակոսի եպ̃ի պաշտպանի քաղաքին. նոյնպէս և կարգն խաչակրաց՝ որ կայր յերկրին բելգայ, զնոյն սբ̃. տօնէր իւր պաշտպան՝ ը̃ որում եղև գտօղ սբ̃յ խաչի. նոյնպէս և կարգն կարմեղականաց, և ամենեքին՝ որք ունէին ինչ առնչութիւն է ընդ երկրի և եէմի:

Այլ թէ ՚ի բաւն Ճարձակ վկայաբանութեան առ լատինացիս թուէր նշանակիլ համաձայն այլոց՝ որ կատարման սբ̃յն կիւրակոսի մայիսի. 1. պատճառ յետնոց փոխադրելոյ ՚ի 4 մայիսի՝ առի լինել այն, որ հաստատէ զմեր խնդրելին. զի որովհետև ՚ի մայիսի. 1. է առ լատինս տօն սբ̃ց առաքելոցն փիլիպպոսի և յակոբայ, և ՚ի մայիսի. 3. գիւտ խաչին, լաւագոյն համարեալ են հանել զտօն գտողի խաչին ՚ի սկզբնէ մայիսի՝ ուր կայ տօն առաքելոց, և փոխադրել ՚ի յաջորդ օր գիւտի խաչին: Եւ այսմ պատճառ կարծին լինել նախ գաղղիացիք. զի ը̃ աւանդութե նց՝ յորժամ գլուխ սբ̃յն կիւրակոսի բերաւ յեէմէ յաւրելիա, կամեցան՝ մասնաւոր տօնախմբութբ̃ կատարել զյիշատակ նր̃. բայց առի՝ թէ յամի տն̃. 1562. նոր աղանդաւորք այրեցին զգլուխ սբ̃յն է այլ բազում նշխարս սբ̃ց:

Թող զի և յայլ զանազան տեղիս Յին գաղղիոյ կային երբեմն ոսկերք կամ նշխարք մեծամեծք յանուն սբ̃յն կիւրակոսի եպ̃ի և վկայի, համարեալք սորին յուդայի եէմացւոյ. բայց այլք երկբայէին՝ թէ գուցէ այլոյ համանուն սբ̃յ իցէ: Որպէս և ՚ի հռովմ ՚ի վանս ինչ կուսանաց գոյր մարմին ուրուեմն սբ̃յն կիւրակոսի. զոր ոմանք եպ̃ս եէմացի համարեցան, և այլք հաստատեցին լինել սարկաւագ հռովմայեցի: Կայ և ցարդ յանկոնա քաղաք իտալիոյ մարմին պաշտպանի քաղաքին. զոր բնակիչք տեղւոյն է բազում ժամանակս համարեցան լինել յուդայի եպ̃ի եէմացւոյ. բայց յետոյ քննութբ̃ հաւանելի եղև այլ ոք գոլ ՚ի սբ̃ց:

Այս եմ սխալմութիւն աւանդից միօրինակ առուգէ զվկայաբանութիւն մեր, թէ ուրեմն ամենեքին ենթադրէին

մասոյ)․ և որ և՛ս յայտնին է՝ Ըէ՛ր ոչ խոստովանի, թէ անուանս յունական Եւսեբիոս՝ ըստ հնչման նմ̃ Եւսեբիոս, նոյն է ըստ լատինականին Եւսեբիոս․ և երկաքանչիւրն նշանակէ Բարեպաշտ, և անխտիր առի զոր և է հայրապետաց և զթագաւորաց անգամ։ Զխմբգ և զոր ՚ի լատին թարգմանիչն մեղադրէ, թէ զմակարիոսն պէտրոս է իմացեալ՝ որ է երանելի, փոխանակ պահելոյ զյատուկ անունն, չմերձեցուցանէ և յանունդ Եւսեբիոս՝ թէ պարտ էր թարգմանել Բարեպաշտ, և ոչ պահել զյատուկ անունն․ յարոյ ՚ի գնելն ունէր և զայն նշանակել՝ թէ առ նախնիս բանս․ կոչէին անխտիր սր և է հայրս և հայրապետս․ վն որոյ չէ ինչ, եթէ վրիպակաւ Եւսեբիոս ամն պապ, Փ բարեպաշտ հայրապետ ձեռնադրող կիւրղի՝ խառնեալ իցէ ըստ անուան Սեղբեստրոսի պապի Եւսեբիոս կոչեցելոյ։

Այլ թողեալ զայս, և եդեալ թէ հին պատմաբանք համարեցան ընդ հեղինեայ եկեալ յեէմ զՍեղբեստրոս հայրապետ, միթէ զանկարելին առասցեն, կմ թէ մե՞ղս գործեցին․ զի ահա և Վարդան ՚ի ներբողս լուս․ յիշէ զայս աւանդութի հին․ թող նախ դոցէ այլոց քննասէր բաքերպոք զճշմարիտ պատմութի սբյն Սեղբեստրոսի (զի զոր կայ՝ չկարէ ըստունել), և ապա յայլոյ ոճ մանգաղ արկցէ։

Երկրորդ անտեղութի կմ առարկութի բաքերպրոքայ այն է, թէ անուն Կիւրակոսի՝ որ առի լինել յաջորդ Մակարայ եէմի հայրապետի, չէք ՚ի գաւազանագիրս պատրիարգաց այնր աթոռոյ։ Այլ յայտ է՝ թէ այս ըդէմութի ոչ ուժէ ըդէմ մեր․ նախ՝ զի ՚ի մեզ ո՛չ կոչի Կիւրակոս եպս, այլ՝ Կիւրղոս կմ Կիւրեղ․ զոր եթէ գտանէր հնչմ̃կորդն, դիւրաւ գտանէր ՚ի կարգս պատրիարգաց եէմի ձայնակցութի եկեղեցական պատմութեց և վկայաբանութեց՝ մի և երկու, գուցէ և երիս Կիւրեղս ՚ի նմին չորրորդ դարու․ այլ թէ ո՛ր ՚ի նոցանէ կոչելի իցէ Կիւրակոս, նմա թողումք ընտրել․ և ըստ այնմ տալ յօրինել և Լեքէնի նոր գաւազանագրի զիւր զցանկ․ քանզի և սա ՚ի հատ․ Գ․ երես․ 154․ թէպէտև գնել գնէ երկբայութի զանուն Կիւրակոսի, այլ բոլորնդեանց վկայութե զհետ երթեալ՝ նոցին պատճառաբանութը խափարէ զկարգ բանից իւրոց։ Երկրորդ՝ ո՞ ոչ գիտէ, թէ չե՛ք հաստատուն գաւազանագիրք եպսաց եէմի եղելոց ՚ի ժամանակի անդ հալածանաց Արիանոսաց․ և եթէ լինէր ևս, ՚ի նոսին ընկզմէր մթութե և անունն Յուդայի

կիւ-

կիւրակոս կմ կիւրեղ կոչեցելոյ՝ չփոխելով և Է ան-ճան երևելւոյն կիւրղի: Երրորդ՝ Ը Հ. ոչ կոչի կիւրեղն երկրորդ՝ պարզապէս եպս եՃմի, ( որպ կոչէ զնա լատին վկայաբանն. և Յ. բս. և Ժմ. ) այլ միայն ասէ՝ թէ * հրամանաւ ածասէր գչխոյին հեղինեայ ձեռնադրեցաւ եպս||. որով ունիմք իմանալ եպս կողմանցն պաղեստինու 'ի սահմանս եՃմի, այլ ոչ պարզապէս պատրիարգ եՃմի. Նմին իրի և պատճառ նահատակուԹ այսպէս առաջի դնի 'ի Հ. * 'ի գալն ( յուլիանոսի )
,, յեՃմ՝ լուաւ զքաջութիւն կիւրղի. որ և համբաւն
,, յառաջագոյն հասեալ էր 'ի լսելիս նր, թէ նա բնքն
,, է գտօղ նր խաչին 'ի գողգոթայ. և վաղվաղակի հրա-
,, մայեաց ածել զեպսն առաջի իւր||. և այնպէս եբրև զառանձին եպսէ ճառէ 'ի բովանդակ ընԹացս նահատակուԹ հանդերձ մարբն: Նոյնպէս է տեսանել և 'ի ճառընտ. Դ: Ոչ այլազգ ցուցանէ և բուն պատմուԹ վկայաբանուԹ առ այլս՝ եԹէ ոչ կապեսցիս Է յառաջաբանուԹս նց. Թող զճառընտ. Բ. որ նոյնացուցանէ զերկոսին կիւրեղս 'ի մի. որպ տեսցի և զկնի: Սմին իրի և մեք 'ի տօնելն ոչ կոչեմք եպս եՃմի զերկրորդն կիւրեղ. այլ միայն զառաջինն. զոր օրինակ և որք կիւրակոս կոչեցին զերկրորդն, ոչ ամենեքին եդին զնա եպիսկոպոս եՃմի:

Երրորդ անստուգութիւն է Ը բարեպրոքայ, զի 'ի պատմութ անդ գիւտի խաչի Ը լատինացւոց կմ յՃարձակ վկայաբանութ կիւրակոսի յուդայի՝ տուր անուն հօրն նր կոչի շմաւոն կմ սիմոն, և անուն հաւուն զաքէոս, սափ 'ի բերանոյ շմաւոնի առ յուդա, թէ քարկոծեցաւ * ստեփաննոս եղբայր քո||. և 'ի բերանոյ յուդայի ասի առ ածծ. * կարգեա զիս Է եղբօր իմում ստեփանոսի, զորմէ գրեալ է 'ի գործս երկոտասան առաքելոց քոց||. և զհայրդ մարթ իցէ ասէ հականակորդն և նմանիք իւր, թէ յուդա եղբայրն սրբյն ստեփաննոսի դատանեցի եւր երեքհարիւր ամօք զկնի առ կոստանդիանոսիւ և առ յուլիանոսիւ. մինչ զի այսպէս հեգնելով խօսի բարեպրոք զաննայէ զմօրէն կիւրղի. * Սա եթէ
,, և սբյն ստեփաննոսի մայր եղև, ոչ միայն երեքդա-
,, րեան, այլև իբր չորեքդարեան ամաց լինել հարկա-
,, կեղծելի է||: Այլ չէ արժան այսպիսի իմաստնոց կամաւ անիմաստ զանձինս կեղծողաց առնել պատասխանի. տուր և յետին ադէտք զայդպիսի բանս ուղիղ իմանան՝ ըստ աղքսակցուԹ եւեԹ, որպ և 'ի Հ. հօրեղբայր կմ հաւ-

եղբայր

„ ըութիւն առ քն, պղանանել զնա հրամայեաց. և
„ նա փախուցեալ՝ զսէյ սեզանոյն բռնած հարկանէր.
„ և 'ի ձեռն բարեխօսութեան երանելւոյն կիւրղի փրկել
„ լինէր և ապրել 'ի մեծէն կոստանդիանոսէ. փրկութիւն
„ անհաւատալի և անարժան. ոչ զի շնորհ ունէր ընդ
„ փրկութեան, և ոչ կիւրղի՝ 'ի ձեռն որոյ ապրեցան.
„ այլ երկոցունցն երևեցաւ չար. միում զանձկարիք
„ ուրացութիւն երկնելով, և միւսումն զ'ի վէր յառնելն
„ և սպանանելն: Եւ զի համբաւ հաւատոյ հրէիցն ե-
„ հաս 'ի լսելիս նր, յաւելեալ 'ի չարութիւն՝ զոր ունէր
„ առ նա վն (գիւտի) խաչին քսի, և հաշտեցաւոր ան-
„ ոճանն, ստիպէր զնա յայն ինչ, զոր լսել սոսկալի
„ էս. ուրացիր ասէ՝ ոչխ և ես՝ զխաչեցելեալն. և նոր-
„ ձակեմ զքեզ||. և յարէ զկնի զնահատակութիւն:

Տեսանեմս, զի թէպէտև պէսպիսութիւն հանդամանաց գտանի 'ի վկայաբանութիւնս եւ այլևայլ աւանդութեանց. այլ սուտ զուճ իրացն կայ և մնայ նոյն. և եթէ գըժ-ոճարանկնհիան բանք գտանիցին, ոչ են խզելի բացասութիւն ընդ բարեպաշտաց, այլ լուծանելի իմաստասիրութիւն: Եւ զոր օրինակ չէ պարտ ՚ը պիտանիս և զանպիտանս ՚ըունել 'ի պատմութեանց, սոյնպէս և ոչ զպիտանիս ժխտել և հերքել վասն թեթև պատճառաց իբրև զանպիտանս կմ զանստոյգս. այլ ՚ը ասելոյ գելասիոսի պապին յընտրութեան ընդունելի և անընդունելի գրուածոց՝ (ուր յիշէ և զպատմութիւն գիւտի խաչին,) զաւաքելականն պահել կանոն. * զամ ինչ փորձեցէք, ըզ-բարին ընկալարուք||:

Այլ ո՞ կարէ հանդուրժել աստանօր մեծաբանութեանց բարեպաշտաց, որ կարծէ թէ ինքն է կատարեալ և մի միայն հետևօղ բանից առաքելոյն և աչալրջութեան գե-լասիոսի. քանզի կարծիս 'ի մտի եգեալ՝ եթէ 'ի ձեռն նախանձաւոր առաքելական իւրոյ յաղթօղ հանդիսացաւ, (ուր մեք անտաք զնա 'ի պարտութեան մատնեալ,) այսպէս իշխէ վերաշրճել 'ի բանս իւր. * Ո՛չ զամ զամ.
„ և ոչ յամ ժամանակի կարօղ եմք խուզարկել... ամին
„ իրի անմեղադիր առնեմք զնախնի մատենագիրս՝ զորս
„ այլուստ մեծամեծս, զի յայն ժամանակս՝ յորս ստա-
„ կաւ. նոճազ փոյթ կայր 'ի միջի վն քննելոյ զպատ-
„ մութիւս, յոլովակի բարի հաւատով 'ի վկայութիւն կո-
„ չեցին և հետևելի համարեցան զգրուածս, զորս այլք
„ առաւել փորձ պատեալք յայնպիսի իրս՝ կամ մերժե-
„ ցին կամխառ, և կմ այժմ ամ իբրք մերժելի դատին.
„ Երա-

„ Երանի տամ արդարև այնց դարուց, յորս այնչափ
„ փոյթ ընծայիւր 'ի քննութիւն սբ գրոց, և 'ի մերձե_
„ ցուցանել զայն յողջմտութեն հաւատոյ և 'ի բարեկար_
„ գութիւն վարուց. մինչ զի 'ի զբաղիլ ամենեցուն զոգ_
„ ցես փութոյ 'ի նոյն, սակաւք գտանէին յոյժ առ 'ի
„ փոյթ յանձին ունել յաղագս պատմական քննութեց,
„ և խուզարկել ճշգրիտ, թէ որպիսի հաւատարմութեն
„ իցեն գրեալ իւրաքանչիւր գրուածք կամ որպիսի ճըշ_
„ մարտանմանութեն. միայն թէ մի երևեսցին հակա_
„ ռակ ելանել ուղղափառ կրօնի: Այլ ոչ է անգտա_
„ նելի և մերս դար, յորում բաց 'ի յոքունց անտի վաս_
„ տակելոց մեծ ևս քրտամբք յայն աշխատութիւս (սբ
„ գրոց), մինչև մի խուզարկութեն սրբազան ուսմանց
„ այժմ իբրաւամբք կարէ պարծիլ եկեղեցի՝ ոչ գուցէ
„ ոչ յայլում ժամանակի երբէք, գտանին նաև բա_
„ զումք՝ որք մանաւոր գիտմամբ բուռն հարկանեն
„ 'ի քննութիւն եկեղեցական և քաղաքական պատմութեց,
„ համեմատելով զժամանակս ԺԸ ժմկս, և զմատենագիրս
„ ԺԸ մատենագիրս. և այն է փոյթ ջանից նց, զի եր_
„ կուստեք կշռելով զիրսն՝ մարթ իցէ գտանել ստու_
„ գիւ, զինչ ինչ 'ի մէջ այլևայլ պատմութեց ճշմար_
„ տագոյն կամ առաւել ճշմարտանման կայցէ, օրինա_
„ կաւ սբյն գեղասխասի պաւլին, որ զայսպիսի աշխա_
„ տասիրութի ոչ աներժան վարկաւ ծայրագոյն այնքան
„ ձրութեն հռովմէական քհնյապետութեն ||:

Եթէ նմանօղ լինել կամէաք ճշմարտութեն առնս՝ այլուստ մեծանուն համարելոյ, կարող էաք բանիւք և արգեամբք ցուցանել՝ թէ քանի՛ նենգ և կեղծաւորաթեն ստուբ հանդերձ բովանդակի 'ի պարծանս անձին իւրոյ, զոր յայլոյ դէմս խօսի: Զարմանք են՝ զի քաջն բոլլանդ յովհաննէս, և յաջորդ նր հենաքենիոս բոլլանդեան, որոց յաջորդեաց սա ինքն բարեպրոչ յաշխատասիրութեն վարուց սբց, ոչ զայսպիսի մեծարանութի սիրեցին, և ոչ զայսպիսի համարձակութի 'ի ջանալ առել զվկայաբանութիւս ԺԸ ստւա պատրուակաւ քննիչ երևլոյ իմաստուն և տաղիկեցի. որում և այլք յառաջ ՋԸ զմեզ չկարացին առնել: Այլ մեք անմեղադիր առնեմք զբարեպրոչ, զի յայսմ մասին պատրեցաւ 'ի չարաչար համարձակախօսութէ ուրումն արեգայի, գը անանուն կրօնաւորի ուրումն աւտիխրոգորեցւոյ, զորմէ առէ լինել 'ի ԺԶ դարու. և այն է յաւէտ՝ զոր առէ առաւել փորձ գտեալ յայսպիսի իրս. և բերէ զբանսնր ԺԳէմ

գիմախօսաց լուրոց 'ի յաւելուածս մայիսի . Եբէ . 836 .
Թէ . ահա այրն՝ այն ծանօթութիւս առնելով 'ի վ̄ր պատմութե̄
գիւտի խաչին և 'ի վ̄ր կիւրակոսի եպ̄սի , որ̄ 'ի սկըզ-
բանն ասէ , * Զարմանամ յոյժ յոյժ , թէ զիա՞րդ գրուածն
,, այն՝ յորում առաջի դնի պատմութիւն այսր կեղծեալ
,, գիւտի , մուծեալ իցէ յընթերցուածս եկեղեցւոյ . զի
,, ոչ ուստեք կարէ կալ յակապատանի , եթէ կարգ ժա-
,, մանակաց զննեսցի և ճշմարտութիւն խնդրեսցի || , Նոյն-
պէս և 'ի վախճանի ասէ . * Հերքելի է ուրեմն , զոր
,, այսպէս մերժելի ցուցանէ հեղինակութիւն և բանն .
,, և համարելի է մտացածին կեղծիք լինել , ուր և ոչ
,, մի ինչ հետք փայլէ ճշմարտութեան : Այլ եթէ ոք ա-
,, սիցէ , թէ զայդ պարտ է յայն սակս պինդ պահել ,
,, զի ընթերցուած նորին յեկեղեցւոջ 'ի վաղեմի սովո-
,, րութենէ է մուծեալ , գիտասցէ՝ զի ուր բանն զխմա-
,, մարտի սովորութեան , հարկ է սովորութեան տեղի տալ
,, յերեսաց բանին || : Զայս խնդամիտ վերծանեալ պա-
պեբրոքայ՝ զի եգիտ զոք նման իւր , տես զինչ 'ի վ̄ր
բերէ խայտալով . * Արդարև վճիռ ոսկի , վճիռ հա-
,, րեւրիցս գրոշմելի 'ի սիրտս նց̄ , որոց ամպարշտու-
,, թիւն և անքերելի ինչ երևի . եթէ ինչ ինչ յայնցանէ՝
,, որք եղեն 'ի սովորութեան եկեղեցւոյ , կա̄մ գուցէ արդ
,, եւս են , մուծեալք 'ի ներքս առ անգիտութեան ճշմա-
,, րիտ պատմութե̄ , կշտամբեսցին իբրև առասպել . միայն
,, թէ չլինիցի այդ յանդգնութե̄ , այլ նախատեղակ պատ-
,, մական ապացուցութ̄ք , որպիսի գոյ աստ , և հաստա-
,, րակօրէն 'ի գիտնոց ընկալեալ լինի . և չէ՞ ինչ՝ թէ
,, ը̄դդէմ կայցէ խստապարանոցուն ուղէս ռամկին , և
,, կամ այնոցիկ՝ որք առանձնական օգուտ գիտեն ին-
,, քեանց ածել լինել այսպիսի ռամկական սխալանաց || :
Ահա հսկայ հսկայորդի . եթէ ոմն յառաջնոց՝ և այն 'ի
յետնագոյն դարս համարձակախօսեաց , բարեպաշտ ար-
ձագանգ տայ և'ս ահագին 'ի կործանել զերկինս յաւիտե-
նականս և զելուս մշտնջենաւորս . բայց ինքն զինքն կոր-
ծանէ բանիւք իւրովք : Ով զի ենթադրէ՝ թէ այն կար-
ծեցեալ անտեղութիք , և առարկութիք զորս լուծաք 'ի վերոյ ,
իցեն ապացուցական բանք . և նոյն այն են և պարծանք
անանուն առաջնորդի իւրոյ . իսկ արդ՝ նոքին չեն ապացոյց
և բան հաստատուն , այլ համաձայն խրթնութիք , և ը̄նդդէմ
առաւել հաստատիչ սոցայ աւանդութեց . ապա ընդու-
նայն են այդ ամ̄ յոխորտանք մեծամեծք , և սիրապէս
աղաղականք՝ անվայել իմաստութեան գիտնականաց արանց :

յուշոյ · և ո՛չ առնէ զճշմարիտն՝ թէ ոչ ունիք անուամբ
արդարքոյ խելացս ։ Այսպէս առաջին և վերջին վկայ
ուանդիցս է ստուգապատում քրոնիկոն եւսեբի, յոր
տպատառն լինի և բարեպրոք · բայց և անտի ունայնա_
ձեռն. ելանէ · զի եւսեբիոս 'ի Է · ամի ադրիանոսի գրէ
այսպէս · * Ձեէմի եկեղեցւոյն առաջնորդութիւն յետ
,, փիլիպպեայ՝ (Ճ երորդ) յաջորդեաց Եննէկաս · յետ որոյ
,, ԺԹ յաստոս · յետ որոյ ԺԷ զեւի · յետ որոյ ԺԴ եփրեմ ·
,, յետ որոյ ԺԴ յովսէփ · յետ որոյ ԺԵ յուդա ։ Սոքա
,, ամենեքեան 'ի թլփատութենէն եղեալք բաւեցին մինչ
,, 'ի յադրիանոսի պաշարումն || · Արդ յայտ է թէ
ստատուստ ոչինչ ելանէ նպաստաւոր բարեպրոքայ, և
ոչ մեզ հակառակ ։ Գրէ զկնի եւսեբի և զաղէտս եէմի
առ ադրիանոսիւ · 'ի ԺԴ ամի նր · * Հրէայք ապստամբ_
,, եցին, և 'ի պաղեստինացւոց Ծն գիմեցին . . . և զօր
,, առաջեաց ինքնակալն || ։ և 'ի ԺԷ · * Որ հրէից ապս_
,, տամբութեան առաջնորդ էր քոքեբաս, զբազումս
,, 'ի քրիստոնէից պէսպէս տանջանօք պատժեաց · քան_
,, զի չկամէին երթալ ԸՆ նմա 'ի մարտ 'ի վր հռոմայ_
,, եցւոց || ։ և 'ի ԺԸ · * Որ 'ի պաղեստինացւոց Ծին
,, հրէական պատերազմն էր, վախճանեցաւ, չարաչարուել
,, մեղապարտ ապրելով հրէից · յայնժամ ժամանակէ և ե_
,, լանել յերէմ ամենեւին արգելան՝ նախ 'ի մեջ կամօքն, և
,, ապա հռոմայեցւոց հրամանաւ ||։

Արդ մ՛ տեսանէ յայս բան տեղի ապաստանի բարե_
պրոքայ, որ Ը մաի կամի՝ զի այս յուդա եպս 'ի քոմ_
քեբայ անտի իցէ նահատակեալ · թող այդպէս լիցի ·
բայց զիարդ կարծէ հերքել այսոր, թէ նոյն իցէ ընդ
ամիս յուդայի՝ յուդայն այն կիւրակոս կմ կիւրեղ՝ եր_
կու դարուք զկնի եկեալ յԾ · այսպէս կամիմ ասել, զի
մի հարկեցայց ԸՆդունել զպատմութիւն գիւտի խաչին և ըղ_
վկայաբանութիւն կիւրակոսի · այլ թէ կամիցի և թէ ոչ,
հարկի խոստովանել զճշմարիտն՝ թէ կայ մեայ ինքն
շռեաբեալ, և մեր պատմութիւն ոչ ինչ վնասեալ ։

Այլ առնիցէ ոք ցիս · եթէ այսչափ հնութիւն է և առ_
ջառինս վն մեւս կիւրղի և վկայաբանութեն նր, ուր չիք
և 'ի հին տօնացոյցս մեր անուն նր, այլ մի միայն երեւե_
լեան կիւրեղ, թող անդր և դու զերկրորդն զայն, և շա_
րադրէր առաջինոյն՝ Ը որում նոյնացուցանէ և ճառընդ_
տիրն զմիւս կիւրեղ ։ Պատասխանեմ · եթէ կարէի, այդպես առ_
նէի · բայց է անկարելի բացարձակապէս · վն զի եթէ
տօնացոյցն և եթէ ճառընտիրն՝ զմին զայն կիւրեղ ա_
սեն

Ցայսմայր տեսանես, զի բանն ոճոյն հայի առ յուդա հաւատացեալ՝ որ ը այլոց կիւրակոս. և ը մեզ միա կիւրեղ կոչի. բայց ճառընտիրն իբրև զմիոյ կիւրղէ մե-ծէ խօսելով՝ սկսանի ճոխագոյն գրել զնմանէ. զոր ինչ եգաք 'ի Նախընթաց վարս կիւրղի. զի զկարգաւորութ ընթերցուածոց 'ի կիւրղէ. զերևումն խաչի յաւուրս Նո առ կոստանդեաւ, և զզարհ բազմութ հրէից և հեթա-նոսաց՝ զորս մկրտեաց. նոյնպէս և զկրկին երևումն խաչին առ յուլիանոսիւ 'ի կամիլ անդ հրէից շինել զտա-ճարն, և զխաչանիշ նկարս 'ի վը հանդերձից հրէից. եՆ. և ասաի վայելչապէս անցանէ 'ի պատճառս Նախա-տակութե կիւրղի (որ անկ է միւս կիւրղի). զի 'ի լի-նել անդ ահաւոր հրաշից շարժման և հրձգութե, և խա-չանկարութե՝ զարհուրեալ հրէից առ հասարակ, * առ-
,, սբն կիւրեղ (ասէ) գիմէին. որոյ առեալ մկրտեաց
,, զնոյ յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ: Զայս լը-
,, ւեալ ամպարիշտն յուլիանոս՝ առաքեալ կալաւ զնա.
,, և ածեալ կացոյց յատենի ||. և այնպէս ը կարգի գրէ զնահատակութիւնն հանդերձ մարբն իւրով աննայիւ. և ոչ մի ինչ կնճիռն ունելով 'ի պատմութե ը ինքեան. ոտք թէ մի և նոյն յուդա կիւրեղ էր մեծանունն այն հայ-րապետ եէմի՝ հեղինակ գրոց կոչմանն ընծայութե, ո-րոյ հասեալ յաւուրց կոստանդիանոսի ցաւուրս յուլիա-նոսի՝ նահատակեալ իցէ հանդերձ մարբն. և ը այսմ եգաւ 'ի Նախնեաց մերոց 'ի հին տօնացոյցս մի կիւրեղ հայրապետ տօնելի մարբն հանդերձ:

Եւ արդարև՝ եթէ կարէաք և մեք գնել այսպէս, գե-ղեցիկ շաղկապեալ երևէր պատմութիւնն առանց երկբ-կութնութե ժամանակագրութե. և ազատէաք յամ գըժ-ուարութեց: Այլ սակայն հարկ լինէր յայնժամ ասել զեկեղեցական պատմութիս, ը որոց մեծն կիւրեղ եկաց կենդանի յաւուրս հալածանաց արիանոսաց առ կոս-տանդեաւ, առ յուլիանոսիւ, առ վաղեսիւ, և եհաս ցաւուրս մեծին թէոդոսի, և գտաւ 'ի ժողովն կոստանդ-գնուպօլսոյ. և խաղաղութե վախճանեցաւ: Եւ զի ոչ զայս և ոչ զայն պատմութ մարթ է խախտել, հար-կաւ երկու կիւրեղս պարտ է ընդունել զանազանեալս՝ ը եդելոցս 'ի մէջ 'ի կարգի վարուց միոյն, և վկայա-բանութե միւսոյն:

Ինչ մի կարէաք առնել, եթէ թողուին մեզ առնել եկե-ղեցական մատեանք և վկայաբանք. զի գնել՝ թէ յուդա կիւրակոսն՝ իցէ կիւրեղ առաջին և երևելին, և այս-

քննումն հօրն կիւրակոսի, թէ * ես և հարք իմ հաւա-
„ տացաք 'ի նա ('ի յդ), զի ճշմարտապէս որդի Այ է||·
և 'ի վերջ բերէ իմաստուն քննիչն · * Առլ այս բան ան-
„ գանօր թուէի յայն միտս ասացեալ, որպ թէ շատացեալ
„ ներքին հաւատով չէցէ դաւանեալ և արտաքուստ`
„ առ ակնածութե յերեսաց այլոց հրէից||: Ըստ այդմ
արդարացոյց այրն կրետիս և զբան Հ · զոր մեք իրա-
ւամբք յանդիմանելի գտանեցաք:

(5) Ընդարձակ վկայաբանութիւն Ը լատ · գրէ զժամա-
նակ կատարմանն` լինել * յաւուր շաբաթու` յութե-
„ րորդ ժամու, 'ի մուտս մայիս ամսոյ, յերկրորդ ամի ·
„ թագաւորութե յուլիանոսի բռնաւորի|| · յորմէ բա-
զումք եդին լինել 'ի մայիսի · Ա · բայց քանզի յերկրորդ
ամի յուլիանոսի` յամի Տն 362 · չորրորդ օր մայիսի գի-
պի 'ի շաբաթ օր, վն այլք լաւ ես համարեցան դնել`
'ի Դ մայիսի · մանաւանդ զի 'ի Դ մայիսի է գիւտ խաչի
առ լատինս, 'ի դէպ վարկան յարել զնի նր զգտօղն
խաչի` ըստ ասացելոցս : Քաջ ես հաստատէ զայս ծա-
ռընտիրն մեր Բ, (թէպէտև միացուցանելով զերկոսին
կիւրեղս ·) * Վկայեաց (ասէ) 'ի նմին սր եղան և մեծ
„ վկայն կիւրեղ մարքն հանդերձ, յերիր ամսեանն 'ի
„ մարտի (իմա 'ի Դ, կմ 'ի Դ մայիսի, զի 'ի վերջ բերէ ·)
„ յորում զխաչն եգիտ, 'ի նմին ամսեան և կատարե-
„ ցաւ||: Յօրինակս ինչ լատ · գրի յամսեանն արտեմի-
սայ · որ և պինէ մայիսի:

Միայն 'ի Հ · եդեալ է 'ի յունիսի · 6 · որպ և Յ · դնէ
հոկտ · 28 · ուր ասէ բաբեպրոք, թէ կամ յայնմ աւուր
փոխադրութի ինչ նշխարաց լեալ իցէ այլուստ 'ի կոս-
տանդինուպօլիս · և կմ թէ այնպէս ընթերցեալ է Նշ
'ի յունական օրինակի իւրեանց · * որպ և բաղում ան-
„ դամ գտանեմք (ասէ), զի գրիչք վկայաբանութեց երկա-
„ քանչիւր լեզուաց (յն · և լտ ·) այր իւրաքանչիւր
„ Ը սովորութե ազգին նշանակեն զօր կատարման սրբց ·
„ որ ոչ փոքր վրդովումն արկանէ 'ի պատմական ճշմար-
„ տութիւն|| · սակայն ոչ ինչ են զարմանք, եթէ և 'ի հայս
այլազգ նշանակեսցի:

Իսկ զգրեալն 'ի Ճ · Բ · մարտ` փոխանակ մայիսի, թէ
չիցէ սխալ գրչի ; համարեսջիր յառաջադայեալ 'ի միա-
ցուցանելոյ Է կիւրղի եպիսկ զկիւրեղ հայրապետ, որ
միաբանաբար Ը Հ · Յ · և Լ · դնի 'ի մարտի 18 · նոյն-
պէս դնեն և սարիք · իսկ արաբացիք 'ի մարտի 20 · որպ
և առանձին վկայագիրք ինչ լա · 'ի մարտի · 11 ·

ՎԱՐՔ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՑՆ

## Յովհաննու երմի Հայրապետին ։

Հ. Մարտ. 19 ։ Յ. Մարտ. 30 ։ Ա. Մարտ. 24. առ Բոլլ ։ Ճառընտ. Օ. ՃԾԷ ։ Մետափր. առ սուր. ՚ի վարս եղեւխանա ՚ի Յուլիսի. 12 ։ Մենոնկաղ-կաց. Գ. Խ. Ջ ։ Սոփեր. Եղբ ։ Օգոստինոս. Եղբ ։ Հերոնիմոս. Եղբ. ԼԶ ։

ՏՕՆԵԼԻՆ ՅՈՎՀԱՆՆԷՍ Հայրապետ երմի՝ Հանդի-սացեալ յեկեղեցական պատ-մութիս, է այն՝ որ յաջորդեաց մեծին Կիւրղի երմայեցւոյ յաթոռն իւր. նմին երի խորհրդով արդեօք զկնի տօնին Կիւրղի ՚ի յաջորդ շաբաթուս եդաւ առ մեզ և տօն սորա. քանզի էր նման նմին երեւելի, և զօրաւոր գրով և բանիւ. մինչև ոմանք ՚ի յետնոց զճառս ինչ ՚ի գրոց կոչմանն ընծայութեէ կամեցան սմա ընծայել ։ Նորդ երանելիս յովհան ՚ի սկզբան անդ էր միայնակեաց. և ապա կարգեալ ը երիցունս եկեղեցւոյ երմի ՚ի աւուրս Կիւրղի՝ փառաւականից եղև նմին ՚ի բազմադժուարին միշտս վտանգի, որ յերեսաց խառնակութե ժամանակին՝ ՚ի պատճառս արիանոսաց, մակեդոնեանց, և այլոց հերձուածողաց. եւ առաւել յաւուրս հալածա-

նաց

նաց և աքսորանաց կիւրղի՝ բազում տառապանս կրեաց և յովհաննէս 'ի չարափառաց բռնացելոց 'ի մէջ աթոռոյն Եջմի ․ որպէս և ոչ սակաւ նեղութիս և բամբասանս յուղղափառաց ․ զի 'ի զգուշանալ չհաղորդիլ ընդ գաղտամիտ հերետիկոսս՝ որք ուղղափառ ձևանային, լինէր երբեմն խորշիլ կասկածանօք և 'ի ստոյգ ուղղափառաց ․ վասն և ինքն թուէր կասկածելի յաչս նոցա իբրև օտար յուղղափառութե ․ մանաւանդ յաչս արևմտեան երիցանց և եպսաց ոմանց եկելոց յարևելս ․ զորս կարծէր յովհան 'ի կողմն նաւատիանոսաց լինել, և նք կարծէին զնա 'ի կողմն արիանոսաց ․ թէպէտև երկաքանչիւր կողմանց կասկածն էր սուտ ։

Բայց յետ լինելոյ սբյ ժողովոյն կոստանդնուպօլսոյ առ մեծն թէոդոսիւ, բարձաւ 'ի միջոյ այսպիսի երկմտութի ․ և այնուհետև անխտիր հաղորդէին ուղղափառք ընդ ուղղափառս ․ և ինքն յովհաննէս որ քան զօր փայլեալ բանիւ մաքրութե և անարատ վարուք՝ զովելի գտաւ առ ամենեսին ․ վասն յետ փոխեման երանելւոյն կիւրղի ընտրեցաւ իբրև արժանաւոր ժառանգ աթոռոյ եկեղեցւոյն Եջմի յամի տն իբր 390, կմ 388 ։

Սա էր յովհաննէս հայրապետ պերճ յատենախօսութե, ազդու 'ի քարոզս ․ ահարկու յանցաւորաց, և գորովական առ զղջաւորս ․ սաստիկ առ ստահակս, և հայրագութ առ հլուս ․ Ջգլի և բարութք էր մեծանձն իբրև զառիւծ, և անձամբ փառացի և շքեղ ․ այլ

առաւ

առաւել գիտութբ և առաքինութբ զարդարեալ. մինչև բազմաց կոչել զնա այր սքանչելի, և կիսոց կենդանւոյն սբ անուանակոչել:

Եւ թէպէտև սովին այսուհիկ ստացաւ զոչ սակաւս ՚ի յաչաղկոտաց իւր թշնամիս, բայց այս չէր ինչ, եթէ ոչ բարեսէր բարոյից չըրտանայր և բարեկամն ՚ի կասկածելի արանց միտելոց զհետ մոլորութեցն որոգինեայ. մինչև յանձն գլխովին ձգել զնոյն կասկած: Ան զի յայնմ ժամանակի սկսեալ էր յուզիլ խընդիր ՚ի մէջ երևելի արանց վս վրդովութեն որոգինեայ, յասել ոմանց՝ թէ բազմապատիկ մոլորութեց սերմանիք արկեալ կան ՚ի գիրս նորա, որպէս թէ ընդունարան լինել աղանդոց արիոսի, մակեդոնի, և այլ ևս չար հերձուածոց. և այլոց՝ թէ բանք նր են մթին, և յուղիղ միտս մարթին ձըգիլ. և կմ թէ ինչ ինչ յայտնի վրիպականք յօտար գրչաց են մուծեալ ՚ի մատեանս նր. ապա թէ ոչ՝ զիա՞րդ էր առէին այնպիսում առն իմաստնոյ, որ իբրև երկրորդ սողոմոն համբաւեալ լինէր, յայնպիսի ծայրական մոլորութիս անկանիլ: Օ այս օրինակ խօսէր և յովհան հայրապետ Եղմացի, հայեցեալ յայն՝ զի բազում գովութ յիշատակէ որոգենէս յերևելի երևելի վրդպաց եղելոց յետ նր: Դէպ եղև ոչ այն աւուրս գալ մեծին եպիփանու կիպրացւոյ յԵդմ. որում արար ընդունելութն մեծ յովհաննէս հայրապետ, և հրաման ետ նմա քարոզել առ ժողովրդն ըզ-

բանն

բանին այ, զոր շահեցին 'ի նմանէ. քանզի և անուն եպիփանու առաւել ևս սքանչելի էր առ ամենեսին. և էր նշանակ մեծի պատուոյ տալ 'ի սեպհական եկեղեցւոջ իշխանութե քարոզելոյ եպսի հիւրի ։ Ի լինել բանից սիրոյ և իմաստութե յառանձնութե ը յովհաննէս և ը եպիփան, յորժամ զրոյցք 'ի մէջ անկան և վն գրոց որոգինեայ, խրատեաց եպիփան զյովհաննէս զգոյշ կալ 'ի գովելոյ զորոգինէս, որ է աստ նախահայր և ծնող աղանդոյն արիոսի և այլոց ժանտ հերեսիովտաց. զի մի ասէ հաւան երևեսցիս վդպութեց նոր ։ Պաժուճարին թուեցաւ բանս 'ի լսելիս յովհաննու. զի ինքն ազատ էր յայնպիսի մոլար մտաց. վն և ինքն 'ի դէմս եած եպիփանու, թէ ես առաւել 'ի միտս կասկածիստս եդէ զքէն իբրև զհակամիտելոյ 'ի մոլորութի մարդակերպեայց. այլ խոստցայ և ոչինչ ։

Յետ այսորիկ սկսաւ եպիփան համարձակագոյնս խօսել 'ի քարոզի ընդդէմ որոգինի յառաջիկայութե յովհաննու, և ասաց զայնպիսի բանս՝ որովք թուէր արատ դնել և առաջնորդաց ը յովհաննու, ոչ թէ առ պղերգութե նց զօրանայ որոգինեան վդպութի. յայնժամ յովհաննէս յղեաց զսարկաւագապետն ազդառնել յունկն եպիփանու, զի կշռեսցէ զբանս իւր, և զգուշութք բարբառեսցի ։ Իսկ եպիփան անսաց նմա, և մեղմով վճարեաց զքարոզն. և այնպէս ողջունեալ զյովհաննէս՝ մեկնեցաւ 'ի նմանէ. մինչ զի թէպէտե

առ

տու ժամն խաղաղութե̃ն էր 'ի մէջ ն̃ց, այլ ան-
կեալ էր սերմն գժտութե̃ :

Այս եղև 'ի շրջելն Եպիփանու 'ի կողմանս պաղեստինոյ և երկրին ասորւոց՝ օթևանս կալաւ 'ի վանսն կոչեցեալ ծոտարաց . ուր նստէին յայնժամ ոմանք 'ի լատինացւոց եկեղեցւոյ յարևմտից . յորս երևելի էր երանելին Հերոնիմոս դաղմատացի 'ի ստրիդոնայ՝ այր հզօր բանիւ և գրով, թարգմանն սր̃ գրոց և վր̃պ մեծանուն . սա թէպէտև քահանայ էր, այլ առ պարապելոյ յաւանձնութե̃ իւր և յընթերցասիրութե̃ ոչ կարէր պատաղել 'ի սպասաւորութե̃ այնր եկեղեցւոյ . որոյ մր̃ իսկ զուրկ մնայքն 'ի պաշտամանց խորհրդոց ընակիչք տեղւոյն ։ Զայս իմացեալ Եպիփանու՝ որ ամենեցուն խնամարկել կամէր հայրաբար և արտաքոյ վիճակի իւրոյ, կշտամբեաց զհեղգութի̃ եղելոցն անդ, թէ զիարդ ոչ փոյթ տանիք խնդրել ձեզ յառաջնորդէ քահանայ զոք . ապա ն̃ս առաջնորդելոյ ն̃ց ընտրեաց և ձեռնադրեաց զպաւլինիանոս զեղբայրն Հերոնիմոսի նախ սարկաւագ, և յետ սակաւուց քահանայ ։

Այս գործ Եպիփանու թէպէտև բարի էր, այլ վս̃ լինելոյ ինքնիշխանաբար՝ առիթ եղև մեծի խռովութե̃ . զի տեղին էր 'ի մասին վիճակի աթոռոյն եէմի . և չէր օրէն ումեք առնել ձեռնադրութի̃ յայլոյ թեմի առանց գիտութե̃ օրինաւոր առաջնորդի ։ Վ̃յ իւրև պատմեցաւ բանս այս յականջս յովհաննու հայրապետի, զայրացաւ յանձն իւր . եւ

տաւս

տուաւել՝ զի ընդ բանսարկութեան քսու արանց համարեցաւ 'ի նախատինս իւր զգործն զայն. ուր չարախօսք ասէին, թէ եպիփան յանձն ընդ փայր հարկանէ զյովհաննէս, մինչև մոլորել կոչել զնա իբրև որոգինեան, և տալ հրապարակաւ յաղօթս կալ ընդ դարձի նոցա 'ի մոլորութենէ. և այլ եւս աւելորդ բանք ։ Նաև գրեաց նամակ մեղադրանաց առ եպիփան, յայտ առնելով նմա՝ թէ չէր քեզ օրէն ընդդէմ կանոնաց եկեղեցւոյ առնել ձեռնադրութիւն յիւմում վիճակի առանց իմոյ գիտութեան. որպէս և չէր արժան քեզ առ չխօսելոյ իմոյ չարիս զորոգինեայ՝ որոգինեան զիս առնել, և ընդ մոլորեալս համբաւել. և եթէ յայս միտս հաստատեալ կայցես, ծանի՛ր յայտնապէս և գիտասցես. զի և ես գրեմ առ առաջնորդս ամենայն եկեղեցեաց մինչև 'ի Հռովմ՝ որք քաջ ճանաչեն զիմ ուղղմտութիւն, և դատ արասցեն ընդ իս և ընդ քեզ ։

Յայնժամ գրեաց եպիփան պինդ հեզութեամբ և չքմեղութեամբ՝ թէ ոչ կարծէի ես զայն վասն ատարաց 'ի համարի քում վիճակի. և հաւատարմացոյց՝ թէ ոչ առ հակառակելոյ քեզ, այլ 'ի շինութիւն եկեղեցւոյ արարի զայն գործ. սուտ եցոյց և զհամբաւս սերմանեցեալս 'ի բանսարկուաց ։ Իսկ յետ յորդորելոյ 'ի խաղաղութիւն՝ երկրորդեաց զիւր առաջարկութիւն ընդ խորշելոյ իսպառ յորոգինեանն շաւղաց. ապաթէ ոչ՝ չկարեմք ասել ընդ քեզ հաղորդիլ. և 'ի թիւ արկեալ զութ մոլորութիւն որոգինի 'ի վերայ այլևայլ խնդրոց՝ պահանջեաց

ջեաց 'ի յովհաննէ տալ ինքեան պնի , աղաչ առնելով միանգամայն զգոյշ կալ 'ի հաւափինոսէ և 'ի պալլադիոսէ խոտորելոցն ըղհետ որոգինի ։

Այս գիր եպիփանու եթէ 'ի ձեռս յովհաննու և եթ հասանէր , լինէր շահաւոր յոյժ . այլ սակայն հերոնիմոս ջերմ բարուք դիմակաց որոգինեանց և խորհրդակից եպիփանու՝ առեալ 'ի նմանէ զօրինակ նր 'ի նմին իսկ ժամանակի գրութե , յա յամի տն իբր 394 . թարգմանեաց 'ի յունէ 'ի լատին . և վաղվաղակի տարածեցաւ 'ի մէջ լատինացւոց պանդխտելոց 'ի պաղեստին և յասորիս, թէ այսպիսի զրոյցք և անցք անցանէին ը եպիփան և ը յովհաննէս . և սկսան հերոնիմեանք կիմ օտարականք զեպիփան գովել , և զյովհաննէս անգոսնել . թէպէտ չէին այնչափ բարեկամութ ը ե[illegible]մացիս յաւուրց անտի մեծին կիւրղի , որ ընդ ակամբ հայէր 'ի հերոնիմոս 'ի ձեռնադրեալն 'ի պաւլինոսէ եղելոյ հակառակութ ընդդէմ մելիտոսի անտիոքայ հայրապետի բարեկամին կիւրղի . նմ և հերոնիմեանք ոչ ուղիղ աչօք ակնարկէին 'ի կիւրեղեանս ։

Նա վնկ յովհաննէս հայրապետ կասկածելի մտօք ընկալաւ զբանս եպիփանու , և առաւել բորբոքեցաւ ը դէմ հերոնիմոսի քան եպիփանու . և զի հաստատէին բանսարկուք, թէ նա ինքն հերոնիմոս է խրատտու եպիփանու գրել առ քեզ թուղթ այնպիսի իբրև առ հետևօղ որոգինի , մերժեաց զհերոնի-

մոս առ ժամանակ մի 'ի հաղորդութենէ եկե-
ղեցւոյն եՀմի. և գրեաց առ նա յանդիմա-
նութի. յուշ արար և զայն, թէ դու նախ
զանձն քո սրդարացո. զի թողեր քո զգիրս
կարեւորս՝ թարգմանեցեր և զորոգինէս 'ի
յունականէ 'ի լատին ։

Ի յուզիլ այսպիսի երկպառակութեց 'ի մէջ
դասուց ուղղափառաց՝ միջնորդ. հաշտութե
զանձն ընծայեցոյց արքեղայոս ոմն կոմս.
բայց ոչինչ օգտեաց երկոցունց կողմանց ե-
կեղեցական իրաւամբք մաքառելոց. զի յով-
հաննէս տիրաբար իբրև պատրիարգ վարէր
ը ոստխս իւր. իսկ եպիփան և հերոնիմոս
'ի դատ կոչէին զնա 'ի քննել զողջմտութի նր ։
Իսկ զի մեծ էր յայնմ ժամանակի անուն թէո-
փիլոսի աղեքսանդրու հայրապետի, կաս-
կածեալ յովհաննու՝ թէ եպիփան և հերո-
նիմոս, որք բարեկամութբ էին ը նմա, 'ի
կողմն իւրեանց ձգեսցեն զնա, փութացաւ
ինքնին իրազեկ առնել զնա, թէ որպէս և
զիարդ սկիզբն եղև խռովութե 'ի լուծմա-
նէ թեմական իրաւանց, և առ հետախա-
ղաղ ծածկել զայն 'ի մէջ արկան պատճառք
որոգինեան խնդրոց ։ Յայնժամ թէոփիլոս
գրեաց յորդոր խրատու առ հերոնիմոս, զի
սէր և հպատակութի ընծայեսցէ առ հայ-
րապետն յովհաննէս, և բարձցէ 'ի միջոյ
զգայթակղութի. և առ յովհաննէս արձա-
կեաց զիսիդորոս քահանայ 'ի յորդոր խաղա-
ղութե ։

Այս իսիդորոս աղեքսանդրացի թէպէտև

էր այր սրբ , այլ քանզի և ինքն գովելի հաւ-
մարէր զորոգինէս , զգուշացոյց զյովհան՝ զի
մի՛ իսպառ մերժեսցէ զնա . այլ առ՚ի շահել
զսիրտ եպիփանու գրեսցէ տարտամ պինն՝
հերքելով վեր ՚ի վերոյ զքանի մի մոլար վար-
դապետութիւնս յիշատակեալս յանուն որոգի-
նի ։ Նա և յովհաննէս ընդ խրատունն գրեաց
քանս պինդատնութեան առ եպիփան և առ հե-
րոնիմոս . ուր ինքնին ընդհանուր վկայութեամբ
քարոզելով զճշմարտութիւն՝ տղայական ինչ
համարէր զմոլորութիւնս որոգինի առաջար-
կեալս ինքեան յեպիփանէ . և զայն ևս ՚ի
վեր եած , թէ զրգռութիւն ոսոխաց իւրոց ոչ է
վն խնդրոց հաւատոյ , այլ վն յանդիմանե-
լոյ նց յիւրմէ ՚ի պատճառս ձեռնադրութեան
պաւղինիանոսի ։

Օրինակ մի այսր պինդատնութեան առեալ
տարաւ ընդ իւր իսիդորոս առ թէոփիլոս , և
զայլ ևս պատճէնս յղեաց յովհաննէս առ
գլխաւոր առաջնորդս արևելեայց և արև-
մտեայց , որոց առաջի գիտէր մեծանուն լի-
նել զհերոնիմոս ։ Յայնժամ և հերոնիմոս
գրեաց թուղթ առ թէոփիլոս և առ այլս՝
արդարացուցանել զանձն իւր , և ցուցանել՝
թէ խռովն յովհաննու ընդդէմ իւրեանց է
՚ի պատճառս որոգինի , և ոչ վն ձեռնադրու-
եղբօր իւրոյ ։ Այսցիկ այսպ եղելոյ՝ կէսք
իրաւունս տային յովհաննու , և կէսք եպի-
փանու ։ Յերկարել չընջմանս ՚ի մէջ եկեղե-
ցականաց՝ պամմախիոս բարեկամ հերոնի-
մոսի յարևմտեան՝ խնդրեաց զգրով առ՚ի նմա-
նէ

նէ տեղեկութիւն վս այսր շփոթութեան, որ տա-
րածեալ է ասէ և յարևմուտս. զի և սուտ
կէսք 'ի կողմն են եպսին Եղմի, և կէսք 'ի
կողմն եպսին կիպրոսի ։ Ո այս իբրև լուաւ
Հերոնիմոս՝ որոյ և նշանն է առիւծ յանա-
պատի, սրեաց զահաւոր գրիչ իւր ամ հա-
մարձակութբ ընդդէմ յովհաննու, և գրեաց
զոր և գրեաց առ պամմախիոս՝ ուղղելով
զդէմս բանից առ յովհաննէս. ուստի և նա-
մակն այն հերոնիմոսի երկար՝ կոչեցաւ 'ի
յետնոց * գիրք ընդդէմ յովհաննու երու-
սաղեմացւոյ ‖ ։

Բայց այս գրութիւն՝ որ գտանի ցարդ. թերա-
կատար, որչափ երևի ազդու, նոյնչափ և
զկծեցուցիչ գոլով՝ իսկ և իսկ խափանեցաւ
և յաւուրս հերոնիմոսի, և ոչ իսկ յանդ. հա-
նաւ 'ի գրչէն ։ Ո ի 'ի նմին իսկ ժամանակի
գրութեն եղև խաղաղութի 'ի միջի՝ ոպ կարծի,
միջնորդութբ թէոփիլոսի՝ որում անսային
կողմանքն երկոքին ։ Անդ զլօդեալն պատ-
մութի յեպիփանեանց 'ի վարս սրբոյն եպիփա-
նու, ոպ թէ և սքանչելեօք կուրացուցեալ
իցէ եպիփան զաչս յովհաննու, և անդրէն
սքանչելագործեալ 'ի բանալ զմի յաչաց նր.
զոր պարտ է իմանալ այլաբանօրէն վս խռո-
վութե և հաշտութե եղելոյ ը̃ մէջ երկուց
սրբոց. ապա թէ ոչ՝ չմիաբանի այն պատմութի
ը̃ թղթակցութեց նց, և ը̃ բանիցս հանելոց
'ի պատմութէ ժամանակիս, ոպ և ը̃ առա-
ջիկայ սահլեացս ։

Գրեալ էր յովհաննու հայրապետի և նա-

մսկ յարգումն առ երանելին անաստաս հռով-
մայ հայրապետ՝ արժանաւոր գովութիւն ըստ
կարգի պատուոյ նր̅, խնդրելով 'ի նմանէ
տեղեկութիւն վս̅ հռուփինոսի ակուիղացւոյ,
եթէ արդարանայ՞, եթէ ոչ, վս̅ թարգմա-
նելոյն 'ի յունականն բարբառոյ 'ի լեզու հռով-
մայեցի զգիրս որոգինի ։ Իսկ անաստաս քա-
հանայապետ իմաստութբ̅ ետ պատասխա-
նի անորիչ, թէ դիտաւորութի հռուփինոսի
'ի թարգմանութէ լինի գովելի, եթէ կա-
մեցեալ իցէ նր̅ յանդիման առնել ամենե-
ցուն զմոլար միտս որոգինի. ապա եթէ
կամէր ծածկել 'ի լսելիս ընթերցանելեաց
զմոլորութիւնս, յայտ է թէ չար էր արարն ։
Այլ թէ քանի մեծարանօք և գովութբ̅ խօ-
սի անաստաս ընդ յովհաննու, արժան է լսել
զսկիզբն նամակին. զի ասէ. * Ապաքէն
,, բարեսէր կամաց է գործդ, զի գովութբ̅
,, խօսիս քահանայդ զքահանայէ. և արդ
,, յաղագս բազմապատիկ գովեստից՝ զոր
,, յօրինեցեր ձոխաբար զիմոց ինչ ար-
,, դեանց, ոչ̅ շնորհակալիք լինիցին քումդ
,, սիրոյ, նոյնպէս և ձահողակի յանկեսցի
,, 'ի մերմէ նուաստութենէ բան մերով մասամբ
,, պանծացուցիչ՝ լուսափայլութե քումդ սըր-
,, բութե, և առաքինութեց՝ զորս յանձին բար-
,, ձեալ բերես 'ի տր̅ ։ Վասնզի արդարև ո՛
,, այրդ գերազանց ամենից, այնչափ արտա-
,, փայլեալ ծագես պայծառութբ̅ գովանի
,, մասանց, զի չի՛ք բան բաւական հաւասա-
,, րել արդեանց ։ Նաև որ առ 'ի քէն առ իմ

մե-

„ մեծապատիւ կոչմունք՝ այնչափ շարժեն
„ զիմ սիրտ , իբրև զի և զոր չեմ բաւական
„ արդեամբք կատարել , ոչ հեղգացայց 'ի
„ նոյնս անդր թևակոխել ։ Ահա և այդ 'ի
„ քում գովութեան մասին է , զի զիս այնչափ
„ գովեցեր երկնաբերձ վսեմութեան տարազու ։
„ Ա՟ զի քոյդ եպսութեան կարգ պայծառա-
„ փայլ՝ գոգցես իմն ճաճանչեալ ը՟ բազում
„ ամս , ( կմ՟ ը՟ այլ օրինակաց , ը՟ ամ՟ ամս , )
„ և առ մեզ ձգտեցոյց զնշոյլս ճառագայ-
„ թիցն ‖ , այլովքն համբերձ ։ Այս նամակ
պանծալի գրեալ յամի տն իբր 400 , կամ
401 , գտանի 'ի Գ․ հատորն ժողովոյ․ եջ․ 943․
և նոյն այն է՝ զոր 'ի վկայութիւն առնու սրն
հերոնիմոս 'ի Գ գիրսն ընդդէմ հռուփինոսի ։ Աւա-
տի փոքր 'ի շատէ ունիմ իմաստասիրել վեր-
ծանօղք բանիցս , թէ թէպէտև այնպիսի
բանակռուութիւնք անցին 'ի միջին , այլ ոչ ա-
բաստաւորեցաւ իւիք անուն սրբոյն յովհան-
նու , ոչ և ոչ եպիփանու կմ՟ հերոնիմոսի ․
այլ եթէ չլինէր այսպիսի գժտութի առ ժա-
մանակ մի , և՛ս առաւել լուսափայլէր օրի-
նակ վարուց նց՟ առ ամենեսին ։

Այլ դու տես ինձ զդառնութի ժամանակին ,
զի ընդ լինել հաշտութեան ը՟ յովհան և ը՟ ե-
պիփան՝ գործակցութբ թէոփիլոսի աղեք-
սանդրացւոյ , յարոյց սատանայ նոյնպիսի
առթիւ՛ որոգինեան կռուոյ մեծ ևս խռո-
վութի 'ի մէջ յովհաննու ոսկեբերանի տիեզե-
րալոյս վարդապետի՝ որ մտերիմ սիրելին էր
յովհաննու եէմացւոյ , և 'ի մէջ թէոփիլո-

ոի աղեքսանդրացւոյ՝ որ սիրելին էր եպի-
փանու. մինչ զի և սբն եպիփան՝ որ հազիւ
զերծ կացոյց զանձն 'ի գժտուէ ընդ յովհան-
նու եմացւոյ , հազիւ յետ կենաց իւրոց
զերծաւ 'ի գժտութէ ընդ ոսկեբերանի . և
թէոփիլոս՝ որ յառաջն բարեկամութ էր ընդ
յովհաննու եմացւոյ՝ թշնամացաւ ընդ նմա
առ թշնամութեն իւրոյ ընդ ոսկեբերանի ։ Իսկ
պատճառք իրացս այս եղեն, զի իսիդորոս ա-
ղեքսանդրացի՝ զոր վերագոյնդ յիշատակե-
ցաք , 'ի դառնալ իւրում յեմէ յաղեքսան-
դրիա՝ ստէպ գովէր պարզմտութե զորոգի-
նէս և զգովիչս նորա իբրև այր իմաստուն և
ողջամիտ . և զի թէոփիլոս ոգւով չափ ընդ-
դէմ էր որոգինի , ոչ խնայեաց և յիսիդորոս՝
որ էր իւր սիրելի , այլ դատապարտեաց զնա
յառանձին ժողովի իւրում յամի տն 400 . և
հալածեաց զբազումս 'ի միայնակեցաց ե-
գիպտոսի՝ որք յարեալ էին յիսիդորոս . քան-
զի և նա էր այր ճգնաւոր և կատարեալ մի-
այնակեաց՝ հանդարտեալ զբազում ժամա-
նակս 'ի լերինն նիտրիոյ և 'ի կողմանս պա-
ղեստինոյ ։ Յայնժամ փախեաւ իսիդորոս
հանդերձ երեսուն միայնակեցօք՝ զորոց ըզ-
հետ մտեալ էին թէոփիլեանք եթէ իբրաւ-
ցի և եթէ անիրաւ հալածանօք , և անկան
'ի կոստանդնուպօլիս առ մեծահռչակ պատ-
րիարգ տեղւոյն՝ որ և յովհան ոսկեբերան . և
յայտ արար՝ թէ զիարդ 'ի պատճառս ոնա-
տի խնդրոց յանուն որոգինեայ հարստահա-
րութի կրեաց ինքն և իւրքն ամ 'ի թէոփի-
լէ

լուէ ։ Նա յընդունել զնորն ոսկեբերանին բա
զում մարդասիրութ. արկաւ հիմն խռովութե
մեծի ․ որ է տեսանել 'ի վերս ոսկեբերա-
նի ․ մինչև մեռաւ խոսրովոս 'ի կոստանդի-
նուպօլիս յամի 403 ․ և ոսկեբերան ընկեցաւ
յաթոռոյ՝ յամի ․ 404 ․ և աքսորեալ միան-
գամ և երկիցս՝ վախճանեցաւ յարտասահ-
մանութե ։

Նա յայս ժամանակս յովհան հայրապետ ԵՃմի
հաստատութն պահեաց զբարեկամութի իւր
ը ոսկեբերանին , և զերծ կացոյց զանձն 'ի
համախոհութե թէոփիլեանց ։ Նոյ և 'ի վեր-
ջին աքսորանս իւր սբ ոսկեբերանն գրեաց
թուղթ սիրոյ 'ի կուկիսոնէ հայոց առ երա-
նելին յովհան հայրապետ ԵՃմացի ․ որոյ ըզ
կիզբն է ․ * Արտասահմանեալ եղաք 'ի կու-
,, կիսոն , այլ ոչ տարագիր 'ի սիրոյ ձերմէ ․
,, զի այն յայլոյ ձեռս էր , այլ այս 'ի մեզ
,, իսկ գլխովին ‖ ․ և յետ գովելոյ զփոյթ նո
վն անարատ պահելոյ զանձն 'ի գործակցու-
թե խռովեցուցչաց եկեղեցւոյ՝ վկայէ զար-
թուն հսկողութե նո 'ի վր հօտին ․ և 'ի նոյն
յորդորէ՝ զայսօրինակ կնքէ զբանն ․ * Նա
,, զմեզ՝ որ մեծապէս սիրեմք զքոյին բարե-
,, պաշտութի , և կախեալ կամք զքո բա-
,, րեսէր առաջարկութե , անմոռաց յիշե-
,, ցես ․ քանզի դիտակ իսկ եմք , թէ որչափ
,, սէր ցուցեալ է ձեր 'ի վր մեր՝ յարդեանց
,, գործոցն հաւատարմացեալ ‖ ։

'Ի նմին ամի՝ յորում էառ երանելին յովհան
զայս գիր յոսկեբերանէ , առաջինկայ գաւա

 հան-

հանդիսի թաղման` որբուհւոյն պաւղայի հռովմայեցւոյ, որ վախճանեցաւ յեՃէմ : Յայնու ժամանակաւ և յեօթն կաղանդից յունվարի փոխադրեաց զմարմին սբյն ստեփաննոսի նախավկայի` 'ի սբն սիոն զյայտնեալն սքանչելեօք ( զորմէ ունիմք ասել 'ի տօնի նր ). արար և զայլ բարեկարգութիս 'ի շինութի եկեղեցւոյ . գրեաց և զանազան թուղթս լի իմաստութբ յարևելս և յարևմուտս . որոց պատճէնք չերևին 'ի միջի, այլ միայն յիշատակութի 'ի բանս այլոց . ոչ և յերանելւոյն իննովկենտիոսէ հռովմայ հայրապետէ ընկալաւ գիր վս խնամ տանելոյ արևմտեայց պանդխտելոց 'ի պաղեստին :

Ունէր երանելին յովհաննէս սերտ ընտանութի և ը մեծին օգոստինոսի ափրիկեցւոյ սբ եպսին հիպպոնայ` մտերիմ բարեկամին հերոնիմոսի . նմին իրի և օգոստինոս 'ի գիրսրն ը դէմ պետիղիանոսի աղանդաւորի այսպէս վկայէ . * Բայց արդ` եթէ ամենեքին
,, ը ամ ☉ այնպիսի լինէին, որպս ընդ վայր
,, զրպարտես, զի՞ արար քեզ աթոռն հռով-
,, մայ, յորում պետրոս նստաւ, և այսօր ա-
,, նաստասիոս նստի . կամ աթոռն եկեղեց-
,, ւոյն եղէմի, յորում յակոբոս նստաւ, և
,, այսօր յովհաննէս նստի . ընդ որս մեք կա-
,, թողիկէ միութբ շաղկապեալ եմք . և դուք
,, անձամբ զանձինս քակտեալ որոշեցիք չա-
,, րաչար մոլեգնութբ || :

Զայսոսիկ գրէր օգոստինոս յամի տն իբր 400 կմ 401 . այլ յետ ամաց ինչ և ս ք զկա
ըն

ընտանեցաւ ընդ յովհաննու 'ի հերքել միաբանս զմոլորութիւս պեղագեանց ։ Քանզի յայն աւուրս 'ի վեր երևեցաւ ժանտն պեղագիոս բրիտանացի՝ սուտ միայնակեաց , որ սկսաւ քարոզել նորանոր աղանդս ընդդէմ շնորհացն այ , ընդդէմ սկզբնական մեղաց , և այլ բազում իրաց ․ մինչև աշակերտել զբազումս յարևմտեայց յաղանդ իւր , յորոց միջի առաւել գտաւ կեղեստիոս ոմն՝ չար քան ըզվդպ իւր ։ Ի բազմանալ պեղագեանց՝ ել գնաց պեղագիոս և յափրիկէ ․ և անտի դիմեաց 'ի պաղեստին՝ աշակերտել և զբնակիչս տեղւոյն սուտ ձևով միակեցական խստակրօնութէ՝ քանի մի գործակցօք հանդերձ ։ Այլ մատուցեալ կեղծաւորութբ առ հայրապետն յովհաննէս՝ ձևացոյց զանձն իբրև այր մենացեալ և մեռեալ յաշխէ , և եկեալ 'ի շրջիլ յուխտս և 'ի վանորայս ․ որով բազում պատիւ և սէր եգիտ առ ժամն 'ի հայրապետէն ։ Յետ սակաւուց եկն յարևմտից յեղմ և օրոզիոս երէց կաղապղոնացի՝ առաքեալ յագոստինոսէ առ հերոնիմոս ․ և հանդիպեալ նախ յողջոյն հայրապետին յովհաննու՝ հրամանաւ նր գնաց բնակել 'ի վանս հերոնիմոսի 'ի բեթղեհեմ ․ արդ 'ի լինել բանից 'ի մէջ պեղագիոսի՝ իմացաւ յովհաննէս ստուգութբ յօրոզիոսէ և յայլոց , թէ պեղագիոս նենգաւոր եկեալ է անդր 'ի սերմանել զորոմն իւր ։

Յայնժամ արար երանելին յովհաննէս ժողով քանի մի եպսաց յեղմ յամի տն ․ 415 ․ յերամ

ամենեանն յուլիսի · և կոչեալ յատեան զպեղագիոս՝ եարկ է քննութին զվրդպութն և ըզմիտս նր · և 'ի վր հասեալ՝ թէ նա համարի կարօղ լինել մարդոյ կատարեալ լինել ամ առաքինութբ 'ի ձեռն բնատուր անձնիշխանութե եւեթ՝ առանց կարօտելոյ առանձինն օգնականութե շնորհացն այ , կշտամբեաց զնա սբ հայրապետն բանիւն առաքելոյն · զի որ ասացն ( ասէ ) , առաւել քան զամենեսին զնս վաստակեցի , 'ի վր եած , այլ ոչ եթէ ես , այլ՝ շնորհն այ , որ ը իս · յաւել և զայլ բանս 'ի գրոց սբց և 'ի հարցն վրդպուէ · որովք խայտառ կարկեցաւ պեղագիոս · և խորթացեալ՝ թէ յընդդէմ դառնալն՝ վճիռ ընկալցի դատապարտութե , կեղծաւորեցաւ ընդունել զճշմարտութին · և այնպէս զերծոյց զանձն առ ժամանակ մի ։

Այլ քանզի տակաւին դոյր կասկած 'ի վր նր , և օր քան զօր յաճախէին դատախազք նր , եղև զկնի և այլ ժողով հնդետասան եպսաց հանդերձ բզմ երիցամբք 'ի դիոսպօլիս քաղաքի , այն է լիդիա · ուր չոքաւ և յովհան հայրապետ ։ Անդ 'ի մէջ մատուցին զամ գլուխս մոլորութեց պեղագիոսի և աշակերտի նր կեղեստիոսի դատախազքն · և 'ի հարցանել եպսաց զպեղագիոս մն միոյ միոյ 'ի գլխոց անտի , նա աղուէսաբարոյ խորամանկութբ ցրեաց զամն · զի ասէր , թէ չիք իմ ուրացեալ զշնորհս · որով իմանայր զծիրս բնութե , այլ ոչ իշխէր ասել զմիտս իւր յատենի · նոյնպէս ժխտեաց և զայլ մոլար

վրդպ-

վէճպրութիւս . և որ առէ զայդպիսիս՝ նզովեալ լիցի առէ . մինչև հարկ համարել ժողովոյն արձակել զնա իբրև անպարտ ։ Յայնժամ պատմեաց յովհաննէս հայրապետ և զիւր ժողովական անցս . 'ի յանդիմանել իմում առէ զայրդ վն այդպիսի մոլորութեց , նա յանձն էառ նզովիւք չափ հերքել զնոսին . և ես յայն սակս Թողի զնա անպատիժ ։ Յայս միտս հաստատեալ և ժողովոյն՝ մերժել մերժեցին զմոլորութիւս ընծայեալս պեղագիոսի , և զնա արձակեցին ։

Մինչ այս մինչ այն՝ լուեալ սրբոյն օգոստինոսի , թէ պեղագիոս կեղծաւորաբար հնարիւք սիրելի ընծայէ զանձն յաչս այնոցիկ՝ որ ոչն են գիտակ հանգամանաց անձին և գրոց նր , գրեաց նամակ սիրոյ և զգուշութե առ երանելին յովհաննէս յամի տն իբր 416 , ըսկսանելով օրինակ զայս . * Բազմերանեան ,, տն և արժանապատիւ եղբօր և եպիսկոպոսակցի ,, յովհաննու 'ի տր խնդալ ։ Զշ չլինելոյ ,, իմոյ արժանի ընդունել զգիր սրբութե քո , ,, ինչ ոչ իշխեմ դժկամակ լինել . և որ 'ի կարգին ։ Որ յետ ազդ առնելոյ չտալ տեղի նենգամիտ անձին և երկխօս լեզուի պեղագիոսի՝ 'ի վն բերէ . * Յորժամ լսէք ( ասէ ) 'ի նմանէ , զի խոստովան լինի զշնորհս ,, և զօգնականութիւն այ , համարիք՝ թէ նա ,, զայն ինչ ասէ , զոր և դուքդ ասէք՝ որք ըն ,, ուղղափառ կանոնի դաւանիք ( սր զգեր- ,, բնական շնորհս՝ որ յառաջեւոնցն քոյ ) . վն ,, զի ոչ գիտէք՝ թէ զի՞նչ ինչ գրեալ կայցէ ,, 'ի

,, 'ի գիրս նր: Ամին իրի զնորին իսկ զգիրս
,, յղեցի առ ձեզ. ոչ և զիմն՝ որով արարի
,, նմա պատասխանի. յորմէ յայտնապէս ի-
,, մասջիք յարգութ ձեր, թէ զորպիսի շնորհս
,, կմ զօգնականութ իմ ասիցէ՝ երբ 'ի դէմս
,, ոք ածէ նմա զհակառակիլն իւր ընդդէմ շը-
,, նորհացն իմ և օգնականութե. և ես ցուց-
,, ցի՛ք նմա ուսուցանելով և խրատելով, և
,, մտ փրկութե նր՝ որ քրիստոսի և եթ մարթի լի-
,, նել՝ աղօթս առնելով, զի զայն շնորհս իմ
,, խոստովանեսցի, զոր գիտեմք դաւանեալ
,, 'ի սրբցն իմ». և այլն: Ընդ հասանել այսր
նամակի 'ի ձեռս յովհաննու, կմ մինչև իսկ
էր ժամանեալ, խոյս ետ պեղագիոս 'ի վի-
ճակէն յովհաննու, զգացեալ թէ զինչ անցք
անցանելոց էին ընդ նա:

Իսկ երանելին յովհաննէս յետ անարատ
պահելոյ զհօտ իւր յայնպիսի և յայլ խոտո-
րածայն վտպութեց, և հասեալ 'ի բարւոք ծե-
րութի՝ հանգեաւ սրբութբ և խաղաղութբ
'ի քնյամի ամն 417. 'ի յունվարի. 21: Յայն
ամ առաջին էր զոսիմոսի հռովմայ հայրապե-
տի. որ և պատուով սրբութե յիշատակէ զայն
ինչ վախճանեալն զյովհաննէս 'ի թուղթն
առ ափրիկեցիս վասն պեղագիոսի՝ յասելն.
Ողբ. Բ. 'Ի Բ հատ. ժող. Էջ. 353. * «Յահա-
,, ւադիկ ընկալայք զթուղթ պրայիլոսի ե-
,, պիսկոպոսին Եդմի, որ 'ի տեղի սրբյն յով-
,, հաննու երջանիկ եպսի ձեռնադրեցաւ ե-
,, պիսկոպոս»: Իսկ թէոդորետոս պատմիչ
մերձաւոր ժամանակաւ, որպ յառաջագոյն
գրեալն

գրեալն էր ․ 'ի Է ․ Գիրս ․ Գլ ․ 35 ․ Թէ * զե֊
,, րուսաղէմացւոց եկեղեցւոյն զառաջնորդ֊
,, դութի ունէր յովհաննէս այր սքանչելա֊
,, հրաշ՝ յաջորդն կիւրղի ‖, նոյնպէս և զկնի
'ի Գլ ․ 38 ․ ասէ ․ * իսկ յեՃմ զկնի սքանչել֊
,, ւոյն յովհաննու կալաւ զառաջնորդութի
,, այնր եկեղեցւոյ պրայիլիոս ‖ ։

Պանծալի ևս է վկայութի օգոստինոսի, որ յաւուրս փոխմանն յովհաննու հայրապետի կմ՝ քանի մի ամօք յետ վախճանի նր գրեաց զայն ընդարձակ նամակ առ աւրեղիոս եպս ափրիկեցւոց, այն է գիրքն յաղագս գործոց պեղագիոսի ․ ուր ասէ ․ * Կարի իրաւամբք՝
,, ոպ և գործք ժողովոյն ցուցանեն, սովին
,, վկայութբ ( առաքելոյն ) վարեցաւ և սրն
,, յովհաննէս հայրապետ եկեղեցւոյն եՃմ ․
,, քանզի իբրև հարցաւ, թէ զի՞նչ ինչ անցք
,, անցեալ իցեն առ նովաւ ( յեՃմ ) յառաջ
,, քան զատեան ժողովոյն ( դիոսպօլսոյ ),
,, պատմեաց նա ինքն եպսաց մերոց նստելոց
,, ըն նմա յատենի անդ ․ 'Ի քրթմնջել ասէ
,, ոմանց և յասել զպեղագիոսէ, եթէ ասա֊
,, ցեալ է նր, կարող է մարդն կատարեալ
,, լինել, այսինքն է՝ որպ յառաջն էր ասացեալ,
,, կարող է լինել մարդ՝ առանց մեղաց, կշ֊
,, տամբեցի ասէ զնա վս այսոր բանի՝ ածել
,, 'ի վր, թէ՝ և առաքեալն պօղոս բազումս
,, վաստակեաց, բայց ոչ իւրով զօրութբ,
,, այլ շնորհօքն այ ․ ոպ և ասէ, առաւել քն
,, զամենեսեան զնս վաստակեցի, այլ ոչ եթէ
,, ես, այլ շնորհքն այ որ ըն իս ․ և դարձել

,, ոչ

տրն մատենագրաց, մանաւանդ բոլլանդեանց. որոց ակնարկեալ միայն 'ի վկայութեն հերոնիմոսի և 'ի գրիչն վարուց եպիփանու՝ որ Ը. ակամբ հայեցին երբեմն առ յովհաննէս հայրապետ, տարրանան 'ի սբ եղելս, և զայլ ոք փոխանակ նր տօնել ի գոլ գուշակեն. այլ 'ի զուր. զի յայսմ մասին ոչ կարէ վկայութեն սբյն հերոնիմոսի զօրանալ քան զվկայութիս այլոց հարց սբց, զորս տեսաք. ոմ և լեքէն նոր մատենագիր խօսելով զամին յովհաննէ 'ի կարգս պատրիարգաց եէմի՝ ասէ. * Սբն օգոստինոս, սբն պաւլինոս նոլայեցի, անաս_ ,, տաս և զոսիմոս քահանայապետք հռովմայ, ռուֆե_ ,, բրան, թէոդորետոս, և իգանկիոս՝ պատմելով մե_ ,, ծարանաց խօսին զնմանէ ||։ Իսկ գրիչ վարուց եպիփանու ոչինչ ազդէ մեզ յայսմ մասին. տեսցուք 'ի վարս նր՝ թէ գտանէ ԺԸ այլ բանից արժանահաւատ գտեսցի առ քննիչս։

Զայսոսիկ եդեալ՝ մեք ոչինչ զարմանամք, թէ 'ի Յ՝ 'ի մարտի 30 կմ 26. ուր դնի * Յիշատակ սբյ հօրն մերոյ յովհաննու հայրապետին եէմի ||, ոչ գրի վարք ինչ կմ պատմութի զնմանէ. բայց միայն 'ի ձեռագիր օրինակս ինչ ասի. * հանգեաւ խաղաղութբ ||։ Վասն զի չգոյր 'ի միջի այլ պատմական բան՝ բաց 'ի յիշատակարանաց եկեղեցական պատմութեց և 'ի թղթոց եպիսկոպոսաց. զորս անմարթ է 'ի համառօտագրութե յայսմաւուրաց բովանդակել։ Իւ ոչ իսկ արժան էր ԺԸ Հ. փոխագրել 'ի անդի վարուց յովհաննու զանստոյգ կմ զասեալ կուրութե և զլուսաւորութե նր՝ հանելով 'ի կեղակարծ վարուց եպիփանու. զի այնու ոչ յայտնի լինի վարք նր, այլ մանաւանդ անյայտանայ. և գուցէ այսպիսի իրօք չքաթեցան և բոլլանդեանք. և հնարեցան գտանել զայլ ոք յովհաննէս հայրապետ եէմի. և արդարև գտին բազումս նովին անուամբ, այլ ոչ գտին ոք անուամբ. վեյ և զուրկ գտան 'ի տօնելի սբյս։ Մինչև ի լինեցին նորահնար և իբր հաւանական դատմամբ կարծիս առաջի դնել, թէ գուցէ յովհաննէս հայրապետ տօնեալն 'ի յունաց, ոմ և յիշատակեալն 'ի մանաւանդ վկայագիրս լատինացւոց. 'ի մարտի. 24. կմ 30. (զի ոչ գիտեն ինչ մի զհայոց), իցէ քառասուն և իններորդն 'ի կարգս եպսաց եէմի, զոր 'ի վեցերորդ դարու նստոյց անաստաս կայսր՝ վն խոստմանելոյ նր ԺԸ դէմ կալ չորրորդ ժողովոյն. այլ յետոյ յաւուրս յուստինոսի կայսեր հաւան գտաւ նոյն ժողո_

վոյ

վոյ քանիմ սրբոյն սարգսի արքայի և Թէոդոսի արքե-
մանդրիտայ. ուր յայտ է թէ չէր վկայութիւն սրբոյն,
այլ և կասկած կեղծաւորութե: Իսկ Է հակառակն՝ ըղ-
ձերմէ տանելի հայրապետէն, զաքանչելոյն առեմ յով-
հաննէ նաև հակառակորդ կարծեցեալ գրիչն վարուց
եպիփանու՝ այսպէս վկայէ առ սուրբոսն. * Իսկ յով-
,, հաննէս պատուհասեալ և խրատեալ յասնէ արդա-
,, րոյ (յեպիփանէ՝ ) եղև սբ յոյժ ||: 'Ի նոյն աղբերէ
առեալ է և գրեալն 'ի Ճ. Ջ. * Իսկ յովհաննէս խրա-
,, տեալ և յանդիմանեալ յարդարոյն յայնմանէ՝ եղև
,, յայնմհետէ այր սբ և ողորմած յոյժ. և արարեալ
,, բազում ճառս ողորմութե, և հանգեաւ բարի վա-
,, րուք ||: ահա և 'ի Հ. * Եւ այնպէս խրատեալ յով-
,, հաննէս յեպիփանու՝ եղև այր սբ և ընտիր, զդա-
,, տացեալ 'ի փառս Այ: Եւ արար բազում ողորմու-
,, թիւս. և հասեալ 'ի բարիոք ծերութե՝ խաղաղութե
,, հանգեաւ 'ի քս. և եդաւ պատուով յեկեղ 'ի կար-
,, գի սբ հայրապետացն ||:

Արդ եթէ և 'ի գրութէ հակառակ կողմանն յովհան-
նու այսպիսի վկայութի ընծայի վերջին սրբութե նը
յոյժ, զի՞նչ այլ խնդրի. զի վախճանն պսակէ զգործ.
Իսկ զայլմէ յովհաննէ ումեքէ եէմացւոյ չէք և ոչ մի
վկայութի: Աստի յայտ է, թէ վայրապար յերկբայս
եղեալ և ոմանց 'ի լէհացւոց՝ անցուցին 'ի տօնացոյց
իւրեանց, ըստ տեսանելոյ 'ի նոր ձեռագիրս ինչ, փոխա-
նակ յովհաննու եէմի հայրապետի՝ զայլ ոմն յովհաննէս
եպս և զյակոբ քահանայ զյիշատակելոյն 'ի Լ. նոյ-
եմբ. I. և այլք 'ի նոյնպիսի գրչաց յեանց եդին Է
յովհաննու եէմի հայրապետի և զանուն արգիւու կի
արգիլչու եպսի, չփոթելով Է գրեալն 'ի Հ. նոյեմբ.
II. ուր կայ յիշատակ յովհաննու ողորմածին աղեք-
սանդրացւոյ (որ ասի որդի եպիփանու սուրբ) ընդ
արգիւու մարգարէին: Այլ չէ արժան խօսել Է այս-
պիսի խնչնաձեռնագրելի անձինս, որք առանց հմտու
ձեռներէց լինին այլայլել զհարազատ. ասանդս նախ-
նեաց:

Թո՛ղ զի և ոմանք յիմաստակաց առ մեզ՝ կամեցան ե-
մանել յայսմ միջոցի աւ ցեց անուամբ յովհաննու զառ
կեսբերանն ըստ կրկին անեալ, կե զիմաստասէրն 'ի կար-
գէ յիշատակելեաց 'ի թիւս տօնելեաց վերածեալ. և
այլ ես մնաստաճոյ կարծիք՝ առ չգիտելոյ զամենայն պատ-
մութե վարուց յովհաննու եէմացւոյ:

զինս ընտրանաւ 'ի զինուորութիւն արքունի 'ի գունդս գամրաց, դասեալ 'ի կարգ լեգէոն նագնդին՝ որ նստէր 'ի կապադովկիա, և ՟Ժ՟ գնդաց գնդաց սփռէր 'ի պահպանութիւն արևելականողմանց: Սու զի էին քառասունքս այս ազատորդիք և ազատաքարոյք, միանգամայն և առաքինի քաջութեամբ պանծալիք, և ո՛ քան զևս զատան յառաջադէմ քան զայլ զինուորակիցս, պատուեալք յաչս զօրագլխաց, և փառաւորեալք առաջի ինքնակալաց վ՛ս մեծամեծ գործոց իւրեանց յայլ և այլ պատերազմունս. և որ մեծն է՝ միակամ և միասիրտ էին այր ընդ եղբօր իւրում՝ զօդեալ քնական հաւատով և սիրով, նախանձելի երևելով նիզակակցաց իւրեանց՝ որ 'ի հեթանոսաց անտի:

Պատմէ գրիգոր նիւսացին, թէ 'ի գնալ սոցա երբեմն 'ի պատերազմ ընդդէմ բարբարոսաց արքունի հրամանաւ ընդ կայսերական գնդին՝ եղեն երևելի սքանչելիք. (զոր և յայլում գնդի քրիստոնէից առ առաջին ինքնակալօք աւանդեն լինել այլք.) իբր զի բանակն կայսեր պաշարեցաւ 'ի թշնամեաց յանձուկ վայրի ուրեք. և էին յառաւել նեղութեան յերեսաց ծարաւոյ, զի անջրդի էր վայրն, և մերձակայ հեղեղատք ցամաքեալք: Սյն ինչ զօրն ամ՛ կայր 'ի վարանս, և քաղէին որդիք նց՟՝ կթուցեալք և տարժանեալք, յայնժամ քառասունքն փոքր ինչ մեկուսի եղեալ 'ի բանակէ անտի՝ դիմեցին աղօթիւք առ ած՟՝ այց առնել նոցա 'ի տառապանս իւրեանց,

րեանց, եւ ցուցանել զամենահրաշ զօրութիւն տէրութե՟ն իւրոյ:

Այս ահա յանկարծակի մթացան երկինք ամպով, եւ եղեն փայլատակունք եւ որոտմունք սաստիկ, եւ տեղաց անձրեւ յորդառատ, մինչեւ լնուլ զա՟մ ծործորս եւ զհեղեղատս. անկան եւ ահագին շանթք կայծականց 'ի բանակն բարբարոսաց. եւ այնպէս կրկնակի նպաստ լինէր կայսերական բանակին աղօթիւք քառասնիցն. զի զծարաւն անցուցեալ ջրով՝ զօրացան յանձինս. եւ զշփոթութիւն թշնամեացն տեսեալ՝ համարձակ 'ի վերայ յարձակեցան եւ վանեցին զն՟ս:

Դարձեալ եւ յայլում նուագի 'ի դիմել անհամար բազմութե՟ բարբարոսաց խուժն խուժանօք 'ի վ՟ր հռովմայեցւոց, 'ի փախուստ անձապարէին զօրքն ա՟մ. իսկ արիական զօրականքն ք՟ի քառասունք՝ անշարժելի աձանացեալ 'ի տեղի ճակատուն, ոչ 'ի բազուկ իւրեանց յուսացան, այլ ջերմ աղօթիւք առ ա՟ծ ապաւինեալ՝ ասէին. ա՟ծ յանուն քում կեցո՛ զմեզ. եւ այնպէս միաբան սրտապնդեալ՝ կային մնացին իբրեւ ամուր պարիսպ ընդդէմ յարձակման ամբոխին. մինչեւ ահաբեկ արարեալ զն՟ս՝ զոմանս կոտորեցին, եւ զայլսն առհասարակ 'ի փախուստ դարձուցին:

Արդ թէպէտեւ այսպէս երախտաւորք էին առաքինի քառասունքն առաջի ինքնակալութե՟ հռովմայեցւոց, եւ ակնածելի յաչս ա՟մ իշխանաց, այլ վ՟ս զի ճշմարտութե՟ հա-

ւա-

ւատոյ նց և անարատ քաղաքավարութին նր 'ի յանդիմանութի անօրէն թագաւորին Լի-կիանոսի , ոչ խնայեաց 'ի նոսա : Բանզի 'ի յարուցանել խուռում հալածանս ընդդէմ քրիստոնէից ը ամ տեղիս՝ ուր հասանէր ձեռն նր , առաքեաց պատուէր և առ Լիւ-սիաս դուքս կեսարիոյ՝ որ հազարապետն էր և վերակացու արքունի գնդին եղելոյ 'ի կա-պադովկիա , քննել զդասս զինուորաց , և զորս գտցէ 'ի նոսա քրիստոնեայս՝ ստիպել զնս 'ի հեթանոսութի . ապա թէ ոչ՝ մահու մատնել :

Եւ զի յայնմ ժամանակի քառասունքն կայ-ին 'ի սեբաստիա քաղաք առաջին հայոց ( այն է սևաստ կմ սըվազ ) , հրաման յղեաց Լիւսիաս առ ագրիկողայոս դատաւոր սեբաս-տիոյ , զի կալցի զքառասուն զայն զօրա-կանսն , և հարց փորձ արասցէ . մինչև ասէ և ես ընդ հուպ եկից այդր : Իբրև ազդ ե-ղև այս լուր դառնութն առ քաջ զօրականսն քի , ոչինչ խռովեցան , և ոչ երկմտեցան , այլ միաբան քաջալերէին զմիմեանս համար-ձակ դաւանել զքս , և կամակար դնել զան-ձինս 'ի մահ վս սիրոյ փրկչին՝ որ մեռաւ ա-սնն վս մերոյ փրկութե տրն և թագաւորն բոլորից . և խնդրէին 'ի նմանէ պարգևել նց զկատարեալ նահատակութի վս անուան իւրոյ փառաւորելոյ :

Արդ՝ եհաս օր , յորում ատեան կարգեաց արեանարբու դատաւորն ագրիկողայոս , և ետ ունել զքառասունսն միանգամայն , և

ածել առաջի իւր. եհարց զնոս և ասէ. ուս-
տի՞ էք դուք ընտի՛ր զօրականքդ, զո՞ր դեռ
պաշտէք, և զի՞նչ անուանք են ձեր։ Յայն-
ժամ քառասունքն առհասարակ իբրև 'ի
միոջէ բերանոյ ասեն մեծաձայն. քրիստո-
նեա՛յ եմք, և զքն ա̃ծ պաշտեմք զերկնի և
երկրի արարիչ. և հայրենիք մեր անանցա-
կան՝ է երկնային քաղաքն ա̃յ։ Դ՛ղրդեցաւ
ատեանն 'ի ձայնէ բազմութեն նց, և ելից
զլսելիս ամենեցուն այս հնչիւն աղաղակի,
թէ քրիստոնեա՛յ եմք. և մի ըստ միոջէ յա-
ռաջ մատուցեալ իւրաքանչիւր 'ի նոցանէ՝
զնոյն երկրորդէր խոստովանութի. և ոչ ոք
'ի նոցանէ փոյթ կալաւ յայտնել զանուն
իւր կմ՛ զգաւառ, այլ միայն ասէր. քրիստո-
նեա՛յ եմ։

Իսկ դատաւորն մեղմով սկսաւ խօսել ա-
նոսա, և ասել. յայտնի՛ է մեզ ամենեցուն
և ինքնակալաց մերոց զկնովին՝ մտերիմ
ծառայութի ձեր 'ի գործ արքունի. զի յա̃մի
երևելի հանդիսացայք, և ցուցիք զարութի
քաջութե ձերոյ միասիրտ ոգւով նիզակակ-
ցութե, և ստացայք բազմապատիկ յաղ-
թութի ը̃դդէմ թշնամեաց. և մեծաց պար-
գևաց արժանի գտեք՝ յառաջադէմ գտայք
քան զա̃մ զօրականս, և անուն քաջ ժա-
ռանգեցիք։ Այլ արդ ժա՛մ է ձեզ ցուցա-
նել զնոյն մտերմութի 'ի պաշտօն դից մե-
րոց անմահից, զոհելով նց անյապա՛ղ՝ ըստ
ակնարկութե հրամանաց ինքնակալին լիկի-
նոսի։ Այլ հանեալ ցուցանէր նց զպատճէն

ար

արքունի հրովարտակին, որ ընդդէմ քրիստո-
նէից :

Պատասխանի ետուն սրբքն զուարթ դիմօք, և ասեն. եթէ մեք մահկանացու թագաւորի պատերազմ մղեալ՝ յաղթող գտեալ եմք, և ոչ յաղթեալ, ո՞չ և դու ինքնին վկայես, որչափ ևս առաւել պատերազմեալ զպատերազմ անմահ արքային՝ յաղթեսցուք հպարտութեան բռնաւորաց, և անարժան խորհրդոց և չարարուեստ կամաց՝ որ ՚ի բանսարկուին թելադրութէ : Ասէ Ագրիկողայոս. մի՛ այդպէս կամակորիք ո՛վ քաջք. մի յերկուց այժմ կայ ձեր առաջի. կամ զոհել դից, և փառաց հասանել, և կամ յոչն զոհել՝ անկանիլ ՚ի պատուհաս զինուորութեան, և փոխանակ կամարացդ կրել զկապանս թշուառութեան, մինչև զրկիլ և ՚ի լուսոյ արեւու. և արդ խորհեցարո՛ւք յանձինս, և
ընտրեցէ՛ք ձեզէն՝ զոր լաւն իցէ :

Իսկ նոքա ասեն. զոր լաւն իցէ մեզ, բարեխնամն Աստուած ինքնին հոգայ հանապազ և հագասցի. բայց միայն մեք մի՛ հեռասցուք ՚ի սիրոյ նորա : Իսկ դատաւորն սասանելով ասէ ցնոսա. մի՛ բաղում բանիւք ժամավաճառ լինիք. այլ երթա՛յք այժմ խորհել զօգուտն ձեր. և ՚ի վաղիւն եկա՛յք մատիք զոհել դիցն. և զայս ասացեալ՝ ետ տանել զնոսա ՚ի բանտ : Իսկ իբրև արգելան սրբքն անդէն, միաբան կրկնեցին ծունր, և յաղօթս կացին՝ ասելով. փրկեա՛ զմեզ Տէր Աստուած մեր յամ փորձութէ, և ՚ի գայթակղութէ այնոցիկ՝ որք

գործեն զանօրէնութիւն ։

Եւ իբրև Ը երեկս եղև, սկսան սաղմոսել ․ Որ բնակեալ է յօգնութիւն բարձրելոյն, ընդ հովանեաւ այ յերկնից հանգիցէ ․ ասասցէ տն, ընդունելի իմ ես դու ․ ապաւէն իմ, ած իմ, և ես յուսամ 'ի նա ․ նա փրկեսցէ զիս յորոգայթէ որսողին ․ և որ 'ի կարգին ։ Եւ այնպէս ջերմեռանդն աղօթիւք՝ սաղմոսերգութե պարապէին ոտնակացութ մինչև ցմէջ գիշերոյ ։ Եւ էր պարագլուխն նոցա յաղօթս և 'ի բանս հոգևոր մխիթարութե ումն կիւրիոն ․ ոմն և պինատոս յատենի երանելին կանդիտոս Ը դոմնոսի ։

Եւ ահա զհասարակ գիշերաւ երևեցաւ նոցա փրկիչն 'ի բանտի անդ ահաւորափայլ ծագմամբ, և ասէ ․ Ողջացարուք նահատակք իմ ․ բարի է սկզբնամարտութն զինուորութե ձերոյ ․ այլ որ համբերեսցէ ի սպառ, նա կեցցէ, և ընկալցի զպսակն կենաց ։ Եւ նոյնժամայն վերացաւ 'ի նոցանէ, և եղև աներևոյթ ։ Զայն բարբառ ահաւասարակ լուան ահիւ և խնդութե ․ և հատաւ քուն յաչաց նոցա ․ և այնպէս հանապազորդեալ կային յաղօթս մինչև 'ի լոյս առաւօտուն ։

Ապա 'ի վաղիւն անդր միւսանգամ նստեալ դատաւորին յատեան հանդերձ մեծամեծօք իւրովք՝ կոչեաց զնոսա առաջեաւ ․ և եկին կացին քառասունքն 'ի միասին յանդիման բեմին ։ Խօսել սկսաւ անդրէն ագրիկողայոս Ը նոսա պատրանօք, և ասէ ․ զոր ինչ ունիմ ասել

տանել ցձեզ, ոչ առ մարդահաճութեն, այլ ստուգութ̃ տանեմ. և զայն՝ անպատրուակ յերեսս ձեր, և 'ի լուր բարեկամացս. չի՛ք ոք իբրև զձեզ այդչափ վայելչադիտակ, այդչափ իմաստուն և ընտիր յա̃մ զօրականս զխնուճորեալս ընդ դրօշակաւ ինքնակալին. Նմին իրի և ոչ ոք այլ այնպէս գովելի, և այնչափ սիրելի մեզ. հա՛պա մի՛ լիցի ձեզ զսէրն յատելութի̃ փոխել՝ իբրև զքաղցրութի̃ մեղու 'ի դառնութի̃ լեղւոյ. քանզի այդ 'ի ձեր ձեռս է՝ եթէ զսէր և եթէ զատելութի̃ ողջունել ։

Յայնժամ տեսեալ երանելւոյն կանդիդոսի զդժնեակն հրապոյրս մարդելոյզ իշխանին, և կամելով զգգուանս նո̃ յատելութի̃ դարձուցանել, ազատաբերան համարձակութ̃ ասէ ցնա. կարի՛ 'ի դէպ ը̃ աղուէսաբարոյ շողոքորթութեդ և անուն կոչեցաւ քեզ ագռիկողայոս. այս է՝ վայրենի շողոքորթ ։ Նմանեցեալ դատաւորին՝ թէ 'ի բարկութի̃ կամին գրգռել զնա սրբն, զի մի խնայեսցէ 'ի նա̃, ասէ. ո՞չ ասացի ձեզ, թէ 'ի ձեռս ձեր է զսէր կա̃մ զատելութի̃ ողջունել. սիրել և սիրիլ, ատել և ատիլ ։ 'Ի վ̃ր եած սո̃ն կանդիդոս. վ̃ն այդորիկ իսկ՝ քանզի 'ի մեր ձեռս է սիրելն և ատելն, զա̃ծ սիրեմք, և զքեզ ատեամք, զի կամիս օտարացուցանել զմեզ յա̃յ. և արդ քանզի ատելի ես դու յաչս մեր, մի՛ և մի՛ իմիք սիրեսցես զմեզ ո՛վ ա̃ծատեաց և թշնամի ա̃յ, հակառակորդ ճշմարտութե և որդիդ կորստեան ։

Այս

մամնոյր եղբարք իցեմք: Այլ արդ մի լիցի մեզ կենօք և մահուամբ բաժանիլ յիրերաց, և կամ խառնել երկիւղ վատութեան յարուեխս քաջութեան. այլ որպէս եղաք ՚ի կենցաղումն մի սիրտ և մի հոգի, նոյնպէս և միով չնչով նահատակեսցուք ՚ի վկայութեան Ճշմարտութեան. և զո՛ր օրինակ ասաէն քաջ հանդիսացաք և զովելի երևեցաք՝ հպատակելով երկրաւոր թագաւորի, նոյնպէս և այժմ կանխեսցուք պարզերես երևիլ առաջի երկնաւոր թագաւորին մերոյ և այ. և ՚ի միասին ընկալցուք զպսակն յաղթութեան յաջոյն բարձրելոյ:

Իբրև աւուրք եօթն անցին ՚ի վ՟ր, եկն եհաս դուքսն, այն է լիւսիաս հազարապետ ՚ի կեսարիոյ կապադովկացւոց ՚ի սեբաստիա. և ՚ի վաղիւ՛ անդր յաւուրն ութերորդի նստեալ հանդերձ դատաւորաւ յատեանն՝ հրաման ետ ածել զքառասունսն: Այլ յորժամ ած եղև սոցին, անդրէն վերստին յորդորէր երանելին կիւրիոն զընկերս՝ և՛ յելանդ ՚ի տանէ բանտին, և ՚ի գնալն զճանապարհայն, ասելով. Եղբարք զօրացարուք, և զօրավլի՛զն լիցուք մխիթարանց. մարտիցուք քաջութեամբ, և մի՛ ուստեք զանդիմատեսցուք. առ տէր կարգասցուք, և ոչ մի ինչ երկիւղ խռովեցուսցէ զմեզ: Ո՞չ ապաքէն յորժամ ՚ի պատերազմ գնայաք, զտէր բարձրեալ ՚ի թիկունս մեզ կարդայաք. և նա լսէր և օգնական լինէր մեզ. և նովաւ յաղթէաք: Յիշեցէ՛ք, եթէ զիա՛րդ ՚ի ժամանակին՝ յարում

րում մտաք 'ի մեծ պատերազմ, դունդն ա̃մ 'ի փախուստ դարձաւ, և մեք միայն կացաք մնացաք 'ի ճակատու թշնամեաց՝ քառասուն ևեթ զօրականքս քո̃ի . և յաղաղակել մեր արտասուօք առ տ̃ր՝ ետ մեզ զօրութի̃ . որով արիացեալք՝ էր զոր կոտորեցաք, և էր զոր 'ի փախուստ դարձուցաք . և ոչ միում 'ի մէնջ վնաս ինչ եղև յերեսաց թագմամբոխ գնդից : Իսկ արդ այժմ երեք միայն դիմակացք են մեր՝ որք պատերազմին ընդմեզ, սատանայ և դուքսն և դատաւորն . մանաւանդ թէ մի միայն հին թշնամին է սոսկ մեր՝ անզօր բռնաւորն . և զիա՞րդ, մի թէ 'ի միոյ կմ̃ յերկց սատի 'ի պարտութի̃՞ մատնեցիմք, որ ոչն դարձուցաք թիկունս 'ի բազմաց . քա՛ւ և մի՛ լիցի եղբարք աղաչեմ . կարդասցո՛ւք ո̃ղ միշտն և այժմ զտ̃ր յօգնականութի̃ մեզ . և ո՛չ յաղթահարեսցեն ըզմեզ՝ ո՛չ աներևոյթ յարձակումն չարին, և ո՛չ արտաքին ինչ կապանք, և կմ̃ տանջանք, և ո՛չ մահ գլխովին :

Ո՞չ ապաքէն յո̃մ նուաճի եղանելոյ մեր 'ի պատերազմ զայն սաղմոսէաք, ա̃ծ յանուն քում կեցո՛ զիս, և 'ի զօրութե̃ քում իրա՛ւ արա ինձ . ա̃ծ լո՛ւր աղօթից իմոց, ո՛ւնկն դիր բանից բերանոյ իմոյ . և այժմ ևս ըզնոյն սաղմոս երկրորդեսցուք, և լու՛իցէ մեզ տ̃ր, և օգնական լիցի մեզ : Իսկ այնպէս զսաղմոսն 'ի բերան ունելով անընդհատութ̃՝ ածել եղէն յատեան բռնաւորաց, և միաբան կացին յանդիման դքսին և դատաւորին :

Հայ-

Հայեցեալ ընդ նոսա դքսին իբրև ընդ սիրելիս իւր՝ ակնարկէր իմն ասէր, ցդատաւորն. տեսանեմ զարի զօրականքս, որք փառաւորեալք են յինէն և յարքայէ. և յօժարամիտք են և ես փառաւորիլ՝ անսալով բանիցս բարեաց. այլ թէ յայժմուս պատճառանօք ինչ 'ի վիշտս անկանն, այն դուշակ է դատանելոյ նց մեծ ես դիւրութի։ Իսկ դարձուցեալ զբանս իւր առ նս՝ ասէ. ապաքէն պատիւ մեծ և պարգևս յոլովս գտեալ է ձեր յինէն առաւել քան զամ զինուորական դասս. զի ընդ ձեզ գտի յամենեսին առաւել կատարեալս գեղով հասակի և յաջողութբ ձեռաց. և իմ 'ի մտի եղեալ է դոյնչափ ես յաւելուլ 'ի փառաւորութի ձեր, եթէ ունկնդիր լինիջիք արքունի հրամանաց. քանզի որպէս լուայք՝ զմի յերկուց այտի հարկ է ձեզ 'ի ժամուս ընտրել. այս է՝ կամ զոհել դիցս, և առաւելագոյն պատուոյ և ճոխութե հասանել. և կամ յանսաստ լինելոյ 'ի բաց մեկանալ զկամար պատուոյ զինուորութե, և մատնիլ 'ի տանջանս մահու։

Յայնժամ յակնարկել ընկերաց առ սրբն կանդիտոս՝ յառաջ մատեաւ աներկիւղութբ, և ասէ 'ի բերանոյ ամենեցուն. աւասիկ քեզ լիցին կամարք զինուորութե մերոյ, և մարմինք մեր ողջոյն. միայն հոգիք մեր պահեսցին այնմ՝ որ գնեաց զմեզ պատուական արեամբ իւրով. և մի լիցի մեզ փոխանակել զանցաւոր զփառս և զկեանս մարմնոյ ընդ քնի. զի չիք ինչ պատուական յաչս մեր քան

զսէր

զոտէր փրկչին մերոյ. և չէ՛ մեզ մարթ առաւ-
ել յարգել զմարդ մահկանացու քան զա̃ծ-
կենդանին : Սոյն և ամենեքեան միաձայն
բարբառէին :

Ընդ որ ցասուցեալ դքսին՝ հրամայեաց սպա-
սաւորաց ատենին հարկանել քարամբք ըզ-
բերանս և զդէմս նց : Կանդիդոս ասէ. ա-
ռաջնորդդ խաւարի և վարդապետ անօրէ-
նութե՛՝ առնելով արասցես զկամս քո, այլ
փութով տեսցես զ'ի վերուստ զվրէժխնդ-
րութի և զպատուհաս անձինդ : Այլ մինչդեռ
դանդաղանօք շարժէին սպասաւորքն բերել
զքարինս 'ի հարկանել, ասեն ցնս դատաւ-
որն և դուքսն զայրագին. ով վատք և ան-
պիտանք զի՞ հեղգայք փութապէս կատա-
րել զոր ձեզն հրամայեցաւ : Այլ նոցա այր
զարամբ ելեալ անյապաղ ձգել զքարինսն
'ի վ̃ր սբց, շփոթեցան և շուարեցան յան-
ձինս. և առ չգիտելոյ՝ թէ զո՞ հարկանեն,
հարին զմիմեանս և չարաչար վիրաւորեցին.
և որք առ սրբսն ջանային ձգել՝ անձանց վնա-
սէին, զի քարինքն 'ի նս ոչ մերձենային,
այլ յետս 'ի ձգողսն դառնային :

Զայն տեսեալ երանելի նահատակացն՝ 'ի
միտ առին զսքանչելիսն ա̃յ. և նոր քաջալե-
րութի զգեցան 'ի հոգին՝ ապաւինելով 'ի
յոյսն արարչին : Իսկ դուքսն յանհնարին
սրտմտեալ 'ի վ̃ր նոցա եղելոց՝ բուռն ե-
հար 'ի քար մի, զի քարընկէց լիցի ամենայն
ուժգնութբ յերեսս միոյն 'ի սբց անտի. այլ
վրիպեալ 'ի խուճապանաց՝ եհար զդատաւ-
որն,

ւորն, և խորտակեաց չարաչար զծնօտս նց՟ (կամ զի այլոց՝ զծնօտս իւր): Յայնժամ ասէ ոգն կիւրիոն. տ՟ր, ներողիչք մեր և Թշնամիք մեր նք՟ տկարացան և անկան. այժմ տ՟ր, քանզի դու հրամայեցեր, սուրք նոցա մտցեն ՚ի սիրտս նց՟, և աղեղունք նց՟ փշրեսցին: Իսկ իշխանն մոլեգնեալ առ ցասուցն՝ գոչէր. երդուեալ ՚ի գլխս, զի մոգուԹե՟ արուեստ է ՚ի դոսա. որով ինչ ոչ զգան ՚ի հարուածոց մերոց, այլ ՚ի մեզ դարձուցանեն. և յանդուգն բարբառեալ ը՟դէմ տ՟րանց իւրեանց՝ լնուն զերեսս մեր ամօԹով:

Ու այս ես պատասխանի ս՟րն դոմինոս. այլ ես զճշմարիտն ասեմ քեզ, զի տ՟ծ մեր յաղԹեաց. և զբերանս ձեր՝ որք բարբառէին ը՟դէմ արդարոց զանիրաւուԹի, ելից նախատանօք և Թշուառութ՟բ. և արդ հի՞մ դու ով անօրէն ապիրկողայդ՝ առաջնորդ գայԹակղուԹե՟ց և յորդորիչ չարեաց, ոչ պատկառես յա՟յ հանդերձ լինելոյ. այլ ինքն դարձիր և ազի ստանանայի միաբանեալ էք ը՟դէմ ճշմարտուԹե. և զչարիք ես ընդ մեր համարձակուԹի, և զսքանչելիսն ա՟յ՝ դիւաց համբաւէք: Ու եԹէ ոչ նահանջեսցայք առաջին մրցանօք, յերկրորդն մարտերուք. զի զչափ առաջինք զօրուԹե՟ տ՟յ մերոյ՝ որ գործէ ՚ի մեզ:

Իսկ ապաստաւորքն ասասանէին ս՟րց և ասէին. ով անմիտք և անարժանք ա՟մ մարդասիրուԹե՟ տ՟ծոյ, ընդէ՞ր ոչ զոհէք, զի լինիջիք սիրելիք յաչս իշխանաց և Թագաւորաց: Ու

ս՟րն

սրբն կիւրիոն ասէ ցնա ․ մեք ընտանիք և սի-
րելիք այ շնորհօք փրկչին մերոյ՝ զմի ած
պաշտեմք, և զնա քն զորդի նր միածին, և
զամենասբ հոգին ․ և նովաւ ձգնիմք գա
վութք կատարել զընթացս առաջիկայ նաւ
հատակութն մերոյ ․ զի տր ինքնին հզօրիչ
է մեր, որ առաջնորդէ մեզ և ուղղէ զբե-
րանս մեր 'ի բանս ճշմարտութն ․ զի ընկալ-
ցուք զպսակս անապականութն յինքնազօր
և յամենակալ թագաւորէն, յաղթելով չար-
արուեստ ձերոց հնարից ։

Հրամայեաց դուքսն տանել զնա անդրէն 'ի
բանտ, մինչև խորհեսցի՝ թէ զինչ պարտ ի-
ցէ առնել նմա, կամ որով օրինակաւ զքառա-
սունսն միանգամայն մարթ իցէ պատուհա-
սել ։ Իսկ սրբցն մտեալ 'ի բանտ՝ սկսան սաղ-
մոսել առաջնորդութբ երանելւոյն կիւրիո-
նի ․ Առ քեզ տր համբարձի զաչս իմ, որ
բնակեալդ ես 'ի յերկինս ․ ոպ աչք ծառայի
'ի ձեռն տն իւրոյ, և որ 'ի կարգին ։ Եւ ա-
հա 'ի գիշերային տքնութեն յանկարծակի եղև
ձայն առ նս, և երևեցաւ նմա միւսանգամ
փրկիչն, որ ասէր ․ Որ հաւատայ յիս, թէ-
պէտև մեռանի՝ կեցցէ ․ քաջալերեցարուք և
մի երկնչիք 'ի տանջանաց բռնաւորաց ․ զի
առ ժամանակ մի են ․ համբերեցէք սակա-
ւիկ մի, և ընկալջիք զերկնաւորն պսակ ան-
վախճան ։ Եւ նք անկեալ երկիր պագանէին
տն, և գոհանալով փառս տային նմա ։ Եւ
'ի վերանալ փրկչին 'ի նոցանէ՝ լցեալ երա-
նելեացն ամ հոգևոր օրհնութբ՝ զարմա-

նայլին է մարդասիրութեան նյ. և այնպէս մխիթարեալ յոյժ՝ անցուցանէին զայն գի-շեր ուրախութ̃բ և զուարթութ̃բ մեծաւ:

Ի փաղփիւն անդր կոչեցան անդրէն յատեան. և իբրև յանդիման եղեն բռնաւորաց, ա-ձապարեալ ասեն ցդուքսն. մի՛ խազուժ բա-նիւք զմեզ հարցանէր. զի՞ կաս, կամ զի՞ յա-պաղես. զոր ինչ առնելոց ես, արա՛ ը̃ մեզ. զի մեք զքո ոչ ուրանամք, և կռոց ձերոց ոչ զոհեմք: Յայնմ վայրի տեսանէին ս̃բքն, զի կայր յատենի անդ ինքնին սատանայ՝ սուր 'ի ձեռին յաջմէ դատաւորին, և վիշապ մի ահագին 'ի ձախմէ նր̃. որք ասէին ցունկն ազրիկողայոսի. մեր ես դու, մարտիր ա-րիաբար:

Յայնժամ հրամայեաց դատաւորն ը̃ս միա-կամ խորհրդոյ դքսին կապել զքառա-սունսն, և արկանել չուան 'ի պարանոցս միոյ միոյ 'ի նոցանէ, և տանել զամենեսին 'ի լիճն, որ կայր արտաքոյ քաղաքին սե-բաստիոյ իբրև զծովակ, և արկանել 'ի մեր-կուց 'ի ջուր անդր. զի կամ հեղձամղձուկ լինիցին 'ի ջուրն, և կամ կենդանւոյն պա-ղեալ սառեսցին 'ի պարզի գիշերոյն. քանզի և աւուրքն էին ցրտագին, և օդն դժնդակ: Կարգեաց և 'ի վերայ նց̃ պահապանս հան-դերձ բանտապետիւ, զի մի՛ ոք փախիցէ 'ի լճէն. այլ պատուիրեաց ջեռուցանել և բաղանիս առ լճիւն 'ի գայթակղութ̃ի նց̃. զի որ կամի ուրանալ զհաւատս իւր և զեր-ծանիլ, անկցի 'ի բաղանիս անդր:

Եւ էր ընդ երեկս՝ յորժամ արկանն քառա-
սունքն 'ի լիճ անդր մերկ մարմնով. և ահա
յառաջնում պահու գիշերոյն շնչեաց հողմ
ցրտասառոյց, և սկսաւ պաղիլ ջուր լճին
առ հասարակ. և երթալով երթայր և պա-
տէր սառն զնոքօք, և ձարձատէր զմարմինս
նոցա. հերձանէր մորթ մարմնոյ նոցին, և
բղխէր արիւն յորդ, և խառնէր կարմրութիւն
արեան ը̃ն կապուտակ ծովակն սառուցեալ.
և ինքեանք առ սակաւ սակաւ պաղեալ
նուաղէին յոգւոյ:

Եւ իբրև առ հասարակ զայս 'ի յերկինս համ-
բարձեալ՝ մատուցանէին զանձինս կամաւոր
պատարագ կենդանի այ̃ յայն անհնարին
տանջանս, մի ոմն 'ի նոցանէ տկարացեալ անձ-
ժուժութե̃՝ առ հովանալոյ 'ի ջերմութէ ա-
րոյն այ̃, չհանդարտեաց դժնդակութե առ-
օրեայ տանջանաց, այլ 'ի բաց ստուցեալ 'ի
ցանկալի միաբանութէ երանելի ընկերացն՝
դիմեաց անկաւ 'ի ջերմ բաղանիս. և ոչ գի-
տաց հիգացեալն՝ եթէ ը̃ն յաւիտենականին
և զաստի կենցաղս անդէն ունէր կորուս-
նել. ո̃պ և եղև իսկ. զի ը̃ն մտանելն 'ի բա-
ղանիսն՝ լուծաւ պաղեալ մարմինն նր̃ 'ի ջեր-
մութէ անտի. և վտանգեալ 'ի դիմամար-
տութէ սաստիկ ցրտոյն և տապոյն՝ շնչար-
գել եհան վաղվաղակի զոգին:

Եւ ո՞ կարէ պատմել աստանօր զանհնարին
մորմոք սրտի երանելի սր̃ցն ընդ կորուստ
ողբալի դասակցին իւրեանց, որ պակասե-
ցաւ 'ի թուոյ նոցա, և եղև բաժին օտարին

չար-

չարեաց ։ Սուգ և Թախծութի պատեալ պաշարէր զգասս երջանկաց • առհասարակ յարտասուս ցնդեալ՝ պաղատախառն աղերսանօք առ ամենատէրն կարդային իւրև ընդ մի բերան • գութ արկանէին առաջի մարդասիրութե փրկչին՝ քաղցր աչօք ակնարկել 'ի նս • Մի՛ տ՛ր ասեն , մի՛ 'ի գեսս բարկասցիս մեզ ( ըստ ամբակումայ ձայնին ) , և մի՛ կաթեսցէ սրտմութի քո 'ի վր ծովուս • քանզի ահա որ որոշեցաւն 'ի մէնջ , հեղաւ իբրև զջուր , և ցրուեցան ամ ոսկերք նր • այլ մեզ մի՛ լիցի որոշիլ 'ի քէն մարդասէր տր կենօք և մահու , մինչև կենդանացուսցես զմեզ ։ Ի քեզ տր յուսամք 'ի բոլոր սրտէ ; և զանուն քո կարդամք զօրհանապազ • քանզի զքեզ տր օրհնեն արարածք ամ , վերապք և ամ խորք ; հուր և կարկուտ , ձիւն և սառն ; հողմ և մրրիկ , որք առնեն զբան հրամանի քո • որ միայն շրջիս 'ի վր թևոց հողմոց • որ գնաս 'ի վր ծովու իբրև 'ի ցամաքի , և զբռնութի նր բռամբ ձեռին քո յածուցանես ։

Լուր մեզ տր՝ լուր մեզ , որ լուար յակոբայ յաղաչելն զքեզ 'ի փախչել անդ իւրումն 'ի սպառնալեաց եսաւայ եղբօր իւրոյ ցասուցելոյ • որ եղեր ըն յովսէփայ 'ի վաճառիլն նր ըն քում օրինակի , և փրկեցեր զնա յամ փորձութէ • որ լուար մովսեսի , յորժամ առնէր նշանս 'ի փարաւոն և յամ ժողովուրդ նորա ; և հերձեր զծով , և տարեալ անցուցեր զժողովուրդ քո յանապատ հանդարտութե • որ

լո՛ւր աղաղակի աշակերտաց քոց Տէր 'ի պահու նաւակործելոյն նց̄. լո՛ւր և այժմ մեզ Տէր, զի մի՛ ընկղմեսցէ զմեզ պտոյտն ջուրց, և մի՛ ընկլեսցեն զմեզ խորք անդնդոց. օգնեա՛ մեզ Աստուած փրկիչ մեր, զի աղքատացաք յոյժ. օգնեա՛ մեզ փրկիչ մեր, զի համարեցաք իբրև զիջեալս 'ի խորս ծովու. լուծան ջիլք բազկաց մերոց, և ոտք մեր պաղեալ անպիտանացան. և անձինք մեր ներկան յարենէ մերմէ։ Փութեացո՛ Տէր զծանրութիւն և զզժնդակութիւն ցրտագին օդոյս. որպէս զի ծանիցեն ամենեքին, զի առ քեզ Տէր Աստուած մեր կարդացաք և փրկեցաք. զի 'ի քեզ Տէր յուսացաք, և ոչ ամաչեցին անձինք մեր։

Այս եղև յերրորդում պահու գիշերոյն, (որ և էր երրորդ գիշեր արկանելոյ սոցա 'ի լիճն ծովն նիւսացւոյն,) յանկարծակի ծագեաց լոյս մեծ 'ի վերայ լճին իբրև զճառագայթս արեգական. և ծաւալեցաւ հետզհետէ ջերմութի իբրև զմիջօրեայ տապոյ արևու յամառայնի. մինչև իսկ և իսկ հալիլ սառին, և լուծանիլ 'ի ջուր եղկացեալ։ Այս զօրութի էր արեգականն արդարութե, որ երևեցաւ նց̄ անճառելի ճառագայթիւք, և քնեան էջք գերափայլ լուսով՝ որ մխիթարեաց ըզծառայս իւր. Քզի ինքնին սերովբէից թագաւորն իջեալ 'ի վերուստ տեսանիւր սոցին։ Այս նոցա զաչս 'ի յերկինս ամբարձեալ՝ ձեռամբ մատնացոյց լինէին, և [illegible] զընկեր 'ի վեր հայել. փրկիչն մեր Տէր յա[illegible] հա ծագեանց ասէին զլոյս իւր. տեսցուք և զա՛ւար

զուա՛րճասցուք ․ ժամս ո՛չ է արեւու, արե-
գակն է քո՛ լոյսն մեր՝ որ երեւի ․ արդարեւ
ծագեաց արեգակն անմտանելի եւ լոյսն ան-
հասանելի ․ եւ այնպէս ցնծալից եղեւ փառս
վերառաքելին փրկչին իւրեանց ։

Նա զայս ոչ ոք իմացաւ 'ի պահապանաց՝ որք
ըմբռնեալ էին 'ի քուն, բաց 'ի միոյ անտի՝
որ պահապանն էր կալանաւորաց, եւ էր կար-
գեալ 'ի վերակացութի բաղանեաց (ու այ-
լոց՝ բանալեաց) ․ քանզի սա հսկէր արթնու-
թբ, եւ ունկն դնէր զարմացմամբ աղօթից
երանելեացն ․ եւ խորհէր 'ի միտս իւր, թէ
զիա՛րդ ելեալն 'ի թուո՛յ նց եւ անկեալն 'ի
բաղանիս՝ նոյնժամայն մեռաւ 'ի ջերմութէ
իբրեւ պատուհասեալ, իսկ երեսուն եւ ի-
նունքն՝ որք աղօթս տունէին 'ի մէջ սառին,
կային տակաւին կենդանի ։ Նա յորժամ
ետես զլոյսն ծագեալ զնոքօք, եւս քան զեւս
հիացեալ՝ հայէր ընդ երկինս, թէ ուստի՞
գայ գիշերային ճառագայթ սքանչելի լու-
սոյն այնորիկ ․ եւ ահա մինչ այս մինչ այն՝
տեսանէր, զի 'ի միջոյ նշուլից լուսոյն իջա-
նէին պսակք 'ի վերուստ 'ի վր նց ․ եւ այն՝
թուով երեսուն եւ ինն ըստ թուո՛յ մնացելոցն
'ի լճին ։

Նա սքանչացեալ ընդ իրսն՝ ասէր ընդ միտս ․ ո՞չ
սոքա ամենեքին քառասուն էին թուով ․ եւ
զիա՞րդ 'ի պսակսն միոյն՝ միով պակաս է եւ
պսակացն թիւ ․ յայտ է թէ զի որ արկան
'ի բաղանիսն՝ անարգեցաւ, եւ չեղեւ արժա-
նի 'ի համար գրիլ քառասնից ։ Յայնժամ

'ի

'ի բանալ տն զայս հոգւոյ նր՝ արծարծեցեալ
եռանդն 'ի սիրտ առն, զի ինքն փոխանա-
կեացն զտեղի զրկելոյն. և ոչ գիտէր՝ եթէ
տր ընտրեաց զնա իբրև զմատաթիա փոխան
յուդայի։ Ապա փութացեալ զարթոյց զայլ
պահապանսն՝ որք ընդ նմա էին. և մերկա-
ցեալ զզգեստսն, և ընկեցեալ 'ի նս զզէնս և
զզարդ իւր, վազեաց 'ի լիճ անդր՝ աղաղակե-
լով մեծաձայն, և ես քրիստոնեայ եմ։
Եւ խառնեալ զանձն յերախանս սբց՝ ասէր
'ի ձայն բարձր և 'ի բոլոր սրտէ. տր տծ
բարձրեալ և ճշմարիտ՝ հաւատամ 'ի քեզ,
յոր և դոքա հաւատան ճշմարիտ քո ծա-
ռայք. և զիս համարեա՛ աղաչեմ 'ի թիւն
սոցա, և արժանի՛ արա զիս հաղորդ լինել
նոցին փորձանաց և չարչարանաց, զի և ես
ը նոսին պսակայց 'ի քեզ։ Եւ եղև անպատմե-
լի ուրախութի սբց առաւել քան զառաւել.
յայնժամ սբն կիւրիոն սկսաւ ասել ձայ-
նակցութբ երջանիկ ընկերացն իւրոց. ո՞վ է տծ
ոպ տր տծ մեր, կամ ո՞վ է տծ բաց յոյ մեր-
մէ. դու ես տծ՝ որ առնես սքանչելիս միայն.
եղեր զթշնամիս մեր յոչինչ, և զսատանայ
յամօթ արարեր, լցեալ զպակասութի թուոյ
չորրորդ տասինն քոյով անճառ մարդասի-
րութբ. զի մի՛ ուրախ լիցի բանսարկուն չա-
րութե ը անկատարութի մերումս դասու, այլ
յաւիտեան հեծեծեսցէ կորանօք։ Եւ յա-
ւել սաղմոսել. ապրեցո՛ զիս տր, զի նուա-
զեաց սբ։

Եւ է սատանայ յաղթեալ ամօթով ( ը գրե-

Լոյ

չէր բաւական պատմելոյ 'ի լսելիս մահկանացուաց առ անճառութեն, ըստ պօղոսի՝ որ լուաւ բանս անճառս, զորս ոչ է պարտ (ասէ, իմա անմարթ) խօսել ։ Քանզի և գրիգոր մեզ պօղոս այլ՝ հեթանոսաց առաքեալ, առաքելական այր, նման նմին առաւել քան զայլս վաստակեալ յառաքելաջան մշակաց բանին. եթէ չարչարանօք, առաւել. եթէ բանտարգել ոքնութ՟՝ գեր 'ի վեր. զի ոչ ոք արդեօք հնգետասան ամ բանտարկեալ 'ի ո՞րց, և այն 'ի բանտ խոր վիրապի 'ի մէջ թունաւորաց, և անդ իբրև 'ի գերեզմանի թաղեալ կենդանւոյն և կենդանի պահել աջով հզօրին՝ մինչև ցօր ելցն փառօք 'ի փառս փառաւորելոյն ։



Մարդ ոչ ծառայն քան զՏէրն, առաւելագոյն քան զարեգակն՝ յառաջեաց ծննդեամբ յԾ՝ վեցիւք եւեթ ամսօք, և յերեւանելոյն ամի կենաց իւրոց դարձ արարեալ յանապատէ՝ սկիզբն արար մկրտութեան և քարոզութեան ապաշխարութեան (2), նոյնպէս և կանխէր ելք նր յԾէ քան զՏէրն՝ Ը ելանել փրկչին ՚ի քարոզութիւն. զի անդէպ էր ճրագի առաջի արեւու լուսածագել. և այս էր՝ զոր Ինքնին մարգարէանայր յովհաննէս, եթէ նմա պարտ է աճել, և ինձ մեղմանալ. որպէս և Տէրն զնոյն յայտնաբանէր՝ յաւել անդ զյովհաննէ առ հրեայս. նա էր ճրագն՝ որ ծագէր, և դուք կամեցայք առ ժամանակ մի ցնծալ ՚ի լոյս նորա. որով և զայն տայր իմանալ՝ թէ ոչ ապաշնորհքն ինքնին շիջուցին զանաղօտ լապտերն, զոր գովէին և սիրէին, նոյնպէս և զարեգակն գլխովին մտաքերին շիջուցանել զկենսատուն Քի ։

Սակս այս նախընթացութե կարապետին նաև Քն մահու փրկչին՝ կարգեցաւ և ՚ի լնուլ ըղպաշտօն հրեշտակութե իւրոյ առ երամս նահապետաց և մարգարէից և ամ արդարոց յաւելեալ և այսր, որք սպասեալ մնային ազատեցուցիչ յուսոյ գալստեան ԱԾորդւոյն երևելոյ ՚ի մարմնի. վասն և փութայր զնոյն աւետարանել նց նր կարապետն՝ ՚ի ձեռն կատարման իւրոյ գլխատմամբ՚ ՚ի հերովդէ. զորմէ ժամ է ասել ։

Հերովդէս չորրորդապետ՝ արքայ անուանեալ միոյ ՚ի չորից մասանց պաղեստինու ՚ի-

կող.

կողմանս գալիլեացւոց ընդ ձեռամբ հռովմայ կայսեր, առեալ էր կին օրինաւոր զդուստր արետայ արքային պետրայ, զի̃ ապառաժ կոչեցեալ արաբիոյ. այլ յետոյ բանս եղեալ ընդ հերովդիադայ կնոջ փիլիպպոսի եղբօր իւրոյ՝ առ չար ցանկութե̃ն յայտնի շնութե̃ կորզեաց զնա 'ի տանէ առն նո̃ր 'ի կենդանութե̃ նո̃ր, և անուանեաց իւր կին զհոմանին. մինչև փախչիլ յերեսաց նո̃ր հարազատ լծակցին դստեր արետայ, և գալ պատմել մեծին յովհաննու, զոր ճանաչէր այր ա̃յ և մարգարէ. և գիտէր՝ թէ նոյնպէս ակնածէ 'ի նմանէ և այրն իւր հերովդէս արքայ. զի բազում անգամ կոչէր զնա 'ի պալատն, և լուեալ զբանս քարոզութե̃ 'ի սբ̃յն՝ քաղցրութե̃ ունկնդիր լինէր: Զայս լուեալ սբ̃յ մկրտչին՝ չոքաւ յանդիմանեաց զհերովդէս յայտնապէս քարոզելով զճշմարտութի օրինացն ա̃յ, եթէ չէ՛ արժան քեզ ունել զկին եղբօր քո կենդանւոյ:

Ընդ որ զչարեալ հերովդի՝ ընդ սադրելոյ չարադրդեան հերովդիադայ, ոխացաւ ընդ սբ̃յն. և յետ աւուրց առաքեաց՝ կալաւ զնա և եդ 'ի բանտի, ըստ յովսեպոսի 'ի մաքերոնտայ ամրոցի՝ որ յայնկոյս յորդանանու մօտ 'ի բերան գետոյն առ մեռեալ ծովու: Իսկ արետայ դուստրն խոյս ետ և գնաց առ հայր իւր. որով առաւել համարձակութե̃ գտեալ հերովդիադայ՝ տիրաբար վարէր յա̃մի, մինչև իշխել և կնաբարոյ առն, և բազում վնասուց լինել նմա պատճառ մինչև 'ի մահ

դրդ-

ընդդաւելով զնոսա 'ի վ(եր)այ ազգականաց նոցա և եղ-
բարց, որ և իւր իսկ մերձաւորքն էին . զի
հերովդիանոսքն՝ որ և հերովդեանք կոչին, էր
դուստր արիստաբուղեայ որդւոյ մեծին հե-
րովդի ասկաղոնացւոյ 'ի մարիամենայ կնո-
ջէն . այլ զգլուխ տեառն չարեացն հերովդի և
հերովդիադայ եդև անպարտ արիւն յով-
հաննու ։

Բանզի եղև օր՝ յորում հերովդէս արար
կոչունս մեծամեծաց իւրոց իբրև 'ի յիշա-
տակ ծննդոց իւրոց . և այս ոչ էր սովորութե
հրէից, այլ ըստ հեթանոսաց ժամանակին,
որպէս է տեսանել 'ի պատմութիւս հռովմայեց-
ւոց յայնմ դարու . մինչ և 'ի կատարել կոչ-
նոցն հեթանոսաբար՝ կաքաւեաց և լիրբ
դուստրն հերովդիադայ ըմբնուոյ՝ առաջի
կամ շաղուածէ անուն՝ 'ի հանդիսի կոչնակա-
նաց ։ Նա անմիտն հերովդէս զուարթացեալ
'ի գինւոյ, և տեսեալ թէ հաճոյ թուի նո-
քեան և հրաւիրելոցն կաքաւումն աղջկանն,
արար նմա խոստումն անմտութե, թէ խնդր-
եսցէ յինէն զոր ինչ և կամիս, և տաց քեզ՝
մինչև ցկէս թագաւորութե իմոյ ։

Նա պաղջիկն էր անօրէն խրատու մօր իւրոյ՝
ասէ . տուր ինձ այժմ 'ի վ(եր)այ սկտեղ զգ-
գլուխն յովհաննու մկրտչի ։ Սորջացաւ 'ի
խորհուրդս իւր խորհրդականօքս թագաւորն .
զի զոր ոչն կարծէր՝ լուաւ . այլ 'ի պահել
զպատուէր անձինն, զի մի երևեսցի ծանծա-
ղամիտ և երդմնազանց առաջի բազմակա-
նացն, յանձն էառ զգործն անարժանութե .

ու-

առաքեաց դահիճ, եւ գլխատել զայրն մի.
և բերաւ պատուական գլուխն արհամարհա-
դախ, և տուաւ աղջկանն. և նա առեալ
տարաւ առ մայր իւր ։ Նոյնպէս կատարե-
ցաւ գլուխն մարգարէից գլխատմամբ յա-
ռաջին կմ յերկրորդ զատկի քարոզութե փրկ-
չին. այսպէս համդիպեցաւ արդարն ՚ի վը-
կայութեն ճշմարտութե. մինչև յայտնի լի-
նել և ամ հրեից, թէ չար էր արարն հերով-
դի. վյ և յայ հասեալ համարեցան պատու-
հաս զչարիսն՝ որք եկին զկնի ՚ի վր թագա-
ւորին և զօրաց նր. ոմ ասացաք այլուր բա-
նիւ յովսեպոսի. այլ սուտ ըն կարգի նշանա-
կեսցուք ։

Լուաւ արետաս արքայ աներ հերովդի՝ զոր
ինչ արար նա անզգամութե ընդ դուստրն իւր
յանձնել անդ զհերովդիադա. և յետ սա-
կաւուց եհաս յականջս նորա և գլխատումն
մեծի մկրտչին ՚ի պատճառս նոցին իրաց. վյ
առիթ առեալ զայլ կռիւ վր սահմանաց ինչ
մորութե ըն մէջ իւր և փեսային իւրոյ, զօրա-
ժողով եղև և ել ՚ի պատերազմ ՚ի վր հերով-
դի. և հերովդէս արձակեաց ընդդէմ նորա
գունդ բազում. այլ արետաս եհար և խոր-
տակեաց չարաչար զզօրս նր նիզակակցութ
քաղաքացն հայոց ։

Զի ոմ գրէ խորենացին (Է. 28), աբգար
արքայ հայոց՝ զկնի դարձի իւրոյ յՑԷՆ պար-
սից եկեալ ՚ի քաղաքն իւր յեդեսիա՝ միաբա-
նեաց ըն արետայ արքայի պատրիացւոց՝ տա-
տարս տալով նմա ՚ի ձեռն խոսրանայ (կամ
խոռ

խորենայ ) ուրումն արծրունւոյ՝ մարտնչէր ընդ հերովդէի . քանզի նախ զդուստր արետայ կին առեալ հերովդէի , և անարգեալ ՚ի բաց եթող . և զհերովդիադա մեկնեալ յառնէ իւրմէ եհան կենդանւոյն . յաղագս որոյ սպան և զյովհաննէս մկրտիչ : Այլ եղև պատերազմ ընդ նա և ընդ արետ մըն անարգանաց դստերն . յորում սաստկապէս հարեալ սատակեցան զօրքն հերովդէի՝ յօգնականութե քաջացն հայոց , որպէս յածային տեսչութե՝ վրէժս հատուցանել ընդ մահուանն մկրտչին . ընդ որում և հրեայքն առ հասարակ վկայեցին՝ ասէ յովսեպոս :

Արդ հերովդէս կորագլուխ ամաչեցեալ մըն պարտութե՝ ապաւինեցաւ առ տիբեր կայսր , զի մի իսպառ վատթարեալ մնասցէ : Այլ թէպէտև առ ժամն եգիտ նպաստաւորութի ՚ի հռովմայեցւոց , այլ կասկածելի էր նա և յաչս նց՝ առ թշնամութեն ընդ պիղատոսի դատաւորին հրէաստանի . ընդ որում արար բարեկամութի ՚ի ժամանակի չարչարանաց տն . բայց և ոչ այնու օգտեցաւ . մինչև յետ բազում անցից՝ յաւուրս կայսերութե կայիոսի կալիգուլայ մերժեցին հռովմայեցիք զհերովդէս յամ իշխանութե չորրորդապետութե , և իբրև չոքաւ ՚ի հռովմ առ արդարացուցանել զանձն՝ աքսորեցաւ ՚ի վեննա կմ բեննա գաղղիոյ , և անտի ՚ի սպանիա . կամէր կայսրըն արձակել զկարծեցեալ կին նր զհերովդիադա յաքսորութի . բայց յոչն առնուլ նր յանձն բաժանիլ ՚ի հերովդէ՝ աքսորեաց և

զնա

ուր մնաց և 'ի յետին ժամանակս յիշատակ պալատանն Հերովդի իբրև քսան փարսախ հեռի 'ի Մաքերոնտայ. միայն չէր յայտ, թէ յանուն Հերովդի՞ չորրորդապետի կոչէր պալատն այն, եթէ ականածանացն Հերովդի, որ եդ. ասեն զանունն քաղաքին 'ի պատիւ կայսերն Օգոստոսի՝ որ ըստ յունաց է Սեբաստոս։ Նաև մնաց անդ մարմին սրբոյն մինչև ցաւուրս Հեղինեայ դշխոյի, որ իբրև եկն յԵրուսաղէմ՝ շինեաց եկեղեցի 'ի վերայ տապանի նորա, և հանգոյց զայն 'ի մէջ երկուց մարգարէից, այսինքն ընդ մէջ գերեզմանաց սրբոյն Եղիսէի և սրբոյն Աբդիու. և զայս դնեն ոմանք լինել յարուճարձանս անդ Սեբաստուպօլսոյ. այլ ըստ այլոց ստոյգ ևս թուի, թէ եկեղեցին շինեցաւ 'ի մէջ քաղաքին, և անդ փոխադրեցաւ մարմին սրբոյն. ուր լինէին բազում սքանչելիք, որպէս գրէ Հերոնիմոս ականատես։ Որ թէպէտև կայր նաև վկայարան փոքրիկ արտաքոյ 'ի վերայ գերեզմանին. այլ իբրև թագաւորեաց ուրացօղն Յուլիանոս, արքանեակք նորա աւերեցին զարտաքին վկայարանն. իսկ 'ի ներքին եկեղեցւոյն կամեցան ևեթ հանել զմարմին սրբոյն և այրել ըստ հրամանի ուրացօղին. և արդարև համբաւեցաւ իսկ, թէ այրեցին զամենայն ոսկերս սրբոյն ընդ այլ նշխարս սրբոց. բայց ըստ այլ աւանդութեան Անտիոքացւոց՝ ապրեցուցին զայն հաւատացեալք. և թէ զիարդ, այսպէս գրէ վիպ ոմն յունաց Թէոդորոս Դափնոպաս կոչեցեալ 'ի սկիզբն տասներորդ դարու։

Նախ

Նախ զառաջինն յայտ առնէ, թէ յառաջ քան զաւուրս Յուլիանոսի եւ չէին մնացեալ անդ ամբողջ ոսկերք սրբոյն. այլ ըստ այլեւայլ մասանց հանեալ էին անտի 'ի ձեռն քրիստոնէից. եւ այս 'ի դէպ գայ եւ այլ առանձին պատմութեանց նշխարաց սրբոյն գտելոց 'ի հայս եւ յայլ տեղիս յառաջին ժամանակաց հետէ։

Այլ ինքն զայն պատմէ, թէ զնախկին երեւելի մասն, որ զաջ սրբոյ մկրտչին էառ 'ի տապանէ անտի նորա 'ի կողմանց սեբաստուպօլսոյ սրբ ղուկաս աւետարանիչ, եւ եբեր 'ի քաղաք իւր յանտիոք. եւ թէ 'ի հալածանս յուլիանոսի պահեցին զայն յաշտարակին կոչեցեալ զոնիա որ անկիւն. որ եւ յետ ժամանակաց առ յուստինիանոսիւ բերաւ 'ի կոստանդինուպօլիս, եւ անդրէն դարձուցաւ. եւ դարձեալ յաւուրս կոստանդեայ եւ ռոմանոսի կայսերաց փոխադրեցաւ 'ի կոստանդինուպօլիս. եւ զայսմանէ է ճառ բովանդակ նորին մատենագրի ժմկակցի ։

Արդ սոյն այս այր գրէ, թէ յորժամ եւ 'ի պաղեստին առաքեաց յուլիանոս արս յանտիոքայ՝ զի այրեսցեն զնշխարս կարապետին զգտեալս 'ի տապանի նորա, հայրապետն եմի (որ էր յայնժամ սրբն կիւրեղ) խրատեալ ընդ այսմ՝ փութացաւ եհան անտի զոսկերս սրբոյն եւ առաքեաց յաղեքսանդրիա. իսկ 'ի տապանի նորա եդ զայլ ոսկերս. եւ այնպէս այրեցան այն ոսկերքն օտարք, եւ պահեցան նշխարք սրբոյն ։

**Եկեսցուք այժմ 'ի գիրս պատմական գըրքոյն .**

**ԼԳ**

մութի, թէ * տեղին սբ գլխոյն մնաց յան-
,, ծանօթս մինչև 'ի ժմկս Կիւրղի Եէմացւոյն.
և Սոզոմենոս գրէ. 'ի Է. 24. * գլուխ յովհաննու
,, Մկրտչի ... ասի գտեալ առ կրօնաւորս ա-
,, մանս յաղանդոյն Մակեդոնեանց, որք զա-
,, ռաջինն բնակեցան յԵէմ, և ապա փոխե-
,, ցան 'ի Կիլիկիա ||: Նոյն զայլոն՝ որք անյի-
շատակ տեսեալ զայսպիսի անցս հին դա-
րուց, համարին թէ ոչ 'ի վեր ել և յաւուրս
Կիւրղի, այլ յետ միւս ևս դարու. որ է չփո-
թել զերկրորդ գիւտն ընդ առաջնոյն, զորմէ
մեր բանքս են:

Արդ՝ զոր յայտնի գրէ Սոզոմենոս ոչինչ հե-
ռի ժամանակաւ, 'ի Թագաւորութե Վաղե-
սի արիանոսի յայտնեցաւ առաջին գիւտն
պատուական գլխոյս 'ի Կիլիկիա. և եղև ա-
ռաջին փոխադրութի 'ի Կոստանդնուպօլիս
'ի ձեռն բարեպաշտ արքային Թէոդոսի Մե-
ծի: Վասնզի ասէ՝ լուեալ Մարդոնիոսի ներ-
քինապետի արքունի պալատան՝ թէ գլուխ
յովհաննու Մկրտչի է 'ի Կիլիկիա 'ի ձեռս Մա-
կեդոնեան կրօնաւորաց, պատմեաց կայ-
սերն Վաղեսի. և նա հրաման ետ բերել
զայն 'ի Կոստանդնուպօլիս: Այլ որք տա-
քեցանն, եդեալ զպատուական գլուխն յե-
րևելի կառս՝ բերին մինչև 'ի Բիւթանիա.
այլ իբրև հասին 'ի Պանտիքս (որ և Բէնտիքս)
'ի սահմանս Քաղկեդոնի, ջորիքն՝ որք ձգէին
զայն, ոչ կամէին յառաջ խաղալ. և թէ-
պէտև սպառնայէին յոյժ գրաստուց ջորե-
պանքն, և կառավարն չարաչար մտրակէր,
բայց

բայց անհնար եղև շարժել զնա 'ի տեղւոջէն. ուստի 'ի միտ առեալ՝ եթէ յինչ են իրքն, հաւանութբ կայսեր առեալ եդին զսբ գլուխն 'ի մօտակայ գիւղն կոսիղայ՝ որ էր կալուած մարդոնիոսի:

Յետ քանի մի տարւոյ՝ այն է յամի տն 390. Թէոդոս կայսր՝ եթէ յաղագս մանէ տն և եթէ այլ կարապետին՝ եկեալ 'ի տեղի անդր, ուր էր գլուխ սբյն, կամեցաւ բառնալ զայն անտի, և տանել անձամբ 'ի թագաւորեալ քաղաքն: Յայնժամ բազմօք ընդէմ եկաց կոյս մի՝ մատրոնա կոչեցեալ՝ յաղանդոյ անտի մակեդոնեանց, որ եկեալ էր ընդ բեկենտի քահանայի իւրումն աղանդակցի իբրև սպասաւոր և պահապան սբ գլխոյն. իսկ բարեպաշտ կայսրն՝ որ ոչ կամէր բռնութբ հանել զսբ գանձն 'ի ձեռաց նր, հեզաբար աղաչելով յորդորէր շնորհել զայն ինքեան. մինչև հաճեցաւ և զիջաւ կոյսն այն՝ եդեալ 'ի մտի, թէ ոչ առ վաղեսիւ եղև, նոյնպս և այժմ ոչ կամեսցի շարժիլ սբն 'ի տեղւոջէ անտի:

Այս միտս էր և քահանային բեկենտի. որ և եդ անձին իւրում ուխտ, զի թէ շարժեսցի գլուխ սբյն, դարձցի ինքն յուղղափառ հաւատս՝ զոր քարոզէր մեծաւորն Թէոդոս. և եղև այնպէս. ուր առանց իրիք դժուարութեան գնաց սբ մկրտիչն ընդ Թէոդոսի. որոյ պատեալ արքունի ծիրանեաւ զտուփանակն՝ յորում էր պատուական գլուխն, առ տարաւ ընդ իւր 'ի կոստանդինուպօլիս. և յար-

գաւառաց և կմ՟ յանտորից ասորւոց` 'ի ժամա-
նակս ոսկեբերանի , անխտիր քաղաք մեր կա-
րէր կոչել զայս և զայն տեղի . բայց որպէս
և գիցի , յետ ամաց քանզի մնաց իբրև թա-
քուն և անյայտ` նոր և յայտնի սքանչելեօք
յայտնեցաւ յեմեսա . որ լինի երկրորդ ե-
րևելի գիւտ և փոխադրութին :

Քանզի գրէ աբբայն մարկեղոս ( ուստի առ-
նուն և յայսմաւուրք յունաց և հայոց ) ար-
շիմանդրիտ վանացն սպելեայ , թէ քարան-
ձաւի յերկրին ասորւոց առ եմեսաւ , թէ յա-
ւուրս առաջնորդութեն իւրոյ 'ի վանս անդ ,
և յեպսութեն եմեսացւոց ուռանիոսի սբ ե-
պիսկոպոսի , և 'ի կայսերութեն վաղենտիա-
նոսի և մարկիանոսի յաջորդաց թէոդոսի
փոքու , յամի անտիոքացւոց կմ սելևկիաց-
ւոց` որ և ասորւոց ը մակեդոնացւոց 763 .
այն է ամ՟ տն՟ 452 . յաւուրս աղուհացից յայտ-
նեցաւ յեմեսա պատուական գլուխ յովհան-
նու մկրտչի ըստ օրինակիս ըստ այսմիկ :

Տեսանէի ասէ 'ի տեսլեան գիշերոյ , զի ամ՟
դրունք վանացս բացան . և ես յահէ լեալ
ընթացայ փակել զնոսին . և տեսի` զի գետ
յորդեալ գայր ընդ այն դրունս , և խուռն ընդ
ջուրս բազմութի յոյժ բազմաձայն լեզուաւ
սաղմոսերգողաց . և 'ի զարմանալ իմում`
լուայ ձայն յարևելից կողմանէ . ահա սբ
յովհաննէս մկրտիչ փրկչին մերոյ յսի քի
ցուցեալ լինի : Իսկ 'ի գալ մտանել նոցա 'ի
վանս` տեսի եկեղեցի նոր , յորում զարձեալ
գոչէին . ահաւասիկ սբն յովհաննէս . և ա-

հա եկն եկաց սք կարապետն 'ի մէջ տաճարին . և ամենեքին մատեան և օրհնեցան 'ի նմանէ ։ Յայնժամ և ես համարձակեալ մատեայ առ նա՝ առնուլ զօրհնութիւնն . և իբրև անկայ յերկիր , և բուռն հարի զոտից նր , կալաւ զիս և ետ ինձ համբոյր սրբութե . և ես զարթեայ յուրախութէս ։ Յետ աւուրց դարձեալ տեսի զսբ կարապետն , զի հանեալ 'ի ծոցոյ իւրմէ անօթ մեղրալից՝ ասէ ցիս . ա՛ռ զօրհնութիւս զայս ։ Ասեմ ցնա . ուստի՞ զաս . և նա ասէ , 'ի սեբաստուպօլսոյ . և եղև աներևոյթ ։

Իսկ 'ի յանձնել իմում վանականաց աղօթս , զի տէր յայտնեսցէ մեզ զխորհուրդ իւրացս , յաւուր միում 'ի ժամ սաղմոսերգութե ամե յեղբարցն իսահակ անուն ամբարձ զաչս իւր , և ետես հուր վառեալ 'ի տախտակս դրան այրին՝ որ կից էր վանաց մերոց . և յաղաղակել նր և 'ի շփոթիլ ամ եղբարցն՝ ասեմ . մի երկնչիք . զի տէր յաջողեաց մեզ . և ինչ ոչ վնասեաց հուրն ։ Իսկ եղև յետ աւուրց հնգից ետ մեզ եպսն եմեսու զայն տեղի այրին՝ որ էր մենաստան հնացեալ և աւերեալ . և բացեալ զփակեալ դուռն՝ յանձն արար մաքրել և շինել և միացուցանել ընդ մեր վանս ։ Իսկ յայնժամ տեսի դարձեալ 'ի նմին գիշերի , զի ասէր ցիս ոմն 'ի տեսլեան . աւասիկ բացաւ դուռն . արդ ծանի՛ր զայն՝ որ եբաց քեզ ըղմուտս , և մի հեղգար . ընդ նմին տեսի և աստղ բոցափայլ՝ որ եմուտ եկաց 'ի մէջ այրին . և ես մտի զկնի նր . և իբրև զարթեայ ,

զա

գոհացայ զքոյ յերկար ժամս : Նոյա 'ի վա-
ղիւն անդր առեալ զբուրվառ խնկոց՝ մտօ
յայրն , և յաղօթս կայր՝ զի ցուցցէ ինձ տէր
զտեղի երկնաւոր գանձուն . և առեալ բահ՝
բրեյր խորագոյն , և գտի անօթ խեցեղէն
կմ̃ սափոր , և լցայ ուրախութ̃ : Յայնժամ
գնացեալ պատմեցի եպիսին այլովքն համ-
դերձ՝ որոց այլ և այլ տեսիլս էր տեսեալ
վն̃ սոցին իրաց ; և ասեմ . ս̃բ յովհաննէս
մկրտիչն յայտնեցաւ : Զարմացաւ եպս̃ն .
Եկն 'ի վաղիւն անդր քահանայիւք և սարկա-
ւագօք յայրն . և անկեալ երկիր եպագ 'ի վ̃ր
երեսաց իւրոց . իսկ մի ոմն յերիցանց անտի
մաղքոս անուն՝ ասէր . ուստի՞ այդ յայտ ի-
ցէ , եթէ գլուխ կարապետին իցէ դա . և 'ի
ձգել զձեռն իւր յանօթ անդր՝ զննել զս̃բ
նշխարս , առ ժամայն գօսացաւ ձեռն նորա ,
և մնաց կցեալ ը̃ շրթունս անօթոյն , և ոչ
կարէր յինքն ամփոփել զայն : Յայնմ վայ-
րի ահիւ մեծաւ յաղօթս ապաւինեցաք ամ̃
բազմութ̃բ , մինչև կարող եղև նա ժողովել
զձեռն իւր . բայց մնայր այնպէս տկար և
անպիտանացեալ :

Իսկ եպս̃ն բարձեալ զպատուական գլուխ
ս̃բյն՝ տարաւ եդ պատուով 'ի սարկաւագա-
նոցի եկեղեցւոյն . մինչև շինեսցի վկայա-
րան յանուն մկրտչին : Եւ 'ի կատարել շին-
ուածոյն՝ երևեցաւ ս̃բն յովհաննէս երիցուն
այնմիկ գօսացելոյ՝ որ կայր 'ի սուգ , և ասէ
ցնա . յաւուր հանդիսի փոխադրութ̃ե̃ դի̃ր
զձեռն քո 'ի վ̃ր անօթոյ գլխոյս , և բժշկես

ցիս . և եղև այնպէս ։ Զայս երևելի գիւտ գլխոյ մկրտչին յիշեն և աղեքսանդրեան ժամանակագրութիւն և մարկեղինոս կոմս , որք եղեալ յամի տն 452 , կմ 453 . վս զի յայտնութիւն համարի եղեալ յամի 452 . 'ի փետր. 18 . և դրութիւն 'ի սարկաւագանոցի՝ 'ի փետր. 24 . որ և յամ եկեղեցիս հանդիսացաւ իբրև օր տօնի գիւտի պատուական գլխոյն յովհաննու . իսկ փոխադրութիւն 'ի նոր վկայարան եղև 'ի յաջորդ ամի . 453 . 'ի 27 . հոկտ ։

Զայս ամ լուեալ բնակչաց կոստանդնուպօլսոյ՝ ոչինչ իշխեցին ասել . զի պակասեալ էր յիւրեանց պատուական գանձն այն . և եմեսացիք համարեցան՝ թէ անդստին առ իւրեանս թաքուցեալ կայր այն յանծանօթս ։ Իսկ եղև 'ի յաջորդ դարու՝ յորժամ յուստինիանոս կայսր նորոգեաց և հոյակապ եւ կառոյց ՝զտաճար յովհաննու կարապետին՝ որ յեվտոմոն կոստանդնուպօլսոյ , 'ի խնդիր եղև նշխարաց սորին . ետ բերել յանտիոքայ զաջ մկրտչին , և յեմեսեայ զգլուխն . այլ յետ կատարման նաւակատեաց տաճարին՝ հարկեցաւ յետս դարձուցանել ։ Բայց եմեսացիք յետ առնլոյ զպատուական գանձն՝ և յերկար պահելոյ , ոչ գիտեմ զիարդ կորուսին զնա յաւուրս խառնակութե երկրին . զի հուսկ յետոյ գտաւ 'ի կոմանա , և դարձեալ բերաւ 'ի կոստանդինուպօլիս . որ է երրորդ գիւտ և փոխադրութիւն . իսկ պատմութիւն նր այսպէս քաղի 'ի բանից յոյն մատենագրաց ։

'Ի ժամանակս ելիցն հագարացւոց՝ յորժամ տիրեցին սարակինոսք 'ի վր բազում տեղեաց , հերակլ կայսր՝ որ էր յարևելս , ոչ կարացեալ զդէմ ունել բազմութեն նց յետս եկաց 'ի կողմանց անտի՝ յետ դարձուցանելոյ զսբ խաչն 'ի պարսից յամի 633. Թողեալ զվահան քաջ զօրավար յեմեսա քաղաք ասորւոց 'ի պահպանութի : Այլ վահանայ ամբացուցեալ զեմեսա՝ ընդդէմ եկաց յարձակմանց այլազգեաց զամ մի . մինչ զի և զօրք ելեալ 'ի քաղաքէն՝ վանեաց և վարեաց զնս մինչև 'ի դամասկոս . այլ 'ի միւս տարւոջ զօրացան թշնամիք , և հալածական արարին զվահան իւրովքն հանդերձ , և տիրեցին հետզհետէ ամ երկրին ասորւոց և միջագետաց և պաղեստինացւոց . ընդ որս առաւ և եմեսա :

Որդ քանզի ստնակոխ լինէր սոէպ յօտարաց և վանքն սպէլեայ՝ ուր էր գլուխ սբյն յովհաննու , և առաւել աներկեան էր քաղաքն՝ թէպէտև ընդ ձիրութե այլազգեաց , սմին իրի ըստ գրելոյ թէոփանեայ 'ի քսաներորդ ամի կոպրոնիմոսի կայսեր , այ յամի տն 760 , կմ 761 , * փոխադրեցաւ գլուխ սբյն
„ յովհաննու կարապետի և մկրտչի 'ի վանաց
„ սպէլեայ 'ի տաճարն նր , որ յեմեսացւոց
„ քաղաքի . և շինեցաւ էջք ( որ խորանիստ
„ տեղի մատրանաձև ) . յորում մինչև ցայ-
„ սօր երկրպագելի մարմնաւոր և հոգևոր ա-
„ նուշահոտութիւն պատուոյ , բղխելով ամե-
„ նեցուն՝ որք հաւատով առ նա ընթանան՝

մեքս հասու եղաք, թէ Երբ եղև փոխել զայն յեմեսեայ ՚ի կոմանա. և կոմանացիք անգամ չէին գիտակ տիրապէս. թող զի հալածումն պատկերամարտից ՚ի մի կայր, որք ՚ի հուր այրէին և զսբ նշխարս՝ զորս գտանէին։ Իսկ յետ այնր հալածանաց՝ յորժամ զօրացան ուղղափառք, հաճոյ թուեցաւ և սբյ կարապետին յայտնել զգլուխ իւր, և պարգևել կոստանդնուպօլսեցւոց ՚ի թագաւորութէ միքայելի և թէոդորայ, և ՚ի պատրիարգութէ իգնատիոսի առն սբյ յաջորդին մեթոդիոսի (յամի տն իբր. 850.) որևնակ զայս, որ է առէ վերջին գիւտ երրորդ։ Ազդումն ընկալաւ սբ պատրիարգն իգնատիոս ՚ի տեսլեան, թէ գլուխ սբյ կարապետին է ՚ի կոմանա. արդ տուր բերել զայն ՚ի կոստանդինուպօլիս։ Նա ՚ի յայտնել պատրիարգին զայն յունին թագաւորին և մօր նր՝ առաքեցան արք ՚ի կոմանա, որք յուզել գտին զայն գանձ՝ ըստ նշանակելոյ տեսլեանն զտեղւոյն և զանօթոյն. Նա եղև ՚ի մերձենալ սբյն ՚ի թագաւորական քաղաքն՝ ընդ առաջ ելին թափօրով թագաւորն և պատրիարգն հանդերձ ուխտիւ եկեղեցւոյն և ամ բազմութբ, և մուծին փառօք ՚ի քաղաքն։ Յայնժամ պատրիարգն առեալ ինքնին հանգոյց զայն ՚ի տաճարն արքունի պաղատանն ՚ի իբ աւուր ամսեանն մայիսի. ուստի կարգեցաւ առ յոյնս ՚ի նմին աւուր տօն՝ երրորդ գիւտի կամ փոխադրութե գլխոյ սբյն. զի անխտիր գիւտ և փոխադրութի կոչի՝ առե

դրիչն,

գորիչն, և է կրկին կոչմամբ մի և նոյն հան-
դէս կատարի. և յաւելու հանել զպաշտօ-
րինակ խորհուրդս երրորդական թուոյ. և
'ի մնացթանս դարձուցեալ զբանն առ սէր
յովհաննէս մկրտիչ՝ փախճան առնէ պատ-
մութեան ։

Այս և առանձին ճառ ներբողական 'ի մէջ սոյն յումեմնէ 'ի միջապաց ժամանակին առա-ցեալ 'ի կոստանդնուպօլիս 'ի խորհուրդ ա-նիս, սկիզբն ընելով այսպէս ։ * Օ երրորդ-
,, հրաւէր կարապետս յիշատակի՝ առաքի-
,, կայս որ բերեր, 'ի միասին կոչէ զմեզ ով
,, քրիստոնեայք ։ Եւ 'ի կարգի բանիցն առէ.
* Ո՛վ սքանչելեացս. ո՛չ հանդուրժեաց եր-
,, կիր բազմօք թաքուցանել պահել յինքեան ըն-
,, դունել զայս և տրտմեցուցանել զմեզ, այլ
,, 'ի դէպ ժամանակի իւրում՝ ո՛չ նորանշան
,, և հաստանացեալ պտուղ՝ եւ մեզ զպտուղ
,, իւր. արդ տեսին զնա երկինք, և ցնծա-
,, ցան. հայեցան ազգք մարդկան, և հրա-
,, շակ հարին. զգացին դևք, և խորտակե-
,, ցան ։ Բան զարեգակն ծագեաց պայծա-
,, ռագոյն՝ լուսոյն ճշմարտութե. քան զլու-
,, սին՝ լուսափայլ, նշողիւք բարեպաշտուե.
,, քան զաստեղս պէսպիսաձաձանչ՝ բազմու-
,, թբ սքանչելեաց. զի որպիսի և որքան
,, բղխեաց առաժամայն յորդութի բժշկուէց՝
,, քան զծով ազբիւր յատակագոյն և առատա-
,, գոյն . . . Էառ 'ի նմանէ ոմն ոք, և ընկա-
,, լաւ զոր միանգամ խնդրէր, և որչափ ինչ
,, ցանկայր ։ Այս է սէ գլխոյն խօսելով

յէ

յիշէ պատուով և զհերս գլխոյն և զմօրուաց նորին , որպէս և զաչս , զականջս , զծնօտս , և զատամունս . ոչ թէ այնպէս ամբողջ և անապական կայր ցայնվայր . այլ զի մի պակասեսցի ինչ առէ 'ի գովութեց , բեր գովեսցուք և զնմ անդամս նորա մկրտչին . որ ոչն հայլն առ նշխարս առաջիկայ , այլ յանձն նորին ընդ ինքեան ։

Արդ մնաց պատուական գլուխ մեծին Յովհաննու 'ի կոստանդնուպօլիս և յաւուրս յաջորդ կայսերաց յունաց , այլ ոչ երբեք 'ի զանազան եկեղեցիս և 'ի վանօրայս փոխադրեցին . ընդ որում գրեն զոնարաս և գլիկաս յոյն պատմաբանք՝ թէ յաւուրս վասլի և կոստանդեայ էր գլուխ նորին յեկեղեցւոջ վանաց ստուդիոյ՝ որ յանուն նորին Յովհաննու մկրտչի . զի 'ի խօթանալ ասեն վասլի՝ ալեքսիոս հայր վանաց ստուդիոյ եբեր առ նա զգլուխ մկրտչին . վասն որոյ և կայսրն օգտեալ 'ի նմին՝ կացոյց զալեքսիոս պատրիարգ թագաւորական քաղաքին յամի տեառն . 1025 ։

Յայնմհետէ չիք յիշատակ առ յոյն մատենագիրս , թէ զինչ եղև գլուխ նորին . այլ արևմտեայք՝ որք ժառանգ եղեն այնմ յառնուլ իւրեանց զկոստանդնուպօլիս յետ երկուց դարուց՝ յամի . 1204 , յառաջ բերեն աւանդութիւն այսպիսի ։

Յորժամ տիրեցին լատինք մեծի քաղաքին կոստանդնուպօլսոյ , և կողոպտեցին զերեւելի երևելի նշխարս նոցա զանձեալս անդանօր , ոչ ամբողջ գտին զգլուխ նորին ,

այլ

այլ՝ի մասանս մասանս բաժանել . և այն՝
Թերևս յաւուրց անտի մնոնմախ կայսեր ,
որ շինեաց նոր եկեղեցի յանուն սրբոյ կարա-
պետին . և՝ի կամելն գնել անդ մասն ինչ՝ի
գլխոյն՝ զայլ մասն երևի թողեալ ասեն՝ի
քնիկ տեղւոջ : Իսկ ըստ այսմ պատմի , թէ առ-
ռաջակողմն գլխոյն՝ որ երես սրբ մկրտչին պա-
հեալ կայր արծաթի ամանով՝ի վանսն կո-
չեցեալ մանկանանս . ուր էր երբեմն պալատ
արքունի շինել՝ի վասիլ կայսերէ արշակունե-
ւոյ . և անդ եղև փախձան կոստանդեայ
մնոնմախի , և աւերքսի կոմնենոսի . անդ ե-
կաց առ ժամանակ մի և կոստանդին տու-
կիծ . այլ յետոյ աւերեաց զայն պալատ ան-
դրոնիկոս կոմնենոս՝ իբր քսան ամօք յառաջ
քան զգալուստ լատինացւոց : Իսկ ահա՝ի
պահարանս այնք կիսաւեր արքունի վկայա-
րանի եգիտ զնախասացեալ մասն գլխոյ կա-
րապետին , որ զերես նոր , ըստ գլխոյ սրբոյն գե-
ողեալ՝ յայլևայլ արծաթի անօթս՝ ոմն՝ի
կղերիկոսաց լատինացւոց , և անուն նորա վա-
լոն սարտոնացի՝ կանոնիկոս ամիենացի՝ առ-
դաւ զաղղիացի . և նուէր՝ի քնեկոյն , և
անտի անցեալ՝ի գաղղիա՝ եդ՝ի թեմն ամ-
բիա կոչեցեալ , յամի 1206 . դեկտ . 17 . ո-
րոյ ընդարձակ պատմութիւն գրեալ՝ի նմին
ժամանակի՝ գտանի մինչև ցայսօր . որպէս և
այլ պատմական յիշատակք իբրաց յաղէնի ժա-
մանակս՝ հանդերձ բազմաքանչ նշանաց
ցուցանելեաց բարեխօսութե սրբոյ կարապե-
տին մինչև ցաւուրս մեր :

Իսկ զսկաւառակ գլխոյ սորին, կամ զոսկի գա-գաթանն, որ անկեալ էր 'ի ձեռս Թագա-ւորաց լատինացւոց՝ որք տիրեցին յայնժամ բիւզանդիոյ, կայսրն բաղդուինոս երկրորդ վաճառեաց ընդ այլ նշխարս սրբոց 'ի պարգևի մասին առ սրբն լուդովիկոս արքայ գաղղիաց-ւոց յամի. 1247. և նա եդ զայն պատուով 'ի փարէզ քաղաքի յարքունի մատրան կա-ռուցելոյ յանուն սրբոյ մկրտչին ։ Այլ մասն գլխոյ սորին մեք առաք ասեն վենետիկեցիք, և եդաք 'ի գանձս սրբոյն մարկոսի, որ է մայր եկեղեցի 'ի վենետիկ ։ Բայց յիշատակին և այլ մանր մասունք 'ի բազում այլ տեղիս, և ցուցեալ լինին մինչև 'ի մեր ժամանակս. զորս եթէ 'ի մի հաւաքեսցէ ոք, անցանեն զչափու միոյ և երկուց գանկից. յորմէ յայտ է՝ թէ ոչ ամն ունի զնոյն ստուգութի. զի զանուն յովհաննու ուրուք սրբոյ ընթերցեալ 'ի յիշատակս՝ իւրաքանչիւրն պնդէ լինել յովհաննու մկրտչի ։

Բաւանիկ և 'ի ստուգագոյն կարծեցեալ պատ-մութէ անգ. նախանշանակեալ վալոնի սար-տոնացւոյ գրի, թէ յորժամ եգիտ զմասն գլխոյ սրբյն յարծաթի ամանի՝ զառաջինն 'ի յունական յիշատակարանէն այսչափ միայն իմացաւ, թէ է նշխարք սրբյն յովհաննու. ջնջի գրեալ էր՝ այիօս իօաննէս. բայց կայր 'ի վարանս տարակուսի՝ թէ ո՞ր յովհաննէս իցէ. զի ոչ իմանայր (ասէ պատմիչն) զյու-նականն ձայն նշանակեալ զկնի (համառօ-տագրութ) բռօտրօմօս, որ թարգմանի կա-

րա-

բապետ կմ յաւաջընթաց․ մինչև հայելով զկնի և յայլ պատկերս մկրտչին՝ յորս նոյն նշանակ գտանիւր, հաստատեցաւ՝ թէ նոյն սրբն է ։ Նաւ ահա յայսպիսի համաձայնութեց լինի բազմութի նշխարաց յանուն միոյ՚ի սրբց․

Իբր զի են նշխարք համանուն սրբց ։

Սորին վս թէպէտև յերկար խուզողութբ ձգնին բոլլանդեանք որոշել զստոյգ և զանստոյգ նշխարս գլխոյ կարապետին, բայց տակաւին ինչ ինչ յորոց ստոյգ դատին՝ մարթին լինել անստոյգ, և յորոց անստոյգ կարծեն՝ մարթին ստուգագոյն լինել ։ Մինչ զի չէ մեզ վճիռ հատանել ստուգութե կմ անստուգութե նաև զամբողջ գանկէ կամ զգլխոյ սբյն յովհաննու մկրտչի, որ պահի ցարդ ՚ի հռովմ ՚ի վանս սբյն սեղբեստրոսի ՚ի մարտեան կմ յարէս դաշտի, որ և ասի սեղբեստրոս գլխոյ, զոյդ ը անձեռագործ դաստառակի կմ պատկերի գլխոյ փրկչին առ աջ դարյղելոյ․ զորս և արժանի եղաք համբուրելոյ ՚ի մօտոյ՝ յամի 1810․ ՚ի մայիսի, ընդ անցանելն մեր ը հռովմ․ զի զի՞նչ և ասասցէ ոք, ոչ ոք կարէ ժխտել, թէ՝ և ժառանգք այս գլխոյս ունին զհին յիշատակարանս ՚ի հաստատութի աւանդութե իւրեանց՝ զոյգ ը բանից բարոնիոսի, որ ասէ․ * Մեք քա„րոզեմք զոր գիտեմք, և ստոյգ աւանդու„թբ ուսաք ։ Այս տեղի վանաց սեղբեստրոսի երբեմն էր վանք յունաց․ և ապա եղև մենաստան կուսանաց բենեդիկտեանց ։ Արդ եթէ յայս կամ յայլ նշխարս կայցէ

վերիպակ ըստ անուան սրբոյն, չէ՛ ինչ ։ զի սուրբք մեր նախանձին ընդ պատւին տուեալ այլում 'ի սրբոց յանուն իւրեանց ։ զի և ինքեանց է այն պատիւ ։ և տէրն 'ի փառս սրբոյն սրբոց ։ Մայր 'ի նեապօլիս՝ ընդ անցանելն մեր ընդ այն 'ի նմին ամի՝ և անգիւտ մասն 'ի չորացեալ արենէ սրբոյն յովհաննու մկրտչի ։ Արդ և 'ի մալթա տեսաք զզանազան մասունս նշխարաց նր՝ 'ի հոյակապ տաճարի նր, որ է մեն յերևելի և 'ի հրաշակերտ եկեղեցեաց ճի, պահեալ ընդ մասին 'ի սարկաւագանոցի, և ըստ այլ երևելի մասին՝ (որ ասի յղեալ 'ի գանձարանէ կոստանդնուպօլսոյ՝ յաւուրս օսմանցւոց տիրութեան յընծայ մալթացւոց, մինչդեռ էին նք 'ի հռոդոս կղզի,) պահեալ 'ի մեծ վկայարանի նր՝ որ է ընդ հովանեաւ նոյն մեծի տաճարի մկրտչին 'ի մալթա ։ Իսկ զհնագոյն և զառաւել վաւերական նշխարաց սրբոյ կարապետիս, զոր եբեր լուսաւորիչն մեր 'ի կեսարիոյ 'ի հայս՝ ընդ մարմնոյ աթանագինեայ եպսի, ունիմք ասել յառաջաձին տօնի այնր փոխադրութե, որ սեպհական է ազգիս ։

Յայժմուս կնքեսցուք զպատմութի գիւտի պատուական գլխոյն մկրտչի՝ բանիւ ուրումն 'ի դպրաց ։ * Յետ նր՝ որ գեղեցիկ էր տեսա-
,, նելով առաւել քան զայլ որդիս մարդ-
,, կան, և զկնի անհամեմատ կուսին՝ որ յղա-
,, ցաւ զնա յանարատ արգանդի իւրում, ո՞
,, ոչ գիտէ՝ թէ այլքն ամ 'ի վայր քան զմկր-
,, տիչն են ։ Իսկ եթէ տէրն՝ ոնց քաջայայտ է,

# ՑԱՆԿ
# ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
## որ ՚ի հատորն Բ.



ժգ.

